## ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

ՏՆ. Հ. ՂՈՒԿԱՍ ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ԻՆՃԻՃԵԱՆ

ՏՊԱԳՐԵԱԼ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ
ՏՆ. ՍՈՒՔԻԱՍԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍՈՄԱԼԵԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՍԻՒՆԵԱՑ
ԵՒ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՅԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

ԱՐԴԵԱՄԲՔ ԵՒ ԾԱԽԻՒՔ
ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԿԱՐՆԵՑԻ ԵՐԱՆՈՒՀԻ ՏԻԿՆՈՋ
ԿՈՂԱԿՑԻ
ՄԱՆՈՒԿ ԱՂԱՅԻ ՄԱՀՏԵՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆ

## ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ







Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1835 ՌՄՁԴ

UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

# ՀՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՇԽԱՐՀԻ

---

## ԳԻՐՔ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

Օ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ աշխարհիս մերոյ յերիս վիճակս զանազանս փոփոխեալ. նախ՝ 'ի տանուտիրական, որ էր առաջին կառավարութիւն յաւուրս նահապետաց մերոց. երկրորդ՝ 'ի միապետական, յորժամ թագաւորք սկըսան կառավարել. որ երիցս սկսաւ, և երիցս ընդհատեալ մնաց, մինչև իսպառ վերջացաւ առհասարակ. երրորդ՝ յիշխանական, յորժամ յընդհատել իւրաքանչիւր թագաւորութեանց ընդ ժամանակս ժամանակս՝ իշխանք կառավարէին զաշխարհս Հայոց։

Օ երեքին զայսորիկ կառավարութիւնս ստորագրեսցուք մի ըստ միոջէ յառաջիկայս, յերիս յօդուածս տրոհելով։

## ՅՕԴՈՒԱԾ Ա

Կառավարութիւն տանուտիրական : Ժամանակ Նահապետաց :

ՏԱՆՈՒՏԻՐԱԿԱՆ կոչեմք զայն ազգ կառավարութեան զոր եւրոպացիք կոչեն Կալուածական. ուր ոչ տիրէ մին 'ի վերայ ամենեցուն, այլ իւրաքանչիւր 'ի տանուտերաց ինքն իշխէ և կառավարէ զայն երկիր և զբնակիչս նորա, որում տէր է և ժառանգ: Զայս տէրութիւն կալուածական կամ տանուտիրական՝ եւրոպացիք 'ի սկզբան անդ սովոր իւրեանց տուացան, գոլով ազգ եկամուտ յապագայ ժամանակս եկեալ անդ յԱսիոյ, ըստ մեծի մասին 'ի Թաթարաց. այլ մերն եղև բնիկ ժառանգութիւն 'ի սկզբան անդ բնակելոյ մարդկան 'ի վերայ երկրի, յորժամ չգոյր այլ ինչ բնակութիւն. զի 'ի հարց իւրեանց՝ որք էին որդիք Նոյի՝ ստացան զայն երկիր, զոմանս ժառանգութիւն 'ի հարէ, և զոմանս ինքեանք գրաւեալ բնակութիւն իւրեանց, յորժամ բազմանալով նոցա ոչ բաւէր առաջին երկիրն: Եւ առ 'ի գրաւել՝ չէր հարկ սուր առնուլ կամ մարտնչել, զի յայնժամ երկիր դատարկ էր 'ի բնակչաց. իսկ յորժամ բազմացան մարդիկ, յայնժամ սկսան սրով գրաւել: Տես զոր գրեալ է մեր 'ի գլուխն Բնակութեան:

Տանուտէր կոչիլ յայնժամ գլխաւորի նոցա 'ի սկզբան անդ յաւուրս Թորգոմայ՝ յիշատակի 'ի Ա. գլուխ պատմութեան Օրպելեանց վասն Վրաց յասելն. "Սահման էր Վրաց կոչել զգլխաւորն իւրեանց Տանուտէր. զի ոչ ունէին զթագաւոր. և նստէր Տանուտէրն 'ի Քարթլ, 'ի մեծ քաղաքին Մցխիթայ": Ահա սոյն օրինակ պարտ է իմանալ և վասն Հայոց աշխարհիս յաւուրս Թորգոմայ և Հայկայ և սերնդոց նորա, խաղաղութեամբ ժառանգեալ զերկիր իւրեանց. և տանուտիրական կառավարութեամբ պայազատեալ[1] մինչև ցԱրամ: Այլ քանզի սուղ ինչ յառաջ քան

1 Ի սկզբան անդ ասէ Յուստինոս պատմագիր գիրք Ա. գլ. 1. "Ժողովուրդն չէր պատուական հպատակել օրինաց ինչ. հաճոյք իշխանաց էին փոխանակ օրինաց. որոց առաւել փոյթ էր անքոյթ կացուցանել զսահմանս իշխանութեան իւրեանց քան թէ ընդարձակել. ամենեքեան թագաւորութիւնք յիւր հայրենիս պարագրեալ կայր: Յառաջ քան զամենեսին Նինոս արքայ ասորեստանեայց զհին և իւր զհայրենական սովորութիւն աղ-

զԱրամ որդիք ստարածնաց՝ որք էին ազգք շուրջ զՀայաստանեօք՝ կոխեցին զսահմանս զոր Հայք ժառանգէին, որպէս գրէ Խորենացին ա̄. 13. յորս Նիւքար ոմն կոչեցեալ Մադէս՝ զամս երկուս ծառայեցոյց զսահմանս Հայոց. յայնժամ հարկ եղև Արամայ սուր առնուլ և սրով վանել զամենեսին զնոսա։ Եւ թէպէտ Արամ զօրաւոր էր և՛ բազմաց աշխարհաց տիրօղ, որպէս ծանուցաք 'ի գլուխն Պատմութեան, բայց չեղև միշտ գլխովին ինքնիշխան որպէս զառաջին նահապետսն մեր, այլ 'ի թագաւորել անդ Նինոսի՝ ընդ հրամանաւ նորա էր մերս Արամ. վասն որոյ ասէ Խորենացին. Նինոս "հրամայէ նմա (Արամայ) զայն իշխանութիւն անկասկածաբար ունել„։ Ընդ հրամանաւ Նինոսի էր և Արայ որդի նորա, զորմէ ասէ ա̄. 15. "Նոյնպիսում շնորհի արժանաւորեալ 'ի Նինոսէ՝ որպէս և հայրն իւր Արամ„։

Իսկ տէրութիւն Շամիրամայ 'ի վերայ Արայի և աշխարհիս մերոյ յայտ է. որ յետ սպանանելոյ զԱրայ 'ի պատերազմի՝ ինքնակամ իբր յիւրում աշխարհի շինեաց զՎան քաղաք. և "'ի բազում տեղիս յաշխարհին Հայոց արձանս հաստատեալ, նովին գրով յիշատակ ինչ հրամայէ գրել. և 'ի բազում տեղիս սահմանս նովին գրով հաստատէր„. ասէ ա̄. 16։ Եւ 'ի 19. գրէ. "Իսկ մերոյն Արայի որդի Արայ 'ի Շամիրամայ կոչեցեալ, և զգործ վերակացութեան աշխարհիս նմա հաւատացեալ„։ Զի յայնժամ մերքն իբր վերակացուք և գործակալք նստէին յաշխարհիս Հայոց 'ի կողմանէ ինքնակալին ասորեստանեայց, որպէս և քաջայայտ ծանուցանէ զայս Խորենացին ա̄. 21. ասելով, թէ անուանք և գործք մերոց նահապետաց և թագաւորաց ոչ գրեցան 'ի մերոց. զի ոչ խորհէին զայսպիսիս 'ի գիր արձանացուցանել. այլ հանեալ եղեն 'ի հին դիւանաց քաղդէացւոց, ասորեստանեայց և Պարսից. զի յարքունի մատեանս նոցա մտին անուանք և գործք մերոցն "իբր գործակալաց և վերակացուաց աշխարհիս (Հայոց) 'ի նոցանէ կացելոց, և (իբր) մեծաց կողմնակալաց„։ Յայտ է այս և յանցից զոր կրեաց մերս Անուշաւան. զորմէ գրէ

գաց փոխեաց նորաձեւ ինչ իմն ըղձիւք իշխելոյ. սա զառաջինն յորոյց ազատերազմ է սահմանակիցս, և զԹերապեյտ ժողովուրդս առ'ի զգեստ ունելոյ՝ մինչև ցԼիբիա է իւրև նուաճեաց„։
Ահա այսպէս էր կառավարութիւն և մերոյ աշխարհին մինչև ցԱրամ. իսկ 'ի ժամանակս Արամայ յորժամ սկսան բռնաւորք յարձակիլ յերկիր մեր, Արամ զնոսա հալածական արար, և Նինոսի որ զօրաւոր էր՝ հնազանդ եղև։

'ի 20. « Այս Անուշաւան բաւական ժամանակս արհամարհութեան կրեալ 'ի Զամեսեայ, (որ էր Նինուաս որդի Շամիրամայ,) տուեալ 'ի դրան արքունի (աստրեստանեայց). իսկ օգնեալ 'ի բարեկամաց՝ շահի զմասն ինչ աշխարհիս հարկահանութ[եան] խնամել. զկնի այնս և զբոլորս »: Ուր երկու ինչ յայտ առնէ. մի՝ զի ոչ կարաց միանգամայն իշխան լինել աշխարհիս. և երկրորդ՝ զի հարկատու եղև. զոր պարտ է իմանալ և վասն Արայի և Արամայ:

## ՑՕԴՈՒԱԾ Բ

Կառավարութիւն Թագաւորական:

ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՍ այս ըստ երեից կանգնելոյ թագաւորութեան յաշխարհիս մերում, երրակի անուամբ յորջորջի. որք են Հայկազնեայց, Արշակունեաց, Բագրատունեաց: Ցաւուրս իւրաքանչիւր թագաւորութեանցս այսոցիկ թէ յինչ վիճակի էր կառավարութիւն հայաստան աշխարհիս, զինչ պատճառք էին բարձրանալոյ և զօրանալոյ նոցա, և ապա զինչ՝ օր ըստ օրէ վատթարելոյ և խափանելոյ նոցա, տուեալ յայտնի լինի գիտելով զկառավարութիւն միոյ միոյ 'ի թագաւորացն երեցունց տոհմից: Վասն որոյ յայսմ վայրի զկարգ թագաւորաց նոցա արձանագրեսցուք, զարարս նոցա ոչ ըստ օրինակի վիպագրաց, այլ խորհրդածութեամբ հանդերձ պատմաբանեալ. որով ընթերցողացն տեղեկացեալ 'ի վերայ հասցեն հաւաստեաւ իւրաքանչիւրոցն ոգւոյ կառավարութեան յօգուտ կամ 'ի վնաս աշխարհին, իմացեալ նովաւ և զընդհանուր տեսչութիւն աշխարհիս մերոյ: Այլում տեղւոյ թողեալ զիշխանեանցն՝ որ արտաքոյ է հայաստանեայց:

Պարփակէր ժամանակագրութիւն երկոտասանից թագաւորաց մերոց. որ է կենցաղավարք և բարոյական պատմութիւն նոցին գնացից:

## Ա. ԺԱՄԱՆԱԿ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՀԱՅԿԱԶՆԵԱՑ

*Ի սկիզբն և 'ի մէջն գտանելք քաջութեան միացեալ ընդ բարեբարոյութեան: Ի վերջն ազատութեան շփոթի առ 'ի յափշտակել զտէրութիւն:*

Ի նախագրելոցս մինչև ցաստ՝ յայտ է թէ յարշաւանաց շրջակայ բռնաւորաց ստիպեցաւ քաջն Արամ զօրաժողով լինել՝ տիրել և իշխել. և յայնժամ ահա երևի վերջանալ նախնի տանուտիրական կառավարութեան, և սկիզբն առնուլ նոր իմն եղանակ գրեթէ միապետական, այլ ընդ գերագոյն տէրութեամբ աստրեստանեայց, և առանց անուան թագաւորի[1] մինչև ցՊարոյր նահապետ՝ որ կարող եղև զբռնամբ ածել տիրապէս զթագաւորութիւն, և զազգ մեր անցոյց 'ի կարգս այլոց թագաւորութեանց: Զի Վարբակէս Մար կամ Մեդացի կամելով զթագաւորութիւն 'ի Սարդանապաղայ յինքն գրաւել, և տիրել Նինուէի և Աստրեստանի, յինքն յանկոյց զքաջ նահապետն մեր զՊարոյր 'ի թիկունս օգնականութեան խոստանալով նմա զթագաւորութիւն 'ի վերայ Հայոց. վասն որոյ թագաւորութիւն մերոյ աշխարհիս ընդ թագաւորութեան Մարաց միանգամայն սկիզբն էառ: Խորենացին գլ. 22. 'ի ցուցանել թէ յաւուրս Վարբակայ որ էառ զԲաբելոն՝ գոյր և մեր թագաւորութիւն, 'ի վկայութիւն Երեմիայ մարգարէի ցուցանէ, որ ծա. 27. 'ի դիմաց Աստուծոյ հրաւիրէ զզանազան ազգս կործանել զԲաբելոն, ուր 'ի հրաւիրեալսն նաև զՀայս՝ անուանէ թագաւորութիւն. "Պատուէր տուք յինէն Այրարատեան թագաւորութեան[2], և Աքանազեան գնդին,,: Եւ քանզի նորոգ թագաւորութիւնն Պարոյրայ նոր շուք և շինութիւն եղև աշխարհիս, նորին աղագաւ Խորենացին առանձին իմն խնդութիւն ցուցանէ. յայնմ համառօտագիծ պատմութեան իւրում, ասելով գլ. 21. "Այժմ ահա զը-

1 Տես 'ի գլուխն Պատմութեան զոր ինչ գրեցաք վասն Արամայ:

2 Այրարատեան անուանք իմանան ուրեք դիրք զՀայս, որպէս գրեալ է մեր 'ի գլուխն Անուան:

ւարձացայց ոչ փոքր ինչ կրելով խնդութիւն . համարելով 'ի տեղիս մերում իսկ ընկլի նախնեացն՝ յորում սերունդք թագաւորութեան հաստատեն յաստիճան „ :

Յայս միջոց ժամանակի՝ յառաջ և զկնի գրաւելոյ մերոցն զանուն թագաւորութեան, թէ որպիսի ազնուական բարք, և բարեկարգ և արդար տեսչութիւն փայլէր 'ի մերս՝ յայտ առնէ այս բան Խորենացւոյն ա . 22 . «Իմն այսուհետև արք 'ի մերոյ թագաւորէն սիրելիք, որպէս ընկերք և ինձ արեան առաւել և հաւատարիմ հարազատք : Եւ սիրելի էր ինձ յանժամ զալ Փրկչին և զիս գնել . և առ նոքօք յաշխարհ զմտաւն իմ լինել, և նոցա տեսութեամբ խրախճանալ, և յարգեացս վտանգից ապրիլ „ : Յորս աջանչելի իմն օրինակաւ համեղիսացաւ մեծն Տիգրան . զի եղև ոչ անուամբ ևեթ թագաւոր՝ այլ յինքեան բերելով զամենայն ձիրս թագաւորի, զբարելաւութիւն 'ի գնացս, զքաջութիւն 'ի պատերազմի, զշինութիւն աշխարհի և զբարեկարգութիւն[1] : Բայց յետ նորա մի միայն զՎահագն գտանեմք քաջութեամբ ևեթ փայլեալ . վերջինն 'ի նոսա Վահէ անուն՝ ապստամբեալ 'ի մեծէն Աղեքսանդրէ մեռանի . և այնուհետև, առէ Յոհաննէս կաթողիկոս, «Սամարտիկոս շփոթութիւն զմիմեամբք եղեալ և այր ընդ առն 'ի կռիւ կռուեալ, մինչև գիւրամուտ զօտարածինն 'ի բնակութիւնս իւրեանց առնէին (այսինքն զպարթևն Վաղարշակ), և անյայտ զիւրեանցն զբոյնս „ : Եւ այսպէս զայս թագաւորութիւն ընդ Հայկազանց՝ երկպառակութեամբ իւրեանց վերջացուցին, այր զարամբ ելեալ առ 'ի տիրել աշխարհիս, որպէս գրէ և Խորենացին ա . 31 :

## Բ . ԺԱՄԱՆԱԿ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ

Ի սկզբան զատանելք քաղաքութեան զինուորական, և աշխարհաշէն բարեկարգութեան միաբանութեան : Ի միջին տկարութիւն 'ի զինուորութեան, և անփոյթութիւն յաշխարհաշէն գործս : Ի վերջին բռնադատելն թուլութիւն 'ի զինուորութեան, ապականութիւն վարուց, կեալ ինքնակամ ըստ հաճոյից, երկպառակութեան ծայրայեղ :

### ՎԱՂԱՐՇԱԿ Ա

Պարտ է զսա համարել նորոգող կառավարութեան, և իբր հիմնադիր ընտիր բարոյականութեան յաշխարհի մե-

[1] Տես վասն այսր 'ի գլուխն Պատմութեան և 'ի գլուխն Բարուց :

րում. որ արժանապէս գովելի գտաւ ըստ ասելոյ Խորենացւոյն Բ. 7. “Արժանի բանից ողորկագունից և յոլովից„. այնու զի փափագող գտաւ բազմատեսակ աշխարհաշէն բարեկարգութեանց, զինուորութեան, դպրութեան և ընտիր բարոյականութեանն, որովք առաւել քան զամենայն թագաւորս մեր գովելի համբաւեցաւ. “Համայն ասել օրէն թագաւորութեան, և որ ինչ շուրջ զթագաւորութեամբ„. Խորենացին Բ. 7: Ջերկուս զայսոսիկ յետին բարեկարգութիւնս միանգամայն ընդ առաջնոցն՝ ոչ ոք 'ի թագաւորաց մերոց 'ի կիր արկ, և ոչ իսկ մեծն Տիգրան, զորս մի առ մի ունիմք յիշել 'ի տեղիս իւրեանց. յայր սակս Խորենացին առանձին գլուխ կարգեալ Բ. 7. դնէ վերնագիր, թէ Վաղարշակ “որպէս և զիարդ կենցաղավարել հրամայեաց„: Եւ զարմանք մի մեծ այն է, զի և ոչ առ մեծի զբաղմանց յօգուտ հասարակաց, և 'ի կարգաւորել զարքունիս իւր և զժողովուրդն՝ արգելաւ երբէք անձամբ մտանելոյ 'ի դժնդակ պատերազմունս, որպէս է տեսանել 'ի պատերազմին՝ որ ընդ հզօրին Մորփիւղիկեայ. յորում մահ առաջի կայր նմա եթէ չէին աճապարեալ և օգնեալ քաջազունք 'ի մերոց հայկազանց և 'ի սենեքերիմեանց: Քանի գովելի և այն կարգադրութիւն երկուց յիշեցուցչաց առ բարուք կառավարութիւն թագաւորին, զորոց գրէ Խորենացին Բ. 8. Եւ հաստատէ “Յիշեցուցանօղս երկուս 'ի ձեռն գրոյ. այլ ոմն զբարի յիշողութիւն առնելով, և այլ ոմն զվրէժխնդրութեանցն. և բարւոյ յիշեցուցանողին հրամանս տայ 'ի բարկութեան արքայի և յանիրաւ հրամանս՝ յիշեցուցանել զիրաւն և զմարդասիրելն„:

## ԱՐՇԱԿ Ա

Որդի Վաղարշակայ “Նախանձաւոր և հետևող հայրենի առաքինութեանցն լեալ բազում կարգս ուղղութեանց գործեաց„. ասէ Խորենացին Բ. 9: Բայց թէ զինչ կարգ, զինչ ուղղութիւնք էին, ոչինչ նշանագրէ:

## ԱՐՏԱՇԷՍ Ա

Որդի Արշակայ. “Էր, ասէ Բ. 11. այր հպարտ և պատերազմասէր„: Յայն սակս միայն ոգւով աշխարհակալութեան եռայր, և արդեամբք զաշխարհակալաց կատարէր զգործ, որ իբրև զայլ ոմն Քսերքսէս եգիպտացի երևեալ

յաշխարհի, « Զամենայն զտիեզերս ընդ իւրև նուաճել 'ի մտի եղեալ », որպէս ասէ Դիոդորոս սիկիլիացի ըզ-Քսերքսեայ[1]. վասն որոյ և մեր Խորենացի զարշաւանս Արտաշէսի կոչէ Տիեզերակալութիւն. որ և 'ի յիշատակ իւրոյ տիեզերակալութեան թողոյր զկարկառս քարանց կուտելոց յամենայն իշխանս ըստ մարդաթուի իւր զօրուն՝ զորոյ զթիւ բազմութեան ոչ կարէր 'ի համար արկանել. « Մինչ զի չափոյ պէտք եղեն (ասէ Եւագարոս առ Խորենացւոյն Բ. 13.) առաւել քան զհամարոյ »: Այլ որ մեծն է յայնպիսի փառս մեծագոր յիշխանականութեան և ճոխութեան զորս յիշեցաք 'ի գլուխն Պատմութեան, չունէր ընաւ անձնապարծութիւն ըստ նորին պատմագրի, այլ յաւէտ յիշել զունայնութիւն աշխարհիս. « Ընդ այս ոչ հպարտացեալ, ասէ, այլ արտասուեաց ասելով. Աւաղ փառացս անցաւորի »: Յորմէ երևի թէ կրթեալ էր 'ի մանկութէ ընդ բարեկիրթ դաստիարակօք ըստ կանոնաց սահմանելոց առ 'ի հաւուն իւրմէ Վաղարշակայ: Բայց յանչափ նահատակութեանց իւրոց և արշաւանաց յայնչափ հեռակայ սահմանս՝ չերևինչ օգուտ աշխարհիս և ազգիս, որպէս է սովորական և այլ ամենայն այսպիսի աշխարհակալաց, որոց անձուկ մեծ է ընդարձակել զծաւալ սահմանաց տէրութեան իւրեանց, բայց ոչինչ փոյթ ունին շինութեան գէթ առաջին փոքրիկ աշխարհին իւրեանց հայրենեաց:

## ՏԻԳՐԱՆ Բ

Որ կոչի միջին Տիգրան. 'ի սմա երևի կրթութիւն պատերազմի, քաջութիւն առն պատերազմականի, որ էր պտուղ կրթութեան՝ յորում հայր նորա ա̃. Արտաշէս եւս կրթել զնա 'ի մանկութէ. « Տայ, ասէ Խորենացին Բ. 11. զՏիգրան որդի իւր ցպատանի ոմն Վարաժ անուն... 'ի նետաձգութիւն կորովութեան ուսուցանել զՏիգրան »: Զյիշատակ քաջութեան գործոց սորա կարես տեսանել 'ի գլուխն Պատմութեան: Բնութեամբ էր կրօնասէր ըստ մոլար պաշտաման ժամանակին. զոր յայտ առնէ Խորենացին յասելն Բ. 14. « Առաջին գործ զմեհեանն շինել կամեցաւ »: Յայտ է և 'ի նեղութէ անտի, զոր ետ ազգին Բագրատունեաց վասն կրօնի: Բայց մեծ պակասութ

[1] Դիոդորոս սիկիլիացի հատոր ա. Թղթահամար 63. ըստ տպագրութեան Վենետիկեան:

Տիգրանայ համարի՝ թերեւհաւատիլ նորա վասն պատանւոյն Միհրդատայ՝ անսալով 'ի հարկէ բանսարկութեան այլոց, թէ չէ իւր քուերորդի․ յորմէ զհետ եկն ապստամբելն Միհրդատայ եւ անկանելն առ հռոմայեցիս եւ զրկելն բոլորովին յիշխանութէ Կեսարիոյ։

## ԱՐՏԱՒԱԶԴ Ա

Որդի Տիգրանայ, զորմէ Խորենացին Բ․ 22․ ասէ․ "Ոչ ինչ գործ արութեան եւ քաջութեան եցոյց․ այլ ուտելեաց եւ ըմպելեաց պարապեալ, մօրից եւ եղեգնապտուղակաց թափառեալ շրջէր եւ առապարաց․ (որով զանկարգութէր նորա զբօսարդութէ կամի ծանուցանել․) զիշավայրիս եւ զխոզս արածելով։ Զիմաստութէ եւ զքաջութէ եւ զառն յիշատակաց անփոյթ արարեալ՝ ծառայ եւ սպասուկ որովայնի լինելով՝ զաղբիւս մեծացուցանէր ",։ Իսկ յորժամ լուաւ զքրթմնջիւն զօրաց իւրոց " վասն առաւել պղերդութեն եւ սաստիկ որկրամոլութեն ",, յայնժամ անաղան իմն զգաստացեալ՝ զօր բազում հանեալ հալածական արար զհռոմայեցիս 'ի Միջագետաց․ Բայց կամելով դադարեցուցանել զխռովութն զօրաց իւրոց՝ անձնամուխ եղեւ մեծաւ յանդգնութբ 'ի պատերազմ, ոչ յառաջատես լեալ եւ խորագէտ մեծի զօրութեն զոր ունէին յայնժամ հռոմայեցիք, եւ ոչ քաջութեն Անտոնիոսի․ յորմէ ձերբակալ լեալ 'ի պատիժ յանդգնութեան իւրոյ մատնեցաւ 'ի ձեռս Կղէոպատրայ, որ ոխացեալն ընդ նմա։

## ԱՐՇԱՄ

Որդի Արտաշիսի եղբօր Տիգրանայ․ 'ի սմա, որպէս եւ յայլս բազումս 'ի թագաւորաց մերոց, զայն թերութի տեսանեմք պատճառ բազմաց վնասուց, զի ունէին մասուցեալ քսութեան Զօրայի գնթունւոյ, առանց քննելոյ չարչարեաց զՇնահոս Բագրատունի։ Նոյնպէս ոչ փոքր ինչ անարգանք էին թագաւորութե իւրում որ ինչ անցք անցին ընդ նա եւ ընդ Հերովդէս արքայ հրէաստանի․ զի իրացն չեղեալ նախատեն՝ զայցաւ նախ առաքել զբազմութիւն գործավարացն, զոր խնդրէր արքայն հրէից․ բայց ապա յաղթէ զօրութե նորա նուաստանայ եւ "Երկրպագէ Հերովդի, ասէ Խորենացին Բ․ 25․ իբրեւ տեառն ամենայնի, տալով զոր խնդրէրն գործաւորս ",։

## ԱԲԳԱՐ

Որդի Արշամայ, առ հեզութեն եւ իմաստութեն իւրոյ կոչեցեալ յայս անուն. «Կոչէր Աւագ այր, ասէ Խորենացին Բ. 26. վասն առաւել հեզութեն եւ իմաստութեն, որում յետոյ եւ տիքն. զայս ոչ կարելով ուղղախօսել Յունաց եւ Ասորւոց՝ կոչեցին Աբգարոս»: Այս Աւագունն անուն զոր եառուն նմա ժողովուրդք իւր՝ բազում ինչ ցուցանէ նորա գործեալ, որով սիրելի արար զինքն ժողովրդեան. այլ յամենայն գրելոցն վասն նորա իմանամք զնա լինել այր կենցաղակիրթ. զի իբրեւ ապստամբել կամէր 'ի հռոմայեցւոց՝ նախ դաշնակից իւր արար զՊարսս, եւ զՈւրհա յայնմ վայրի շինեաց քաղաք զօրանիստ, յորում էր զօրութի հռոմայեցւոց, այսինքն 'ի Միջագետս. եւ ապա ընդ յառնել ձախորդութեն՝ որ էր երկպառակութի Պարսից, գիտաց զինքն սանձել եւ դադարել: Գիտեմք զնա եւ 'ի հաւատոյս լինել եռանդնոտ. նախ 'ի մոլար պաշտամանն՝ եւ ապա 'ի Ճշմարտութեան. զի ոչ զինքն միայն հաւատաց, այլ եւ այլոց թագաւորաց գրով եղեւ քարոզիչ. այսինքն կայսեր, Պարսից եւ ասորեստանեայց. զորմէ տես եւ 'ի գլուխն Կրօնի:

## ՍԱՆԱՏՐՈՒԿ

Քեռորդի Աբգարու, ընդունի ժանտ եւ անգութ սրտիւ, որ իբր յոչինչ համարէր ստել զերդումն իւր. զամենայն զաւակ տանն Աբգարու 'ի սուր մաշեաց բաց յաղջկանց, վասն որոյ եւ արժանապէս գրէ Խորենացին Բ. 36. «Որ ինչ գործք եղեալ Սանատրկոյ, ոչինչ յիշատակաց արժանի համարեցաք, բայց 'ի շինուածոց Մծբին քաղաքի»:

## ԵՐՈՒԱՆԴ Բ

«Յետ մահուանն Սանատրկոյ շփոթի թագաւորութիւն» ասէ Խորենացին Բ. 37. եւ թագաւորէ ոչ որդի թագաւորի՝ այլ Երուանդ անուն որդի կնոջ արշակունւոյ, բայց այր խորագէտ եւ կենցաղագէտ, որ եղեւ գլուխ ամենայն նախարարաց. «Եւ խոնարհութբ եւ առատաձեռնութբ զամենայն ոք յինքն յանգուցանէր»: Բայց զի կոտորեաց զամենայն որդիս Սանատրկոյ բաց 'ի միոյ մանկանէ Արտաշէս կոչեցելոյ, որոյ 'ի հասանել յարբունս՝ գրեթէ ամենայն

Նախարարք զնա կամէին հաստատել յաթոռ թագաւորութեան, և ոչ զԵրուանդ, ոչ օգնեաց յայնժամ Երուանդայ իւրն առատաձեռնութիւն. «Որչափ առատանայր, ասէ Խորենացին Բ. 45. առաւել ևս ատելի լինէր. քանզի գիտէին ամենեքեան եթէ ոչ առ առատութեան տայ, այլ առ երկիւղի վատնէ. և ոչ այնչափ սիրելի զայնոսիկ առնէր՝ որոց շատն տայր, քան թէ թշնամի զայնս՝ որոց ոչն տայր պերճագոյնս»։

## ԱՐՏԱՇԷՍ Բ

Որդի Սանատրկոյ, որ եղև արդարև ծաղիկ և պարծանք ոչ միայն 'ի թագաւորս արշակունեաց, այլ նաև յամենայն կարգս այլոց թագաւորաց մերոց. զի որ ինչ անուն է թագաւորի՝ ոչ զանց արար 'ի գործ արկանել։ Առաջին պարտք են թագաւորի 'ի գիւղութեան պահել զժողովուրդն, այսինքն փութով ընդդէմ խնամ տանել՝ զի գիւղս հայթհայթեսցեն զկարևոր պէտս ընտանեաց և զգեստուց և բնակարանաց։ Երկրորդ՝ 'ի հանգստեան և 'ի խաղաղութեան պահել ոչ միայն յարտաքին թշնամեաց, այլ և 'ի ներքին երկպառակութեց։ Երրորդ՝ ծաղկեցուցանել զամենայն արուեստս և զամենայն դպրութիւնս, որք երկուց առաջնոց են պատճառք։ Զառաջինն և զերրորդն զտանեմք 'ի գիրս յայտնի 'ի գործ եղեալ Արտաշիսի առաւել քան զամենայն թագաւորս մեր. զերկրորդն ևս իմաստասիրեմք ոչ զանց արարեալ՝ զոր Վաղարշակայ էր քաջ սահմանեալ. մանաւանդ զի Արտաշէս ունէր իւր դայեակ զՍմբատ բագրատունի, որ միանգամայն էր քաջ զօրավար, այր հմուտ պատերազմի։ Եւ այսպէս «յետ ամենայն առաքինութեց և գործոց ուղղութեց Արտաշիսի, հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել» ասէ Խորենացին Բ. 56։ Այս ուղղութեան նորա գործք կենցաղօգուտք գոլով զանազան՝ 'ի զանազան գլուխս ունիմք յիշատակել. որպէս և նորին իսկ Քերթողահօրն այսպէս 'ի դէպ վարկուցեալ ասէ Բ. 59. «Քանզի բազում ինչ գործք յաւուրս Արտաշիսի գործեցան, վասն այնորիկ 'ի բազում ճառս կտորեցաք»։

## ԱՐՏԱՒԱԶԴ Բ

Որդի Արտաշիսի, այլ անպիտան հօր անպիտան զաւակ

զայլ արքայանիստ աշխարհս, որպէս գրէ Խորենացին Բ. 72. և յերկրորդումն՝ «Հալածական առնելով մինչև յաշխարհն Հնդկաց». անդ գլ. 73: Բայց 'ի յաղթութէ սորա չեղև օգուտ և ոչ մի. այլ կամելով բարի առնել իւրոց հեռաւոր ազգակցաց և օտար աշխարհի, արար չար իւրոց մօտաւոր համազգեաց և աշխարհիս. զի ինքն սպանեալ դաւով յԱրտաշրէ, համազգիք իւր և աշխարհս մնացին ընդ լծով նորին Արտաշրի զամս 27 մինչև ցթագաւորել Տրդատայ:

## ՏՐԴԱՏ

Որդի մեծին Խոսրովու, կրթեալ 'ի մանկութէ կրթութե Հռոմայեցւոց. իսկ բնական քաջութե և ուժով գերազանցեալ քան զայլ ամենայն թագաւորս մեր, նմանելով Վաղարշակի. եղև սա մի յերևելեաց 'ի կարգս թագաւորաց մերոց. և ևս առաւել երևելի հանդիսացեալ դարձմամբ իւրով 'ի քրիստոնէական հաւատս, և դարձուցանելով զամենայն աշխարհս Հայոց միանգամայն, որով և պատմութի վարուց իւրոց կացուցանէ նորա իմն թուական 'ի պատմութե կրօնի ազգիս, որոյ և ամենայն բարեկարգութի և աշխարհաշինութի զոր արար՝ եղեն առաւել 'ի հոգևորս. բայց ձեռամբ հռոմայեցւոց զօրով թագաւորեալ՝ եղև իբրև առիթ իշխելոյ հռոմայեցւոց 'ի վերայ աշխարհիս:

## ԽՈՍՐՈՎ Բ

Կոչեցեալն Փոքր. զի ըստ ասելոյ Խորենացւոյն Գ. 6. «Փոքր էր յանձնէ և անարի ոսկերօք, ոչ գոլով 'ի նմանութի պատերազմողական հասակի»: Եւ 'ի Գ. 83. «Ոչ համեմատ հասակի ծնողաց իւրոց»: Այլ թողեալ զհասակին՝ փոքր եղև նաև յամենայն բարելաւութիս արշակունեաց սեփական. նմին իրի մահն Տրդատայ՝ փոխանակ արար ամենայն բարեկարգութեց արշակունեաց. բոլորովին փոխեալ զոտս յաշխարհիս մերում եղանակ թագաւորելոյ, նաև բարք թագաւորաց և նախարարաց: Թագաւորք կամէին ամենեին ըստ հաճոյս վարել և 'ի զբօսանս ընկղմել. յորմէ զհետ գայր այս մեծ վնաս, զի նախարարք ոչինչ համարելով զթագաւորն՝ կամ թշնամութի գործէին, և կամ ապստամբէին. որում զհետ գայր ապա և երկրորդ վնաս աշխարհիս ծանրագոյն, զի առ 'ի զերծանել յապստամբաց աստի՝ հարկ լինէր խնդրել նախարարաց և եկեղեցա-

իւրում գրէ առ մերս. Զայս արարաք, "որպէս զի բարե-կարգութիւն հաստատեսցի, մեզ ծառայեսջիք միամտութ՟": Բայց ահա և սկիզբն իշխել տալոյ և կայսերաց 'ի վերայ մեր 'ի պատճառս երկպառակութեան մերոյն: Աշխարհ մեր նաև յայնմ ժամանակի համապատրաստէր տալ հարկս կայսեր, զի ասէ Գ. 6. վասն Անտիոքայ զոր առաքեալ էր զօրագլուխ. "Եւ իւր ժողովեալ զհարկն՝ առ կայսր գնայ": Տայր և ուրոյն հարկ մինչ առ Թագաւորն Պարսից Շապուհ, զոր ապա խափանեաց, գիտելով թէ ձեռն Շապհոյ ընդ թշնամիս է, այսինքն է՝ ընդ Սանատրուկ և ընդ կովկասայինս, որք արշաւեցին 'ի վերայ Խոսրովու. վասն որոյ "Լուծանէ, ասէ Գ. 10 զխաղաղութ՟ ընդ նմա (ընդ Շապհոյ), և զմնանաւոր հարկսն արգելու 'ի նմանէ՝ տալով կայսեր, և ածելով զզօրս Յունաց":

Այսչափ մինչ սակս խռովութեանց՝ որ 'ի ժամանակս Թագաւորելոյ փոքուն Խոսրովու. իսկ սակս գործոց նորա չիք ինչ արժանի 'ի յիշատակել. "Ոչինչ արութիւն քաջութ՟ ցուցեալ որպէս զհայրն, ասէ Խորենացին Գ. 8. այլ և ոչ վասն հատուածելոց կողմանցն (Սանատրկոյ և Բակրոյ) հակառակեցաւ մինչ... անմտեւ իմն ոչ ունելով փարել ակնուակալն մտածութիւն... զքաջութ՟ և զբարի յիշատակաց անփոյթ արարեալ, զբոսանաց՝ հաւուրսութեց և այլոց որսոց պարապեալ": Միայն 'ի բանից Բուզանդայ Գ. 3. իմանամք 'ի խաղաղութ՟ մնացեալ յայնժամ աշխարհիս. զի ասէ. "Խաղաղութիւն և շինութիւն, մարդաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և սնացուծաշատութիւն և շահեկանութիւն, և մեծն աստուածակէր պաշտօն 'ի հաճոյակատարն բարութիւն յամս յաւուրս սորա աճել բազմացաւ". այսինքն է յաւուրս Խոսրովու և որդոյն Արթանեսի [1].

1 Թովմա Արծրունի ժԴ. առաւել եւս գովելով զԽոսրով գրէ. "Խաղաղասէր բարեկարգութիւն հաստատեալ յօրինէ զկարգս աշխարհիս նախարարացն հանգերձ, և ոչինչ փոյթ եղեալ ումեք հոգալ ուսանել արշաւանս և զեկերփանս. բայց ընդ Յունաց Թագաւորին միայն հնազանդութ՟ նուաճեալ զինքեանս ... և զզօրն տուեալ 'ի ձեռս Վաղարշոյ անհասունոյ հօրեղեղբօր պատերազմեաց, թէ արդեօք գետոյ ընկեցի ուսանել ... ըստ կարգաց քրիստոնէութեան վարէր ըստ արժանի պատուիրանաց նոցին, և ըստ խրատու մեծին Գրիգորի յապահովանալ ամենայնիւ ... իսկ զհարկացն տուրս յորդորանօք Կեսարու 'ի ձեռն զօրապետին վճարէր առ կայսր":

## ՏԻՐԱՆ Բ

Յետ մահուան Խոսրովայ առ թագաւորեցուցանել զՏի-
րան զորդի նորա՝ հարկ եղեւ առ կայսրն անկանել, եւ 'ի
ձեռն նորա կացուցանել թագաւոր. բայց այս ձեռնտուութիւն
կայսեր՝ յայլմէ կողմանէ վնաս բերէր աշխարհիս. զի
զգուշէր զպարսիկս իշխել 'ի վերայ Հայոց փոխանակ
կայսեր. վասն որոյ Շապուհ արքայ Պարսից աճապարեաց՝
զՆերսեհ զեղբայր իւր բազում զօրօք առաքեաց 'ի Հայս,
առ 'ի կացուցանել թագաւոր 'ի վերայ աշխարհիս Հայոց,
« Իբրեւ անատամ ինչ որդ զնա վարկուցեալ », ասէ Խորենացին
Գ. 10։ Այլ Արշաւիր Կամսարական՝ առ որ յանձն ա-
ռաքեալ կայր յայնժամ աշխարհս՝ այր հաւատարիմ եւ
զօրաւոր՝ փախստական արար զայնչափ զօրս Պարսից։ Տի-
րան թագաւորեալ, « ունի զաշխարհս մեր խաղաղութեամբ,
հաշտութիւն ընդ Պարսս առնելով եւ ոչ պատերազմելով.
հարկելով Յունաց, այլ եւ միաբանութեամբ ընդ Պարսիկս ». Գ. 11։
Գործս այս խոհեմութիւն կարծեցեալ առ նմա, անմնեկին
նուաստամտութիւն էր գործ. նմին իրի ասէ Խորենացին
Գ. 11. « Կայր 'ի հանդարտութիւն իբրեւ զհայր իւր. ոչինչ
արութիւն քաջութեան եւ ոչ զօրս ցուցեալ. նաեւ ոչ հայրենի
առաքինութեանն հետեւեալ, այլ թուլացեալ յամենայն
բարեպաշտութեան զաղանի, ոչ իշխելով համարձակ պա-
տուել զախտն 'ի մեծէն Վրթանիսէ »։

Այլ առհագին եղեւ չարութիւն նորա յանդգնելն 'ի սպա-
նանել զերկոսին լուսաւորչին՝ զթոռունքն Յուսիկ, եւ զծե-
րունին Դանիէլ, զնորին զանէծն ժառանգելով. որոյ
պատիժ համարի Խորենացին զգնալն նորա 'ի կոչ Շապհոյ.
եւ յիրաւի, զի որ զխոսաց պատճառեաց իբր անկար գոլ 'ի
ձիավարել, եւ հրաժարեցաւ յընկերելոյ Յուլիանոսի մինչեւ
'ի Պարսս, զխմորդ ոչ կարաց հրաժարել 'ի կոչմն Շապհոյ.
այլ կուրացեալ մնաց կորոյս ընդ զխորագիտութիւն, եւ
« խեղդամարեալ զնոց առ նա. քանզի արժանին առնէր
զնա 'ի տեղի հատուցմանն ». Գ. 17։ Յայնժամ Շապուհ
կալեալ զնա կուրացոյց զաչս նորա. զայն « Լոյս աշխար-
հի, ասէ, յորմէ խաւարեցոյց Տիրան զՀայս, խաւարեցաւ
եւ ինքն »։ Բայց առաւել զարմանալ պատիժ ընկալաւ,
յորժամ հրամանաւ որդւոյն իւրոյ Արշակայ ընկալաւ
զմահ իւր հեղձամահ լինելով, որպէս ինքն էր արարեալ
երկուց հօգեւոր հարց իւրոց։

## ԱՐՇԱԿ Բ

Ի մեռանելն Տիրանայ՝ Շապուհ Պարսից արքայ յոյժ առաւել խորագէտ քան զմերս, ինքն կացոյց թագաւոր Հայոց զԱրշակ զորդին Տիրանայ, որպէս զի ինքն տիրեսցէ 'ի վերայ աշխարհիս Հայոց և մի Յոյնք. "Այն ածելով 'ի զօրացն Հայոց, ասէ Խորենացին Գ. 18. զի մի խափան ինչ առաջին արկելոց իւրոց գործոցն լինիցին. այսպիսի իմն պատեհ համարեալ, բարերարութիւն առնելով իւր հաստատել զաշխարհս"։ Եւ այնչափ իշխեաց՝ մինչև "նուաճեաց և զազգ նախարարացն, պատանդս առնելով յամենեցունց"։ Վասն որոյ և համարձակ փոխեալ զքաջն Վահան Ամատունի 'ի սպարապետութէ, փոխանակ նորա զիւր հաւատարիմն կացոյց, որ էր Վաղինակ Սիւնի, նմա յանձն արարեալ զՀայս, որպէս ասէ։ Այնչափ իշխեաց Պարսից 'ի վերայ մեր՝ հարկաւորապէս ունէր գըր- գռել զՅոյնս. յայր սակս յուշ առնէ Վաղենտիանոս կայսր գրելով առ Արշակ. "Պարտ էր քեզ յիշել զչարիսն՝ որ անցին ընդ ձեզ յանաստուածիցն Պարսից, և զերախտիսն որ 'ի մէնջ 'ի վաղնջուց մինչև ցքեզ. և հեռանալ 'ի նոցանէ, և մօտել 'ի մեզ"։

Բայց Արշակ յայնժամ եցոյց զիւր զօռոզութիւն և զծանծաղամտութի, յորժամ ոչ միայն չարար ինչ պատասխանի թղթոյն, այլ և խոռոխանօք արհամարհեաց զդեսպանսն առաքեալս 'ի կայսերէն։ Այլ թէ քանի անմտութե էր գործն՝ 'ի ցասուցն չարժել զՎաղենտիանոս յորժամ 'ի պատանդի կայր առ նմա եղբայր իւր Տրդատ, ծանեաւ զկնի՝ յորժամ նա ինքն Վաղենտիանոս յայնժամ ցասմամբ պահու 'ի վրէժխնդրութե Արշակայ հրամայեաց սպանանել զՏրդատ, իսկ 'ի վերայ Հայոց զօր ծանր առաքել։ Հարկ եղև յայնժամ և Արշակայ նուաստանալ, և միջնորդ առաքել զմեծն Ներսէս. որով "ի հաշտութի մաղթեալ՝ այս լինով (Արշակ) զխափանեալ հարկսն"։ Գ. 21։ Բայց զայս առնելով ընդ կայսերն՝ 'ի միւս կողմանէ զՇապուհ Պարսից արքայ բարկացոյց, որ "յայտնեաց զցասուցն զոր ունէր առ Արշակ, վասն ոչ նմա՝ այլ կայսեր հարկելոյ զայնքան ամս"։

Արդարև Արշակ անդէտ գոլով ամենևին կառավարութե և կենցաղավարութե, ըստ ասելոյ Խորենացւոյն Գ. 19. "Անձնահաճ եղեալ պարծելով հանապազ 'ի զինար-

բուս և յերգս վարձակաց „. երբեմն Յունաց ծառայելով և երբեմն Պարսից, ոչ միոյն հաճոյ լինէր և ոչ միւսում. իսկ աշխարհ մեր երբեմն 'ի Յունաց կայսերէն, և երբեմն 'ի Պարսից Թագաւորէն վրդովեալ աւերէր: Այլ ևս առաւել անմտացաւ Արշակ՝ յորժամ զԱրշակաւան շինելով դքաղաքն անիրաւաց՝ զամենայն նախարարս իւր թշնամացոյց ընդ ինքեան. զայն վրդովումն զոր օտարք ունէին առնել, ինքն արար 'ի մէջ իւրոյ աշխարհին և ընտանեաց. Նորին աղագաւ արժանապէս կոչէ զայն Խորենացին՝ գործ անմտութե. ապա նախարարք իւր առ 'ի վրէժխնդրութի՝ զպարսիկն կոչեցին մուծին 'ի Հայս. “ Որ աւերեալ գերեաց զաշխարհս մեր, մինչև զոսկերս անգամ հարցն բրեաց 'ի գերեզմանաց „. որպէս բողոք բարձեալ գրէ նա ինքն Արշակ առ Վաղէս կայսր. Գ. 29:

Ոչ յայս վերջացաւ վնաս Արշակաւանին, այլ և 'ի կոտորել նախարարաց զբնակիչս նորա յառնէ մինչև ցկին. և յայնմանէ գրգռեցաւ մարտ սաստիկ և բազում արիւնհեղութի 'ի մէջ Թագաւորին և 'ի մէջ իւրոց նախարարաց. զի Արշակ 'ի վրէժխնդրութի ընդդէմ նախարարացն՝ թէ ընդէր կոտորեցին զբնակիչս Արշակաւանին՝ ժողովեալ զզօրս Վրաց ել 'ի պատերազմ ընդդէմ նոցա. նոքա ևս ճակատ տուեալ ըմբոստացան. որով յարեաւ քաղաքական պատերազմ 'ի մէջ համազգեաց. յերկուց կողմանց անկան բազմութի հայկազանց. յայնմ վայրի և զօրք Վաղէսի կայսեր հասին պատերազմել ընդ Արշակայ: Տեսեալ Արշակայ անմիտ կառավարութեն իւրով թշնամի եղեալ զանձն միանգամայն Պարսից, Յունաց և իւրոց նախարարաց, դիմեաց առ մեծն Ներսէս՝ կեղծաւորելով ապաշխարութի. զնա ինքն միջնորդ կալեալ, զՊապ զորդի իւր, և զորդիս ամենայն նախարարաց պատանդս տուեալ, և զհարկն վճարեալ, ջանաց 'ի հաշտութի առնել զկայսրն Վաղէս. բայց հաշտութե ոչ գտաւ տեղի. և մեծն Ներսէս 'ի պատճառս նորա աքսորեցաւ յանապատ և յանջրդի կղզի: Իսկ ինքն Արշակ փոխանակ շահելոյ զսիրտս իւրոց նախարարաց, զհեռանալ մեծին Ներսէսի ժամ դիպող համարեալ իւրումն անմիտ վրէժխնդրութեանն՝ զբազումս կոտորեաց 'ի նախարարաց, ստելով ուխտին զոր արարեալ էր միջնորդութեամբ մեծին Ներսէսի, որպէս պատմէ Խորենացին Գ. 29. “ Ամենայն նախարարքն հաստատեցին ուխտ, զի յայնմ հետէ թագաւորն վարեսցի ուղղութեամբ. և նոքա (նախարարքն) ծառայեսցեն միամտութեամբ „: Այլ ստեաց

ընդդէմ ուխտին՝ տալով քարկոծել զխրատատուն իւր զեպիսկոպոսն զԽադ։

Նմանի յանդգնութիւն էր ցանուցն Արշակայ ընդդէմ Վաղէսի կայսեր՝ թէ ընդէր արգելեալ կալաւ զմեծն Ներսէս, և յամենայնէ աւերել զերկիր նորա, առաքելով զզօրավար իւր զՎասակ, որ ըստ Բուզանդայ Դ. 11. "Հարկանէր աւար առնոյր զկողմանս Գամրաց մինչև 'ի քաղաքն յանկուրացւոց. զվեց ամ զմիմեանց զհետ աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց"։ Զիարդ և իցէ, հազիւ խաղաղացեալ ընդ դրան Յունաց, նեղեալ 'ի զօրացն Պարսից՝ փախեաւ. բայց տեսեալ թէ թափուր և օտարացեալ մնայր յիւրոց նախարարաց, որք "կամաւ երթային առ Շապուհ, ատելեացեալ յիւրեանց արքայէն Արշակայ", և պատուով դառնային 'ի Հայս, որպէս ասէ Խորենացին Գ. 34. Ջանաց որսալ զզօրագլուխն Պարսից, որ էր պահլաւիկ ազգակից Արշակայ. խոստանալով նմա բազում ինչ պարգևել իբրև իւրում ազգակցի, եթէ թողցէ զինքն փախչել յերկիրն Յունաց. բայց ըստ գործոց իւրոց պատասխանի ընկալաւ, եթէ դու ոչ խնայեցեր 'ի կամնարականս՝ որ քան զիս բազմօք առաւել մերձաւոր քո էին, զիա՞րդ յինէն ակնունիցիս խնայութիւն։ Արշակ յանհնարինս մտեալ յակամայս գնաց առ Շապուհ. բայց գնաց իբր դիմելով առ մահ իւր, զի շղթայիւք կապեալ արկաւ յԱնյուշն կոչեցեալ բերդ. անդ յուսահատուր եղեալ անձնասպան եղև։

Իւր այսպէս առ անմիտ ապահովութիւն զոր կարծէր լցուցանել շինելով զԱրշակաւան՝ այնքան կոտորածք եղեն բազմութեան ընակչաց քաղաքին և նախարարաց, և ինքն իսկ զրկեցաւ 'ի կենաց. և ոչ այսչափ միայն՝ այլ և նոյն խստապարանոցութիւն և անմտութիւն իւր պատճառք եղեն մահուան նաև այլոց բազմաց. զի բաց 'ի նախագրելոցս՝ ինքն Արշակ տարապարտուց սպան զԳնել զեղբօրորդի իւր, առանց քննելոյ ամենևին զամբաստանութիւն բանսարկուաց, և ոչ կամելով լսել միջնորդութեան մեծին Ներսէսի, յոր մէ ընկալաւ զանէծս նորա. էառ և զկին Գնելայ զՓառանձեմ, սպան և զՏիրիթ և զՎարդան։ Եւ 'ի վերայ ամենայն չարեացս այսոցիկ՝ հասանէր և համաշխարհական աւերումն 'ի վերայ աշխարհիս Հայոց. զի յետ գնալոյն Արշակայ՝ 'ի միոյ կողմանէ բազմութիւն նախարարաց փախեան յաշխարհն Յունաց, և 'ի միւս կողմանէ երկու ուրացողք յազգէս՝ Մերուժան և Վահան՝ զօրօք Պարսից

մնեալ 'ի Հայս, և Թափաւր գտեալ յամենայն զօրութէ՝ վերջին աւերումն ածեն աշխարհիս. քանզի Շապուհ Պարսից արքայ այնպէս հրամայեալ էր, "զի քանդեալ աւերեսցեն զամրուն ամենայն քաղաքաց" աշխարհիս Հայոց, որպէս ասէ Խորենացին Գ. 35.

Ի գրելոցս աստի յայտնի երևի լինել Արշակայ այր բարուք ժանտ, ագահ և չարանախանձ, մոլոր անխորհուրդ, ծանծաղամիտ, գործովք անզգութ և արիւնռուշտ: Մեծ էր արդարև անզգութիւն զոր արար առ համին կամաւորականաց, յորժամ պատճառս կառուցելով փոխասա, միայն առ յափշտակել զերկիր նոցա զԱրտագերս և զԵրուանդաշատ. այլ մեծագոյն՝ Թողուլ զնոսա անԹաղ առ 'ի կերակուր լինել շանց. իսկ առաւել մեծագոյն՝ սպանանել նաև զայլորդան Թէ ընդէր Թաղեցին զմարմինս տերանց իւրեանց կամաւորականաց, զորմէ պատմէ Խորենացին Գ. 32: Մի միայն բարեկարգութիւն յիշատակեալ վասն Արշակայ է կարգադրութիւն իշխանաց՝ զոր արարեալ գրեն Մեսրոպ, և Բուզանդ. որ Դ. 2. ասէ. "Եւ նորոգեցաւ զուարթացաւ ակերութիւն Թագաւորութեն հայաստան երկրին որպէս և զառաջինն. մեծամեծքն յիւրաքանչիւր գահու, և գործակալքն յիւրաքանչիւր չափու":

ԳԱԳ

Որդի Է. Արշակայ. որ նստաւ միջնորդելով մեծին Ներսէսի առ կայսրն, և օգնութե կայսեր. ընդ նմանէ՝ զինեալով մեծին Ներսէսի Թէ ամենայն պատճառք աւերմանս աշխարհիս Հայոց՝ եղև յանիրաւութէ և յանմարդի բարուց Արշակայ, և զի յայնմանէ հեռաւեալ էր երկպառակութիւնն 'ի մէջ նախարարաց և արքայի, "Դնէր, ասէ Խորենացին Գ. 38. վկայութի 'ի մէջ արքային և նախարարացն, զնալ յամենայն Ճանապարհս արդարութե. զի վկայեսցեն ըստ հաւատոյ քրիստոնէութե և գործքն, և զի արքայի մի հօր իւրում (Արշակայ) նմանել, անիրաւել և զրկել. այլ վարեսցի ուղղութ՝ հայրաբար խնամով առ նախարարսն. և նոքա մի ևս յաւելցեն վատարանջել նշկահելով զնա. այլ ծառայել միամտութե": Եւ արդարև Պապ հեռի եկաց 'ի զրկանաց, որպէս վկայէ նոյն մատենագիր. "Ցոյժ անընչասիրաբար ցուցանէր զիւր անորժակսն. և առատաբար կայր": Վասն որոյ 'ի կամաւորականն Սպանդարատ դարձոյց զՇիրակ և զԱրշարունեաց

գաւառ․ բայց «ոչ իբրև զանիրաւ զադաւհունն հօր իւրոյ Արշակայ, այլ որպէս պարգևս ընդ վաստակոց քաջին Սպանդարատայ՝ որ սպան զՂևկաց արքայ․ այլ և զայլոց նախարարացն դարձոյց զգրկանս»։

Այլ ո՞ հաւատայր, թէ սուրբն Ներսէս իբր ՚ի հաստատութեան արդեանց այսպիսի գեղեցիկ խրատու իւրոյ և բարեկարգութեան տեսանել ունէր զինքն թուանաւորեալ ՚ի նմանէ․ բայց արդարև այնչափ եղև անզգութիւն և բարբարոսութիւն Պապայ, և այնչափ խստապարանոց յամառութիւն յանարժան գործս անառակութեան իւրոյ, մինչև կեղծաւորել զզջումն սուտ, յիւր սեղան հրաւիրել, և անդ ձեռամբ իւրով արբուցանել այնքանոյ տան աստուածարեալ հայրապետի դեղ մահու, և այնպէս լուծանել ՚ի կենաց զայն՝ որ համօրէն աշխարհիս Հայոց եկաց իբրև զայլ ոմն Լուսաւորիչ, և նորին իսկ արքայի մեծ բարերար․ զի առ աղաչանս մեծի հայրապետին զինջեալ կայսեր Յունաց զՊապ թագաւոր․ և դարձեալ զնոյն ինքն զՊապ աղօթիւք իւր յայտնի սքանչելեօք փրկէր ՚ի կորուստենէ մարմնոյն․ քանզի միայն աղօթից սրբոյն Ներսէսի ընծայեն պատմագիրք զյաղթութիւն որ ՚ի Ձիրաւ դաշտի ընդդէմ Շապհոյ Պարսից արքայի, որ ամենայն զօրուք իւրով խմբեալ ճակատէր ընդդէմ Պապայ ՚ի կորուսանել զնա։ Առ այնչափ երախտիս նորա այսպիսի առնելով ապերախտութիւն, ընկալաւ զանէծս սրբոյն․ զի յորժամ լուաւ զխռովումն կայսեր Թէոդոսի ՚ի Թեսաղոնիկէ՝ անմնացաւ զանմտութիւն մեծ, եցոյց զիւր յետին ծանծաղամտութիւն՝ ժամ բարեպատեհ համարեալ նշկահելոյ զզօրս կայսեր և զզօրագլուխ նոցա զՏերենտիանոս․ որով և զարժանի հատուցումն ընկալաւ՝ սակրով վճարեալ ՚ի կենաց։

## ՎԱՐԱԶԴԱՏ

Յաջորդ Պապայ, և չէր արքայորդի, այլ միայն ՚ի տոհմէն Արշակունի․ և թէպէտ էր կորովի մարմնով և քաջ սրտիւ, այլ Բուզանդ Ե․ 34․ կոչէ զնա «Իմաստ թեթև, մանկաբարոյ, տղայահանճար, մանկամիտ»․ զի հասակաւ ևս մանուկ էր․ միայն յանձնապաստան լինելով ՚ի քնական ոյժ մարմնոյն՝ ոչ ումեք անսայր․ «Արքեալ, ասէ Խորենացին Գ․ 40․ ՚ի մանկութեն տիոց, առ այսքիւք և ՚ի թագաւորութեան, ոչ հնազանդէր խրատու վերակացուէ զօրացն Յունաց»։ Մեծ բարեբաղդութիւն էր նորա

ունել զայնպիսի հաւատարիմ և աշխարհաշէն զօրավար՝ զոր օրինակ էր Մուշեղ սպարապետ, որ ըստ գրելոյ Բուզանդայ Ե. 34. «Խրատ բարեաց թագաւորին մանկանն Վարազդատայ մատուցանէր. և հոգայր համապազ վասն թագաւորութեան աշխարհին Հայոց, և զիարդ կամ որպէս շէն լինել մարթասցէ. և համապազ երկս արկանէր բարեխորհուրդն, զի հաստատուն կալ կարասցէ թագաւորութիւնն»: Բայց 'ի գլ. 35. գրէ՝ թէ մեծ նախարարքն Հայոց տեսեալ զի Վարազդատ «մանուկ բանսերթուկ է, զչար 'ի բարոյ որոշել չգիտէ... նա առաւել ունէր զնէր մանկտոյն՝ որ 'ի տիոց հասակակիցք էին նորա, առաւել քան ծերոցն իմաստնոց՝ որք կարող էին օգտակար խրատըն մատուցանել նմա»: Վասն որոյ և նախարարքն Հայոց, ասէ, «սկսան այնուհետև ըստ կամաց իւրեանց վարել զթագաւորն. որպէս և կամէին, բանիւք իւրեանց տանէին և բերէին զնա»: Նմին իրի և Բատ նահապետն Սահառունեաց տոհմին՝ որ դայեակ սնուցիչ էր լեալ Վարազդատայ՝ յինքն կամելով յափշտակել զսպարապետութիւն Հայոց, քսութիւ մատուցեալ յունկն նորա՝ ետ սպանանել զՄուշեղ զայրն քաջ և զերախտաւոր:

Մրդիւնք իւրոյ անմտութեան այն եղև՝ զի անձին օգուտ համարեցաւ ելանել 'ի տէրութէ կայսեր՝ որոյ ձեռնտուութեամբ ունէր զթագաւորութիւնն, և դարձուցանել զաշխարհս Հայոց առ տէրութիւն Պարսից. և զայս ոչ զանխուլ ինչ, այլ յայտնի՝ խնդրելով 'ի Շապհոյ Պարսից արքայէ զդստր նորա 'ի կնութեան իբրև 'ի հաստատութիւն փոխարէնի. Զայն զգացեալ Թէոդոսի կայսեր՝ հրամայեաց իւրոց զօրավարաց ունել և առաքել առ ինքն զՎարազդատ. որ և ինքնակամ գնաց, չյիշելով ամենևին թէ խորհուրդ իւր զոր երկնէրն՝ 'ի վեր ելեալ ինչ իցէ, այլ կարծէր թէ կարող իցէ ստել զամբաստանութիւն անձին և պատրել զկայսրն. զայն ինչ ոչ կարաց զմտաւ ածել, թէ զինչ ունէր առնել՝ յորժամ և ոչ իսկ խօսել թոյլ տային նմա, որպէս և եղև իսկ. զի կայսրն, ասէ Խորենացին, և ոչ իսկ տեսութեան արժանի արարեալ՝ ետ տանել երկաթի կապանօք 'ի Թուղիս կղզի. և անդ եղև վախճան նորա:

## ԱՐՇԱԿ Գ. ՎԱՂԱՐՇԱԿ Բ

Սոքա էին երկու եղբարք որդիք Պապայ, որք կային 'ի Բիւզանդիոն. մեծն Թէոդոս յետ Վարազդատայ զերկո-

ոնն զոսսա միանգամայն թագաւորեցոյց․ որպէս զի երկու գոլով՝ դժուարին լիցի նոցա վտարանջիլ․ Արշակ․ եկն յարեւելակողմն Հայաստան աշխարհիս, իսկ Վաղարշակ յարեւմտեան կողմն․ այլ սա ՚ի նմին ամի մեռաւ ։

Յայսմ ժամանակի Է․ Շապուհ Պարսից արքայ և Արկադէոս որդի մեծին Թէոդոսի արարին հաշտութիւն ընդ միմեանս, բաժանելով ՚ի մէջ իւրեանց զաշխարհս Հայոց․ յորմէ սկսաւ անուանի բաժանումն այն աշխարհիս մերոյ յերկուս, զորմէ գրեցաք ՚ի խօսելն զնուազմանէ աշխարհիս ։ Այս բաժանումն պատճառ եւ Արշակայ թողուլ զբաժինն Պարսից և անցանել ՚ի բաժինն Յունաց․ “Վասն որոյ, ասէ Խորենացին Գ․ 42․ թողեալ Արշակայ զբուն թագաւորութիւն հարց իւրոց զԱյրարատ, և զամենայն մասն բաժնին Պարսից, գնայ տիրել արեւմտեայ կողմանց աշխարհիս մերոյ՝ որ ՚ի մասն բաժնին Յունաց․ ոչ միայն մօրն աղագաւ որ էր ՚ի կայսերական քաղաքէն, այլ լաւ համարեալ նուազ կողմանն տիրել և ծառայել քրիստոնեայ թագաւորի, և ոչ յոլովից իշխել և մտանել ընդ լծով հեթանոսաց”։ Բայց աւերման աշխարհիս այն եղև պատճառ, զի և բազմութիւն նախարարաց որ ՚ի բաժնին Շապհոյ՝ հանդերձ որդւովք գնացին զհետ Արշակայ․ յորմէ Շապուհ զչարեալ գանգատ գրեաց առ Արշակ․ իսկ Արշակ պատասխանի արար՝ թէ “Վասն զի ոչ համբերէին ընդ պարսիկ առաջնորդաւ վարիլ, (վասն այնորիկ) եկին զհետ իմ”։

ԽՈՍՐՈՎ Գ

Օ այս Խոսրով որ էր արշակունի՝ Շապուհ կացոյց թագաւոր իւրոյ բաժնին ասկս նախագրեալ բանին Արշակայ․ և յանժամ արդարև դարձան վերստին նախարարքն՝ տեսեալ զմուրհակ ուխտին Շապհոյ՝ որով ապահովութիւն խոստանայր նոցա ։ Բայց այս յերկուս բաժանումն նախարարաց՝ ունէր լինել յաւուր միում պատճառ կռուոյ, որպէս և եղև իսկ․ որում նաև Արշակ ետ առիթ՝ անխորհրդաբար անսալով քսութեան այլոց առանց քննելոյ․ այսպէս ունկն մատուցանելով բանսարկութեան այլոց՝ եհան ՚ի ձեռաց զՍահակ ասպետ զայրն քաջ․ որ առ ՚ի զերծանիլ՝ փախուցեալ անկաւ առ Խոսրով․ և ՚ի կողմանէ Խոսրովայ եկն յարձակեցաւ ՚ի վերայ զօրացն Արշակայ ։ Յորժամ զգանձն արքունի հանեալ յամրոցէն Անի՝ տանել կամէին առ Արշակ, Սմպատ յինքն գրաւեալ զայն ամե-

Նայն տարաւ առ Խոսրով. և նա զկէս գանձուն յղեաց առ Շապուհ։ Եւ այսպէս մի միայն անուանն Արշակայ տարապարտուց սուտ քսութեն զրկեաց զինքն յախոյեան առնէ և յանչափ գանձուց. իսկ զանչափ ինչս վայելեալ ժառանգեաց օտարազգին պարսիկ։ Բայց ոչ եթէ այս միայն էր վնասն, այլ որպէս ասէ Խորենացին Գ. 45. "Այս եղև սկիզբն պատերազմին Արշակայ և Խոսրովայ"։

Յետ բազում պատգամաւորութեանց՝ երկու գունդք Հայոց՝ ազգայինք ընդ ազգայինս տան պատերազմ սաստիկ յոյժ, կոտորեն և փախստական առնեն զԱրշակ. իսկ Ծոփք և Պարտիկք ոչ պատճառ եղեն և ոչ խափանիչք այսմ պատերազմի ըստ գրելոյ Նորին Խորենացւոյ, այլ միայն կային 'ի զնին կորստեան Հայոց 'ի միմեանց 'ի պատճառս խորհրդականոյս կառավարութեն արքային։ Ի մեռանելն Արշակայ Ծոփք այնուհետև ոչ եւս կացուցին 'ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ իշխանս յազգէն իւրեանց. միայն Գաղաւան գլուխ էր և առաջնորդ յայնժամ 'ի վերայ ամենայն նախարարացն՝ որք էին յայնմ բաժնի. որոց եկեալ 'ի բաժնէն Յունաց՝ եկին 'ի բաժինն Պարսից առ Խոսրով։

Խոսրով տիրեաց նաև բաժնին Յունաց խնդրելով յԱրկադեայ կայսերէն, և խոստանալով տալ նմա հարկս։ Բայց կենցաղագէտ ոք, զոր օրինակ էր Մեսրոպ՝ այր վարժեալ 'ի դրան արքունի, յայտնի տեսանէր զմօտալուտ կործանումն թագաւորութեն. վասն որոյ, որպէս գրէ Խորենացին Գ. 47. "Տեսեալ թէ 'ի վերջ հասեալ է թագաւորութիւն Հայոց, և զիշխանութիւն նոյն իւրոյ հանճարութեն գտեալ Մեսրոպայ... տիրեաց զմիակեցութեան վարս"։ Բայց գլխաւոր պատճառ վերջանալոյ տէրութեն Արշակունեաց՝ էր անխոհեմութի, ոչ գիտելն զշահ օգտի իւրեանց, ոչ զկենցաղագիտութիւն և ոչ զկառավարութիւն պետութեանն։

Ո՛չ ինչ անխոհեմութի էր Խոսրովայ՝ տեսեալ զցասումն Շապհոյ վասն բարեկամանալոյն իւրոյ ընդ Արկադեայ, խրոխտալով և անարգանօք արձակել զպատգամաւորսն Շապհոյ. և նախ քան զմիանալն ընդ Արկադեայ՝ իբր արդէն միաբանեալ այնպէս խրոխտալ. ոչ զմտաւ էած՝ թէ սուղ ինչ յառաջ նախարարք Արշակայ եկեալ 'ի բաժնէն Յունաց եկին 'ի բաժինն Պարսից, և անուն ապստամբութեն թողին առ Արկադէոսի. թուղթ իւր և թուղթ նախարարաց էին առ Արկադեայ, տարեալ անդր և մատ-

նեալ 'ի ձեռն Սամուէլի մամիկոնեայ, զորմէ պատմէ Խորենացին Գ. 48. զիարդ կարէր այնուհետեւ հաւատարմացուցանել առ Արկադէոս զիւր խոստումն, եւ ակնունել օգնութիւն առ 'ի նմանէ ։

Բայց Շապուհ Պարսից արքայ առաւել խորագէտ քան զխոսրով, իսկոյն առաքեաց զորդի իւր զԱրտաշիր 'ի Հայս զօրու ծանու, զի ոչ պակասէին 'ի նախարարս մեր մատնիչք արքայի. որք եւ ծանուցեալ էին Շապհոյ թէ զինչ խորհէր Խոսրով. այս է ասելն Խորենացւոյն Գ. 50. թէ գործեաց Շապուհ զայս "ի հրապուրելոյ գուշակութեն նահապետացս մերոց"։ Արկադէոս հրաժարեցաւ յօգնելոյ Խոսրովու, որով Խոսրով միայն զրկեալ յամենայնէ. եւ չկարէր ոչ զդէմ ունել Շապհոյ՝ կամ Արտաշրի յաջորդի նորա, եւ ոչ փախչել. ակամայ կամօք անկանէր առ Արտաշիր Պարսից արքայ. որոյ ընկեցեալ զնա 'ի թագաւորութենէ՝ զեղբայր նորա զՎռամշապուհ կացոյց թագաւոր, եւ զԽոսրով առաքեաց յԱնյուշն բերդ ։

## ՎՌԱՄՇԱՊՈՒՀ

Եղբայր Խոսրովու, թագաւոր բարեացապաշտ աշխի. զորոյ զերախտիս ունիմք պատմել 'ի գլուխս Դպրութե. սա թէպէտ զերկոսին բաժինս ևս ունէր ընդ ձեռամբ, բայց որպէս ծառայ հարկատու. վասն որոյ ասէ Խորենացին Գ. 51. "Ծառայէր երկոցունց թագաւորացն տալով զհարկս. զմասնին Պարսից՝ (տայր Պարսից արքային) Վռամայ, և զմասինն Յունաց՝ (տայր կայսեր) Արկադեայ"։ Բայց Թէոդոս փոքր ոչ հաստատաց զիւր բաժինն 'ի ձեռս Վռամշապհոյ. այլ իւրովք գործակալօք կալաւ ։

## ՇԱՊՈՒՀ

Յետ մեռանելոյ Վռամշապհոյ՝ և կրկին թագաւորելոյ Խոսրովու զմի ամ եւեթ, Յազկերտ Պարսից թագաւոր զորդին իւր զՇապուհ կացոյց թագաւոր 'ի վերայ Հայոց. որպէս զի նովին դիւրին լիցի դարձուցանել զՀայս 'ի դենս Պարսից, զոր միշտ երկնչէր. "Բանզի, ասէ Խորենացին Գ. 55. մեռեալ Համազասպայ՝ և 'ի սգի մեծի եղեալ Սահակայ՝ ոչ ոք 'ի միաբանութե հաւաքեաց զգունդս Հայոց. վասն որոյ դիւրամուտ եղև յաշխարհս (Հայոց) Շապուհ"։ Բայց յետ չորից ամաց իբրև գնաց Շապուհ 'ի

Տիրան և Մեռուժան, նախարարք Հայոց ժողովեալ՝ հարին և ցրուեցին զզաւրս զօրացն Պարսից որ էին 'ի Հայս. և զի գիտէին թէ պարսիկն զկնի ունէր առնուլ զվրէժ իւր վասն այսր, «Ինքեանք (նախարարքն, ասէ Խորենացին Գ. 56.) ցրուեալք, ահրագրուեալք, անձնապահապետք, յամենայն լերինս և յամուրս շրջէին ... ուստի աղմկաւ և բազում խռովութեամբ մնացեալ աշխարհս մեր յանիշխանութենէ առն երիս՝ աւերեալ ամայանայր. վասն որոյ պակասեալ լինէին հարկք արքունի, և հատեալ ճանապարհք ուղևորաց, և ամենայն բարեկարգութիւն վրդովեալ ապականէր»։

## ԱՐՏԱՇԻՐ

Յայնմհետէ Վռամ Պարսից արքայ գիտացեալ, ասէ Խորենացին Գ. 58. «Եթէ առանց նախարարացն Հայոց ոչ մարթի ունել զաշխարհն» Հայոց 'ի խաղաղութեան, այլ առհասարակ ունէր միտ միշտ ծփեալ 'ի խռովութեան, որով նուազէր և շահ իւր. վասն որոյ, ասէ, «Հաշտութիւն խօսեցեալ 'ի ձեռն Սմբատայ ասպետի ... հաստատեալ զհաշտութիւն, մուրհակ մոռացման յանցանաց կնքէ, ըստ խնդրոյ նոցա թագաւոր կացուցանելով զԱրտաշէս որդի Վռամշապհոյ. և փոխեալ զանունն՝ Արտաշիր կոչելով, զաշխարհս Հայոց 'ի նա հաւատայ առանց պարսիկ վերակացուի. որ տիրեաց ամս վեց»։

Այս Արտաշիր կամ Արտաշէս իւրովք անառակ գործովք անցոյց զկեանս 'ի կարգս վատթար արանց. բայց նախարարք Հայոց սուղ ինչ զկնի գործեցին 'ի վերայ նորա գործ մեծի վատութեան և անհնարին անմտութեան. զի գործ Արտաշրի՝ էր յանցանք և կորուստ անձին, իսկ գործ նախարարաց՝ կորուստ համօրէն տէրութեան. քանզի միահամուռ միաբան առ թագաւորն Պարսից բողոք բարձեալ աղաղակաւ ամբաստանեցին վասն անառակութեան թագաւորին իւրեանց Արտաշրի. զօտար թագաւորն Պարսից իբր ընիկ թագաւոր իւրեանց ճանաչելով, իսկ զիւրեանցն իբր օտար մերժելով: Ի բազմութենէ անտի նախարարացն չգտաւ և ոչ մի՝ որ կենցաղագէտ մտօք քաջ կշռեալ զարարս իւրեանց՝ 'ի վերայ հասանէր չարեացն որք ունէին զհետ գալ: Այլ մի միայն եկեղեցական գտաւ մեծն Սահակ, որ իբրև այր կենցաղակիրթ նախատես լինելով ամենայն չարեաց՝ հակառակ եկաց այսմ, և գունն գործեաց խափանել. բայց նախարարք Հայոց այնչափ կու-

րացեալ էին մտօք յայնժամ ընտրել զշահ և զշինս անձանց, և ոգւով վրէժխնդրութե բորբոքեալ 'ի կատարումն կամաց իւրեանց, զի միաբանեցան և դաշնադիր այր 'ի բաց հանել յաթոռոյ՝ առելով ըստ Խորենացւոյն Գ. 63. "Վասն զի ոչ համակամեցար մեզ չթագաւորել նմա, արդ և մեք կամեցուք և քեզ չքահանայանալ մեզ"[1]։ Եւ որ չար ևս է, առ 'ի դիւրաւ յառաջ տանել զանկումն թագաւորի իւրեանց՝ ինքեանք խնդրեն և թելադրեն լինել թագաւորին Պարսից՝ յանձնմհեալ մի ևս կացուցանել զոք թագաւոր հայկազուն, այլ պարսիկ հրամանատար. "Մանաւանդ զի, ասէ Ղազար 44. լուաւ թագաւորն Արեաց ամենայն աւագանւոքն դրանն 'ի դատախազացն Արտաշէսի, թէ ընդէ՞ զի՞ իսկ պիտոյ է մեզ թագաւոր, այլ իշխան պարսիկ ըստ ժամանակի եկեալ վերակացու լիցի մեր. որ և զիւրաքանչիւր ուրուք 'ի մէնջ ծանուցեալ զհպատակութիւն և զանհպատակութիւն՝ ցուցցէ ձեզ"։

Բանին անորժելի Վռամայ այս խնդիր, այլ քանի ծանր ծաղրամտութեան գործ մերոց նախարարաց. զի զոր թշնամին ունէր առել 'ի շահ իւր և 'ի շինս Հայոց, նոքեանք անեն առ թշնամին առանց նախատեալ լինելոյ ընդ այն՝ թէ զինչ չարիք ունէին անտի ծնանիլ. և զոր ուղղ ինչ յառաջ նոքեանք ոչ կամէին, և ցասուցեալ էին 'ի վերայ Յազկերտի Պարսից թագաւորի թէ ընդէր զՇապուհ զորդին իւր 'ի վերայ Հայոց կացոյց թագաւոր պարսիկ, այժմ նոքեանք խնդրեն առանց մտադրելոյ ամենևին թէ ունին բանիւ քանի համարձակութիւն տային դրան Պարսից բոլորովին իշխելոյ 'ի վերայ արքունեաց Հայոց, նաև 'ի վերայ նոցին իսկ նախարարաց։ Անմտութեամբն իւրեանց եղեն պատճառք ոչ միայն ընկենուլ զԱրտաշիր 'ի թագաւորութենէ, այլ նաև "Զամենայն ինչս ազգի նորա ունել յարքունիս. նոյնպէս (ընկենուլ յաթոռոյ) և զմեծն Սահակ, և զտունն կաթողիկոսական ունել յարքունիս"։

1 Ոմանք կարծելով թէ յորդորեալ նախարարաց առ մեծն Սահակ՝ էր վասն միաբանելոյ առ 'ի ընկենուլ զԱրտաշիր իւրեանց իշխանութենէ, առանց մտանելոյ Պարսից. և առեալ չմիաբանելոյ յայս մեծին Սահակայ՝ յայնժամ գնացին մատնեցին 'ի ձեռս Պարսից. նմին իրի ատելութեան յայսմ զրուցին։ Այլ այս է չիմանալ զպատմութիւն. զի Խորենացին Գ. 63. յայտնի գրէ, թէ նախարարքն կոչեցին զՍահակ միաբանել 'ի չարախօսել առաջի Պարսից արքային, առ 'ի ընկենուլ զԱրտաշիր թագաւոր, և թէ Սահակ ասէր առ նախարարսն. "Ջ խնդրեմ լինել այդ, փոխանակել զիմ ախտացեալ ոչխար ընդ առողջ գազանի (որ է պարսիկն), որոյ առողջութիւն է մեզ պատուհաս"։

Եւ այսպէս իսկ թէ ձեռօք իւրեանց զայնչափ ինչս քաղաքական և եկեղեցական ստացուածոց եւտուն Պարսից նախարարքն մեր վատախորհուրդք:

Ի պատմութեան համօրէն ազգիս՝ չիք այլ անմիտ կառավարութիւն առաւել քան զոր գործեցին միահամուռ նախարարքս իմաստուն տեսուչք կարծեցեալքն ընդդէմ շահու անձանց, և զրկեցան յայնպիսւոյ հայրապետէ՝ որ սրբութեամբ և իմաստութեան տնտեսութեամբ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ լուսաւոր էր ազգիս, սիւն հաստատութեան հայաստանեայցս եկեղեցւոյ, և ամուր պատնէշ երերեալ պետութեան աշխարհիս: Վռամ Պարսից թագաւոր մտադիւր կատարեաց զհայցուած նախարարացն, կացուցանելով արդարեւ զմարզպան պարսիկ Վեհմիհրշապուհ անուն 'ի վերայ աշխարհիս Հայոց: Իսկ Արտաշիր Հայոց թագաւորի ոչ մնայր ինչ աւելի բայց եթէ զանգատել զիւրոց նախարարաց, զոր Ղազար բերէ 'ի թղթ. 42. "Որպէս սովոր են 'ի բնէ թշնամանել զտեարս իւրեանց՝ ըստ նմին օրինակի և այժմ կամին կատարել զչար կամաց իւրեանց զխնդիրս. քանզի միշտ իշխանափոխք լեալ են և տիրատեացք":

Այսպէս առհա վերջացաւ թագաւորութիւն Արշակունեաց. ընդ որ զարմանալիս արդարեւ՝ տեսանել թէ զիարդ ազգ մի ողջոյն միանգամայն՝ այնչափ զօրաւոր նախարարօք տակաւին յոտին կացեալ, և այնչափ բարեբեր գաւառք 'ի ձեռս իւրեանց՝ ինքնակամ խոնարհին աղաչեն զթագաւորն Պարսից՝ զի նա տիրեսցէ 'ի վերայ Հայոց աշխարհիս. և այնպէս զողջոյն թագաւորութիւն հայկական մատնեն արկանեն ընդ ոտիւք Պարսից: Զայս եթէ նորին իսկ Վռամայ էր առաջարկեալ նախարարաց մերոց՝ անմտութիւն էր նոցա յանձն առնուլ. որպիսի՞ անզգամութիւն չիցէ ապա ինքնին նախարարացն խնդրել զայն: Լաւ էր թէ ինքեանք միաբան խորհրդով բարձեալ զթագաւորն՝ հասարակապետութեան օրինօք վարէին զաշխարհս, որպէս և առ այլ ազգս տեսանի այս, քան վատախորհուրդ միաբանութեամբ մատնել զանձինս թագաւորն և զաշխարհ՝ օտար թշնամւոյ:

Ահա այս ընթացք էր յոլովից 'ի թագաւորացն Արշակունեաց՝ և այս կառավարութիւն նոցա՝ զորոց մինչև ցայժմ գրեցաք. որոց վարք 'ի ժամանակս քրիստոնէութեան յայտ առնեն թէ միայն արտաքուստ ընկալան զքրիստոնէութիւն, այլ գործովք ոչ կամեցան թողուլ զհեթանոսականացն՝ զորս 'ի ժամանակս կռապաշտութեան 'ի կիր առնուին. "Յոր-

մէ հեռէ առաւելին նոքա, ասէ Բուզանդ Գ. 13. զմանուկ քրիստոնէութեան, լոկ միայն իբրև զկրօնս իմն մարդկան յանձինս իւրեանց և ոչ ջերմեռանդն ինչ հաւատովք ընկալեալ։ Այլ քանզի օրէնք բարոյականութեան պարտին համաձայնիլ ընդ հաւատոյ, ուստի որ այլ են բարք և այլ հաւատք, և ուր յիշխողաց ոմանք զնոյն ըստ հաւատոյ՝ և ոմանք ոչ, այս այլևայլութիւն բազում երկպառակութեանս ծնանէր, և ոչ սակաւին անող խռովութիւնք։

Վասն որոյ և զկործանումն Արշակունեաց ՚ի չարուէ բարուց նոցա յառաջ եկեալ գրեն պատմագիրք. յորս Բուզանդ Գ. 12. զՏիրանայ խօսելով ասէ. „Իսկ թագաւորն Տիրան և այլ մեծամեծ աւագանին նախարարացն՝ կամ աշխարհն ամենայն՝ ոչինչ ըստ Աստուծոյ կամացն վարս յանձին առեալ իմաստուն ինչ գնացեալ լինէին. քան զամենայն մանաւանդ թագաւորն կամ իշխանքն սպանութիւն՝ անխտիր ՚ի հեղուլ զարիւն արդար ՚ի տարապարտուց՝ գործէին, և այլ մեղս բազումս. և ոչ հայէին ՚ի հրամանս վերնոյն„։ Թուէ առաս Գ. 13. և զայլ չարագործութիւնս նոցա։ Ըստ այսմ և Ղազար Թղթ. 22. գրէ. „Որոց զանեալք անարժան ազգն Արշակունեաց յաղագս անարժան գործոց իւրեանց, ըստ բանին առնն Աստուծոյ Ներսէսի, զոտս եղեալ ընկեցիկք յերեսաց Աստուծոյ. մատնեցան ՚ի բաժանումն թագաւորին Պարսից և Յունաց„։ Իսկ բանն որքոյն Ներսէսի էր անէծք՝ մանաւանդ թէ գուշակութիւն բարձմանն նոցա, վասն խարդաւանական սպանութեան զոր արար Պապ թագաւոր. առ որ խօսելով ասաց սուրբն. „Փոխանակ զի յանձնեցեր ՚ի չարիս մեծամեծս առաւել քան զհայրն քո Տիրան, և քան զայլ նմանիսն քո՝ որք եղեն չարք և ամպարիշտք յազգէն Արշակունեաց, և ոչ նմանեալ նախանձեցար լաւացն... կործանումն որ բերանով մարգարէին ասացաւ՝ հասցէ ի վերայ ձեր, ընկել ազգիդ Արշակունեաց զյետին բաժակն. արբջիք արբեցջիք և կործանեսջիք, և այլ մի հաստատեսջիք„։

Առաջին և գլխաւոր մոլութիւն նոցա էր զհետ լինել մարմնական ախտից, յորմէ թէ քանի չարիք յառաջ գան և անձին և աշխարհի տէրութեան, իմանայ ամենայն ոք խոհական. զի պատահեալ ՚ի զբօսանս հաճոյից իւրեանց՝ ոչ լինէին մտադիր ՚ի գործառնութիւն կառավարութեան որպէս պարտն էր։ Իսկ ուր գլուխ կառավարութեան այսպէս՝ առա հարկաւ բազմանան անդ հրամանատարք և

քսուք և բանսարկուք առ 'ի կորզել 'ի ձեռաց մեծամեծաց զիշխողութիւն և զբարձ պատուոյ. զչարել, խանգարել, զրժդ-մնել ընդ երկարս՝ հաստատակաց օրէնք լինելն յանխժամ 'ի մէջ մեծամեծաց, որք բազում գործս հնարակարս և տաղա-նութիւս գործել տան թագաւորին:

Նոյնպէս եղև արդարև յաւուրս Արշակունեաց 'ի ժամանակս քրիստոնէութե. յայնմանէ դհեա գայր քրթմընջիւն 'ի ժողովուրդն և 'ի նախարարս՝ և ոգի վրէժխնդրութե. իսկ վրիժառուք յորժամ ոչ կարեն յաշխարհին իւրեանց առնուլ զվրէժ, դիմեն յօտար թագաւորս՝ թիկունս փնտռս առնելով 'ի գործ դնել զվրէժ իւրեանց. յորմէ դհեա գայ յայանի ապստամբութի և աւերումն աշխարհի: Եւ եթէ անընդհատ յաճախեն աղէտքս այսոքիկ, ոչ կարէ կալ թագաւորութիւն այն. այսպէս եղև յամենայն խնքնակործան թագաւորութիւս, զորոց զկործանումն ոչ ոք ակնունէր տեսանել, որպէս ուսուցանէ ընդհանուր պատմութի ամենայն ազգաց: Զայս և 'ի պետութեան Արշակունեացս է տեսանել. զի որ թուէրն անդրդուելի կալ՝ 'ի զինուորական ահեղ զօրութէն կշռեալ, դրդուեցաւ և անկաւ: Զի յորմէ հետէ անձնատուր եղեն նոքա անարժան ախտից, և առ ոտն հարեալ զբանս խրատուտուողին՝ խոստովանողացուէ յամառեալ մնացեալ 'ի նոյն չարիս՝ լաւ համարեալ ունկնդիր լինել հարճից իւրեանց քան ամբիծ քրիստոնական օրինաց հպատակել, նմին իրի և պետութի նոցա երթայր և վատթարանայր. քանզի 'ի պատճառս ախտիցն այնոցիկ պակասեալ էր 'ի նոցանէ և հանճար և իմաստութի:

Օ այս ամենայն աղէտս կրից դառնութե՝ Խորենացին Բ. 92. իբրև 'ի հիմանց 'ի վեր հանելով յայտ առնէ 'ի խօսելն զՏրդատայ. նախ պատմելով թէ Տրդատ զիարդ զուն գործէր հաւանեցուցանել զամենեսեան "լինել որդարև Քրիստոսի, որպէս զի վկայեսցեն հաւատոցն ամենեցուն և գործքն": Ապա զազգին ընդհանուր մոլութիւս 'ի մէջ բերեալ՝ ասէ. "Այլ զխստասրտութիւն կամիմ ասել, թէ և զամբարհաւաճութի ազգիս մերոյ յիսկըզբանց և այսր. որպէս անհամբոյր (եղեն) բարուց և ճըշմարտութեան անհարազատ: Կամ թէ բնութի ունելով զբարձրայօնութի և զկամակորութի, ընդդիմանան կամաց թագաւորին յաղագս կրօնիցն քրիստոնականաց, դհեա երթալով կամաց կանանց և հարճից": Ահա այս օրինակ կամակորութե և յանդգնութե էր՝ որ հանապազորդեալ

եանց 'ի նոցանէ 'ի յետագայ արշակունիս, միայն փոխեալ 'ի նախարարաց առ Թագաւորս, որք եղեն սանձարձակք, խստապարանոցք, ամենեքին անմաման 'ի կենցաղակրթութէ. ըստ Թագաւորաց և բարուքն 'ի նախարարաց նմանեցան. յոյր սակս կոչէ զնոսա յողբս իւր Խորենացին ողխորհնաներս։

Յայտնի խստապարանոցութէ Թագաւորացն արշակունեաց և նախարարաց, և յանլուր և յանհամբոյր բարուց նոցա ընդդէմ սուրբ և աշխարհաշէն հայրապետաց՝ յայտնի երևի թէ արքայորդիք նոցա չհրահանգեցան 'ի մանկութե ընդ կրթութ. դաստիարակաց 'ի սանձահարել զկիրս իւրեանց, և զգուշանալ 'ի փորձութե, որ կարևոր ձիրք են 'ի պետս աշխարհի՝ որոց առաջի կայ առաջնորդ ժողովրդեան կարգել զանձինս. այլ 'ի ձեռս ընտանեաց մնացեալք 'ի մանկութէ՝ աներկիւղ 'ի չարիս անկղխտանայինս, յոր վարէ հասակն անտիական: Թերութի՛ անհանդուրժելի և ախտ մահացու յորդիս մեծամեծացն՝ յաճախեալ և յղելի դարս յազգի մերում. զի ընդ աճել հասակին, աճեն և ախտքն ընդ նոսին. նմին իրի և թշուառութիք և աղէտք մեծամեծք պատրաստ կան վասն նոցա, և ժողովրդեանն իսկ ընդ նոսա և համօրէն աշխարհին՝ որոց տիրեն: Յայտ է թէ չունէին Թագաւորք մեր և ոչ զխորատասութն զայնոսիկ զերկոսին համապազօրեայ յիշեցուցիչսն բարւոյ և չարի, զոր Վաղարշակ՝ Թէպէտ և կռապաշտ, սահմանեալ էր յիւրում Թագաւորութե: Իսկ սոքա Թէպէտ հաւատով քրիստոնեայ՝ այլ մնեալք ըստ հաճոյից, զոր ինչ կամէին՝ զայն գործէին 'ի տհաս հասակէ անտի. այսպէս եղեն փոքրն Խոսրով, Տիրան, Արշակ, Պապ և Արտաշիր, որոց անսանձ բարք և Թիւր կառավարութի եղեն պատճառք զհայաստան բոլորովին 'ի ներքոյ արկանել ծառայութե երկուց օտար տէրութեց, Յունաց՝ և մանաւանդ Պարսից. յորմէ զհետ եկին այնքան համաշխարհական աւերմունք և աղէտք ոչ միայն քաղաքականք, այլ և որ առաւել ցաւալին է՝ նաև եկեղեցականք. զորմէ ունիս տեսանել 'ի գլուխն կրօնի ։

Գիտելիք վասն ժամանակի Արշակունեաց ։

Ա. Սակս տևողութե Թագաւորութե Արշակունեաց տարաձայնին պատմագիրք. Թովմա Արծրունին նուազ դնէ՝

ատեղով Ճ. 15. «Յամի երկրորդի Յազկերտի որդւոյ Վռամայ երկրորդի՝ բարձաւ թագաւորութիւն 'ի տանէն Հայոց, որ տևեաց ամս չորեքհարիւր հնգետասան... իսկ զանդի թագաւորութիւն Հայոց հրամանաւ Յազկերտի ունէր Մշկան զօրավար Պարսից»: Առաւել դնէ Ասողիկ Բ. 1. գրելով. «Ասոանօր դադարէ թագաւորութիւն յազգէն Արշակունեաց, սկսեալ յերկոտասաներորդ ամի երկրորդ Եւերգետեայ Պտղոմէոսի թագաւորի եգիպտացւոց. և դադարեալ 'ի քսաներորդ չորրորդ ամի Թէոդոսի թագաւորի Յունաց. կալեալ ընդ ամենայն թագաւորութիւն ազգին Հայոց Արշակունեաց ամս հինգ հարիւր յիսուն և հինգ»: Առաւելու քան զայս Կիրակոսին՝ յաւելու. «Յայսմ հետէ բարձաւ թագաւորութիւն Արշակունեաց յետ Արտաշրի, որ թագաւորեաց ամս վեց. և տևեաց թագաւորութիւն Արշակունեաց 'ի Հայս՝ ամս հինգ հարիւր վաթսուն և ութ»:

Բ. Սերունդ այսր ցեղի տևեաց մինչև ցԱրտաշր թագաւոր. զկնի այնր՝ 'ի կողմանէ կնոջ եղեն միայն արշակունի. զի Անանուն որդի Արտաշրու մեռաւ անորդի. քանզի ոչ յիշատակի ոք նորա որդի. իսկ Սահակ որ յետ Արտաշրու թագաւորեաց՝ քեռորդի էր Արտաշրու. «Անանուն որդի նորա (այսինքն Արտաշրու, ասէ Խորենացին Գ. 34.) կարգեաց թագ թագաւորեալ յեղեանց, և քեռորդի նորա Սահակ 'ի Հայս»: Իսկ սկսեալ 'ի Գ. Խոսրովայ՝ և ոչ իսկ յարքայական տոհմէ էին թագաւորողքն:

Գ. Բայց 'ի թագաւորական ցեղէ նաև այլ ցեղք զատանին յԱրշակունեաց զարմէն, որպէս յայտ առնէ այս բան Խորենացւոյն Գ. 1. «Որ յետ նորա (Վաղարշակայ) եղեն թագաւորք աշխարհիս մերոյ 'ի նորին սերմանէ, որդի 'ի հօրէ առնլով զտէրութիւն՝ անուանեցան Արշակունիք յԱրշակայ, աւելորդքն յազգ. և 'ի բազմութիւն աճեցեալք, և միակն ըստ կարգի հետևանայ 'ի թագաւորութիւն»: Որով կամի ասել՝ թէ բաց 'ի ցեղէն որ ունէր զտէրութիւն կամ զթագաւորութիւն, աւելի ցեղ գոյր արշակունի. այն աւելի ցեղն յազգ [1] նախարարութեան աճեցեալ բազմացան. միայն մի ազգն կամ ցեղն արշակունեաց էր որք հետզհետէ կարգաւ թագաւորեցին: Ի սոցա համարի պարտ է դնել և զՌոփ-

1 Չի յայտնի խօսս ազգ, որպէս և փոխ անուամբ մատենագիրք մեր իմանան զտոհմ և զտուն նախարարական.

սեւան ցեղս, որք էին հարազատ որդիք չորք վերջնոյն Տիգրանայ, ուստի և հարազատ արշակունիք. բայց Տիգրան 'ի թողուլն զՌոփի զմայր նոցա, նաև զչորեսին որդիսն, առէ Խորենացին Բ. 64. «կարգէ ըստ այլ նախարարութեանց, զի մի անուանեսցին Արշակունիք»։ Ի սոցա սակի գուցէ ընել կամի Խորենացին և զԿամսարականս, և արտաքոյ հայաստանեայց գուցէ և զՊահլաւեանս։

Դ. Արշակունեաց բարեպաշտութիւն յաւուրս կռապաշտութեան գրեթէ վերջացաւ յԱրտաշէս Բ. իսկ որդի նորա Արտաւազդ և յաջորդ նորա Տիրան և այլք՝ եղեն անօրէնք. յետ որոյ սերունդ Ալանաց՝ ուստի էր Սաթինիկ մայր Արտաւազդայ, խառնեալ 'ի սերունդ սոցա՝ թուի թէ այլափոխեալ իցէ բնութիւն նոցա հայկական և արշակունեան. զի բաց 'ի մեծէն Խոսրովայ և Տրդատայ՝ գրեթէ զամենեսին 'ի վատութեան տեսանեմք։

Ե. Արշակունիք անկեալք 'ի մէջ Յունաց և Պարսից՝ 'ի հնազանդել միոյն զայրացուցանէին զմիւսն. յանցանելն առ Յոյնս՝ Պարսիկք խռովէին և թշնամանային. իսկ յանցանելն առ Պարսս՝ Յոյնք թշնամանային։ Եթէ էր առ նոսա օրէնք կենցաղավարութեան՝ պարտ էր միաբան կալ և ինքնիշխան վարել զպետութիւն, կամ միում ևեթ 'ի սոցանէ ծառայել անփոփոխ. այլ զի պակասէր 'ի նոսա, նմին իրի և այնչափ յաճախեաց առ նոսա այս փոփոխումն, մինչև օտար տէրութիւնքն այնպիսիք առ բառնալոյ զպատճառս կռուոյ 'ի մէջ իւրեանց՝ յերկուս մասունս բաժանեցին զհայաստան։

Յոյնք վաղու ևս բարձին զհայկական թագաւորութիւնն յիւրեանց մասին. իսկ Պարսիկք յերկարեալ՝ յետոյ ուրեմն 'ի խնդրոյ նախարարաց մերոց բարձին զթագաւորն. այլ իշխողութիւն Պարսից 'ի վերայ մերոց թագաւորաց էր 'ի վաղուց անտի, մինչև զԱրշամ հրամանաւ Արշէզի Պարսից թագաւորի կացուցանել զօրացն Հայոց թագաւոր 'ի վերայ իւրեանց, որպէս գրէ Խոր. Բ. 24. Նոյնպէս և առ բազումս ձգէր իշխողութիւն նոցա, մինչև 'ի յետին ժամանակս հարկ էր թագաւորին մերոյ հրամանաւ Պարսից կացուցանել զսպարապետ Հայոց, որպէս յայտ առնէ Խորենացին Գ. 51։

Զ. Արշակունեաց գերեզմանն էր յԱնին Դարանաղեաց։ Բուզանդ. Գ. 11. գրէ վասն փոքուն Խոսրովու. «Տարան (զմարմին նորա) առ իւր նախնիսն յԱնի. յեկեղեցագաւառն Դարանաղեաց»։ Նոյնպէս և Խորենացին Գ. 10.

գրէ վասն նորա «Թաղեցին յԱնի առ Հարս իւր»[1]: Վասն որոյ եւս անարգութիւն իմն յիշէ Գ. 22. ոչ թաղելն անդ Տիրանայ արքայի. «Ի նմին աւանի Կուաշ թաղեցաւ, ոչ արժանի եղեալ Հարցն գերեզմանաց»: Իսկ վասն հանելոյ անտի Պարսից զոսկերսն՝ տես 'ի Խորենացին Գ. 27:

## Գ. ԺԱՄԱՆԱԿ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

Ի սկզբան անուանեալք իմաստունք կենցաղականութեամբ հանդերձ քաղցրութեամբ: Ի մէջն անհոգութիւն հասարակաց, երկպառակելք 'ի միմեանց, անձինք յամե- նեսին՝ Թագաւոր անուանելոյ: Ի վերջն անհնազանդ ամբարտաւանութիւն յայտնապէս և 'ի ներքին Թշնամեաց:

Հայկազունք, որպէս և Ռուբինեանք, արութեամբ քաջութեան տիրապետեցին. իսկ Բագրատունիք աշխուական բարուք, հանճարով և իմաստութեամբ, որ փայլեալ երևեցաւ յանձին Աշոտոյ՝ զորմէ գրեցաք:

### ԱՇՈՏ Ա

Սա է Թոռն Մսակերին Աշոտոյ և որդի սպարապետին Սմբատայ, որ Աբլաբասն կոչեցաւ ըստ Ասողկայ: Ունէր զամենայն ձիրս կենցաղավարութեան, որ քան զամենայն ինչ առաւել հարկաւոր է ղեկավարող անձին. քանզի մինչ դեռ տակաւին միայն «պայազատէր զսպարապետութիւն Հայոց՝ գրեթէ ամենեցուն քան զնոսա նախնագունիցն վե- հագոյն ճանաչիւր» ասէ Յովհաննէս կաթողիկոս. և որ մեծն է, մինչ փոյթ տանէր կրթելոյ զանձն յայնպիսին՝ որ պիտանի են ընկերութեան և առաջնորդութեան. զգլխաւոր շահեալս 'ի կեր առնոյր՝ ոչ 'ի շահիլ անդորրէն և յաւելուլ զստացուածս, որ սովորական ախտ է բազմաց իշխանաց, այլ 'ի շահել զսէրս ժողովրդեանն. և այսու առատաձեռնութեամբ առաւելապէս ամբարձաւ 'ի նախագահութիւն, նախ կոչելով իշխանաց իշխան, և ապա Թագաւոր: Զայս ամենայն յայտ առնէ պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի՝ որ գրէ վասն Աշոտոյ. «Մինչ 'ի հրահանգս բարուոյ կրթութեան զինքն վարժէր, և բարի աղգութեամբ իւրոյ ոգւոյն տայր. ընդ ամենեսեան սէր ունէր, և ոչ 'ի հակառակութիւն

1 Թէպէտ և զՏրդատ հայր նորա այլուր Թաղեցին:

լինչ և 'ի կռիւս ընդ Թշնամիսն մաքառեալ, քան թէ բարեզգեաց բանիւք և բարի օձանաւ զնոսա ածեալ յուղղութիւն և 'ի կամս իւր. իսկ զպաճարանս մտաւի շահուց ձնաս իւր վարկեալ, և առատաձեռն առ ամենեսեան զըտեալ, յինքն զգաղմանց միտս յանդուցանէր սիրալիր սըրտիւ. որպէս զի յայսմ սակի ամենեքեան իսկ նմա հաճեալ հաւանեալ էին,,: Եւ 'ի լինելն իշխանն իշխանաց՝ կոչէ զնա "Մեծիմաստ և քաղցրաբան, և առ կերակուրս խորախճանաց զգաստ, ոչ խանդագեալ նորա ընդ լաւագոյնսն, և ոչ արհամարհեալ զնուաստագոյնսն, այլ հասարակաց 'ի վերայ տարածէր զզգեստ խնամոց իւրոց. և ըմպակօք իմն կշռէր նախ զիւրն՝ և ապա զամենեցուն կենցաղս. միանգամայն իսկ ասել՝ եթէ որ ինչ մարդկութեան է պիտանի՝ ոչինչ կասեցուցանէր,,:

Զայս ամենայն բարելաւութիւնս կառավարութեան տեսեալ իշխանաց և նախարարաց աշխարհիս՝ խնդրեանք եղեն խնդրովք յամիրապետէն թագաւոր զնա կացուցանել. որ և ըստ խնդրոյ նոցա առաքեաց Թագ արքայական[1] յամին 885: Աշոտ ընդ առնուլ զթագն՝ անգէն սկսաւ առաւելուլ ոչ զամբարհաւաճութիւն, այլ զշինութիւն և զբարեկարգութիւն յաշխարհիս Հայոց. "Գրեթէ, ասէ Ցոհաննէս կաթող. հարստագոյն և խոհեմագոյն քան զամենայն թագաւորութիւնս զանձնիւր. և այսպիսի նորոգատուր թագաւորութեան բարձրացուցանէր զազգս թորգոմեան,,:

Եւ այսպէս 'ի պատճառս անսասանութեան վարուց, և ըմբոստ և խորին առաջնորդութեան վերջին թագաւորացն Արշակունեաց՝ խնդրեցին նախարարք կորուսանել զթագաւորութիւն Հայոց. իսկ 'ի պատճառս բարելաւութեան վարուց և քաղցր կառավարութեան Աշոտոյ բագրատունւոյ՝ նոքին իսկ նախարարքն խնդրեցին վերստին կանգնել զնոյն: Վասն որոյ ասէ Ասողիկ Գ. 1. "Զի էր այր քաղցր և հեզ և մնարատ և անբամբաս կեանս կեցեալ, և ոչ անօրինեալ արտաքոյ օրինաց բնութեանն,,: Իսկ Թոմա արծրունի Դ. 1. կոչէ "Առաւելեալն իմաստութեամբ Աշոտ,,: Եւ 'ի 2. ասէ. "Որ բարձրագոյնն և հանճարեղագոյնն

1 Սամուէլ 'ի յմ֊. 885. գնելով զթագաւորելն Աշոտոյ առն հինգ, ասէ. "'Ի բառնալոյ Արշակունեաց թագաւորութեանն մինչև ցթագաւորութիւն Բագրատունեաց լինին ամք չորեք հարիւր երեսուն և չորս,,: Իսկ Վարդան գրէ. "'Ի ձեռն Ցիսէի այրն ամենեն ամիրապետին, և նորա զուարթ սրտիւ առաքէ թագս և հանդերձս և երիվարս. զնոյն և կայսրն Վասիլ առաքէ. և օրհնէ զթագն տէր Գէորգ յՃԼԶ. թուին,,. 887.

էր քան զնոսա Հայաստանեայս, և զընդհանուր կացեալս 'ի ներքոյ երկնից ,,։

## ՍՄԲԱՏ Ա

Որդի սր. Աշոտոյ, համանման յամենայնի հօրն առաքինուէ։ Պատմագիրք կոչեն զնա հեզահամբոյր, խաղաղասէր, անչափ կատարեալ՝ մինչև մեծ ներբողեանպեան Աֆշնի "ի տեսանելն զարքայ՝ խոստովանէր ոչ զոք թերևս համեմատ նմա տեսանել,,, ասէ Յոհաննէս կաթողիկոս։ Ոչ պակասեալ նաև 'ի քաջագործուէ, որով զբազում երկիրս օտարացեալս անդրէն գրաւեաց ընդ տէրութ՟ Հայոց. տես 'ի գլուխն Պատմուէ։ Բայց այս թագաւոր այսպէս բարեմտանութ՟ ճոխացեալ՝ ոչ գիտեմ յինչ պատճառս չեղև սիրելի իւրոցն, և ոչ բարեյաջող՝ նման իւրում նախորդին Աշոտոյ. այլ առ իւրով կառավարութ՟ անպակաս էին 'ի նմանէ դժբաղդութիւնք և վիշտք։ Մի՝ առ նախանձու դաւաճանուէ, մատնուէ և երկպառակուէ իւրոց նախարարաց և իւրոց ներքին թշնամեաց. զի նախ քան զթագաւորելն իւր՝ հօրեղբայր նորա Աբաս սպարապետ խանդացեալ ընդ նմա՝ ինքն կամէր թագաւորել. յոյր սակս եղեն կռիւք և պատերազմունք. յետ սակաւուց քեռորդի նորա Աշոտ իշխան Վասպուրականի զչարեալ ընդ մեծութի Սմբատայ՝ բազում ընծայիւք գնաց առ Աֆշին ոստիկան՝ ակնունելով 'ի ձեռն նորա ինքն թագաւորել առանձին, թէպէտ և 'ի դերև ել։ Զկնի այնր Գագիկ արծրունի՝ աներ այսր Աշոտոյ արծրունւոյ՝ բանս եդ ընդ Ահմատայ այլազգւոյ՝ մատնել զզօրս Սմբատայ 'ի ձեռս նորա՝ ակնունելով նովին հասանել մեծի իշխանութեան կամ թագաւորութեան. այսր աղագաւ բազում վնաս հասոյց Սմբատայ. զորմէ տես 'ի գլուխն Բարուց։ Այս Ատրներսեհ զոր թագաւոր Վրաց էր կացուցեալ Սմբատ, փոխանակ բարերարութեան թշնամուէ կալաւ ընդ Սմբատայ. միաբանեցան ընդ նմա և նախարարք Հայոց թշնամացեալք ընդ Սմբատայ սակս առաւելլոյ զհարկն. բանս եդին մատնանել զնա յորմէ բազում արեանհեղութ՟ զերծաւ Սմբատ։ Սուղ ինչ զկնի Գագիկ արծրունի քեռորդի Սմբատայ գնաց առ Յուսուփ ոստիկան, և առեալ 'ի նմանէ թագաւորուէ՝ ինքն և եղբայր իւր Գուրգէն մուծին զՅուսուփ 'ի Հայս 'ի խնդիր Սմբատայ, յորմէ եղև մահ նորա։

Երկրորդ՝ չարաչար վիշտս կրեաց յերկուց ոստիկանաց իւրոյ ժամանակին, որք էին Աֆշին և Յուսուփ. զի նախ

« Առնու զթագն Սմբատ որդի նորա (Աշոտոյ) յետ․ Թըւին ամս քսան և չորս կամակցութ․ Լևոնի որդւոյ Վասլին », որպէս գրէ Վարդան յետ Ասողկայ։ Աֆշին ոստիկան որ նստէր յԱտրպատական՝ զչարեալ ընդ այս բարեկամութիւն Սմբատայ ընդ կայսեր Յունաց՝ թշնամութիւն ցուցանէր, զոր առ 'ի խաղաղել՝ « Շապուհ կրսեր եղբայր թագաւորին Սմբատայ՝ եդեալ զանձն իւր 'ի մէջ մահու և կենաց՝ գնաց առ Աֆշինն . . . առնու 'ի նմանէ թագ թագաւորութե, բերեալ դնէ 'ի գլուխ Սմբատայ եղբօր իւրոյ հաստատելով զթագաւորութիւն նորա », որպէս գրէ Ասողիկ Գ․ 3․ բայց էր 'ի հրամանէ ամիրապետին ըստ պատմելոյ Յոհաննու կաթողիկոսի, որով թագաւորելն Սմբատայ եղև հրամանաւ երկոցունց՝ կայսեր և ամիրապետին։ Աֆշին տեսեալ ապա զվնասիլ զօրաց Սմբատայ 'ի ժամանակս յարձակման Ահմատայ բռնաւորին, ժամ դիպող համարեալ զայն՝ եկն զօրօք 'ի վերայ Սմբատայ․ իսկ նա նուաղեալ 'ի զօրաց, օտարացեալ և յիւրոց նախարարաց՝ որք ոչ կամեցան միաբանիլ ընդ նմա առ 'ի ընդդէմ կալ Աֆշնի, ակամայ խաղաղութիւն խօսեցաւ ընդ նմա։

Միւսանգամ գրգռեալ Աֆշնի յիշխանաց մերոց՝ խաղաց 'ի վերայ Սմբատայ, թէ ընդէր զԱտրներսեհ իշխանն թագաւոր կացոյց 'ի վերայ Վրաց․ յայնժամ հարկ եղև Սմբատայ փախչել մինչև 'ի Տայս։ Դարձեալ ունէր գալ Աֆշին 'ի վերայ Սմբատայ՝ այլ մեռաւ․ և Յուսուփ եղբայր նորա եղև ոստիկան 'ի տեղի նորա։ Սմբատ արքայ ձանձրացեալ 'ի դաւադրութ բարուց ոստիկանաց՝ գրեաց առ ամիրապետն 'ի Բաբիլոն աղաչելով՝ հանել զնա 'ի ներքուստ ձեռին ոստիկանաց, և անմիջապէս արկանել զինքն ընդ տէրութ իւրով։ Ընդ որ հաւանեալ ամիրապետին՝ կրկին անգամ առաքեաց առ նա զգեստ և թագ արքայական, և զհարկն արքունի թեթևացոյց։ Նմին իրի ասէ Յոհաննէս կաթողիկոս, « և այնուհետև 'ի կարգս այլոց ևս հնազանդելոց և նա ևս մտանէր 'ի կապուածս լծոյ ամիրապետին »։ Իսկ Յուսուփայ զչարեալ ընդ այս արարս նորա՝ Ջանահնար լինէր դարձեալ ընդ իւրև արկանել․ յայս սակս գրեաց առ ամիրապետն, այլ չեղև լսելի․ ապա եկն զօրօք 'ի վերայ Սմբատայ 'ի նուաճել, բայց տեսեալ զառաւելագոյն պատրաստութ նորա՝ փոխեաց զթշնամութիւն 'ի սէր և յուխտ խաղաղութ․ նաև զհարկն արքունի 'ի կամս անձին նորա եթող։ Յետ այսորիկ և զգեստ և թագ ևս .

արքայական առապարաց առ նա։ Իսկ մինչ Սմբատ ուխտիւ սիրոյ կապեալ ընդ կայսեր իբրև որդի ընդ հօր, ընդդունէր 'ի նմանէ ամի ամի պարգևս և պատիւս. որպէս և մինչ տասնապատիկ յաւելուածով հատուցանէր նմա զփոխարէնն « իբրև մեծհարգունի քան զմինչ և հօր հարազատի »․ որպէս ասէ Յոհաննէս կաթողիկոս։

Սակայն մինչ ամս այսպէս 'ի խաղաղութեան վայելեալ՝ դարձեալ սկսաւ տառապիլ 'ի Յուսփայ, որ եկն զօրօք 'ի խնդիր Սմբատայ, և փախեաւ Սմբատ․ բայց 'ի գալ Յուսփայ 'ի վերայ՝ ել ընդդէմ նորա պատերազմաւ. և 'ի սատակմանն մարտի՝ Սևորդիք որ 'ի զօրս նորա էին՝ քանզի բան եդեալ էին ընդ Յուսփայ՝ թողին զՍմբատ և փախեան։ Սմբատ սակաւուք ոմամբք մնացելովք գնաց ամրացաւ 'ի բերդն Կապոյտ․ այլ Յուսուփ և անդ եւս պաշարեալ զնա՝ 'ի պատերազմելն ընդ բերդին՝ զքրիստոնեայ զօրս Հայոց յառաջ մատուցանէր. յայնժամ Սմբատ խնայեալ 'ի կոտորումն քրիստոնէից՝ զորս բերդականն զօրք իւր նետահար առնէին կոտորէին, յետկար երդման առեալ 'ի Յուսփայ վասն ոչ սպանանելոյ զինքն և զզօրս իւր՝ անձնատուր եղև նմա, բայց առա չարաչար ըլկանօք տանջեալ 'ի Յուսփայ վասն քրիստոնէական հաւատոյ՝ արիաբար գլխատեալ նահատակեցաւ։

## ԱՇՈՏ Բ

Որդի ն․ Սմբատայ՝ Երկաթ անուանեալ վասն արիութեան և կորովութեան բառ ասելոյ Վարդանայ. նմին իրի և թագաւոր պսակեցին զնա. « Զայն տեսեալ ապա (ասէ Յոհաննէս կաթողիկոս, այսինքն է՝ զքաջագործութիւն նորա,) թագաւորն Վրաց, այլ և զօրացն իւրոց . . . թագ նմա կապեալ թագաւորեցուցանէին փոխանակ հօր իւրոյ »։ Քաջագործութիւնք այսր Աշոտոյ բազումք են, յորոց զերևելիսն ունիմք յիշել 'ի գլուխն Բարուց. այլ այս զարմանալի քաջութիւնք նորա ոչինչ օգուտ գործեցին համօրէն աշխարհիս Հայոց, այլ միայն մասնաւոր ինչ տեղեաց, 'ի բաց հալածելով անտի զոմանս 'ի հինից արաբացւոց։ Գլխաւոր պատճառ այսմ եղեն անհնարին տարաձայնութիւնք, գժտութիւնք և թշնամութիւնք իշխանաց մերոց ընդ միմեանս. զի որչափ ինչ յաճախէին արտաքուստ արշաւանք և հինահարութիւնք արաբացւոց յաւուրս Յուսփայ ոստիկանին, զոր մարթ է կոչել գլուխ խորամանկաց և ան-

զութ արանց, նոյնչափ և յաճախէր երկպառակութիւն մերոց իշխանաց։

Բայց Յուսուփ զԳագիկ արծրունի յաւուրս Սմբատայ կացուցեալ էր թագաւոր Վասպուրականի, որպէս գրեցաք ՚ի վերոյ. իսկ այժմ յաւուրս սորին Բ. Աշոտոյ՝ նաև զմիւս Աշոտ շապուհեան հօրեղբօրորդի նորին յաւել թագիւ պսակել և առաքել ՚ի Հայս, որ եղև խոչընդոտն Աշոտոյ հարազատ թագաւորի. զի ընդ գալ նորա ՚ի Հայս՝ ՚ի մէջ երկուց Աշոտոց սկսաւ բորբոքիլ պատերազմ. և այնր աղագաւ ամենայն նախարարք բաժանեցան յերկուս, ոմանք միում, և ոմանք միւսում օգնելով. «Եւ քանզի խարամանեկ ոստիկանն (Յուսուփ, ասէ Յովհաննէս կաթողիկոս), խորհրդաբար ՚ի մոտ եղեալ սուր հակառակութեան ՚ի մէջ նոցա արկանել, այսպիսաբար նենգական մտօք թագ կապեալ սպարապետին Հայոց (որ էր Աշոտ շապուհեան), և սուսեր ընդ մէջ ածեալ՝ առաքէ յաշխարհն իւր. որ գրեթէ զիրկընդխառն ՚ի գլուխ միմեանց հարան՝ ինքն և համանուն իւր արքայորդին»։ Յետ բազում վնասուց և հարուածոց հազիւ ՚ի հաշտութիւն եկեալ՝ միւսանգամ ՚ի մարտ եկին ընդ միմեանս, և միւսանգամ հաշտեցոյց զնոսա կաթողիկոսն. նոքա երրորդ անգամ սկսան պատերազմել չարաչար՝ ՚ի վարձու կալեալ զօրս յօտար ազգաց բազում գանձիւք. և քանդէին աւերէին զերկիրս իւրեանց. զորս հազիւ խաղաղացոյց դարձեալ կաթողիկոսն։

Իսկ խորամանկն Յուսուփ ակնկառոյց միայն լեալ ՚ի հեռաստանէ հակառակութեանցս այսոցիկ՝ յարժամ զօրութիւն հայաստանեայց տկարանայր ՚ի պատճառս աւերմանց սոցա՝ յայնժամ ինքն արշաւէր ՚ի Հայս զխուռն. իսկ յորժամ ապստամբք Յուսփայ գերէին և աւերէին զՀայաստան՝ մօտակայ ազգք երկուցեալք զի մի՛ զուցէ նաև ՚ի սահմանս իւրեանց յարձակեսցին ապստամբքն այնոքիկ՝ ինքեանք ևս ՚ի սահմանակից գաւառս Հայոց արշաւեալք՝ զամենայն գիւղօրէս քանդեալ աւերէին, և զընդդիմակացն ՚ի սուր սուսերի մաշէին, որք էին Յոյնք, Եգերացիք, կովկասային ազգք, եւս և Հայք գուգարացիք և ուտեացիք՝ արք աւազակաբարոյք։ Աշոտոյ հարկ լինէր և ընդ սոսա մարտնչել և ընդ արաբացիս. բայց որ առաւել վշտալին էր՝ հարկ էր մարտնչել նաև ընդ ներքին թշնամիս և ընդ ընտանիս իւր. զի բաց ՚ի միւս թագաւորէն շապուհեանն Աշոտոյ՝ յարեան ՚ի վերայ նորա և այլ երկու ընտանի թշնամիք, Աբաս եղբայր իւր և Սահակ Սևադայ աներ

իւր իշխանին Գարդմանայ, որ նորա՛ հաշտեալ էր ընդ նմա, յարձակեալ յերկիր նորա աւարէր, և առնոյր և զերկուս ամրոցս. յորոյ վերայ յարձակեալ Աշոտ յաղթեաց. յինքն էառ զերկիր նորա որ էր Գարդմանն, և կալեալ զՍահակ և զորդի նորա զԳրիգոր կուրացոյց և այնպէս եթող։ Ցարեան նաև այլ ապստամբք, Վասակ գնթունի վերակացու Գուգարաց նահանգին, Մովսէս վերակացու Ուտի նահանգին, դարձեալ նոյն Վասակ Գուգարաց, և Ամրամ Ցլիկ կոչեցեալ նոյնպէս վերակացու Ուտի նահանգին՝ միացեալ ընդ Գուրգենայ Թագաւորին Ափխազաց՝ խոստանալով տալ նմա զամրոցն Շամշուլդէ. զոր պատերազմելով հազիւ նուաճեաց, բայց հազիւ զերծաւ ՚ի վտանգէ մահուան։ Այլ յայնմ ժամանակի միւս Աշոտ Թագաւոր յարձակեալ յերկիր Շահնշահն Աշոտոյ ապստամբ սփռէր։

Ի մէջ այսչափ պատերազմաց ծանր եղև յոյժ կռուիլ նորա ընդ հարազատ եղբօր իւրում Աբասայ, զոր իշխան իշխանաց էր կացուցեալ. և էր յոյժ սիրելի միանգամայն ընդ Գուրգենայ մեծի իշխանին Վրաց[1]։ Բայց այս երկոքին սիրելիք Աշոտոյ արքային այնպէս թշնամացան ընդ նմա, մինչև բան եդին սպանանել զնա. Աշոտ իրազեկ լեալ փախեաւ, և զօրաժողով լեալ խաղաց յերկիրն Ափխազաց, յաւարի էառ և զերկիր շապուհեանն Աշոտոյ, որպէս և Գուրգէն ընդ Աբասայ միանգամայն աւերէին զերկիրն Աշոտոյ։ Վասն այսր պատճառի եղև բազում անգամ մարտիւ հարկանել զմիմեանս, մինչև Վասակ սիւնի հօրաքեռորդի Աշոտոյ ՚ի մէջ մտեալ հաշտեցոյց. այլ միշտ զխէթ թշնամութեան կրէր Աբաս ՚ի սրտի, և խափան լինէր յաջողուածոյ գործոց նորա. վասն որոյ ՚ի մերձենալ մահուն՝ խրատ ետ նմա կեալ ՚ի խաղաղութեան, և մեռաւ անորդի. և փոխանակ նորա յաջորդեաց Աբաս եղբայր նորա։ Բաց յայսցանէ էին նորա և այլ միշտք. քանզի և այլքն ՚ի նախարարաց չէին միաբան ընդ նմա. նմին իրի աւերէր և նա զերկիրս և զգիւղօրէս նոցա և յինքն գրաւէր՝ յորժամ և Սիւնակեանք

1 Յոհաննէս կաթողիկոս ՚ի կրկին տեղիս կոչէ այսպէս. Իշխանն Վրաց Գուրգէն անուն միւս Աշոտոյ շապուհեան. զոր և որոշէ ՚ի Թագաւորէն Վրաց յասելն. "Բայց Թագաւորն Աշոտ... չուէ յաշխարհն Վրաց. և անդ ընդ իւր զԹագաւորն Վրաց Ատրներսէհ առեալ, երկոքեանց զօրքն նոքա ՚ի մարտ ընդ իշխանին Գուրգենայ մտեալ,,։ Բայց ոմանք զայս Գուրգէն կոչեն Թագաւոր Ափխազաց։

և Արծրունիք զերկիրս միմեանց աւերէին։ Թշնամացաւ և ընդ Ատրներսեհի թագաւորին Վրաց, ընդ Աղուանս, որպէս և ընդ Ափխազս։ Եթէ ոչքս ամենեքին փոխանակ զմիմեանս եղծանելոյ՝ միաբան կացեալ ընդդէմ ելանէին զօրացն Յուսփայ՝ ոչ լինէին այն աղէտք 'ի վերայ աշխարհիս Հայոց։

Նա և այսպէս ոչ ընդ արտաքոյս, այլ ընդ միմեանս մարտ եղեալ անդադար կռուէին առ Աշոտաւ. որ թէպէտ փոյթ կալաւ երբեմն զայս՝ և երբեմն զայն նուաճել, բայց թուի անփոյթ լեալ նորա զխրատս այլոց շահել և յինքն յանկուցանել, որ է առաջին գործ հարկաւոր ամենայն իշխանաւորաց. այս ձիրք միայն ա̃. Աշոտոյ պահեալ էին, յորոյ աւուրս ոչ ոք յընտանեաց կամ 'ի հաւատ ազգեաց եկաց թշնամի նմա. այլ զամենեսին արար իւր սիրելի։ Վասն որոյ զայս ա̃. Աշոտ կոչեմք երևելի 'ի քաջագործութեան, այլ ոչ երևելի 'ի կառավարութեան և 'ի կենցաղավարութեան, որ առաջին խնդրելին է յիշխանաւորս։ Ցայտ է թէ կամ առ պակասութեան իւրոյ կառավարութեան և կենցաղավարութեան, և կամ առ պակասութեան հաստատակամութեան մերոց իշխանաց էր՝ զի Հայաստան յայն վիճակ թշուառութեան եհաս յաւուրս սորա, մինչև ըստ պատմութեան Յովհաննու կաթողիկոսի առաւելուլ քան զառաջին աղէտսն, ոչ միայն պատերազմաց, հինահարութեանց և ներքին հակառակութեանց՝ որ չէր ինչ նոր, այլ նաև սաստիկ սովու՝ յորմէ և մահ բազմաց։ Զայս ամենայն հարուածս միանգամայն 'ի վերայ հասեալ 'ի Հայաստան՝ հազիւ երբէք է տեսանել։

Աշոտ իբրև 'ի Կաքաւաբերդ ամրոցի կղզւոյն Սևանայ նստէր՝ Բշր հագարացին եհաս 'ի վերայ նորա, յորոյ վերայ դիմեալ նաւուք՝ նետահարութ̃ 'ի փախուստ դարձոյց։ Ըսրուք ոստիկան եա այսմ Աշոտոյ մականուն պատուոյ կոչել Շահնշահ. այսինքն Արքայից արքայ, ըստ որում և այլ երկու թագաւորք նորոգ պսակեալ էին յայնժամ 'ի Հայաստան ստորնագոյն քան զնա։ Վարդան նաև զթագաւորն Վրաց յիշէ ասելով. « Իսկ Աշոտ պսակեալ 'ի Սևանէ (կայսերէ) դառնայ 'ի Հայս 'ի յհէ. թուականին. և գտանէ թագաւորեալ զհոմանուննն իւր զԱշոտ որդի հօրեղբօր իւրոյ, զոր հնազանդեաց 'ի ներքոյ իւր, որպէս և զԳագիկ թագաւոր տանն Արծրունեաց, և ըզ-Մովսէս բռնացեալն յԱղուանս (այսինքն յՈւտի), զորոյ խաւարեցոյց զաչսն. և մեծազօր գտեալ քան զնոսա և

քան զԹագաւորն Վրաց Ներսէհ, կոչեցաւ 'ի վերայ նորա Շահնշահ„: Մարթ էր յաւելուլ և զԹագաւորսն Եգերացւոց և Աղուանից, զի և 'ի վերայ սոցա իշխէր. այլ ըստ այսմ յաւէտ զառաջին Թագաւորսն անկ էր կոչել. որք և յոյժ առաւել քան զԱշոտ իշխէին 'ի վերայ սոցա, բայց և չառին զայս պատիւ Արքայից արքայ կոչելոյ. վասն որոյ անուամբ ևեթ այսպէս կոչեցեալ համարեսցուք զԱշոտ 'ի զանազանութիւն միւս սուտանուան Թագաւորաց.

ԱԲԱՍ

Եղբայր Աշոտոյ Երկաթոյն. պսակեցաւ Թագաւոր հաւանութեամբ Նախարարաց և Գագկայ արքային Վասպուրականի: Յաւուրս սորա (տես Սամուէլ 'ի թուին ՅՀԷ. 928.) եղև խաղաղութիւն աշխարհիս Հայոց, զի եբարձ զխռովարար աւազակսն„:

ԱՇՈՏ Գ

Որդի Աբասայ Ողորմած անուանեալ. զկնի ամ աւուրց պսակելոյ պայազատեալ, ապա Նախարարք Հայոց պսակեալ Թագաւոր կացուցին զնա՝ կոչեալ 'ի ժողովս և զԱղուանից արքայն զՓիլիպպոս, և զկաթողիկոս նորա զՅոհաննէս: Սա եղև առաջին ընդարձակող Անի քաղաքին Շիրակայ, որ յառաջն էր սոսկ բերդ: Իսկ յողորմածութիւն Աշոտոյ այս գերագոյն համբաւեցաւ, որպէս ունիս տեսանել 'ի գլուխն Բարւոյ. որոյ ողորմածութիւն ոչ այնչափ էր 'ի հասարակաց շինութիւնս՝ որպէս մեծին Ներսէսի, քան թէ յառանձինն գութ աղքատաց [1]:

ՍՄԲԱՏ Բ

Երէց որդի Աշոտոյ ողորմածի, որ քան զառաջուան Թագաւորս զօրացեալ՝ եբարձ յաշխարհէն իւրմէ զամենայն ապստամբութիւնս Թշնամեաց, վասն որոյ կոչեցաւ Տիեզերակալ. բայց պիտակաբար. զի աշխարհ նորա փոքու սահմանաւ ամփոփեալ էր յայնժամ՝ Շիրակաւ և շրջակայիւք

1 Յաւուրս սորա էր Դաւիթ նախարար Տայոց նահանգին 'ի բաժնէն Յունաց, որ պատուեալ 'ի կայսերէ կուրապաղատ կարգեցաւ կողմանցն այնոցիկ:

նորա. որովհետեւ նաեւ զմասն ինչ երկրի իւրոյ 'ի բաժինս հանեալ էր միւս եղբօր իւրոյ Գուրգենայ. կոչեցաւ Սմբատ նաեւ Շահնշահ արմէն: Մուշեղ թագաւոր Կարուց հօր եղբայր Սմբատայ թշնամացաւ ընդ նմա. Սմբատ խաղաց 'ի վերայ նորա, և ոտնակոխ արարեալ զերկիր Մուշեղայ՝ էառ զամուր բերդն նորա Շատիկ կոչեցեալ. բայց քանզի կուրապաղատն Դաւիթ եկն յօգնութիւն Մուշեղայ՝ Սմբատ հաշտութիւն խօսեցաւ ընդ Մուշեղայ, որոյ սպարապետ էր Վասակ որդի պահլաւունւոյն Գրիգորոյ. Մուշեղ գրգռեաց զամիրայն Դըւնայ, որ եկեալ 'ի Շիրակ աւար և անդ ասպատակէր. մարտ դնէր նաեւ ընդ Ապուտէլփայ ամիրային Գողթնայ. բայց քանզի Ապուտէլփ զօրացաւ 'ի վերայ ամիրային Դըւնայ, Սմբատ դաշն խաղաղութե հաստատեաց ընդ նմա 'ի ձեռն Խաչիկ կաթողիկոսի երդմամբ հանդերձ՝ կեալ 'ի խաղաղութե ինքեանց և յաջորդք իւրեանց:

Օ այս է. Սմբատ՝ Ասողիկ Գ. 11. կոչէ Խաղաղասէր և Իրաւարար. պարտ էր յաւելուլ և Աշխարհակալ. զի սա լիր արկեալ ընդարձակեաց զԱնի՝ յԱխուրեան գետոյ մինչև ցձորն Ծաղկոցաց պարսպափակ առնելով և մահարձանօք զարդարելով. Բայց "յորժամ յաջողեցաւ, ասէ Գ. 29. գործ թագաւորին Հայոց Սմբատայ 'ի ներքնոց և յարտաքնոց, և մեծացաւ յոյժ . . . . . . . . անօրինեցաւ նա. բարձրացաւ սիրտ նորա, և բարձրացաւ առաւել քան զինքն. գործեաց նա երիս չարիս . . . . և այս ամենայն չարեօք բարկացոյց նա զանբարկանալին ած. և անդէն եհար Աստուած ցաւամամբ մեծաւ„: Եւ այնպէս և սա ևս յանցեաւ մեծամտութբ և գոռոզութբ, զի ըմբռնացեալ արհամարհեաց զօրէնս եկեղեցւոյ՝ առեալ իւր կին զդուստր քեռ իւրոյ. եհեղ և արիւն տարապարտ առանց քննելոյ այրելով զոմն, զորմէ ամբաստանէին հրկէզ արարեալ զհամբարանոց խոտոյ Անի քաղաքին, որպէս պատմէ Ասողիկ Գ. 29. 30:

## ԳԱԳԻԿ Ա

Միջին որդի Աշոտոյ ողորմածի. յաւուրս կենդանութե եղբօր իւրոյ Բ. Սմբատայ՝ հաշտեալ ընդ նմա կարգեցաւ 'ի նմանէ իշխան իշխանաց. իսկ յետ մահուան նորա կացուցաւ թագաւոր. "Տիրեաց նա յոլով բերդից և գաւառաց, 'ի սահմանացն Վայոց ձորոյ, Խաչենոյ և

Փառախոսոյ, առաւել քան զեղբայր իւր»[1], որպէս գրէ Ասողիկ։ Բայց 'ի նմին ժամանակի 'ի կողմանս Տաշրայ տիրէր Գուրգէն եղբայր Գագկայ, իսկ 'ի Կոգովիտ և 'ի Ծաղկոտն տիրէր Աբուսահլ քեռորդի Գագկայ, որով սահմանս սորա չէր ինչ մեծ՝ համեմատեալ սահմանացն տիրելոց 'ի Ա. Աշոտոյ, և 'ի Ա. Սմբատայ. վասն որոյ և սա վայրապար կոչեցաւ յոմանց Շահնշահ, 'ի զանազանութիւն փոքունց ոմանց ընթերակայից անուամբ ևեթ թագաւորելոց։

Նշկուս բարեպաշտութիւն տան սմա պատմագիրք, մի՝ վարժութիւն յարուեստ պատերազմի; որով սանձահարեաց զյարձակումն հինից, և երկրորդ՝ կարեւոր ամենայն թագաւորաց առատաձեռնութիւն, որով զտուրս նուագեցոյց։ Զառաջինն յիշէ Լաստիվերտցին Ի. կոչելով «Այր հզօր և յաղթօղ 'ի պատերազմի. սա 'ի խաղաղութեան կալաւ զաշխարհս Հայոց»։ Իսկ զերկրորդն միանգամայն յիշէ Ասողիկ Գ. 30. ասելով թէ յաւուրս սորա «ոչ ոք էր որ զարհուրեցուցանէր զհայաստանեայսս մինչև ցօր գրելոյ իմոյ զբանս յիշատակիս այսորիկ. զի էր այր սրամիտ և վարժ 'ի պատերազմի և առատաձեռն 'ի բաշխելն, և զբաժ հարկաց յոլովից ներելոց աղքատաց»։ Եւ թէպէտ այսպէս գովէ զսա՝ մինչև յաւելուլ ասել, «Եւ զկիւրապաղատին ըղձայգման՝ պաշտօն սպասաւորութեան կատարէր», բայց ապա գրէ. «Այսաղ միում չարին որ արգել զբանս գովեստի պատմութեան իմոյ»։ առանց այլ ինչ յիշելոյ[2]։

ՅՈՀԱՆՆԷՍ

Կոչեցաւ նաև Սմբատ. էր երէց որդի Ա. Գագկայ. «Ի նմին թուին, ասէ Վարդան, մեռաւ Գագիկ՝ թողեալ ըզ թագաւորութիւն երից որդւոց իւրոց՝ Յովհաննիսի, Աբասայ և Աշոտոյ։ Զթագն տայ Յովհաննիսի, և զԱնի և զՇիրակ։ Զսուրբ Գրիգոր ձորոյն Աշոցաց և զԱնբերդ և զդաշտն այրարատեան, զԿայեան և զԿայծոն և զՏաւուշ գաւառն

1 Այս ամենայն սահմանք են 'ի Սիւնիս և յԱրցախ, վասն որոյ չէին ինչ մեծ. բայց զի յայնժամ թշնամիք տիրեալ էին, նաև 'ի ժամանակս եղբօր իւրում Սմբատայ թագաւորի՝ թէպէտ և տիեզերակալ կոչէր, վասն որոյ ասէին բանիւ զովիրել նորա առաւել քան զեղբայր իւր կամի յայտ առնել։

2 Խիթալի է այս մթութեն բանից Ասողկայ, որ չէր բարեկամ ընդ Յովհաննու այլ թերևս Գագկին Հանեալր բառնալ զերկպառակութեն քրիստոնէից. որպէս փորձեցաւ առնել և միւս Գագիկ որդւոյ Աշոտոյ Արծրունեաց 'ի Վասպուրականի։

Սևորդեաց և զայլ մնացեալսն՝ Աշոտի և Աբասայ բաժանէ„։ Բայց Աշոտ եղբայր Յոհաննու եւ ընդդէմ նորա. զի Յոհաննէս թանձրամտութիւն էր և անկար 'ի պատերազմի, իսկ Աշոտ քաջակորով յամենայնի. զայն լուեալ Գորգի կամ Գէորգէ թագաւոր Վրաց և Աբխազաց՝ թագ արքայական առաքեաց առ Յովհաննէս։ Այս առաջին նուագ է 'ի թագաւորէ Վրաց առնուլ զթագ մերոցն. զի յառաջագոյն 'ի կայսերէն և յամիրապետէն առնուին։

Այս հակառակութի Աշոտոյ ընդդէմ Յոհաննու՝ բազում վնասուց եղև պատճառք, և դրեթէ հիմն էարկ վերջին կործանման թագաւորութե Բագրատունեաց. զի ոչ զիջեալ 'ի յամառութենէ իւրմէ՝ այլ զօրս ժողովեալ 'ի Սենեքերիմայ արքայէն Վասպուրականի՝ եկն 'ի վերայ Յոհաննու, որ եւ ընդդէմ նորա 60 հազարաւ, այլ պարտեցաւ. Պետրոս գետադարձ կաթողիկոս և նախարարք ընդ մէջ մտեալ հաշտեցուցին, պայմանս եդեալ Յոհաննու իշխել Անւոյ և Շիրակայ գաւառին իբրև թագաւոր Հայոց. իսկ Աշոտոյ իշխել մնացեալ գաւառացն, զոր Դրուց կամ արտաքին աշխարհ կոչէին պատմագիրք. վասն որոյ ասէ Մատթէոս 'ի թիւն երեքհարիւրորդ եօթներորդ. «Եւ յայնժամ սուրբ հայրապետն Պետրոս և իշխանքն ելին առ Աշոտ, և մեծաւ երդմամբ հաստատեցին զԱշոտ Դրուց աշխարհին թագաւոր ամենայն տանն Հայոց, և Յոհաննէս նստցի թագաւոր 'ի քաղաքն Անի. և եթէ մեռանի Յոհաննէս, Աշոտ լինի թագաւոր ամենայն տանն Հայոց. և յայնժամ եղև խաղաղութիւն աշխարհին Հայոց„։

Բայց ընտական հակառակուէր բարք ազգայինն՝ նաև յետ հաշտութեան ոչ եթող զնոսա կալ յանդորրու. զի նախարարք ազգիս յերկուս բաժանեալ՝ ոմանք զայս գրգռէին և ոմանք զայն, մինչև գրգռեցին նաև զԳորգի Վրաց թագաւոր ընդդէմ Յոհաննու, որ յանկարծ կալաւ զՅոհաննէս, և յետ երիս բերդս առնլոյ 'ի նմանէ՝ հազիւ արձակեաց զնա։ Յետ այնորիկ Աշոտ եղբայր նորա կալաւ զՅոհաննէս. զի սուտ հիւանդացեալ՝ կոչեաց զնա առ իւրն իբր առ մխիթարութի իւր. բայց 'ի գնալն նորա յանդէտս՝ անկաւ յորոգայթն դաւաճանի լարեալ, յորմէ զերծոյց Աբիրատ իշխանն, և նստոյց 'ի գահ իւր յԱնի։ Իսկ Աշոտ գնացեալ 'ի Բիւզանդիա առ Վասիլ կայսր, և անտի առեալ իւր օգնութի, զօրք կայսեր

հնազանդեցոյց զնախարարս իւր զհերձեալս յինքենէ. « Իսկ 'ի վերջին նոցա, ասէ Վարդան, զկնի այսորիկ գայ Թագաւորն Ափխազաց Գորգի որդի Բագարատայ՝ որդւոյ Գուրգենայ՝ որդւոյ ողորմածին Աշոտոյ, և առնէ խռովութիւն 'ի մէջ նոցա և գնայ: Եւ զի ոմանք յիշխանացն անհնազանդք լինէին՝ գնայ կրտսերն Աշոտ առ կայսրն Վասիլ, և առեալ 'ի նմանէ զօր՝ գայ և հնազանդէ զամենեսին և նստի Թագաւոր Դրուց աշխարհին, և Աբաս 'ի Կարս »: Եւ այսպէս հռչակաւոր քաջութի Աշոտոյ այնչափ գովեալ 'ի պատմագրաց՝ փոխանակ օգնելոյ եղբօր իւրում Յովհաննու, և նովին զօրացուցանելոյ զԹագաւորութիւն Հայոց ընդդէմ Թշնամեաց՝ պատճառ եղև առաւել ևս տկարացուցանելոյ և վտանգելոյ, որով ճանապարհ եբաց ամենայն Թշնամեաց, և դիւրացոյց զմուտ նորատեսիլ Թշնամեացն տուղրիլեան Թուրքաց:

Իսկ Յովհաննէս Թագաւոր յամենայնի անկար՝ տեսեալ զինքն աստի և անտի վտանգեալ, գործեաց գործ՝ որ եղև նիւթ բորբոքման հակառակութեն 'ի տան իւրում. զի զանխուլ յամենեցունց ետ գիր առ կայսրն Վասիլ 'ի ձեռն Պետրոսի կաթողիկոսի, խոստանալով յետ մահուան իւրոյ 'ի նա տալ զԱնի և զամենայն սահմանս նորա, միայն թէ պաշտպանեսցէ նմա: Այս գիր ահաէած զվերջին կորուստ Թագաւորութեն. զի ասէ Լաստիվերտցի Է. « Անդ եղև Հայոց կործանման գիր և նամակ. քանզի Յովհաննէս պատուէր տուեալ էր հայրապետին՝ եթէ գրէ՛ գիր, և տուր կտակ Թագաւորին, զի յետ իմոյ վախճանին զիմ քաղաքս և զերկիրս նմա տաց 'ի ժառանգութի. քանզի ոչ գոյր որդի Թագակալ Թագաւորութեն, վասն զի որդին նորա վաղ վախճանեցաւ, և չժամանեալ 'ի պատիւ հօրն »:

ԳԱԳԻԿ Բ

Քանզի Յովհաննէս անորդի մեռեալ էր, այս Գագիկ որդի Աշոտոյ եղբօր Յովհաննու եղև ժառանգ. բայց փոքրիկ գոլով նորա, նախարարք Հայոց ոչ փոյթ կալան արձակել զնա Թագաւոր և կարգել նմա զոք Թագաւորահայր հաւատարիմ և կենցաղագէտ, որպէս օրէն է յայլ ամենայն պետութիւնս: Զայն առիթ իւր առեալ Վեստն Սարգիս սիւնի և ագահութեն գոռեալ, խնդր եղև իշխող ամենայնի՝ որ հոգաբարձու էր միայն Յովհաննու

Թագաւորի 'ի մահուան նորա։ Միքայէլ կայսր խնդրեաց յայնժամ զԱնի, յուշ առնելով Հայոց զթուղթ խոստման Յովհաննու Թագաւորի. իբրև Հայք ոչ յանձն առին տալ, առաքեաց անդ զօրս 100 հազար, որոց գաղտ ձեռնտու լինէր Վեստն Սարգիս։ Հայք 50 հազար զօրօք յարձակեցան 'ի վերայ նոցա՝ սպարապետ ունելով զքաջն Վահրամ պահլաւունի, հարին և վանեցին զՅոյնս։ Իսկ Վեստ Սարգիս առաւել ևս քռնացեալ՝ խնդրէր կամէր թագաւորել 'ի վերայ Հայոց. յայնժամ Վահրամ սպարապետ գլուխ լեալ, յորդորեաց նաև զայլ նախարարս, զԳագիկ պատանին որ փախուցեալ կայր 'ի քռնութենէ Սարգսի՝ հնարիւք իւրն մուծեալ յԱնի, անդադան ուրեմն կացուցին Թագաւոր. Գագիկ սկսաւ տիրել քաղաքաց և գաւառաց զորս յափշտակեալ էին Յոյնք, եհար և վանեաց նաև զթուրքս տուղրիլեանս։

Յետ այսորիկ Մոնոմախ կայսրն Կոստանդին լուեալ զերկպառակութիւն նախարարաց Հայոց 'ի գրգռութենէ Սարգսի՝ քաղցումն խոստացաւ նոցա և նմին Սարգսի, առ 'ի համոզել զԳագիկ՝ տալ զԱնի 'ի ձեռս Յունաց։ Նախարարք միաբան ընդ Սարգսի հնարս և որոգայթս խորհեցան գրեցին առ կայսրն՝ զի առ ինքն կոչեսցէ զԳագիկ, և յայնժամ դիւրին լինի առնուլ կայսեր 'ի մօտոյ քռնադատել զԳագիկ, դիւրին նաև ինքեանց 'ի հեռաստանէ յարդարել զամենայն ըստ կամաց նորա։ Գագիկ յետ միանգամ և երկիցս կոչելոյ կայսեր՝ գնաց ակամայ՝ վստահացեալ յերդումն նախարարաց իւրոց, որք երդուան հաւատարիմ և պաշտպան կալ նմա։ Կայսրն յետ ընդունելոյ զնա պատուով պահանջէր 'ի նմանէ զԱնի, խոստանալով փոխարէն տալ նմա զքաղաքն Մելտենի. և 'ի չզիջանելն Գագկայ՝ եարկ զնա 'ի դիպահոջ, որպէս երևի՝ 'ի միում 'ի մերձակայ կղզեաց Բիւզանդիոյ։ Յայնժամ նախարարք Հայոց որք կամակից էին կայսեր՝ որոց գլուխ էր Սարգիս՝ զբանալիս Անի քաղաքին զանխուլ 'ի միւս նախարարաց առաքեցին առ կայսր, զոր ընդ առնելն Գագկայ՝ ակամայ կամօք ետ զԱնի և զաշխարհ իւր 'ի ձեռս կայսեր 'ի նոյն. թուին. 1045. տուեալ վասն այսր թուղթ, որպէս պահանջէր կայսրն. իսկ կայսրն փոխարէն ետ Գագկայ զՊիզու և զայլ տեղիս 'ի կողմանս Խորձենայ և Լիկանդիոյ, և պալատ մի 'ի Բիւզանդիա հանդերձ ռոճկօք. Յորժամ ծանեան, ասէ Մատթէոս, թէ Թագաւորն Գագիկ այլ ոչ ևս ունի դառնալ յա-

ըսելով յԱնի, «անճարակեալ հաւանեցաւ քաղաքն (Անի) և ամենայն զօրքն. և գրեցին առ զօրապետսն Հոռոմոց 'ի Պառակամանոսն, և երդմամբ կոչեցին զնա 'ի քաղաքն Անի, և ետուն զքաղաքն Անի 'ի ձեռս Հոռոմոց. և խաբեալ եղեալ փլաւ տէրութիւն ազգին Բագրատունեաց»:

Պատճառ այսր կործանման Սամուէլ 'ի Թուլին նախադրնէ զանարի լինելն որդին Գագկայ Թագաւորի. «Որ ոչ պատերազմական արուեստ գիտէր, ասէ, որով վարի իշխանութն. մանաւանդ զի առ այնու ժամանակաւ աւելի իմն 'ի դէպ էր քաջանալ, զի շփոթութիւն իսմայելականացն՝ և 'ի վերայ յառնել սկիւթացւոցն՝ որպէս ասացաք յառաջագոյն, ընդ այսու ժամանակօք կարծի գոլ. և Յունացն (տէրութիւն) չէր անվրդով, զի ընդ կնոջ ձեռամբ նուաճէր և նոցա թագաւորութիւն: Բայց սա (Գագիկ) զի 'ի մանկութենէ ընդ դպրութի գրոց վարժեալ էր՝ 'ի նոսին զբօսնոյր և 'ի տէրութեն աւուրս»: Շփոթութիւն իսմայելականացն ասելով իմանայ զյարձակումն տուղրիլեանց Թուրքաց 'ի վերայ իսմայելեան արաբացւոց՝ և զանկնելն 'ի վերայ Պարսից. որպէս և իմանայ Կիրակոս, որ զայս բան բառ առ բառ օրինակէ 'ի Սամուէլէ ասելով. «Իշխանութիւն Իսմայելի շփոթեալ էր. քանզի սկիւթացիք (տուղրիլեան Թուրքք) յարեան 'ի վերայ նորա». այսինքն 'ի վերայ Իսմայելի, որք են արաբացիք:

Եւ արդարև այս յարձակումն տուղրիլեանց սկիւթացւոց 'ի նուաճել զտէրութիւն արաբացւոց և առ 'ի տիրել Պարսից՝ մեծի յաջողութեան էր առիթ մերոց 'ի քաջանալ և 'ի վանել զթշնամիս, բայց պակասէր 'ի նախարարս մեր միաբանութիւն, և փոխանակ այնր յաճախեալ էր երկպառակութիւն յոյժ առաւել քան զառաջին ժամանակս. յորմէ Գագիկ վերջին թագաւոր վտանգեալ կայր յամենայն կողմանց. 'ի ներքուստ նեղէր զնա այս երկպառակութիւն նախարարաց, մանաւանդ հնարիմաց խորամանկութիւն Վեստն Սարգսի, նաև արարք Դաւթի Անհողինի Աղուանից թագաւորի, որ և նախ քան զթագաւորելն Գագկայ ասպատակ սփռեալ 'ի գաւառն Շիրակայ յաւարի առնոյր. իսկ արտաքուստ նեղէին մօտակայ ամիրայք արաբացիք, սկիւթացիք, նաև Յոյնք: Թշնամիք միանային, և այնպէս առ սակաւ սակաւ գրաւէին զաշխարհ մեր. իսկ մերքն բաժանէին, և ճանապարհ հորդէին թըշնամեաց համարձակ տիրելոյ:

Յետ լսելոյ զայս ամենայն աղէտս որ անցին ընդ ազգս

մեր, կարեւոր է լսել և զգլխաւոր պատճառս նորա առ 'ի հասու լինել ազգային թերութեանց 'ի տեսչութեան աշխարհի: Տեսանեմք յայսպիսում ժամանակի 'ի յաճախութիւ արշաւանաց արաբացւոց և սկիւթացւոց՝ ռամիկ ժողովրդեանն նեղեալ յամենայն կողմանց խուսն դիմել, 'ի մի վայր ժողովել յԱնի՝ իբր 'ի միջոցի աշխարհիս [1], մինչև 'ի վերջին ժամանակս Բագրատունեաց լինել Անւոյ իբրև զմի 'ի քաղաքաց, յորում կարծեալ լինէր թէ մեծ մասն աշխարհիս Հայոց անդ իցէ, որպէս ասէ Մատթէոս. զորոց զթիւ համարիմ զանցանել յայնժամ քան զմիլիոն մի մարդկան, յուշ ածեալ միանգամայն զբազմութիւ 60 հազար զօրացն՝ զորս եհան անտի Յոհաննէս թագաւոր, զբազմութիւ եկեղեցեացն որ 'ի նմա, զմեծագիր տարածութիւ աւերակաց նորա, որ կայ մինչև ցայսօր և զբազմութիւ վերջին ցրուելոցն անտի յեւրոպիա. որք միոյ քաղաքի բնակիչ գոլով զերդան կալան բնակութիւ և լցին զբազում քաղաքս. և չեն ինչ զարմանք, զի և այլ բազում քաղաքք հայաստանեայց եղծեալ դատարկանային, և 'ի միումն յայն ամփոփեալ պատսպարէին փախըստականքն:

Այլ երանի թէ որպէս հասարակ ժողովուրդ՝ նոյնպէս և իշխանք ամենայն կողմանց հայաստան աշխարհիս միաբան ամենայն զօրօք իւրեանց 'ի միում ևեթ վայրի հաւաքեալ գտանէին յարքայանիստն Շիրակ և 'ի համօրէն շրջակայս նորա մինչև ցերկուս գետսն մեծամեծս Կուր և Երասխ. անդ անկ էր նոցա իբր 'ի ցամաք կղզւոջ ինչ կարգել զամենայն զօրս իւրեանց 'ի պահպանութիւ, զջուր գետոցն առնուլ իբր 'ի պարիսպ ինչ իւրեանց, գունդ գործել 'ի զօրացուցանել զթագաւորն իւրեանց, և 'ի չթողուլ թշնամեաց յայսկոյս քան զգետսն անցանել: Այսպէս միաբանելովն իւրեանց և այսպէս պատսպարեալ գոլով 'ի ջուրց՝ յայնժամ բազմօք դիւրանայր նոցա ընդդէմ կալ անհնարին բազմութեան և յաճախութեան հինից թշնամեաց [2]. որպէս և ետ այսմ օրինակ ինչ Վահ-

1 Քանզի Դուբին հին իշխանանիստ քաղաքն և շրջակայք նորա աւերեալ գոլով. առ հասարակ յարաբացւոց՝ ազգն ոչ գտանէր յայն կողմանս խաղաղութիւ ինչ և ապահովութիւ, ոչ 'ի կողմանէ ընչից, և ոչ 'ի կողմանէ հաւատոյ, այլ յԱնի միայն գտանէին.

2 Այսմ օրինակ եստւն սուղ ինչ զԱնի յերկուստասաներորդ դարուն Զաքարիա և Իւանէ, որոց գոլով յառաւել գտանօղոյն ժամանակի, բայց գոլով միաբան իւրեանց՝ այնչափ զօրացան, մինչև զերծուցանել առնուլ անգամ և առին 'ի ձեռաց թշնամեաց: Եթէ

րամ, որ զգեստն 'ի կիր էարկ 'ի յաջողութիւն յաղթութեան իւրոյ 'ի վերայ տուղրիլեանց սկիւթացւոց ։ Բայց անմխաքան գոլով իշխանացն՝ և ոչ մտադրելով այսմ՝ այր իւրաքանչիւր ուրոյն ուրոյն գուն գործեցին պաշտպանել անձանց. վասն որոյ և իւրաքանչիւր տկարացան 'ի բռնութենէ թշնամեաց, յորոց զերծանիլ կամեցեալ՝ փոխանակ միմեանց՝ զցրուիլն և զայլուր փոխադրելն համարեցան անձանց փրկութիւն առ Ցոյնս ապաւինելով ։ Առաջին օրինակ այսմ ետ Դաւիթ կուրապաղատ Տայոց, որ 'ի տասներորդ դարու զամենայն զիւր սահմանս ետ Վասիլ կայսեր, Թէպէտ և էր վասն այլ պատճառի. յորմէ իբր օրինակ առեալ և Սենեքերիմ արքայ Վասպուրականի 'ի մետասաներորդ դարու ետ կայսեր զերկիր իւր և փոխադրեալ բնակեցաւ 'ի Սեբաստիա. զկնի նորա և նոյն ինքն արքայն Հայոց Յովհաննէս Թագաւոր ետ զԱնի 'ի ձեռս կայսեր. յետ նորա նոյնպէս արարին և Գրիգոր Մագիստրոս և Գագիկ Կարուց Թագաւոր, զերկիր իւրեանց տուեալ կայսեր՝ ինքեանք անցին առ Ցոյնս ։ Որոց անկ էր պաշտպանել զհայաստան՝ Թողին, իսկ որոց չէր հնար առնել ինչ՝ մնացին [1] ։

Յելս մետասաներորդ դարուն էր՝ զի և Գող Վասիլ իշխանն էանց յաշխարհն եփրատացւոց, և խաչենեցի իշխանք ոմանք և այլք 'ի կողմանս Կիլիկիոյ. Թող և զբազմութիւն որք անցին 'ի Վիրս ։ Սոքա և որք հետևեցան սոցին՝ ամենեքեան կարծէին զտանել փրկութիւն փախստեամբ յօտար երկիր, այլ խաբեցան. զի փախուցեալ

և Աշոտ զայն զօրութիւն և զքաջութիւն զոր 'ի կիր էարկ 'ի կործանել զեղբայր իւր զՅովհաննէս Թագաւոր՝ 'ի կիր ածեալ առ 'ի զդէմ ունել արշաւանաց արաբացւոց և տուղրիլեանց, մի միայն այս քաջութիւն Աշոտոյ միաւորեալ ընդ քաջ զօրաց մերոց՝ բաւական էր առկալ ունել ընդդէմ նոցա յայնմ վայրս պատսպարեալս 'ի Կուր և յԵրասխ գետոց. և մի միայն կառավարութիւն Վասպուրականոյ պահպանութեան որ կատարեալ էր յայնմ ժամանակի 'ի զօրապետութեն՝ կարէր զամենայն ըստ կարգի անօրինել, եթէ կարգեալ լինէր զօրապլուխ ։

1 Այսմ անանկութեան 'ի վերայ հասեալ և Առաքել պատմագիրն, գրէ 'ի Թղթ. 145. «Ազգս Հայոց որք մատամբք և կամօքն իւրեանց կուրացուցին զաչս իւրեանց. զի ինքեանք կործանեցին զԹագաւորութիւն իւրեանց, նենգութեամբ և անհնազանդութեամբ իւրեանց, և եղեն առակ կոխան, և ծառայք և գերիք այլոց ազգաց և Թագաւորաց ։ Եւ 'ի ժամանել նեղութեանց իւրեք 'ի վերայ ինքեանց՝ իբրև ոչ գտանեն զօգնութիւն յուսակէ, անճար մնացեալ փախստական լեալ ճողոպրին այսր և անդր . . . ամենայն ազգն Հայոց եղեալք վտարանդիք եղեն յիւրաքանչիւրոց տեղեաց և հայրենեաց և և բնակութեանց և յաշխարհաց, և տարագրեալ զնացեալ ընդդէմ երեսաց՝ ցիր և ցան եղեալք սփռեցան ընդ ամենայն աշխարհ »։

սենեքերիմեանք զկնի ժամանակաց մի առ մի սպանեալ սպառեցան 'ի Յունաց. 'ի Կիլիկիա փախուցեալքն յետոյ ուրեմն յեգիպտացւոց կամ սպանան և կամ գերի վարեցան, փախուցեալ իշխանքն յԱնւոյ 'ի Ղրիմ՝ 'ի միում աւուր կոտորեցան 'ի Կետիք Ահմետ փաշայէն. միայն փախուցեալքն յառաջ և զկնի յԵւրոպա՝ ապրեցուցին զանձինս, բայց ոչ զազգն. զի անդ ծնեալ և սնեալ որդիք և թոռունք նոցա 'ի նոցին յաւելան ազգ. ամենայն համգամանօքն, օտարացեալք 'ի բնիկ ազգէ իւրեանց։

Յետ առնլոյ Յունաց զԱնի՝ նոքա տիրեցին սահմանացն Բագրատունեաց։ Ընդ դադարիլ, ասէ Կիրակոս, թագաւորական իշխանութեանս Բագրատունեաց, “ Թէպէտ և դոյր ուրուք գաւառան տէրուն, որպէս և Կիւրիկեան (զորմէ տեսցես առօրէ), կամ այլ ուրուք, յորժամ տեսին զանհնարին աղէտս կործանման զգլխաւորի տեղւոյս՝ (որ էր Բագրատունեացն), անձնատուր եղեալք ընդ ձեռամբ վիշապին, կամաւ ելին փախստեամբ առ կայսրն Յունաց, և նոքա տիրեցին ընդհանուր աշխարհիս „։ Կամի ասել. տիրեալ միջնաշխարհիս Հայոց, ուր էր Շիրակ. զի յայնմ ժամանակի բազում սահմանք Հայոց էին ոչ ընդ տէրութ Յունաց, այլ արաբացւոց և սկիւթացւոց. զորմէ տես 'ի գլուխն Պատմութ։ Յոյնք ոչ կարացին պահել զառեալ տեղիսն, զի ոչ կարէին յանխնայ հեռաւոր աշխարհէ հետզհետէ բազմութիւն զօրաց առաքել 'ի պաշտպանել զԱնի և զշրջակայս յանխնայ յերկար ժամանակս ընդդէմ յարձակմանց Տուղրիլայ և Ալփասլանայ։ Մանաւանդ զի մնացեալ իշխանքն Հայոց յԱնի՝ միշտ նենգութ խորհելով յանհնարին երկպառակութիւն կային, և զմիմեանս մատնէին կայսեր իբր ձեռնտուս առ թշնամիս. իսկ հասարակ ժողովուրդն անտէրունչ մնացեալ՝ զամենեսին արհամարհէին. “ Իսկ բնակիչք աշխարհիս, ասէ Կիրակոս, զմիմեամբք ելանելով անձնահանի յոխորտանօք, և 'ի միմեանս արձակեալ խորամանկութ և ստաբանութ, խորհէին զխորհուրդս նենգութ՝ մատնելով զմիմեանս կայսեր „։ Կատարած այսր ամենայնի եղև այն՝ զոր գրէ Սամուէլ 'ի նշա. “ Ապա զկնի Դուզկայ Յոյնք տիրեցին ամս քսան և մի, զի ոչ ոք էր 'ի նմին ազգէ. և զկնի քսան և մի ամին եկն Ալփասլանն, և առ զմայրաքաղաքն Հայոց զԱնի, և յայժ կործանեաց զեկեղեցիսն Աստուծոյ „։ Եւ որպէս գրէ այլուր, “ Բնաջինջ արար զազգս մեր „։

Գիտելիք վասն ժամանակի Բագրատունեաց։

Ա. Նախկին Բագրատունիք զԹագն Թագաւորական առնուին յամիրապետէն և 'ի կայսերէն եւս. որ է ասել՝ թէ հրամանաւ նոցա նստէին Թագաւոր. որպէս և յայտնի գրէ Սամուէլ 'ի թուին յԻ. թէ Աշխ Արշին կոչեցեալ ոստիկանն "եկեալ յամիրապետէն յետ ապարապետութեանն՝ իշխանաց իշխան զնա Հայոց կացուցանէր զամս երեսուն. և ապա յաղագս առաւել լաւութեանն թագաւորական պսակաւն Ճոխաբար թագաւորեալ, թագ կապեալ յեր-կոցունց թագաւորացն՝ յիսմայէլացւոց և յունականէն,,. այս էր Ճ. Աշոտ: Միայն զԱշոտ Ա. առանց խնդրելոյ թագ՝ ինքեանք նախարարքն նստուցին "յինքնակալութեան իշխ պայմանի պատուոյ զնա համարեալ,,: Զայս ասէ Յովհաննէս կաթ. իբր զի ոչ սպասեցին նախարարքն հրամանի և թագի, ոչ կայսեր՝ ըստ որում դժուարին էր յայնմ խռովայոյզ ժամանակի հաղորդակցիլ, և ոչ յամիրապետէն կամ յոս-տիկանէն նորա՝ ըստ որում 'ի կռուի էին յայնժամ. բայց իրօք չէ ոչ ինչ ինքնակալութի, այլ Աշոտ բաց 'ի հարկատու լինելոյ ոստիկանի ամիրապետին ըստ այլոց, նաև ըստ իշխանութ̃ նորա թագաւորէր, և գիտութ̃ կայսեր. վասն որոյ գրէ Ասողիկ Գ. 3. վասն Ճ. Սմբա-տայ. "Զկնի Աշոտոյ յՃ. թուականին թագաւորէ Սմբ-բատ որդի նորա ամս քսան և չորս կամակցութ̃ Լեւոնի թագաւորի Յունաց,,: Զսոյն պարտ է իմանալ և վասն այլոց թագաւորաց. ուստի յորժամ զկնի դէպ եղև Ե. Աշոտոյ գնալ 'ի Բիւզանդիոն, յայնժամ կայսրն Կոս-տանդին Պերփերուժէն "թագաւորական հրահանգաց հանդիսիւ ճոխացուցանէր . . . և զարդարէր զնա ծիրա-նեզգեստ փառօք,,, ասէ Յովհաննէս կաթողիկոս. որ էր ընդունել զնա թագաւոր: Իսկ զկնի յամուսնանալն այսր Ե. Աշոտոյ ընդ դստեր Սահակայ Սևադայի մեծի իշխա-նին Գարդմանաց՝ յայնժամ և Յուսուփ ոստիկան առա-քեաց նմա, ասէ, թագ արքայական: Եւ քանզի յետ այսո-րիկ տէրութ̃ Հայոց օրըստօրէ երթայր և նուազէր, և սահմանն հայաստանեայց հետզհետէ անցանէր 'ի ձեռս արաբացւոց և այլոց, նախարարքն ոչ սպասէին հրամանի և թագի 'ի մեծ ոստիկանէ ամիրապետին, կամ 'ի կայսե-րէն. իսկ վերջին թագաւորքն Բագրատունեաց ոչ 'ի ժա-

մանակս Թագաւորելոյ իւրեանց և ոչ զկնի ընկալման Թագ․ 'ի Նոցանէ ։

Բ․ Առաջին Թագաւորք Բագրատունեաց, որպէս և Ա․ Սմբատ, տիրէին նաև 'ի վերայ Վրաց․ “ Իսկ Սմբատ (որպէս գրէ Ասողիկ Գ․ 3) Թագաւորեալ տիրէ բոլոր հայրենեաց իւրոց Հայոց և Վրաց, ժառանգելով զքաղաքս հակառակորդաց իւրոց„ ։ Մանաւանդ Թէ ինքն Սմբատ էր որ Թագաւոր Վրաց կացոյց և երկրորդ իւր զայն՝ որ յառաջ առ Թոմայի արծրունւոյ կոչի Իշխան, իսկ առ Յոհաննու կաթողիկոսի Կիւրապաղատ․ “Բայց մեծ կիւրապաղատն Վրաց Ատրներսեհ, ասէ, անվրդով և անշուշտ ուխտ խաղաղութե և սիրոյ միաբանութե ընդ արքայի Սմբատայ պահէր 'ի բոլոր մտաւունս . . . ընդ որ յաւէտ ինն հաճեալ հաւանեալ արքային Սմբատ . . . ապա Թագ կապեալ նմա . . . նաև զինու զարդարեալ ըստ օրինի Թագաւորաց՝ կացուցանէ զնա Թագաւոր Վրաց աշխարհին, և երկրորդ զնա իւրոյ տէրութեն հաստատէր„ ։ Սորին վասն զՏայս չէ պարտ համարել Թէ ընդ տէրութե Վրաց լեալ իցէ՝ 'ի բանից ինչ Յոհաննու կաթողիկոսի, այլ կալուածս միայն ունել 'ի նմա սորին Ատրներսեհի, որպէս յայտնի գրէ յասելն վասն Սմբատայ Թագաւորի․ “ Տագնապաւ անկանէր 'ի կողմանցս ամրոցացն Տայոց՝ 'ի կալուածս կիւրապաղատին Ատրներսեհի սիրեցելոյն իւրոյ„ ։ Այս Սմբատ տիրէր նաև 'ի վերայ Աղուանից, որպէս ցուցանէ այս բանս Թոմայի արծրունւոյ Դ․ 10․ “Գրեթէ ամենայն իշխանք Հայոց, Վրաց և Աղուանից եկեալ էին ընդ զօրս Հայոց 'ի վերայ աշխարհին Ապահունեաց„ ։ Նաև հարկս առնոյր ըստ նորա Դ․ 5․ “ Յայնժամ Թագաւորն (Սմբատ) դեսպանս արարեալ յամենայն սահմանս տէրութե Հայոց, Վրաց և Աղուանից, և առ քաղաքացիսն, և հարկապետս, գաւառակալս, և որք սիրողաբար առ նա ընդ հնազանդութեն հարկ հարկանէին„ ։ Իշխէր նաև 'ի վերայ եգերացւոց Թագաւորին, զորմէ գրեալ եմք 'ի գլուխն Պատմութեան ։ Արդ որպէս այս Ա․ Սմբատ՝ նոյնպէս և այլ նախկին Թագաւորք Բագրատունեաց՝ Թուին տիրեալ 'ի վերայ Վրաց և Աղուանից ։

Գ․ Ի յետին ժամանակս Բագրատունեաց սկսան բաժին երկրի հանել և միւս արքայորդւոց, զոր չիք տեսանել մինչև յաւուրս Գ․ Աշոտոյ ողորմածի․ այսպէս Բ․ Սմբատ զմասն ինչ իւրոյ երկրին 'ի բաժին եհան միւս եղբօրն որ կոչէր Գուրգէն․ որոյ հրամանաւ ժառանգէր

Գուրգէն ըստ Վարդանայ՝ զՏաշիր, զՏաւուշ Մեծորդւովք Ձորոյգետոյն, զԿայեան, զԿայծոն և զխոռակերտ և զԲազկերտ և զայլ բերդս անուանիս, որք և անցին ժառանգութեամբ յորդւոց յորդիս։ Նոյնպէս յաւուրս Յոհաննու Թագաւորին ոչ խաղաղացաւ երկիրն 'ի ձեռաց Աշոտոյ եղբօր նորա, մինչև նախարարքն հարկադրեալ հանին նաև նմա բաժին արտաքոյ Շիրակ գաւառին, որ կոչեցաւ Դրուց աշխարհ։ Այլ մանաւանդ յաւուրս վերջին Թագաւորաց ցայն վայր եհաս ըմբոստանալ Թագաւորազանց՝ զի և այլ մերձաւորք Թագաւորին սկսան ոչ միայն ուրոյն երկիր սեփականել, այլ և զանուն Թագաւորի առնուլ. զորմէ ստորև։

Դ. Ի սկսանել տէրութեան Բագրատունեաց՝ մեծ դըժբաղդութիւն նոցա եղև երևելին և զօրանալն արաբացւոց, իսկ մերձ յաւարտելն՝ երևելին սկիւթացւոց Թուրքաց, զոր Տուղրիլեանս կոչեմք. ընդդէմ որոց ոչ կարաց տոկալ և ոչ իսկ Յունաց կայսերական զօրութիւն. և եթէ մերոց քաջութիւն ոչ զդէմ ունէր հանապազորդեան մաքառման՝ գուցէ և նա 'ի վտանգի լինէր կործանման. այլ ցորչափ տևեաց այս տէրութիւն Բագրատունեաց՝ եկաց իբրև նախապարիսպ կայսերական սահմանաց ընդդէմ արաբացւոց անընդհատ պատերազմաւ։ Երբեմն պատերազմէին Բագրատունիք, և երբեմն հարկս հարկանէին արաբացւոց. բայց և յայնժամ այլ իմն վտանգ 'ի վերայ հասանէր նոցա. զի 'ի հարկելն արաբացւոց՝ Յոյնք զչարէին. իսկ յանցանելն առ Յոյնս՝ արաբացիք կատաղէին։ Եւ այնպէս ընդմէջ երկուց անկեալ՝ ոչ գիտէին զինչ գործիցեն։ Յոհաննէս կաթողիկոս պատմէ վասն ա՛. Սմբատայ՝ թէ միայն նորոգելն նորա զհին ուխտ սիրոյ ընդ Լևոնի կայսեր Յունաց՝ բաւական եղև գրգռել զԱփշին ոստիկան խաղալ զօրօք 'ի վերայ Սմբատայ. “Իսկ իբրև զայս ամենայն լսէր Թագաւորն Սմբատայ ոստիկանն Ափշին, և զհաստատուն անշուշտ սիրոյ միաբանութիւն նորա ընդ կայսեր, 'ի խոր խոցեալ և խանդացեալ ընդ իրսն՝ եթէ դաւ ինչ նմա 'ի նոցանէ լինիցի, առեղծանել հատանել փութայր զկապ միաբանութեան սիրոյ նոցա,,։ Սմբատ ոչ զերծաւ 'ի ցասմանէ նորա մինչև ել ընդ առաջ նորա և խելամտեցոյց ասելով, թէ այն սէր զոր կալաւ ընդ կայսեր Յունաց՝ հայէր յօգուտ և 'ի շահ արաբացւոց. “Ընդէ՞ր, ասէ, զչարեալ դիմեալ գաս յոչինչ պէտս. զի թէ սէր ընդ կայսեր եղի, և այն ևս վասն ձեր օգտի, զի թերևս որ պիտոյ է

ամիրապետին մեծի, և զքո եւս դիւրաւ զպէտս յունական-
նաց անտի գտանել մարթասցիս, և 'ի նպաստ օժանդա-
կութեան ձեզ ընծայել զերևելի համադերձից և զար-
դուց և զպաստուց վայելուչ. այլ և վաճառականաց որք
ընդ գենիդ քո բացեալ ճանապարհ, զի արասցեն մուտ
յաշխարհս նոցա, և 'ի նոցա լիութենէն փարթամա-
ցուսցեն զձեր գանձարանսդ ,,: Սոքա առաբացիք և տուղ-
րիլեանք եղեն երկու Թշնամիք զօրաւորք և աշխարհի
ահարկուք, որք ոչ գտանէին յաւուրս Արշակունեաց.
և սոքա եղեն գրեթէ գլխաւոր պատճառք կործանման
Բագրատունեաց. և ըստ այսմ մասին արդարացեալ
երևին Բագրատունիք քան զԱրշակունիս՝ որք իւրեան-
կամ պատճառք եղեն վերջանալոյ Թագաւորութեան
իւրեանց. միայն զի և յաւուրս Բագրատունեաց որչափ
առաւելան արտաքին Թշնամիք հզօրք՝ նոյնչափ և առա-
ւելան ներքին երկպառակութիք և ներքին Թշնամիք:

## Դ. ԺԱՄԱՆԱԿ ԲԱԺԱՆՄԱՆ ԱՇԽԱՐՀԻՍ Ի ԲԱԶՈՒՄ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՍ ՑԱՒՈՒՐՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

### Թագաւորութիւն Արծրունեաց կամ Վասպուրականի:

Ի մէջ զանազան Թագաւորութեանց որք յարեան յաւ-
ուրս Բագրատունեաց՝ առաջին այն է, զոր կանգնեաց
Գագիկ իշխան արծրունի 'ի սկիզբն տասներորդ դարու
'ի Վասպուրական, մինչդեռ Թագաւորէր 'ի վերայ համօ-
րէն Հայոց ա̃. Սմբատ արքայ, որոյ էր քեռորդի: Տես
զայսմանէ և 'ի պատմութեան տոհմին Արծրունեաց: Թէ-
պէտ միտք Գագկայ էր Թագաւորել 'ի վերայ համօրէն
Հայոց, որպէս ցուցանեն բանք Յովհաննու կաթողիկոսի,
բայց 'ի Վասպուրական միայն Թագաւորեաց. ուր և յա-
ջորդութեն կալեալ՝ մի զկնի միոյ պայազատեցին սորին
կարգաւ.

Ա. Գագիկ:

Բ. Դերենիկ Աշոտ որդի Գագկայ:

Գ. Աբուսահլ Համազասպ՝ որդի Գագկայ՝ եղբայր Դերենկան:

Դ. Աշոտ Սահակ՝ որդի Աբուսահլի:

Ե. Գուրգէն Խաչիկ՝ եղբայր Աշոտոյ՝ որդի Աբուսահլի:

Զ. Սենեքերիմ Յովհաննէս եղբայր Գուրգէնի, որ զերկիր իւր տուեալ 'ի Յոյնս՝ փոխադրեցաւ 'ի Սեբաստիա 'ի 1021. զորմէ տես 'ի մեծ Հայս 'ի Վասպուրական: Իսկ 'ի Սեբաստիա նստան մանկանունք թագաւորք՝ Դաւիթ արծրունի որդի Սենեքերիմայ, Ատոմ արծրունի և Աբուսահլ եղբարք Դաւթի:

Երկրորդ թագաւորութիւն եղև Աշոտոյ որդւոյ Շապհոյ. առ յառաջ միայն սպարապետ էր, և էր հօրեղբօրորդի Բ. Աշոտոյ հարազատ թագաւորի Հայոց: Զկռուոյ որ 'ի մէջ երկոցունց Աշոտոց և զհաշտութենէ՝ ճախադոյն ճառէ Յովհաննէս կաթողիկոս, որպէս և յիշեցաք 'ի վերոյ. այլ Ասողիկ Գ. 5. այնպէս ցուցանէ՝ թէ միայն Յուսուփայ էր կացուցանել զնոյն զայս Աշոտ իբր յաջորդ Սմբատայ թագաւորի, և ոչ յաւելեալ ինքն թագաւոր. "Այլ և եղբօրորդին Սմբատայ, ասէ, Աշոտ՝ խորհրդակից եղև նոյն չարախորհ մեշտալին (Յուսուփայ ոստիկանին), թագակապի 'ի նմանէ 'ի տեղի հօրեղբօր իւրոյ" Սմբատայ: Այլ սորայս ոչ կալաւ՝ ոչ յաջորդութիւն ինչ և ոչ անուն, այլ յանձն իւր վերջացաւ:

Թագաւորութիւն Կարուց կամ Վանանդայ:

Երրորդս այս թագաւորութիւն սկիզբն կալաւ 'ի մէջն առատասներորդ դարուն 'ի Մուշեղայ, որ էր եղբայր Աշոտոյ ողորմածի, և նստէր 'ի Վանանդ. "Զկնի Աբասայ, գրէ Ասողիկ Գ. 7. թագաւորեաց Աշոտ որդի նորա, որ և Շահնշահ կոչիւր, ամենքեան և հինգ[1]. և Մուշեղ եղբայր նորա առ նովաւ թագաւորեաց 'ի Կարս": Զի քանի մի նախարարս առ ինքն ժողովեալ՝ նոքօք նստաւ թագաւոր 'ի Կարս քաղաք Վանանդ գաւառի. վասն որոյ երբեմն կոչի թագաւոր Կարուց, և երբեմն թագաւոր Վանանդայ. զոր օրինակ յասելն Ասողկայ Գ. 43. "Եւ սակաւ ինչ յառաջ խաղացեալ թագաւորն Վասիլ, եկն առ նա թագաւորն Վանանդայ մանուկն Աբաս"[2]: Այլ ոչինչ գըժտութիւն եղև յանմանէ 'ի մէջ երկուց եղբարց և երկուց թագաւորաց:

1 Տիրապէս Շահնշահ կոչեցաւ Բ. Աշոտ՝ Երկաթն ասացեալ. իսկ աս է Գ. Աշոտ՝ Ողորմած յորջորջեալ:

2 Տես և 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 435:

Երկրորդ՝ Աբաս որդի Մուշեղայ նստաւ զկնի նորա. «Յաւուր ժամանակի (ասէ Մատթէոս Ուռ․. այսինքն՝ 'ի ժամանակին յորժամ հաշտեցուցին զԱշոտ ընդ եղբօր իւրում Յովհաննու Թագաւորին Անւոյ) նստաւ Աբաս 'ի Կարս Թագաւորական իշխանութեան[1], հրամանաւ ազգականին իւրոյ Գագկայ Հայոց արքային (Անւոյ), և Գուրգէն յԱղուանից աշխարհէն»։

Երրորդ՝ Գագիկ որդի Աբասայ, զորմէ գրէ Վարդան. «Իսկ Թագաւորն Կարուց Գագիկ .... նեղեալ յերկիւղէ Թուրքացն[2], տայ զհայրենիս իւր 'ի Յոյնս. և առնու զԾամնդաւ և զԼառիսա և զԱմասիա և զԿոմանա և դաստակերտս Ճ. որ է գեւղս»։ Սա գնաց առ կայսրն Միքայէլ որդի Տուկիծայ, որ նստաւ կայսր 'ի 1071։ Ըստ այսմ և Մատթէոս 'ի թուին ՃԺԶ. ասէ, թէ 'ի գալն Ալփասլանայ 'ի վերայ Անւոյ, Թագաւորն Կարուց Գագիկ հնարիւք իմն զերծաւ 'ի նմանէ. «Եւ եղև զկնի աւուրցս այսոցիկ թողեալ Գագիկ զԿարս՝ և գնաց 'ի Հոռոմս. և Թագաւորն Տուկիծ տայր նմա զԾամնդաւ, և անդ եղեալ Գագիկ ազատօք իւրովք, և թողեալ զտունս հայրենեաց իւրոց»։

### Թագաւորութիւն Բաղաց, Կապանի, Սիւնեաց կամ Սիսական, և Փառիսոսոյ։

Չորրորդ Թագաւորութիւն կանգնեցաւ նոյնպէս 'ի մէջն անդ տասներորդ դարուն 'ի Բաղք գաւառին Սիւնեաց ըստ Սմբատայ Սպարապետին? օրպելեան, և յանուն զանազան տեղեաց զանազան անուամբք կոչեցաւ[3]. ըստ այսմ Վարդան

1 Գովութիւն Աբասայ մեծ է առ Արիստակիսյ գ. 17. վասն որոյ զբանն նորա յառաջ բերցուք. «Սա յառաջագոյն քան զԹագաւորելն էր մանուկ փոյթ և կայտառ, և կարծիս այսպէս անարօտոյն անհաղորդ լինել բարեաց ինչ գործոց հոգևորաց. իսկ յորժամ եհաս նա յաթոռ Թագաւորութեանն՝ երևեցաւ նա այր շքեղ, ըստ հանճարոյ և իմաստուն՝ ընդ առաջին խնամատարութեան համարեալ և գործեալ նա յայր այլ, և սկիզբն արարեալ նա ամենայն բարեգործութեանց՝ նախ և առաջին եբարձ նա յաշխարհէն իւրմէ զաւազակութիւն ... Նա և որ առաւելն անկարգութիւն էր յաշխարհիս Հայոց իշխանաց և ազատաց՝ որովայնութեան ապականեալ զկարգեալ առաւելս աղահից, զշնաւեշտութիւն և զլրբութ և զառաւելս շուայտութեաց, բայց 'ի մէջ կթեղէն կերակրովք, զայն անձամբ օրինակեալ, ոչ 'ի կթեղինաց ինչ և ոչ 'ի ձկանց ճաշակեալ, և հացիւ և բանջարեղէն միայն անցուցանէր զաւուրսն զայնոսիկ զորենաւորեալս կանոնիւ»։ Զայլ բարեկարգութիւնս նորա տես 'ի գլ. Բաղաց։

2 Իմա զաւազակեալն. յաջորդ Տուղրիլայ եղև Ալփասլան։

3 Տես վասն այսր 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 236. 294. և 309։

և տեղս երկրպագեան որդիք մեծին Աշոտոյ, որ Աւագ աշո-տեանք կոչին. իսկ Գրիգոր առաւել ևս կէր զամենօրհնեալ և մեծահաւատ բարեպաշտուհին Հաշանդուխտ 'ի տանէն Աղուանից, դուստր նոցին Թագաւորացն մեծին Սևադայի»: Բայց քանզի և սա ևս անորդի մնաց, «Այս խորհեցաւ, ասէ, 'ի միասին ընդ իշխանսն՝ ածին յԱղուանից զՍենեքարիմ եղբայր նորին Հաշանդխտոյ, Թագաւորական մանուկ, յոյժ գեղեցիկ տեսլեամբ և առոյգ հասակաւ, հանճարեղ և իմաստուն և երկիւղած յԱստուծոյ. և տուանեան զնա ժառանգ իւրեանց Թագաւորութեան առն իւր»: Վասն զի յաւուրս սորա յոյժ զօրացեալ էր ասէ ազգն Տաճկաց, «Եւ յոլով գաւառս շարժեալ հանեալ 'ի Սիսական աշխարհէս 'ի ձեռաց բնիկ տերանցն»: Այլ յայժամ Մելիք շահ եկեալ սուլտանն՝ գոլով այր բարեպաշտ՝ յոյժ մեծարեալ եղև 'ի նմանէ Սենեքարիմ, և մինչև 'ի մահ Մելիքշահին՝ որ մեռաւ 'ի ՇԽԱ. 1092. «Յոյժ երևելի փառօք Թագաւորեաց, ասէ, 'ի տանն Բաղաց. և ընդարձակեաց զամենայն սահմանս տէրութեան իւրոյ»: Սմա եղեն երեք որդիք, Գրիգոր, Սմբատ, Սևադայ և դուստր մի. և քանզի զկնի Մելիքշահին ամենայն ամիրայք կամէին լինել անձնիշխանս, ամենայն շփոթութիւն աշխարհիս քայքայեցաւ. մինչև Փատլուն ամիրայն Գանձակայ և Պարտաւայ յարձակեցաւ առնուլ զՍիւնիս. այլ անկեալ զամրութեան բերդորէից նորա, անյայտս լեալ կոչեաց զԳրիգոր շքեղակացի իշխանին որ ընդ նմա էր, բանս եդ սիրով իջուցանել տալ զՍենեքարիմ արքայ 'ի բերդէն, երդուեալ տուեալ ոչինչ վնասել նմա. սակս թէ ոչ՝ սպառնացաւ փոխանակ Սենեքարիմայ զիւր գլուխն հատանել: Գրիգոր զայս ամենայն ծանուցեալ Սենեքարիմայ՝ այն ինչ հաւատալով բանից երդմանն էջ առ ամիրայն Փատլուն, խեղդեն և սպանանել զՍենեքարիմ. «Ահա այսպէս շիջաւ, ասէ, ճրագն քրիստոնէից՝ որ կայր մնացեալ յամուրսն Բաղաց»[1]:

Իսկ այսպէս գլխաւոր պատճառ վերջանալոյ այսր Թագաւորութեան եղև անզաւակութիւն կամ սպառումն ցեղին[2]. որպէս և Վարդան յայտնի գրէ. «Թագաւորքն որ անդ ('ի գաւառն Բաղաց և Կապանի) հայկականք էին. և ոչ բարձաւ մինչև 'ի յետին աւուրս եղելոյ երկուց եղբարց

1 Զժամանակն նշանագրէ Սամուէլ Անեցի, որպէս լեալ տարւոյ 'ի ՇԽ. կա. «Յամի յորում էր Թուականն Հայոց ՇԽԸ. եղև սիւղին աւերածոյ Կապան գաւառակի, և անուր աշխարհին Բաղաց, և սպառեցաւ տէրութիւն նոցա, Թագաւորաց և իշխանաց»:

2 Զորմէ տես 'ի մեծ Հայս:

անդրանկաց Սմբատայ և Գրիգորոյ, որ առեալ զմանուկն Սենեքերիմ Հայազարմ՝ եդին Թագաւոր ժառանգորդ իւրեանց, որ և սպանաւ հրամանաւ Փատլունայ. չիջաւ Ճրագն որ անդ, և տիրեցին Պարսք"։ Վարդան յայս բան մինչև 'ի Սմբատ և 'ի Գրիգոր խզուցանէ զցեղն. զի Սմբատ և Գրիգոր մեռան անորդի. զկնի Գրիգորի Թագաւորեալն Սենեքերիմ՝ էր եղբայր Շահանդխտոյ կնոջ Գրիգորի. և այսր Սենեքերիմայ որդին էր Նախագրեալն Գրիգոր, զոր յիշեցաք 'ի վերոյ։ Բայց Ասողիկ Գ. 48. Նաև զՍենեքերիմ և զորդի նորա զԳրիգոր դնէ 'ի կարգս ցեղին. "Ցայնժամ ժամանակի, ասէ 'ի ՆԾԷ. Թուին. իշխանքն Փատլոնոյ որ 'ի Հայկազնեայ ազգանց՝ բարեալ մինչև ցՍենեքերիմ և 'ի Գրիգոր՝ սպառեցան մահուամբ, զորոց զաշխարհն բաժանեալ հակառակութիւ 'ի մէջի իւրեանց՝ առ քաջն Հայոց Գագիկ և Փատլունն ամիրայն Գանձակայ"։

Ահա չորեքին այսորիկ Թագաւորութիւնք են զորս յիշատակեն գրեթէ ամենայն պատմագիրք, որոց և տեղիք են յայտնի 'ի մեծ Հայս, Թագաւորեալք պայազատութեամբ ազգաւ կամ բազում ամս մի զկնի միոյ. միայն շարունեան Աշոտոյ Թագաւորութիւն եղև երկրորդ 'ի կարգին, որ անպայազատ մնացեալ՝ յանձն իւր սկսաւ և յանձն իւր աւարտեցաւ ըստ Նախագրելոցս։ Այլ բաց 'ի չորեցունց աստի յիշատակին 'ի գիրս և այլ զանազան Թագաւորութիւնք, որք Թէպէտ Հայկականք են՝ բայց կամ այլով անուամբք և կամ յամանց միայն յիշատակին. զորոց ուրոյն ուրոյն խօսեսցուք յայսմ վայրի, հմուտ առնելով զընթերցողսն կարևոր տեղեկութեցս՝ յատուկ և որոշ իմանալ որ ինչ 'ի գիրս նախնեաց կան յաղագս այսոցիկ։

Թագաւորութիւն Բագրատունեաց Աղուանից, նոյնպէս Կիւրիկեան ։

Աշոտ Գ. Բագրատունի Ողորմած անուանեալ՝ եթող, ասէ Վարդան, երիս որդիս. առաջին Սմբատ, որ պայազատեաց զկնի հօր իւրոյ յԱնի. երկրորդ՝ Գագիկ, որ նախ հալածական եղև վասն կարծեաց ինչ դրժմանց, բայց 'ի մեռանել Սմբատայ՝ կոչեն և Թագաւորեցուցանեն, որ եղև Բ. Գագիկ. իսկ կրտսեր որդին Գուրգէն, որ յետ տամներորդ դարուն՝ "ժառանգէ, ասէ, զՏաշիր Սևորդւոյքն Ձորոգետին և զԿայեն և զԿայծոն, զխուռխուռունիք որ 'ի Խոռայ շինեցաւ, որ է Խոշոռնի և Խոռակերտ,

և զԲագուանիք որ է Բագկերտ 'ի գաւառն Տաշրայ, և այլ բերդ ամրուանիք եհաս Գուրգենայ՝ զոր Վիրք Սոմխեթ կոչեն. և 'ի նմանէ սերեցան թագաւորքն Դաւիթ, Աբաս և Կիւրիկէ, յորոց կանայքն կրօնաւորք՝ Մաքեան և Բուզուքան,,:

Իսկ մեռանելն Գուրգենայ՝ պայազատեաց որդի նորա Դաւիթ. որոյ ընդարձակեալ զսահմանն իւր՝ զԹագաւորի ընկալաւ զանուն, արքայանիստ իւր արարեալ զՇամշուղէ, զորմէ գրէ Ասողիկ Գ. 30. "Իսկ եղբօրորդի նոցա Սմբատայ և Գագկայ (թագաւորացն Բագրատունեաց) Դաւիթ որդի Գուրգենայ համադերձ եղբարբն իւրով Սմբատաւ՝ առնու զկողմանս Տաշրայ և Վրաց դաշտի, զՇամշուլտեայ մեծ քաղաքանիստ գլխաւորն նիստ արքունական պատրաստեալ իւրեանց, արագապէս տիրէ քաղաքին Դմանեաց. հնազանդեցուցանէ և զամիրայն Տփխեաց քաղաքաւն իւրով,,: Վասն որոյ և տարաւ կոչէ զնա արքայ՝ ասելով. "Իսկ Դաւիթ գեղեցկածաղիկ մանուկն և նորատիք արքայն,,: Այս Դաւիթ կոչեցեալ Անհողին՝ հօրեղբօրորդի Յոհաննու արքային Հայոց՝ օրըստօրէ զօրանալով իշխեաց և 'ի վերայ Աղուանից, և ետ որդւոյ իւրում Գուրգենայ՝ զոր Կորիկէ կամ Կիւրիկէ կոչեցին. "Այս Կիւրիկէ, ասէ Վարդան, որդի էր Դաւթի (Անհողին կոչեցելոյ), որդւոյ Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ ողորմածի: Սմա (Կիւրիկէի) հայրն Դաւիթ (Անհողին) շինեաց զԼոռէ և այլ եւս երկոտասան բերդ. որ կայ թաղեալ 'ի Սանահինն. որոյ թոռունքն Աբաս և Դաւիթ նեղեալ 'ի Վրաց՝ չոգան 'ի տեարմն Բռմանայ (գուցէ Արմանայ), և առին մէն մի բերդս, և կային տառապանօք,,:

Իսկ այսպէս Կորիկէն կամ Կիւրիկէն կոչեցաւ Թագաւոր Աղուանից. "Առաքեաց (ասէ Մատթէոս վասն սուլտանին Ալփասլանայ) առ թագաւորն Աղուանից Կորիկէ, և խնդրեաց զդուստր իւր 'ի կնութիւն, զոր յաղագս ահին տուեալ, և ապա արար սուլտանն ընդ նմա սէր և խաղաղութիւն, և առաքեաց զթագաւորն Աղուանից զԿորիկէ զորդի Դաւթի Անհողինի 'ի քաղաքն իւր Լոռի,,: Յորմէ յայտ է թէ արքայանիստ քաղաք Դաւթի եղև Շամշուղէ. իսկ Կորիկէին եղև Լոռի: Եւ թէպէտ կոչէր թագաւորութիւն Աղուանից՝ բայց էր հայկազանց. վասն որոյ և Սամուէլ 'ի խօսելն զայսմանէ 'ի թուին ՆԶԸ. խօսի իբր զմիոյ 'ի մերոց թագաւորութեանց. զի յետ պատմելոյ զվերջնոյն Գագկայ թագաւորէ, ասէ. "Այլ եւս զի դադարեաց իշխանութ

թագաւորական, պարտ է և 'ի կանոնացս (յաղիւսակացս) դադարեցուցանել (զկարգ յաջորդութեն նոցա). զի թէպէտ և գոյր ուրուք գաւառական տէրութեն, որպէս և Կիւրիկէին, կամ այլ ուրուք,,: Ուր քանն է զամենայն Հայկազեան թագաւորութեանց. և իբր օրինակի աղագաւ յիշէ զայս Կիւրիկէին թագաւորութի որպէս զմի 'ի Հայկազեան թագաւորութեանց. Նմին իրի և այլուր զԿիւրիկէ յայտնի կոչէ Հայոց թագաւոր, որպէս և զԳորգի Վրաց թագաւոր. "Ի ՇՂԶ. թուին 'ի սուլտանն գնացին Հայոց և Վրաց թագաւորքն Կիւրիկէ և Գորգի,,: Իսկ Կիրակոս միայն զցեղն յիշելով կոչէ Բագրատունի. "Իսկ Կիւրիկէ Բագրատունի որ 'ի Լօռէ քաղաքէ՝ զամենայն ժամանակս իւր կացեալ ընդդէմ Վրաց՝ 'ի հաստատուն պահէր զհայրենիս իւր. և յետ մահուան նորա դաւեալք 'ի Վրաց՝ որդիք նորա ելեալ 'ի տանէ հայրենեաց՝ գնացին 'ի Պարսիկս՝ Դաւիթ և Աբաս,,[1]:

Մերձ այս թագաւորութեն Աղուանից՝ յորոյ անուն կոչեցաւ թագաւորութի Կիւրիկէի՝ չէր ինչ այլ 'ի թագաւորութէն, զոր սկզբնաւորեաց Դաւիթ Անհողին, այլ էր նոյն հետզհետէ ընդարձակեալ. և ես համարիմ թէ սահմանն նորա ոչ ելանէր արտաքոյ Հայոց աշխարհին, այլ ձգէր 'ի Գուգարս, յԱրցախ և յՈւտի. վասն զի 'ի տեղիս յիշատակեալս որք ընդ տէրութեամբ Դաւթի և Կիւրիկէի՝ ոչ գտանեմք տեղի ինչ ընիկ Աղուանից երկրին՝ որ էր յայնկոյս Կուր գետոյ, այլ յայսկոյս Կուր գետոյ՝ որ էր աշխարհ Հայոց: Համարիմ ես թէ նոյն իսկ Աղուանք տկարացեալ գոլով յայնժամ, թողեալ զերկիր իւրեանց 'ի ձեռս այլազգեաց թշնամեաց՝ գաղթեալ գեղեալ էին յայսկոյս Կուր գետոյ 'ի սահմանս երից նախագրեալ նահանգացս հայաստանեայց, որք և համօրէն չէին զերծ 'ի բռնութէ այլազգեաց. զոր օրինակ Գանձակ, որ էր տեղի Արցախ նահանգի, անկեալ կայր 'ի ձեռս ամիրայի այլազգեաց: Վասն որոյ և 'ի պատմութիւնս այնր ժամանակի ուր ուրեք յիշատակին տեղիք յանուն Աղուանից՝ անդանօր գտանեմք զսահմանս երից նահանգացս այսոցիկ այսպէս անուանեալ. և այս կրկին պատճառաւ. մի՝ զի այն սահ-

1 Որպէս և այլուր գրէ նոյն ինքն Կիրակոս. "Այլ մերն գաղթական գաւառական թագաւորքն. որպէս Կիւրիկէին որ 'ի Լօռէ քաղաքէ, և որ շուրջ զնովաւ. զի և սա յազգէ Բագրատունեաց էր,,: Իսկ պատմութիւն օրպէլեան գլուխ Ղ. յաւելն վասն օրպէլեանց՝ թէ խնամութիւն կալան "ընդ թագաւորքն Հայոց Կորիկեանց, որք էին բագրատունիք,,:

մնեալք անցեալ էին 'ի ձեռս Աղուանից. և երկրորդ՝ զի և 'ի բնակիչս գաւառնեին ոչ միայն Հայք՝ այլ նաև Աղուանք անդր փոխադրեալք, յորոց վերայ թագաւորեաց այս ցեղ Դաւթի Անհողինի։ Յորմէ զհետ գայ թէ արտաքոյ մեծին Հայոց ոչ գոյր յայնժամ ոչ թագաւորութիւն Աղուանից և ոչ երկիր ընդ տէրութեամբ Աղուանից, բայց եթէ գուցէ սակաւ ինչ տեղիք. վասն որոյ և յայնմ ժամանակի յի-շատակեալ թագաւորութիւն Աղուանից 'ի գիրս մեր՝ պար-տի համարիլ այլ թագաւորութիւն յԱղուանից որ կայր 'ի հնումն, վասն տարբերութեան ցեղի թագաւորին, և վասն տարբերութեան երկրին.

## Թագաւորութիւն Զորոյգետոյ.

Յիշատակեալ 'ի Վարդանայ՝ յասելն վասն Փատլուն ամիրային. "Գոռ զնէ ընդ Գագկայ թագաւորին Զորոյ-գետոյ, և ընդ Կիւրիկէի թագաւորին Աղուանից, և ընդ Բագարատայ թագաւորին Վրաց. և նեղէր զնոսա"։ Բայց այս չէ այլ 'ի նոյն իսկ 'ի թագաւորութէ Բագրատունեաց որ էր յԱնի. զի որպէս գրեալ է մեր 'ի մեծ Հայս 416. Զօ-րոյգետ կոչէր Անի իւր գաւառաւն. և Զորոյգետացի կոչին անեցիք։ Զայս յայտ առնէ և նոյն իսկ նախադրեալ բանն Վարդանայ, յորում յիշէ զթագաւորն Աղուանից, և զթագաւորն Վրաց. միայն զՀայոցն ոչ յիշէ. վասն զի անուամբ Զորոյգետոյ կոչեաց զնա. որոյ թագաւոր էր Գագիկ թագաւորեալ յԱնի։ Սոյնպէս և յասելն նորա. "Ոմն 'ի նոցանէ թագաւորեաց Դաւիթ անուն, որ խնա-մացաւ ընդ արքային Զորոգետոյ", իմանայ զնոյն իսկ զթա-գաւորն Հայոց որ յԱնի. Թէպէտ և դիպուածն զոր պատ-մէ՝ անծանօթ է յայլուստ։

## Թագաւորութիւն Աբխազեաց։

Յիշատակեալ 'ի Մատթէոսէ լէ. "Եւ առեալ Աշոտ (եղբայր Յոհաննու թագաւորին Անւոյ) զօրս 'ի նմանէ ('ի Սենեքերիմայ թագաւորէն Վասպուրականի) և անցա-նէր առ Գուրգէն Թագաւոր Աբխազեաց"։ Իսկ 'ի թիւն խէ. միշտ զանուն թագաւորի տայ Դերենիկան. "Թագա-ւոր Աբխազեաց՝ որում անուն Դերենիկն ասէին... արա-րին ձերբակալ զԴերենիկն զթագաւորն... տարան զթա-գաւորն Դերենիկ 'ի Հեր քաղաքի"։ Բայց զայս ես չէ

պարտ որոշ թագաւորութիւն համարել 'ի Վասպուրական-
նէն կամ յԱրծրունեաց. այլ քանզի դէպ եղև վասպու-
րական իշխանութեան առնուլ զանուն թագաւորի, յոր
ժամ բազում եղբարք լինէին՝ մի ոմն առնոյր զգլխաւոր
իշխանութիւն Վասպուրականի, և միւս եղբարքն բաժա-
նէին զերկիրն 'ի մէջ իւրեանց. յայսմանէ զհետ եկն Մատ
թէոսի զնոյն եղբարս եւ կոչել թագաւոր, մանաւանդ որ
տէրքն Անձևացեաց։ Թէպէտ նաև նախ քան զառնուլն
Վասպուրականաց զանուն թագաւորական, զԱնձևա-
ցեացն կոչէ թագաւոր. այլ թագ. առնուլ նորա ոչ պատմի
ուրեք երբէք։ Ըստ այսմ և զկրտսեր որդին Աբուսահլի
Արծրունեաց թագաւորի զՍենեքերիմ՝ դէպ եղև ոմանց
կոչել Թագաւոր Ռշտունեաց։

Թագաւորութիւն Դարբանդայ։

Յիշատակեալ 'ի Մատթէոսէ 'ի թիւն ՃԾԴ. զի 'ի պատ-
մէն զանցս ՇԻԴ. ասէ՝ նախ յիշեալ զթագաւորս Աղուա-
նից՝ ապա ասէ. "Էին և այլ թագաւորք Հայոց 'ի Դար-
բանդ աշխարհին՝ որ ասի Կապանք, սահմանակից Աւզաց
(Օզաց) և Աղուանից. որք էին թագաւորք անպարտք և
ուղղակրօնք, որք յիշատակին 'ի սուրբ պատարագն ընդ այլ
աստուածասէր սուրբ թագաւորօքն՝ որք էին անուանք
այսոքիկ. Վաչական և Գուշակտական նորին որդին, Փիլիպէ
որդի Գուշակտականին, Սևադա որդի Փիլիպէի, Սենեքերիմ
որդին Սևադայի, Գրիգոր որդի Սենեքերիմայ՝ որ դեռ-
ևս կենդանի (էր), մինչև գրէաք զայս մատենագրութիւս
մեր"։

Հայեցեալ յանուանս Դարբանդ, և 'ի դնելն սահմանակից
Օզաց՝ այժմ անուանելոց Օս, հայեցեալ նաև յանուանս
թագաւորաց՝ որք որոշ են յանուանց թագաւորաց Բա-
ղաց կամ Կապանին, զորս յիշատակեալ է մեր 'ի մեծ Հայս
237. երևի թէ այս կապան ոչ է Սիւնեացն[1], այլ է կա-
պանն Ճորայ որ էր առ Դարբանդաւ։ Վասն որոյ անվրէպ
համարեալ զգրչութիւն Մատթէոսի՝ թուի ինձ լինել անուն
ցեղ ինչ Բաղաց տէրութեան թագաւորեալ յայս կողմն. զի

1 Տես վասն այսր 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 294. Իսկ կապանն Ճորայ յիշատակեալ 'ի Խորենացւոյն Բ. 65. և Գ. 12. նոյն է ընդ այնմ որ կոչի Դուռն Ճորայ, նաև Դուռն Հոնաց. առ որովք դնէ Ղևոնդ գլ. ԺԲ. զՑարաղանդ քաղաքն յանուն. "Որոց եկեալ և մերձ եղեալ 'ի դուռն Հոնաց որ 'ի Ցարաղանդ քաղաքի"։

այս ցեղ որպէս նշանագրեցաք 'ի վերոյ՝ 'ի պատճառս խնամութեան ծառայեալ գաւառ մինչև յԱրցախ, 'ի Խաչէն. մարթ էր նոյնպէս ձգիլ և 'ի կողմանս Դարբանդայ, որովհետև դնէ անդ թագաւորս քրիստոնեայս հաւատով, և կոչէ թագաւոր Հայոց. իսկ քրիստոնէութեան հեռի էր 'ի բնակչաց կողմանցն այնոցիկ. և դնէ անուանս մերձաւորս տոհմին տէրութեան Բաղաց, թէպէտ և օտար անուանք են ։

Նոյնչափ ահա զանազան անուամբ թագաւորութիւնս գտանեմք յիշատակեալ 'ի գիրս մեր 'ի վերջին ժամանակս անդ Բագրատունեաց, յորում նոյն իսկ բնիկ հարազատ թագաւորութիւն երթայր և տկարանայր ։ Զայն է տեսանել և 'ի կործանման այլոց թագաւորաց, յարուամ բազումք թէկն ածեն անուան թագաւորի՝ յորժամ յերերի կայ բնիկ թագաւորութին նոցա ։ Այլ յայսչափ յոգնաթիւ թագաւորութիւնս չորս միայն դնէ Լաստիվերտցի ժէ. այսինքն է՝ զորս յորդւոց յորդի պայազատութե̃ կալան 'ի Հայս. ա̃. Բագրատունեաց յԱնի ։ բ̃. Արծրունեաց 'ի Վասպուրական ։ գ̃. Վանանդայ 'ի Կարս ։ դ̃. Սիւնեաց 'ի Բաղք և 'ի Կապան. «Զորս աթոռս թագաւորութե̃ ունէր Հայք, թող զի (զոր) 'ի կիւռապաղատին իշխանութեն, և զոր 'ի Հոռոմոց » իշխանութեն ունէր ։ Զի որովհետև կիւռապաղատութիւն Դաւթի 'ի տասներորդ դարու բազում գաւառաց և քաղաքաց տիրապետող եղև, Ասողիկ զտէրութե̃ նորա կոչէ թագաւորութ̃. իսկ զորս 'ի Հոռոմոց իշխանութեն յիշէ Լաստիվերտցի, թուի ակնարկել զթագաւորութեց անդր 'ի Յոյնս փոխադրելոց, այսինքն զԱրծրունեացն փոխադրելոց 'ի Սեբաստիա, և զԿարուցն 'ի Ծամնդաւ, որք էին յիշխանութե̃ և յերկրին Հոռոմոց. բայց տակաւ չէին այլ թագաւորութիւնք 'ի նոցունց ։ Սոյնպէս ոչ յիշատակի առ Լաստիվերտցւոյն 'ի կարգս սոցա թագաւորութիւն շառաւիղեալն Աշոտոյ սակս չունելոյն ինչ յաջորդութի ։ Առաւելապէս 'ի դէպ էր 'ի կարգս սոցա դասել զթագաւորութին Կիւրիկէի, որ և էր 'ի ցեղէ հայկազեան Բագրատունեաց, և սահմանն նորա 'ի Հայս, որպէս նշանագրեցաք 'ի վերոյ. վասն որոյ և Հայկազեան կոչեցին Սամուէլ և Կիրակոս, միայն զօտար անուն Աղուանից 'ի վերայ առեալ ։ Այլ վասն ցեղին Բագրատունեաց գիտել պարտ է, զի և յայլ շրջակայ թագաւորութիս սփռեալ գտաւ ցեղ սոցա. զի ըստ Ասողկայ գ̃. 28. և ըստ Վարդանայ, թագաւորքն Վրաց սկսեալ յԱտրներսեհէ բագրատունւոյ որ 'ի տասներորդ դարուն՝ սերեալ են 'ի Բագ-

բառանձնեաց. նոյնպէս և Թագաւորութիւն Ափխազաց ըստ Վարդանայ, որպէս ունիս տեսանել 'ի պատմութեան ցեղի նոցա ։

## Ե. ԵՂԱՆԱԿ ԿԱՄ ԿԱՐԳ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐԱՑ Ի ՍԵՓԱԿԱՆ ՏԷՐՈՒԹԵԱՆ

### Արքունիք և Ներքին Նախարարք ։

Արքունիք կոչին 'ի գիրս մեր և Ռօտան, զորմէ տես 'ի մեծ Հայս 168. կոչի և Ապարանք, և Դուռն, նաև Պա-լատ. զորոյ զպաշտօնեայս 'ի սպասաւորութեն արքայի մի ըստ միոջէ կարգեսցուք յառաջիկայդ. որչափ լինի յիշա-տակեալ 'ի գիրս ։

### ԹԱԳԱԴԻՐ

Զայսմանէ խօսեսցուք անդ, ուր բանք լինին յաղագս տոհմին Բագրատունեաց ։

### ԱՍՊԵՏ

Նոյն անուն պատուոյ՝ որ բազմաց է տուեալ առ եւ-րոպեանս, կոչեցեալ 'ի նոցանէ Էքուէս, Քավալյէռէ. և գաղղիարէն Շըվալյէ, առ մեզ սեպհականեալ է Բագրա-տունեաց տոհմին և եթ. զորմէ տես անդ ։

### ԹԻԿՆԱՊԱՀ

Էր 'ի ձեռս տոհմին Մաղխազունեաց. զորմէ տես՝ ուր ունիմք խօսել զնախարարութենէ նոցա ։

### ՋԻՆԱԿԻՐ

Յիշատակի առ Խորենացւոյն Գ. 22. յաւուրս վասն Տիրիթայ. “Մատուցեալ առ արքայն հանդերձ բարե-կամաւ իւրով Ջինակրաւ արքային՝ որ 'ի Մամիկոնեան տոհ-մէն էր”։ Եւ ապա Գ. 25. ասէ. “Եւ առաւել ևս զգրգռէր զարքայ (զԱրշակ) Վասակ Ջինակիրն նորա”։ Սա էր այլ 'ի Թիկնապահէն՝ որ Մաղխազունեացն էր սպասաւո-

րութիւն. իսկ զինակրութիւն զուցէ միշտ Մամիկոնեանցն էր գործ, ըստ որում նոցա էր սպարապետութիւն։

## ՍԵՆԵԿԱՊԵՏ

Յիշատակեալ առ Բուզանդայ Դ. 20. «Որոյ անուն Փիսակ կոչիւր, որ Սենեկապետն էր արքային Տիրանայ ազգաւ սիւնի»: Եւ Խորենացին Գ. 22. վասն Նորին Տիրանայ ասէ. «Հեղձամահ եղեալ յիւրոց Սենեկապետաց»: Սենեկապետն կրէր ընդ մէջ իւր սուսեր արքունի ըստ գրելոյ Բուզանդայ Դ. 3. վասն Մեծին Ներսէսի. «Այլ 'ի ժամանակին յայնմիկ էր 'ի վերայ զինուորութեան 'ի գործակալութեան, սիրելի Սենեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ 'ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեան 'ի ներքոյ և արտաքոյ». և «Կայր 'ի սպասու թագաւորին մօտ 'ի մերձ արքային, զարքունական սուսերն զպողովատին զունկերպատեանն հանդերձ ականակապ մարգարտազարդ կամարաւն 'ի սպասու նորա բարձեալ ունէր»: Այլ առաւել քաջայայտ գրէ այսպէս. «Թագաւորն Արշակ ինքն ձգեալ զսուսերն արքունական կամարաւն, զոր նմա Ներսէսն բարձեալ ունէր 'ի սպասու թագաւորին ըստ օրինաց սենեկապետութեանն, 'ի բաց հանէր 'ի նմանէ»: Զոր և կրկնէ Մեսրոպ 'ի Թուին Դ. ասելով վասն Արշակայ թագաւորին. «Ինքն առնոյր ըզսուսերն պողովատիկ մարգարտապատ կամարաւն՝ զոր ունէր Ներսէս 'ի սպասու թագաւորին»:

Բայց քանզի կրել զարքունի սուրն՝ էր գործ Թիկնապահի և զինակրի՝ թուի արտաքոյ կարգի տուեալ Ներսէսի 'ի սենեկապետութեան. կամ թէ մարթ էր Մեծին Ներսէսի լինել Թիկնապահ կամ զինակիր արքայի, և նմին իսկ կրել զսուր. լինել միանգամայն և սենեկապետ, որ էր այլ սպասաւորութիւն. զի Մեսրոպ 'ի Թուին Ե. նաև այլ ինչ սպասաւորութիւն պատուոյ տայ նմին Մեծին Ներսէսի 'ի վերայ գանձուց. «Եւ եկեալ Ներսէս, և Սենեկապետ էր ամենայն գանձուց նորա. վասն զի հօրաքեռ որդի էր Արշակայ թագաւորին»: Իսկ 'ի Թուին Դ. այլ ինչ պատիւ. «Սենեկապետ և Ակնապետ հաւատարիմ 'ի վերայ ամենայն կենաց թագաւորին . . . և 'ի մերձ նորա զարքունական մատանին 'ի սպասու նորա ունէր»: Յայսմանէ մարթ է ասել՝ թէ Մեծն Ներսէս էր նաև Կնքապահ թագաւորի։

## ԶԳԵՑՈՒՑԱՆՕՂ կամ ՀԱՆԴԵՐՁԱՊԵՏ

Էր գործ Գնթունեաց տոհմին ։

## ՏԱԿԱՌԱՊԵՏ

Ի ձեռս Գնունեաց ցեղին . և ՄԱՏԱԿԱՐԱՐ կամ ՀԱՄԲԱՐԱԿԱՊԵՏ, ի ձեռս Գաբեղէն ցեղին . զորոցանէ ստորև ։

ՁԻՒՆԱԿԱՆՔ . Տես ստորև 'ի Նախարարութիւնս ։

## ԿԱՌԱՊԵՏ

Ագաթանգեղոս յԺԷ . 'ի յիշելն զիշխանս զորս Տրդատ առաքեաց ածել զերկուս որդիս Լուսաւորչին, երրորդ իշխանն էր, ասէ, " Դատ անուն՝ կառապետ արքայի " ։

## ԴԱՀՃԱՊԵՏ

Ի Բուզանդայ Դ . 15 . " Գայր արտաքուստ Դահճապետն Երազմակ, մտանէր 'ի խորանն արքունի " ուր էր յանձամ Գ . Արշակ Թագաւոր ։

## ՀԱԶԱՐԱՊԵՏ

Յիշատակեալ առ Խորենացւոյն Բ . 53 . " Կարգէ Արտաշէս զՎռոյր Հազարապետ, զայր իմաստուն և բանաստեղծ . և հաւատայ 'ի նա զամենայն գործս տանն արքունի " ։ Ուր բանն յայտ առնէ թէ Հազարապետ կոչէր յանձամ նա՝ որ ունէր զհոգ տնտեսութեան տանն արքունի . զուցէ նաև զհոգ տնտեսութեան համօրէն թագաւորութեան Հայոց, զոր իմաստասիրել կարեմք նաև 'ի բանից տառի Խորենացւոյն Գ . 67 . " Իսկ Տրդատ 'ի Հազարապետութեան Հայոց զՕտայն կացուցանէ, շնորհակալութեամբ պատուէ զնա " ։ Տես և զնախարարութիւն Գնունեաց .

## ՈՐՍԱՊԵՏՔ

Մեսրոպ ժէ . յիշէ զայս ընդ այլ իշխանս Որսորդապետ . կոչելով ։ Իսկ Ագաթանգեղոս յԺԹ . 'ի թուելն զիշխանս՝

### ՄԱՐԴՊԵՏ

Որ է ներքինապետ. որոյ նահապետ կոչէր Հայրեշխան: Խոր. Բ. 7. և Գ. 15: Տես 'ի նախարարութիւնս 'ի ցեղն Մարդպետական:

### ՇԱՀԱՊ

Ագաթանգեղոս յԺԴ. ընդ իշխանս զօրս Տրդատայ առաքեաց 'ի Կեսարիա, զչորեքտասաներորդն յիշէ՝ իշխան՝ Շահապ. և յԺԲ. 'ի յիշելն զիշխանսն զօրս Տրդատայ տարաւ 'ի Հռոմ, յիշէ զՇահապն Շահապիվանի. և Մեսրոպ ԺԲ. յիշէ Շահապունիս: Որ ըստ ցուցանելոյ անուանն՝ էր կամ պահապան և վերակացու (որպէս ասկող) արքունի տեղեաց, և կամ իշխան կարգեալ 'ի վերայ շահու ե-կամտից արքայի, կամ զուցէ և համօրէն տէրութեան:

### ՈՍՏԱՆԻԿ

Գունդ զօրաց կարգեալ 'ի պահպանութեան արքունեաց. զորմէ տես 'ի կարգս նախարարաց գրոյս:

### ԶՈՐՈՐԴԱՊԵՏ

Յիշատակի 'ի գիրս վանօրէից՝ զորս շինեցին նախարարք Հայոց յԵրուսաղէմ յաւուրս Տրդատայ. ուր գրի. "Սուրբ Գօղոքեանի վանքն շինեալ Զօրորդապետին Հայոց 'ի Տիւ-տիայ կողմն„: Որ մարթ էր լինել պետն 'ի վերայ չորից գնդից Ոստանիկ անուանելոց:

### ՈՐԵԱՐ ԴՐԱՆ

Որպէս կոչին ամենայն արք 'ի գունդն արքունի բնա-կեալք:

### ԴՐԱՆ ԵՐԷՑ

Աւագ քահանայն որ 'ի պէտս դրան արքունեաց սահմա-նեալ. որպէս առ Բուզանդայ Դ. 15. "Այսպ Դրան երէց ոմն արքունի՝ որ էր 'ի ժամանակին յայն՝ որում անուն Մըր-ջիւնիկ... զնա 'ի բանտ արկանէր Փառանձեմ„: Յիշատակի և առ Կիրակոսի. "Յայսմ ժամանակիս Թուլիս մի. էր

Արգամ տանուտէր ազգին Մուրացան որ 'ի ծննդոցն Աժդահակայ (գայր առ Երուանդ, ասէ Խորենացին Բ. 44.) ամբողջ հետևակաւ. քանզի էր Երուանդայ դարձուցեալ 'ի նա զգահն Երկրորդականն, զոր հանեալ էր 'ի նոցանէ Տիգրանայ և տուեալ էր իւրում քեռայն Միհրդատայ. իսկ յետ մահուանն Միհրդատայ ոչ լինէր ումեք տուեալ, մինչև Երուանդայ դարձուցանել զնա առ Արգամ,,: Եւ քանզի Բ. Արտաշէս խոստացեալ էր "առ Արգամ նահապետ Մուրացանաց,, , որպէս գրէ 'ի գլ. 46. Թողուլ զիւր գահն՝ միայն թէ 'ի բաց կացցէ յԵրուանդայ, յորժամ արար ըստ կամաց Արտաշիսի՝ Արտաշէս ետ նմա զգահն և զայլ արտօնութիւն. "Տայ (Արտաշէս, ասէ Խորենացին Բ. 47.) և առնն քաջին և պատուականին Արգամայ զխոստացեալ գահն Երկրորդական,,: Բայց Արտաւազդ որդի Արտաշէսի "ընկեցեալ զնա (զԱրգամ, ասէ 'ի Բ. 51.) 'ի պատուոյն՝ ինքն առնու զԵրկրորդութիւն . . . ոչ շատացեալ առնուլ 'ի բաց 'ի նոցանէ զԵրկրորդութիւն պատիւն, յաւելու ևս հանել և զնախճաւանն, և ըստ հիւսիսոյ Երասխայ զամենայն գիւղս,, [1]:

Այս գահ Երկրորդականն որ էր խոր առաջին փոխարքայութի, կամ Վէզիրութի, յիշատակի և յաւուրս Տիրանայ արքայի, զոր և ես այլում տոհմի, որպէս գրէ Խորենացին Բ. 62. "Յաւուրս սորա (Տիրանայ արքայի) ասեն լեալ զպատանին ոմն յազգէն Անձևացեաց սեպհ յամենայնի Երախտաւոր անուն կոչեցեալ . . . զոր սիրեալ արքայի՝ տայ նմա զգահն Երկրորդականն, զոր ունէրն Արտաւազդ. և զհօգս արևելեան զօրուն 'ի նա հաւատացեալ,,: Բայց յետ այնորիկ ոչ գտանեմք ինչ յիշատակութիւն այսր անուան. այլ 'ի գործոյ պաշտամանն 'ի կառավարութէ իմանամք յաւուրս վերջին Թագաւորաց Արշակունեաց զերկրորդ արքայն կոչեցեալ Մարդպետ և Հայր իշխան. իսկ յաւուրս Թագաւորաց Բագրատունեաց կոչեցեալ Իշխանաց իշխան. որպէս ունիմ տեսանել յիւրաքանչիւր տեղիս [2]:

1 Վասն այսր ցեղի տես 'ի կարգս նախարարաց զՄուրացան :

2 Վասն զգեստուց երկրորդի արքայի տես 'ի գլուխն Սովորութ, ուր ունիմք խօսել զզգեստուց իշխանաց :

## ԲԴԵՇԽՔ ՉՈՐՔ

Արդ ոչ միայն 'ի զինուորական կարգին էին՝ այլ նաև 'ի մեծի գործառնութեան կառավարութեան խորհրդակիցք արքայի. զի կոչին Բարձրերէց, Գահերէց առաջարքն. ուր տաճար անուամբ զխորհրդանոց արքայի իմանայ Ագաթանգեղոս. որ 'ի թղթ. յձԹ. ասէ վասն Տրդատայ, թէ 'ի գնալն իւրում 'ի Հռոմ՝ առնոյր ընդ իւր առս "'ի զինուորական կողմանէն չորեսին գահերէցս իւրոյ տաճարին՝ որ Բդեշխն կոչէին,,: Ըստ այսմ և Բուզանդ 'ի յիշելն Գ. 10. զԲակուր բդեշխն Աղձնեաց, ասէ. "Որ էր մի 'ի չորից, Գահերէց Բարձրերէց տաճարին արքունի,,. կամելով ասել՝ թէ նաև միւս գահերէցքն էին բդեշխք: Վասն որոյ և յիշատակեալքն յայս բան Զենոբայ, "Գրեաց ինքն (սուրբն Գրիգոր), և Թագաւորն, և Գահերէց իշխանքն չորեքեան,,, են նոյն իսկ չորք բդեշխք: Եւ այսպէս սոքա չորեքեան բդեշխք էին գլխաւորքն 'ի մէջ նախարարաց. որպէս ցուցանէ և այս բան Բուզանդայ Դ. 50. "Նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. նախ բդեաշխն Աղձնեաց, և Նոշիրականն բդեաշխն, և Մահկերտ տանն, և Նիհորականն,,: Յետ սոցա ստորև յիշէ և զբդեշխն Գուգարաց[1]:

Ի մէջ սոցա քան զամենեսին զօրաւոր էր բդեաշխն Աղձնեաց, որ իշխանէր 'ի ցեղէն Սանասարայ որդւոյ Սենեքերիմայ, որպէս գրէ Խորենացին Ա. 23. ուր յետ յիշելոյ զսերունդն Սանասարայ, ասէ. "Իսկ պերճքն և գլխաւորքն 'ի նոցանէ յետոյ ուրեմն մտերմութեան վաստակոց առ Թագաւորսն մեր ցուցեալ՝ Բդեշխութեան կողմանցն արժանաւորեցան առնուլ,,: Առաջինն որ զայս անուն բդեշխութեան էառ 'ի Վաղարշակայ՝ եղև Շարաշան սերունդ Սանասարայ, զորմէ տես 'ի մեծ Հայս 'ի թղթ. 64: Մեծութեան այսր բդեշխի Աղձնեաց հետզհետէ այնչափ առաւելու,

1 Վասն որոյ սխրատակարար Բդեշխ կոչեցեալ համարիմք յԱսողկայ Է. 2. զՎարդան Մամիկոնեան, զայն՝ որ գնացեալ 'ի Բիւզանդիոն յանգիման լինէր Յուստինիանոսի, որ շինեաց ըզսուրբն Սոփիա. և յետ առնուլ այսր կոչել զաւագ զաւառն. "Ընդ որ զայրացեալ (ասէ) Վարդանայ Բդեշխի որդւոյ Վասակայ, որ էր յազգէն Մամիկոնէից ... զՍուրէն մարզպան յերկիր կործանէր,,:

մինչև կոչել զնա Բուզանդայ 'ի վերնագրի անդ Ե. 16. գլխոյն՝ Թագաւոր. այլ զայս իշխանութի̃ և զանուն խափանեալ ցուցանէ այս բան Ցոհաննու կաթողիկոսի յաւուրս տ̃ Սմբատայ. "Մեծ իշխանն խամայելեան Աշհմաս, որ տիրեալ ունէր զՄիջագետս Ասորւոց մինչև ցՊաղեստին՝ ձերբակալ արարեալ զփեսայացեալն Արծրունեաց Ապլլմախրա, որ 'ի ծածուկ ունէր զհաւատ քրիստոնէական, և փոխանակ Բդեշխացն պայազատէր զաշխարհն Աղձնեաց, և 'ի բանտի զնա եդեալ յինքն գրաւէր զսեպհականութի̃ տանն": Նմին իրի յաւուրս Բագրատունեաց ոչ գտանեմք ինչ յիշատակութիւն, ոչ վասն բդեշխին Աղձնեաց, և ոչ վասն երից այլոց. Այլ զԱղձնեաց և զԳուգարաց տես 'ի Մեծ Հայս:

## ՍԱՀՄԱՆԱԿԱԼՔ

Սոքա գոլով 'ի զինուորական դասն՝ կարգեալ էին 'ի պահպանութի̃ վերջին սահմանաց Հայոց Մեծաց, զոր Մեծն Վաղարշակ սկսաւ կարգել. բայց յանուանս սահմանաց տարբերէին: Ագաթանգեղոս այսպէս յիշէ 'ի Նախագրեալ բանի. "Զառաջին Սահմանակալն 'ի Նոր շիրական[1] կողմանէն. երկրորդ Սահմանակալն յԱսորեստանեայց (յԱղձնեաց) կողմանէն. երրորդն յԱրուաստան կողմանէն. չորրորդն 'ի Մազքթաց ('ի Գուգարաց) կողմանէն":

## ԿՈՒՍԱԿԱԼՔ. ԿՈՂՄՆԱՊԱՀՔ. ԿՈՂՄՆԱԿԱԼՔ

Զմեծայն իշխան որ պահէր զկողմն ինչ աշխարհին՝ յայս անուն կոչէր. ըստ այսմ իշխանն որ պահէր զծովն՝ յայս անուն կոչի առ Ցոհաննու կաթողիկոսի. "Ընդ որոց ասպա և Արքեղաւոս ան̃ Կուսակալ Ծովաց աշխարհին կշտամբեալ 'ի նմանէ վասն չար գործոց իւրոց": Ըստ այսմ և իշխանքն Ցունաց, որք 'ի կողմանէ նոցա եկեալ էին 'ի Հայս 'ի պահպանել զառեալ տեղիս, յայս անուն կոչին առ Մատթէոսի ՀԷ. "Ցայնժամ Թագաւորն Ցոհաննէս և ամենայն Նախարարք Հայոց գրեցին . . . և զիշխանս Հոռոմոց որք եկեալ էին Կողմնապահք, կացուցանէին զնոսա միջնորդ":

1 Առ մատենագիրս մեր այլևայլ օրինակաւ գրի անունն՝ Նոր շիրական, կամ Նոշիրական:

## ԳՈՐԾԱԿԱԼՔ

Յանուանէն իսկ յայտ է լինել նոցա 'ի կարգէ իշխանաւորացն՝ որք յարքունի գործս պարապէին. յիշատակեալ առ Եղիշէի 'ի Թղթ. 174. «Եւ ամենայն Գործակալքն արքունի իւրաքանչիւր զօրօքն համագերձ», մինչ 'ի դուռն Վարդանայ: Գործակալութիւն յանձնեալ լինէր նաև նոցա՝ որք և երկրի տանուտեարք էին. զի զայդ ցուցանէ բան Բուզանդայ՝ որ 'ի Դ. 2. տայլին անուանս կոչէ. «Թող զնահապետս մեծամեծս, և զՏանուտեարս՝ որք Գործակալ միայն էին»:

Այլևայլ անուամբ յիշէ Բուզանդ ուրեք զիշխանաւորս արտաքին սահմանաց, զորս աստանօր յառաջ բերցուք: Ի Դ. 20. ասէ. «Այսպէս ժողով լինէր նախարարացն և իշխանացն, Գործակալք և Զօրագլուխք, Պետք և ամենայն Աշխարհաժողովք բազմութիւն եկեալ կուտեցան»: Եւ 'ի 21. «Այսպէս առաւել ժողովեցան 'ի մի ժողով միաբանութեան մարդիկ աշխարհին հայաստան երկրին. Նախարարք մեծամեծք, Աւագք, Կուսակալք, Աշխարհակալք Ազատք, Զօրագլուխք, Դատաւորք, Պետք, Իշխանք. բայց 'ի զօրավարացն, այլ և 'ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն»: Եւ 'ի Դ. 51. «Այսպէս ժողովեցան մարդիկ ամենայն աշխարհին իշխանութեան Թագաւորութեան Հայոց. և եկին առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, Մեծամեծք, Նախարարք, Կուսակալք, Կողմնակալք, Գաւառատեարք, Գործակալք և Դաստապետք շինականաց»: Եւ 'ի Ե. 1. յիշէ. «Մեծամեծք, Գաւառակալք, և Գաւառատեարք»:

Այլ 'ի մէջ ամենայն անուանցս՝ միայն անունս Նախարար տուաւ առ հասարակ ամենայն իշխանաւորաց. որ և 'ի զանազան ցեղս ներեալ հանապազորդեցին և մեծ իշխանութիւն կալան յաշխարհիս մերում. վասն որոյ և յամենայն պատմական գործս կառավարութեան և զինուորութեան լինի բան յաղագս նախարարութեանց. նմին իրի և մեզ անկ է խօսել զնոցանէ յայսմ վայրի ըստ կարգի:

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳԻՏԵԼԻՔ ՅԱՂԱԳՍ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ

### Ա. Անուն:

Անուանս Նախարար կիցնին յայտ առնէ ածանցեալ յանուանցս նախ և արար. իբր նախկին 'ի յարարս, կամ նախակարգեալ իշխան, որպիսի էր և առ Լատինս անուանս Բռէֆէկտուս, ցուցանելով զյառաջագահութիւն. և զնախադասութիւն քան զայլս: Ըստ մեծի մասին յանուն գաւառաց կոչին՝ որոց իշխեն. բայց են և որք յանուն ցեղին կոչին. զոր օրինակ իշխանն Վասպուրականի՝ կոչի առ Ասողկայ է. 2. իշխան Արծրունեաց. և իշխանն Ուտի նահանգին՝ յանուն Սեւորդեաց. առաւել զահերեց և մեծ նախարարք են որք յանուն ցեղին կոչին՝ Բագրատունեաց, Մամիկոնեանց, Անգեղեան և Մարդպետականն:

## ԱԶԱՏ և ԱԶԱՏՈՒԹԻՒՆ

Այսպէս կոչին նախարարք և նախարարութիւնք. որպէս առ Խորենացւոյն ա. 3. յամենի. "Մանաւանդ որ 'ի սեպհական Աշխարհին պայազատութիւն". այր իմանայ զնախարարութիւն: Սոյնպէս և առ Եղիշէի՝ յամենի Թղթ. 18. "Գունդ կազմէր 'ի Հայոց մեծաց զԱզատ և զԱզատորդի, և յարքունի տանէ զոստանիկ մարդիկ": Եւ առ Ղազարայ 82. 83. "Բազումք են այս երից աշխարհաց յԱզատորդերոյ, որք են առաւել քան զիս և զահու և աւուրք . . . Եւ լուեալ այլ Ազատանոյն որք էին յերեք աշխարհէ, Հայոց, Վրաց և Աղուանից": Զորս սուղ մինչ սոսորև կոչէ Նախարար. "Յայնժամ 'ի մի վայր ժողովեալ Նախարարացն ամենեցուն, որք էին յերեցունց աշխարհացն, Հայոց, Վրաց և Աղուանից": Եւ 'ի Թղթ. 220. Աստաքէր, ասէ, "և յազգս գաւառին Անձևացեաց և Մոկաց, և առ Ազատորդւոցն Ըռշտունեաց": Ըստ այսմ է տեսանել և առ Թովմայի արծրունւոյ յամենի է. 6. "Որ գործեցաւ 'ի ձեռն զօրացն վասպուրական Ազատանոյն": Եւ 'ի դ. 2. "Ըմբռնեալ լինէր յայնժամ ('ի զօրացն Բուղայի) մի ոմն 'ի Հայոց Ազատանոյն տոհմից Վահեւունեաց": Զայս անուն տան և զօրաց նոցա. զոր օրինակ Թովմա արծրունի է. 6. յամենի վասն Աշոտոյ վասպուրականի. "Ա-

նաւ զբազմութն Աշխարհագունդ զօրաց՝ ըստ տոհմն ազգաց իւրաքանչիւր զօրաց»։ Իսկ թէ ընդէր Ազատ կոչեցան նախարարքն՝ քննեսցուք ստորեւ 'ի խօսելն զիշխանութենէ նախարարաց։

## ՏԷՐ ԵՒ ՏԱՆՈՒՏԷՐ

Այսպէս կոչէր նա՝ որ գլխաւոր էր իւրաքանչիւր տոհմի նախարարութե, կոչելով Տէր Սիւնեաց, Տէր Մամիկոնէից. յորոյ 'ի ձեռսն էր տէրութի երկրի նորա տոհմին, եւ և տէրութի 'ի վերայ զօրաց այնր տոհմի։ Ըստ այսմ Խորենացին Գ. 44. «Արգամ Տանուտէր Մուրացան» կոչէ, որ էր գլուխ Մուրացան տոհմին։ Եւ առ Ղազարայ 306. ընթեռնումք, զի Վահան մամիկոնեան յետ առնլոյ զսպարապետութեան պատիւ, խնդրեաց 'ի Վաղարշայ թագաւորէն Պարսից շնորհել «զՏանուտէրութիւն Կամսարականին»։ Զայսպիսի գլխաւորութի նախարարութեն կոչէին Տանուտէրական պատիւ։ Ըստ այսմ Թոմայ արծրունի. «Եւ ընդ նմա (ընդ Աշոտոյ վասպուրականի) ոմանք յառաջագոյն իւրոց՝ Մուշեղ վահեւունի, որ զՏանուտէրական պատիւն ունէր». այսինքն է՝ որ գլխաւորն էր և ժառանգ Վահեւունի տոհմին։ Եւ 'ի Գ. 17. «Իսկ ընդ աւուրսն ընդ այնոսիկ տապանեալ էր Ուլթմանկացն որ յամուրսն նստէին զԹատամ վարաժնունի՝ որ զՏանուտէրական պատիւ յայնժամ ունէր զՎասպուրականն աշխարհիս»։ Կամի ասել, գլխաւոր տէրութի Վասպուրականին էր 'ի ձեռս նորա։

## ԻՇԽԱՆ

Այս անուն թէպէտ ընդհանուր է՝ բայց ծերագոյն սեփականեալ այնմ տոհմի՝ որ իշխէր և տէր էր երկրի իւրում. որով միանայ ընդ նախադրեալ անուանս Տէր և Տանուտէր։ Ցայտ է այս և 'ի բանից առաքի Ղազարայ 212. ուր առէ վասն միաբանեալ նախարարաց. «Եւ որք պատրաստեալքն այնուհետեւ 'ի պատերազմն կարգեցան, սիւնեին Բագրէին, զոր անուանեցին 'ի ժամուն Իշխան փառաւորն Սիւնեաց»։ Այս Բագրէն թէպէտ էր սիւնի, բայց իշխան և տէր Սիւնեաց այլ ոք էր և ոչ նա. բայց յայնմ ժամանակի խռովութե հաւատոյ՝ յորում ոմանք ուրացեալ էին և ոմանք երկպառակեալ, զայս Բագրէն յիւրեանց միաբանելոց կարգեցին տէր և իշխան Սիւնեաց, որպէս

զի տէր լեցի և զօրաց երկրին՝ առ 'ի միաբան ընդ նոսա պատերազմել ընդդէմ Պարսից։ Ըստ այսմ'ի գործ ածի և առ Յովհաննու կաթողիկոսի. "Յետ վախճանելոյ Աշոտոյ մեծի և հաշտակաւորի Իշխանի տանն արծրունի . . . պայազատէ զիշխանական պետութիւն զայն Գրիգոր որդի նորա,,։ Եւ առ Ստեփաննոսի օրպելեան 38. "Մեծ նախարարն սիւնի, և գահերէց Իշխանն Աշոտ,,։

## ՆԱՀԱՊԵՏ

Իւրաքանչիւր նախարարական տոհմի գլխաւորն որպէս կոչէր Տանուտէր, այնպէս կոչէր և նահապետ. զոր օրինակ է տեսանել յայս բանս Բուզանդայ Դ. 16. "Եւ վասն զի պատգամաւոր իրացս այսոցիկ էր Տանուտէրն նահապետն մամիկոնեան տոհմին երէց եղբայր Վասակայ սպարապետին, որում անուն Վարդան կոչէր,,։ Ըստ այսմ զոր 'ի գլ. 18. կոչէ Տանուտէր, յառաջ. "Իսկ Վարդանին, մամիկոնեան տոհմին Տանուտէրն, գայր հասանէր հրեշտակութիւ յարքայէն Պարսից առ արքայն Հայոց Արշակ,,, զնոյն ապա սուղ ինչ առաջև կոչէ նահապետ. "Եւ յոր ժամ եկն նահապետն Վարդան առ Արշակ, ոչ դիպեցաւ անդ կրսեր եղբայրն նորին Վասակ առ արքայի,,։

Իսկ 'ի Ե. 37. միանգամայն գտանեմք ասացեալ. "Եւ ազգին մամիկոնեան տոհմին Տանուտէր նահապետ կացոյց Թագաւորն (Վարազդատ) Վաչէ անուն 'ի նոյն տոհմէ,,։ Որպէս և յայս բանս անդանօր. "Եւ Մանուէլն ունէր զնահապետութիւն ազգին Տանուտէրութիւն պատուին,,։ Ըստ այսմ և առ Խորենացւոյն Բ. 8. գլխաւորն նախարարացն է որ կոչի նահապետ. "Ոչ ասեն նահապետ ազգին Մուրացան տէր. այլ մուրացւոցն տէր,,։ Եւ 'ի Բ. 44. զոր նախ կոչէ "Արգամ Տանուտէր ազգին Մուրացան,,, զնոյն ապա Բ. 46. կոչէ "Արգամ նահապետ Մուրացանայ,,։ Նոյնպէս է տեսանել և 'ի Գ. 50. ուր ասէ. "Այլ Շապուհ 'ի հրապուրելոյ դուշակութե նահապետաց մերոց՝ նոյնհետայն առաքէ զորդի իւր,,. զի հրապուրողքն էին գլխաւորք նախարարաց։ Եւ որպէս երևի՝ նոյն նահապետք կամ գլխաւորք նախարարացն են՝ որք առ Յովհաննու կաթողիկոսի կոչին Գահերէցք, Բարձերէցք։ Մինչև պարտ է ասել, թէ ուրեք ուրեք նաև ամենայն նախարարութիւք ընդհանրապէս յայս անուն կոչին. որպէս առ Խորենացւոյն Ա. 12. "Եւ 'ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւն Մա-

նուաղեան և զԲզնունեաց,,. այսինքն է փոխարարութիւն ։ Եւ 'ի Ը. 8. «Իսկ 'ի հովտին մեծին Բասենոյ կարգէ Նահապետուն զՈրդունին անուանեալ,,. այն է նախարարութիւն ։

## ՍԵՊՈՒՀ

Այս անուն կոչին իւրաքանչիւր անձինք ամենայն նախարարութեանց սակս գոլոյ յազնուական տոհմէ. բայց սոքա չէին տեարք կամ տանուտեարք տոհմին և ոչ երկրին. այսինքն չէին գլխաւորք. յայտ է այս մնացորդ քննողաց 'ի բանից անտի վկայագրաց մերոց։ Ղազար 80. ասէ. «Եւ նախագոյն հարցեալ զՀայոց Տանուտերացն և զՍեպուհսն,,։ Ուր տանուտեարս կոչէ զգլխաւոր իշխանսն՝ որք տեարք էին երկրին և իշխէին. իսկ սեպուհս կոչէ զմնացեալսն իւրաքանչիւր ցեղի։ Նա ինքն Ղազար 114. յետ յիշելոյ զիշխանսն՝ այսպէս ասէ. «Իշխանն Ուրծայ Ներսէհ. և այլք յոստանիկաց. և Սեպուհք ոմանք յիւրաքանչիւր տանէ,, նախարարաց. ուր զատուցանէ զիշխանսն 'ի սեպհոյ. սեպուհ կոչելով զամենայն ազատազգիս, իշխան կոչելով որ միայն տէր էր և ժառանգ երկրի նորին տոհմին և զօրաց, և տանուտէր և կառավար։ Սոյնպէս է տեսանել և 'ի հետևեալ բան նորա 103. «Եւ ժողովեալ... զաւագ տանուտէրսն Հայոց, և զՍեպուհսն առանձինն,,։ Եւ 'ի 78. «Հրամայէր գրել յերեսին հրովարտակն, զի ամենայն տանուտեարքն և աւագ Սեպուհքն երեցունց աշխարհացն փութով և անխափան 'ի դուռն եկեսցեն,,։ Եւ 'ի 94. «Արդ եկեալ հասանէին տանուտեարքն Հայոց հանդերձ Սեպհօքն,,։ Ուր յայլ կարգի դնէ զտանուտեարս, և յայլ կարգի զսեպուհս ։

Այս որոշումն յաճախ է յոյժ առ Ղազարայ. զի սովորութիւն է նորա միշտ որոշել զպատուոյ անուանս. 'ի 97. ասէ. Իրազգած եղեալ «ամենայն տանուտէրանցն Հայոց և Սեպհացն,,։ Եւ 'ի 98. «Հանդերձ ամենայն տանուտէրամբք Հայոց, և աւագ Սեպհօք,,։ Ուրեք յիշէ զիշխանսն Ամատունեաց. այպա 'ի 117. յիշէ «Սեպուհ մի յազգէն Ամատունեաց՝ որում անուն էր Առանձար,,։ Սոյնպէս և 'ի 124. գրէ. «Յազգէն Պալունեաց (նահատակեալ եղև) Երանելին Սեպուհն Արտակ,,։ Իսկ 'ի յիշելն անդէն զայլ տոհմն՝ որք նոյնպէս նահատակեցան, և ոչ միումն տայ զանունս Սեպուհ. միայն զտոհմիկն յաճախ կոչէ յայս անուն. որպէս 'ի 125. «Բազմութիւն փախստէիցն Հայոց,

նախարարքն և Սեպուհք Ոստանիկք և ազատք դիմեալ 'ի յերկիրն Տայոց ժողովեցին": Ըստ այսմ է տեսանել և առ Թովմայի արծրունւոյ Գ. 2. յասելն. "Իսկ Վահրամ Սեպուհ Թիկնապահ իշխանին (Աշոտոյ վասպուրականի)... և այլք 'ի Սեպուհ պաշտօնէից":

## ՍԱՏՐԱՊՔ

Այս անուն միայն առ Բուզանդայ և առ Մեսրոպայ 'ի գործ ածի, և է անուն օտար լեզուի, 'ի կիր արկեալ և 'ի Յունաց աշխարհագրաց փոխանակ գաւառակալի: Բուզանդայ բանն է 'ի Դ. 3. "Այսպա 'ի մի ժողով կուտեցան առ արքային Արշակ մեծամեծք նահապետք ... ամենայն Սատրապք նախարարքն և ազատք, պետք և իշխանք, զօրավարք և սահմանապահք": Զնոյն կրկնէ Մեսրոպ 'ի Դ. "Ի մի վայր ժողովեալ առ Թագաւորն նախարարքն և մեծամեծք Հայոց, ազգատոհմից և դրօշից տեարք, ամենայն Սատրապք և կուսակալք և զօրագլուխք սահմանապահք": Իսկ 'ի գիրս Յունաց և լատինացւոց Սատրապն վարի որպէս նոյն ընդ բառիս Նախարար:

## ՁԵՌՆԱՒՈՐ

Զայս անուն ոչ սակաւ ուրեք 'ի կիր առնու Թովմա Մեծոփեցի փոխանակ իշխանի կամ գլխաւորի, և այլն. զոր օրինակ և յայս բանս, ուր 'ի պատմելն զժողովն որ 'ի ձեռնադրութիւն Կիրակոսի կաթողիկոսի, ասէ. ժողովեցան "և բազում միաբանակեացք, և ազատք, և որդիք ազատաց, Ձեռնաւորք, և տանուտէրք":

## Բ. Սկզբնաւորութիւն Նախարարութեան:

Այս խնդիր այնչափ կարեւոր և ցանկալի թուեցաւ երկուց իմաստուն հնախուզաց յազգիս՝ Վաղարշակայ պարթեւի և Սահակայ բագրատունւոյ, մինչև 'ի պատճառս նոցին լինել երկուց երևելի պատմագրութեանց յազգիս: Զի Վաղարշակայ արքայի առաջնոյ գլխաւոր խոյզ և խնդիր եղև, թէ "ուստի (իցեն) նախարարութիւնս որ աստ կան" յաշխարհիս Հայոց. որպէս գրէ Խորենացին Ա. Գ: Եւ ահա այս խնդիր նորա պատճառ եղև 'ի լոյս հանելոյ զպատմագրութիւն Մարիբասայ: Յետ բազում ժամանակաց դարձեալ այս խնդիր անկաւ և 'ի միտս Սահակայ ասպե-

տի բաղդատունեայ, յանդրելով՚ի Խորենացւոյն Ա. 3. անշդէկութեն սկզբնաւորութե և սերնդեան նախարարութե հայաստանեայց աշխարհի. "Կարգել զպատմութի Ճշդիւ ... զնախարարականաց ազգաց և տոհմից, թէ ... ո՛վ որք ՚ի ցեղիցս որոշելոց ընտանի և մերազնեայ (էր), և ո՛յք ոմանք եկք (էին յայլոց ազգաց. և այսս եղեն) ընտանացեալք և մերազնացեալք ... ՚ի ժամանակէ անկարգ ամբարտաւանին շինուածոյ մինչև ցայժմ,,: Նորին աղագաւ և Խորենացին առանձին փոյթ կալաւ զնախարարութեց տիրապէս և Ճշգրտիւ խօսել. որպէս և ինքն վկայէ Ա. 1. ասելով. "Աշխատասիրեցայց ածել ՚ի կատարումն ... զհայաստանեայցս նախարարութիս, զամենեցուն զուան և զշխարգն յայտնելով համառօտ, որպէս հաւատոյ ՚ի յունականս ոմանս կայ պատմութիւնս,,[1]: Որով և այս խընդիր Սահակայ յաղագս նախարարութեց՝ պատճառ եղև ՚ի լոյս ածել և զպատմագրութի նորին Խորենացւոյ, և նովին ՚ի լոյս հանել նաև զառաջին պատմութի Մարիբասայ՝ զծածկեալն ՚ի խորշս դրանոցաց յօտար աշխարհի և զանծանօթ մնացեալն առաջի ազգիս: Արդ քանզի այսպէս կարևոր է տեղեկութիւն նախարարութեց, և մեք աստանօր ըստ կարգի գրեսցուք զնոցանէ առ ՚ի լոյս հանել տեղեկութիս պիտանիս առաջիկայ Ճառիս՝ որ յաղագս կառավարութե աշխարհիս:

Զառաջին սկզբնաւորութե նախարարութեց ըստ նորին Խորենացւոյ պատմութե գտանեմք ՚ի ժամանակաց անտի Հայկայ. յորոց և ոմանք ՚ի նմին իսկ ՚ի պատմութե Խորենացւոյն Ա. 12. յիշատակին՝ Մանաւազեանն, Բզնունեանն, Խառխոռունեացն, ցեղն Սիսակեան. յիշատակին ՚ի նոյն գլուխն և ՚ի Բ. 8. և Սլկունեացն, զորոց ասէին սերեալ ՚ի նախնագունիցն քան զՀայկ: Էին և այլք ոչ յիշատակեալք. քանզի ՚ի դաւ Վաղարշակայ ՚ի Հայս՝ ոչ զոք եղեալ գլխաւոր և ոչ կարգ ինչ, բայց զաղմկութե նախարարութեց, որոց իւրաքանչիւր տեարք էին լեռներկրի և քաղաքաց և գիւղօրէից, և իւրեանք իշխէին յամենայնի ՚ի վերայ նոցա, զորս ինքն համարէր սրով և

1 Վասն սկզբնաւորութե և յաջորդութե նախարարութեց ազգիս համարիմ աստացեալ և զայնքան Խորենացւոյն Ա. 5. "Դժուարահաւաք և տաժանելի է որպէս գիւտ ժամանակացն ՚ի սկզբանէ մինչև առ մեզ, տառուել եւ գիւտ որդեծնութե նախարարականացն ծննդոց յերից անտի որդւոցն Նոյի. ցորքան կամք իցեն խուզել ուժէք ըստ իւրաքանչիւր զարուց,,:

պատերազմաւ առեալ 'ի ձեռաց այլոց, որպէս և տեսանէր լեալ յայլ աշխարհս. և կամէր գիտել թէ յոր պատերազմունս եղև այս տիրապետութիւն նախարարաց Հայոց, և յորոյ թագաւորի աւուրս. բայց ոչ գտանէր վասն այսր յիշատակարան ինչ. վասն որոյ և գրէր առ Եղբայր իւր՝ թէ խորհուրդ եդի 'ի միտ գիտել, թէ ուստի եցեն այս նախարարութիւնք։

Նոյն յորժամ Մարիբաս երեր զվաւերական յիշատակարան վասն սկզբնաւորութեան որպէս ազգին նոյնպէս և նախարարացն, հաւատեալ գիտաց յանժամ Վաղարշակ, թէ պատճառ՝ չգտանելոյ ինչ յիշատակարան առաւել վասն այնորիկ է՝ զի ոչ յապագայ ժամանակս, և ոչ պատերազմաւ և ոչ սրով կանգնեալ կային այս նախարարութիւնք Հայաստան աշխարհիս, այլ նախ քան զսկսանիլ պատերազմաց՝ և նախ քան զսկսանիլ թագաւորութեան՝ յառաջին բնակչաց մնոտի սկիզբն առնուին։ Քանզի 'ի սկզբան անդ առ ժամանակօք Նոյի ուր ոչ ոք գոյր 'ի մարդկանէ՝ անդ առաջին բնակիչն լինէր տէր երկրին իրաւամբք և ոչ բռնութեամբ, և 'ի մեռանել իւրում՝ թողոյր ժառանգութիւն որդւոյն, և նա իւր որդւոյն։

Նոյնպէս քաջ ծանեաւ Վաղարշակ վասն նախարարութեան Հայոց յորդւոց յորդիս իջեալ իրաւամբք ժառանգութեան մինչև 'ի ժամանակս իւր։ Զի որպէս պատմէ Խորենացին Գ. 12. 'ի մեռանելն նախնի նահապետաց՝ զերկիրն զոր սեփականեալ ունէին անձանց՝ թողուին 'ի ժառանգութիւն որդւոց իւրեանց. այսպէս հետզհետէ տիրելոյն՝ մինչև ցոր վայր կարէին տիրել, անձանց և ազգաց իւրեանց գրաւէին իբր սեփական ժառանգութիւն։ Այն առհմն յորոյ ձեռս մնային տևողութեամբ առաւելեալ երկիրք և գերդաստանք՝ երևելի լինէր քան զայլ առհմն՝ որոց նախնիքն կամ չէին լեալ տէր երկրի և կալուածոց, և կամ անցեալ էին 'ի ձեռս օտարաց, և կամ սերունդ նոցա սպառեալ, և այն առհմն համարիւր 'ի մէջ նոցա մեծ և նախապատիւ քան զայլս. որ է ասել՝ լինէր նախարար. և ահա սկզբնաւորութիւն նախարարութեան։ Մանաւանդ յորժամ անցմամբ ժամանակաց 'ի բազմանալն՝ հարկ լինէր ունել արս զինեալս 'ի պաշտպանել զերկիր իւր 'ի հինից թշնամեաց, հարկաւ մեծ և զօրաւոր լինէր քան զայլ առհմն, որոց չունելով երկիր ինչ, չունէին և զօրս, վասն որոյ և տկար էին քան զնոսա, զորս իրաւամբք կոչէին նախարարս։ Եւ որչափ զիւղականք գտանէին յերկիրն յայնմիկ՝ ծառայ

Վաղարշակայ նախ խորհուրդ 'ի մտի անկաւ իմանալ զուսան նախարարութեանց և ապա նոր նախարարութիւնս հաստատել, որպէս և զկնի Վաղարշակայ խօսք և խնդիր անկաւ 'ի միտս օտարազգւոյն է. Շապհոյ Պարսից արքայի գիտել զսկիզբն և զծագումն նախարարութեանց և զկարգս նոցա. վասն որոյ յաւուր միում ճաշ արարեալ, ասէ Ստե-փաննոս Օրբելեան Թ. նախարարաց Պարսից և մերոց անդր գտելոց, ասաց առաջի ամենեցուն. ԶՊարսից նա-խարարաց կարգս քաջ գիտեմք, "բայց զԱրմէնու (զՀայ-ոց) զազատատոհմն, և զնոցին նախապատիւ զնախագահն նախագահութիւն ոչ կարացաք գիտել, ոչ 'ի նախնեացն մերոց հարցն հարանց թագաւորաց, և ոչ յայլ ուստեք յամէնիմաստ մատենագրաց: Եւ արդ մի յերկուց առաջի կայ ձեզ նախարարացդ Հայոց ազատ արանց կատարել զխնդիրս մերոյս Արեացս աշխարհաժողով ազատազարմ կուսակալաց. (կամ) ցուցանել ձեզ զնախնական զգիր ըստ իւրաքանչիւրումն ըստ տանց ազատազարմն եկաց ձերոց զնախատոհմանն և զնախանանխան պատիւ, և դարձեալ զմեծագոյնն ունել զշքեղաշուք մեծարանս եւս քան զեւս, և (կամ) եթէ ոչ կարէք ունկն 'ի յայտնի Արեացս գնդի ժողովոց ցուցանել զգիր նախագահութեան, (յայնժամ) զպատիւ և զտունս, զհող և զջուր և զստացուածս ձեր՝ Ա-րեացս աշխարհի ազատ արանցս շնորհեսցուք, և զձեզ ապաշնորհ և ունայնս արձակեսցուք. և ստացուածք գիւ-ղից և ագարակաց ձերոց՝ Արեացս ազատ արանցս 'ի ծա-ռայութիւն լիցին„: Ուր պատմէ ապա թէ 'ի գրոց Ագա-թանգեղոսի ցուցեալ զնախագահութիւնս իւրեանց՝ յոյժ մեծարանս ընկալան 'ի Շապհոյ [1]:

Այս այսպէս յարշակունի թագաւորս Վաղարշակ եղե-առաջին՝ որ կարգեաց նախարարութիւնս. և երկրորդ՝ վեր-ջինն Տիգրան. զի գրէ զնմանէ Խորենացին է. 64. թէ նոր նախարարութիւն կանգնեալ Ռոփսեան անուն, "և այլ որ ինչ կրտսերագոյն ազգ, եթէ առս և եթէ զկողմամբք Կորճէից, հաստատէ այս Տիգրան. որք միանգամ անազ-գիք էին 'ի վաշտս և անձամբք երևելիք, և վասն նորա

[1] Խորենացին ա. 3. ցուցանէ թէ գտանէին 'ի ժամանակս իւր ուրոյն դիրք վասն նախարարութեանց, յասելն. "Իւրաքանչիւր տանց աւանդականութեանց.. այժմ առ մեզ գտանին անդրաւ զրուցաց մնացեալք. մանաւանդ որ 'ի սեփական Ազատութեան (նախարարութեան) պայազատութեան„: Բայց որ-պէս թուի՝ անդ 'ի դրան Պարսից գո-լով յայնժամ՝ զԱգաթանգեղոս ու-նէին միայն առ իւրեանս, և անտի ցուցին:

պահպանեցաւ և յաւուրս Բագրատունեաց, զորմէ բողոք բառնայ Յովհաննէս կաթողիկոս ասելով. «Իսկ թագաւորք մեր և պետք և իշխանք՝ զորս 'ի մէջ նախարարութեանց էին՝ ջանային վարատել և խլել յիւրաքանչիւրոցն բնակութեանց, և ըստ ախորժից իւեանց ձեռակալն և նոր ստեղծել պայազատս»։

Գ. Իշխանութիւն և պարտաւորութիւն նախարարութեանց։

Առաջին իշխանութիւն նախարարաց էր 'ի վերայ երկրին որ սեփական էր նոցա. վասն այնորիկ և երբեմն միայն Տէր անուանէին. զոր օրինակ և առ Թովմայի արծրունւոյ Է. 1. յաւելն վասն Վարդանայ. «Փութացոյց գիր պաղատանաց առ Տաճատ Ըռշտունեաց Տէր. և առ Վախրիճ Անձեւացեաց Տէր»։ Որպէս և ուրեք ուրեք առ Բուզանդայ և Թովմայի արծրունւոյ՝ Աշխարհատեարք, նաև Գաւառատեարք առ Բուզանդայ Դ. 12. «Իսկ աշխարհ ամենայն Հայոց լերդուին, 'ի գաւառաց գաւառաց... մեծամեծք, աշխարհակալք, Գաւառատեարք, նահապետք, մեծազգեացք»։ Զի ոչ միայն նահանգք, զոր աշխարհ անուանէ կոչէ, այլ և գաւառք ունէին իշխան առանձին, թէպէտ ոչ ամենեքին։

Երկրորդ իշխանութիւն նախարարաց էր և 'ի վերայ բնակչաց երկրին իւրեանց, մինչև զդատաստան նոցա կնքեանց վճռէին, եւս և զդատաստան արեան, որպէս Թուի։ Թագաւորք մեր ոչ խառնէին 'ի դատաստանս բնակչացն Արծնեաց, Վասպուրականեայց, Սիւնեաց, և այլն։ Յայտ է այս 'ի լռութենէ մերոց պատմագրաց. զի ոչ ուրեք ընթեռնումք առաքել զոք 'ի թագաւորէն մերմէ 'ի նահանգս կամ 'ի գաւառս առ 'ի կառավարել կամ 'ի հատանել դատաստանս ինչ այնր գաւառին, ոչ յաւուրս Արշակունեաց և ոչ յաւուրս Բագրատունեաց. զոր օրինակ տեսանեմք յայլ թագաւորութիւնս առաքեալ իշխանս՝ որ առ Օսմանեանս կոչին փաշայք, որք դատեն զամենայն դատաստան երկրին։ Զայն ցուցանէ և սովորութիւն որ դատանի նաև յայլ թագաւորութիւնս, ուր են նախարարութիւնք կամ տանուտիրական իշխանութիւնք 'ի վերայ կալուածոց երկրի. զոր օրինակ էր 'ի Լեհաստան։

Երրորդ իշխանութիւն նախարարաց էր 'ի վերայ զօրաց իւրեանց, իւրաքանչիւրոց ունելով իւր առանձին զօրս. զոր բաց 'ի յանցից զինուածոց պատմութեանց՝ յայտ առնէ

և այս բան Խորենացւոյն Գ. 56. « Ժողովեալ նախարարացն Հայոց հանդերձ զօրօք իւրեանց՝ տան ընդ գնդին Պարսից պատերազմ »: Մինչև երբեմն և ընդ միմեանս պատերազմէին և զմիմեանս կոտորէին. որպէս եղև յետ մահուանն Տրդատայ, զորմէ գրէ Խորենացին Գ. 2: Եւ սակս այսոցիկ իշխանութեանց համարիմ առաջս կոչեցեալ փոխարքայս, զի թագաւորն չունէր 'ի վերայ նոցա զայն իշխանութիւն զոր ունէր 'ի վերայ ժողովրդեանն. ոչ խառնէր 'ի կառավարութիւն երկրի և բնակչաց նախարարաց:

Իսկ սակս պարտականութեան գործոյ նախարարաց առ թագաւորն՝ այսչափ ինչ գտանեմք յիշատակեալ 'ի դիրս: Առաջին՝ տալ զօրս արքայի 'ի ժամանակս պատերազմի. բայց այս չէր պարտականութիւն անխափան՝ մինչև 'ի չտալն կամ 'ի սակաւ տալն՝ յանցաւոր համարիլ կամ պատժապարտ: Աստի զհետ գայ թէ իւրաքանչիւր 'ի նախարարաց փոյթ կալեալ զերկիր իւր միայն պաշտպանել, ոչ երբեք խմբովին մեծաւ բանակաւ պատերազմեցան ընդդէմ արշաւանաց արտաքնոց 'ի պաշտպանել զսահմանադրութիւն մեծին Հայոց. վասն այսորիկ է՝ զի և զհամար զօրաց մերոց ոչ երբեք գտանեմք առաւելեալ քան զհարիւր հազար. զի կառավարութիւն մեր, դէթ 'ի ժամանակս Բագրատունեաց, ոչ պարտաւորէր զամենայն նախարարս գալ միանալ 'ի պատերազմ ամենայն զօրօք իւրեանց:

Երկրորդն է՝ զի իւրաքանչիւր նախարար գաւառատէր պարտական էր տալ հարկս արքայի. որպէս յայտ առնէ նաև այս բան Թոմայի Արծրունւոյ Դ. 5. « Յայնժամ թագաւորն (Սմբատ Ա.) դեսպանս առաքեալ յամենայն սահմանս տէրութեան Հայոց, Վրաց և Աղուանից, և առ քաղաքացիսն և հազարապետս գաւառականս, և որք ծառայաբար առ նա զհնազանդութեան հարկ հարկանէին »: Եւ չտալն հարկս էր գործ ապստամբութեան. որպէս նա ինքն գրէ Դ. 10. վասն իշխանին Սիւնեաց յաւուրս նորին Ա. Սմբատայ արքայի. « Ի գալ միւսոյ տարւոյն Սմբատ իշխանն Սիւնեաց 'ի բաց եկեալ 'ի հնազանդութենէ թագաւորին Հայոց, արգել առնելով հարկացն տալ թագաւորին. թեւակոխելով Պարսից բռնաւորին հատուցանել զհարկս և զհասս. և ինքն ժողովեալ զզօրս իւր տասն հազար արանց զօրաւորաց եկն եմուտ յամուրսն Վայոց ձորոյն »: Զնոյն գրէ և վասն Ապահունեաց իշխանին. որ յայնժամ իշխէր այլազգի ոք. « Թագաւորն Հայոց Սմբատ (առաջին՝ խաղաղ) 'ի վերայ Ապահունեաց առ-

խարհին. զի որդիքն Աբդուահմանի որ կայսերքն անուանէին՝ ապստամբեալ էին 'ի պետութէ Թագաւորին, տալ հարկս, և զինուորել որպէս օրէն էր»։

Նոյն ասկս երկուց այսոցիկ գլխաւոր պատճառանաց նախարարքն ասէին լինել ընդ ծառայութ՛բ արքայի. որպէս է տեսանել յայս բան Յովհաննու կաթողիկոսի, յասելն վասն Գագկայ արծրունւոյ. «Իսկ արքայ Սմբատ թէպէտ և ընդ ակամբ հայեցեալ ոչ կամէր զայն այնպէս լինել, սակայն և ոչ ընդ պատուհասից կարգան զերծանացեալն Գագիկ համէր. մանաւանդ զի միամտութ՛բ սորա հնազանդեալ նուաճէր ընդ լծով ծառայութե արքայի»։ Վասն զի յառաջ քան զայս պատմէ, թէ Աշոտ իշխանն Վասպուրականի գնաց առ Աֆշինն ոստիկանն ընծայիւք՝ «մեծագումարի անկանելեալ բարձի և պատուոյ, և վերընկալաւ զնա առնելոյ ինքնիշխան կամօք»։ Որոյ անկանելուն 'ի գերև եղ։ Զնոյն արար և մեծ իշխանն Սիւնեաց. և իբրև նա ևս թափուր եղ, «Զղջացեալ, ասէ, զփեռեկոյին 'ի միաբանութե արքայի՝ խաղաղապատելով աղերսէր մի ունել նմա 'ի բնէ զյանցանս իւր»։ Այսպ յայտնի է թէ ընդ արքայիւ էին ամենայն նախարարքն, բայց առքա ջանացին եղանել առատք, և զերագոյն ինն իշխանութի 'ի ձեռս արկանել։ Վասն որոյ իբրև մեծ ինչ պատմէ լեալ զկնի՝ զմիաբան լինելն նախարարաց ընդ արքայի. «Յետ այսորիկ արքայ Սմբատ իբրև ետես զմիաբանութի խաղաղութե մշտընջենաւորեալ 'ի Հայս, և միաբան ընդ նմա լինել նախարարացն յուխտ սիրոյ, եդ 'ի մտի խորհուրդ երթալ հաստատել հաստատակել նուաճել զաշխարհն ևս Տարօնոյ»։

Նոյն վասն իշխանութեց և պատերազմանաց առհասարակ ամենայն նախարարաց մերոց՝ այսչափ ինչ գտանեմք 'ի գիրս նշանակեալ. իսկ 'ի բանի կառավարութե միայն զայն նախարարս գտանեմք յիշատակեալ՝ որք ունէին 'ի թագաւորէ զպաշտօն ինչ 'ի գործս քաղաքականս կամ 'ի զինուորականս. զոր օրինակ 'ի թագադրութե, 'ի զինակրութե և 'ի սպարապետութե. կամ որք խորհրդակիցք էին արքայի 'ի ժամանակս Արշակունեաց, զորս յիշեցաք և զորս ունիմք յիշել։ Վասն որոյ ըստ այսմ յերկուս դասս պարտ է բաժանել զնախարարս. մի՝ որոց էր գործ ինչ 'ի բանի կառավարութե, և միւս ևս՝ որոց ոչինչ, այլ միայն տեարք էին երկրի. զոր օրինակ էր նախարարութին Սիւնեաց, որ թէպէտ ունէր երկիր մեծ, և էր 'ի կարգս մեծամեծ նախարարութեց, բայց չունէր ինչ մասն 'ի բանի

կառավարումն ։ Մինն իրի ասելն թէ կառավարումն ազգին մերոյ խառն էր յազնուապետութէ և 'ի միապետութէ՝ վերապակ մեծ է. այլ զբացարձակ լինելն մերոյ թագաւորի յայտնի ցուցանէ ինքնօրէն իշխելն և վարիլն վերջին թագաւորաց արշակունեաց, նաև ընդդէմ հաճոյից նախարարաց. զոր օրինակ եղեն Տիրան, Արշակ, Պապ, և այլք. զայս ցուցանէ և ունելն զերկրորդ արքայի, որ միապետաց է սեփական. նաև սովորութիւն այլոց հին մերձակայ ազգաց ասիացւոց, Մարաց, Պարսից, ասորեստանեայց, որոց կառավարութիւն միշտ միապետական էր։ Յայնժամ միայն ասեմնեալք զմերոն ժողովով նախարարաց կառավարեալ, յորժամ ոչ գոյր թագաւոր, և գահն 'ի վտանգի կայր անկանելոյ 'ի ձեռս արանց ապստամբաց. զոր օրինակ եղև յաւուրս փոքուն Խոսրովու. և կամ յորժամ զնոյն իսկ զթագաւորն կամէին ընկենուլ յաթոռոյ. որպէս եղև յաւուրս Արտաշրի վերջին թագաւորի Արշակունեաց։ Զմիապետական իշխանութի արքայի հաստատէ և այն խօսք մեծին Ներսէսի բերեալ 'ի Խորենացւոյն Գ. 38. Արքային, ասէ, "վարեսցի ուղղութբ, հայրաբար խնամով առ նախարարսն. և նոքա (նախարարքն) մի ևս յաւելցին վտարանջել նշկահելով զնա, այլ ծառայել միամտութբ"։

Դ. Կարգ Նախարարութեանց։

Պատմագիրք ընդհանրապէս յերկուս բաժանեն կարգս՝ յաւագ և 'ի կրտսերագոյն. զոր օրինակ յիշատակի առ Եղիշէի 'ի թղթ. 344. "Այս երեսուն և հինգ արք, են որ յաւագ նախարարացն, և են որ 'ի կրտսերագունիցն, սակայն ամենեքեան ըստ մարմնոյ են նախարարազունք"։ Եւ 'ի 355. զնոյն զանազանութի դնէ 'ի յիշելն զկանանս. "Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ. ոչ որ միայն աւագագոյնքն էին, այլ զբազումս 'ի կրտսերագունաց ասեմ"։ Եւ Խոր. Բ. 64. "Եւ այլ որ ինչ կրտսերագոյն ազգ"։ Յորս աւագ թուին կոչեցեալ նոքա՝ որոց մեծ էր կամ գործ կառավարութե և կամ երկիր. իսկ կրտսեր նոքա՝ որոց փոքր էր պաշտօն և կամ երկիր։

Այլ 'ի նոյն իսկ յաւագագոյնս գոյր կարգ անուանեալ առաջին գահ, երկրորդ գահ և այլն, զոր ուրեք ուրեք յիշատակեն պատմագիրք. որպէս յայս բանս Խորենացւոյն Գ. 51. յասելն վասն Արտաշրի Պարսից արքայի. "Հրամայեաց զտունն երկաքանչիւրոցն (Կամսարա-

կանայն և Ամատունեաց) զկալեալսն յարքունիս՝ դարձուցանել 'ի տուն, բայց միայն 'ի գահ հայրենի ոչ հաստատել, այլ 'ի խոնարհ քան զառաջին մատուցանել նախարարս, 'ի կարգ կրտսերագունից պատրաստել. իսկ զազգն Համազասպայ որ է տոհմ Մամիկոնեան՝ 'ի վեր մատուցանել. զի կարգեսցէն ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց. և 'ի դիւանի իւրում գրել»: Զնոյն կրկնէ և 'ի Թուղթն Արտաշրի առ Վռամշապուհ մերս արքայ ասելով. «Ազգի դորա տացես զգահ հինգերորդ պատուոյ նախարարացդ»:

Զկարգ նախարարութե Մեսրոպ 'ի Թիւն Ժբ. 'ի մեծէն Խոսրովայ[1] ասէ կարգեալ և յայլոց Թագաւորաց, և ապա 'ի մեծէն Ներսիսէ նորոգեալ. զի ասէ. «Իբրև ձեռնադրեցաւ մեծն Ներսէս 'ի Կեսարիա, և եկեալ 'ի Հայս նորոգէր զգահս իշխանացն զոր կարգեալ էր (մեծն) Խոսրով և այլ Թագաւորքն. զնոյն կարգէր և սա 'ի ժամ սեղանոյն արքային Արշակայ»: Բայց ոչ գտանեմք ուրեք նշանակեալ որոշակի զառաջնութիւն և զյետնութիւն նոյն կարգի նախարարացն, թէ ո՛ր նախարար յորում կարգի գտանէր: Այլ Ագաթանգեղոսի յԾԴ. ըստ այսմ կարգի յիշատակէ նախարարքն, զորս Տրդատ առաքեաց 'ի Կեսարիա զգլխաւորս նախարարացն, և զկուսակալս աշխարհացն. «Առաջին իշխանն Անգեղ տանն. երկրորդ իշխանն Աղձնեաց որ է բդեշխ մեծ. երրորդ իշխանն Մարդպետութե. չորրորդ իշխանն Թագակապ իշխանութե Ասպետութե (որ է Բագրատունեաց). հինգերորդ իշխանն Սպարապետութե զօրավար Հայոց աշխարհին. վեցերորդ իշխանն Կորդուաց աշխարհին. եօթներորդ իշխան Ծոփաց աշխարհին. ութերորդ իշխանն Գուգարացւոց աշխարհին, (Թուի լինել բդեշխն գուգարացւոց). իններորդ իշխանն Ռշտունեաց աշխարհին. տասներորդ իշխանն Մոկաց աշխարհին. մետասաներորդ իշխանն Սիւնեաց աշխարհին. երկոտասաներորդ իշխանն Ծոդէից աշխարհին. երեքտասաներորդ իշխանն Ուտացւոց աշխարհին. չորեքտասաներորդ իշխանն Շահապ Ջարաւանդ և Հեր գաւառի (որ է Պարսկահայք). հնգետասաներորդ իշխանն Արծրունեաց աշխարհին (որ

[1] Բայց ըստ պատմութե Խորենացւոյն լաւագոյն Թուի ասել 'ի Վաղարշակայ և 'ի վերջնոյն Տիգրանայ կարգեալ. զի որովհետև առքս երկոքին հաստատեցին զնախարարութիս, ընդ հաստատելն՝ յայտ է թէ ընդ նմին և զկարգ նոցա սահմանեցին: Զկնի սոցա գուցէ և մեծն Խոսրով, նաև Տրդատ՝ որպէս երեւի 'ի կարգի եգին:

է Վասպուրականն)։ Այս իշխանք ընտիրք. կուսակալք, կողմնակալք»։ Թուի թէ այս կարգ նախարարացն էր զոր ցուցին Շապհոյ Պարսից արքայի 'ի գրոց Ագաթանգեղոսի։ Բայց այլուր 'ի թղթ. յճթ. 'ի յիշելն զիշխանս զորս ընդ իւր տարաւ Տրդատ 'ի Հռոմ, ոչ ասելին կարգաւ յիշէ. այլ յետ իշխանին Մոկաց և Սիւնեաց յիշէ զՌըշտունեացն։

Իսկ Ստեփաննոս օրպելեան գլ. Է. ասելին կարգաւ յիշէ զդաւհարգլուխ իշխանս կարգեալս 'ի Տրդատայ. « Դաւհարգլուխք (անուանեցան էին) բդեաշխն Գուգարաց և իշխանն Աղձնեաց, իշխանն Անգեղտան և իշխանն Կորդուաց, Ասպետն բագրատունի և իշխանն Արծրունեաց, իշխանն Սիւնեաց և իշխանն Մամիկոնէից։ Սոքա էին դաւհարգլուխք ամենայն իշխանացն Հայոց». որք են իշխանք ութ։ Բուզանդ Դ. Կ. 'ի պատմելն թէ որ իշխանք տարան զմեծն Ներսէս 'ի Կեսարիա 'ի ձեռնադրութիւն յաւուրս Արշակայ թագաւորին՝ ըստ այսմ կարգի յիշէ զնախարարս. « Զհայր մեծ իշխանն Մարդպետութեան, և զԲագարատ մեծ իշխանն Ասպարապետութեան, և զԴանիէլ մեծ իշխանն Ծոփաց, և զՄեհենդակ ռշտունի, և զԱնդովկ իշխանն Սիւնեաց, և զԱրշաւիր իշխանն Շիրակայ և Արշարունեաց, և զՆոյն իշխանն միւսոյ Ծոփաց, և ըզԳարգէն իշխանն տանն Ամատունեաց»։

Այս կարգ 'ի նախարարս՝ այնչափ մեծ էր համարեալ, զի յորժամ Շապուհ Պարսից արքայ փոփոխեաց զկարգ նախարարացն, յանհնարինս տրտմեցաւ նախարարն Սիւնեաց, որպէս գրէ Ստեփաննոս օրպելեան գլ. Թ. « Եւ դնեալ 'ի նմա (Շապուհ Պարսից արքայ յԱգաթանգեղոսն) զգիր տանուտէրութեան բարձի ազատացն Հայոց իշխանացն, սկսաւ ըստ այնմ գրոյ նախապատուել յարգարել յարքունական տաճարին ընտրոս իւրաքանչիւրոցն 'ի սեղանս ուրախութեան։ Իսկ տանուտէրութեան բարձն եհաս Անդովկայ Սիւնեաց տեառն. և նա հպարտացեալ խռովեցաւ ոչինչ ճաշակեաց յայնմ ուրախարար արքունական ընդունելութեան»։ Յորմէ թէ զինչ չարիք զհետ եկին, ունիս իմանալ զկնի յառանձին պատմութեան նախարարութեան Սիւնեաց։

Ե. Թիւ Նախարարութեանց։

Չորեքհարիւր դնէ Ստեփաննոս օրպելեան Է. զթիւ իշխանաց կարգելոց 'ի մեծէն Տրդատայ, ասելով. « Նորա-

գեալ նորածին շնորհօք զՀայս առաքելագործ այրն Աստուծոյ սուրբ քահանայապետն Գրիգորիոս՝ հրամայէ մեծին Տրդատայ կարգել զԹագաւորութիւն իւր ըստ սահմանի կայսերացն Յունաց, և տալ ըստ իւրաքանչիւր պատշաճի զգահ և պատիւ իշխանացն յաջմէ և յահեկէ։ Որ և գեղեցկապէս յօրինեալ 'ի ժամ Ճաշոյն նստել բարձս չորեքհարիւր իշխանաց »: Նոյնչափ Թուով դնէ լինել և Մեսրոպ ԺԷ. յաւուրս Բ. Արշակայ արքայի՝ ասելով վասն մեծին Ներսէսի. « Զնոյն կարգէր և սա 'ի ժամ սեղանոյն արքային Արշակայ բարձ չորեքհարիւրեքեան այսոքիկ. Հայկազեանք, Պարթևեանք, Արարատեանք, Բագրատունիք, Ասպետունիք (որք են նոյն). Տրպատունիք » և այլն։ Յետ Թուելոյ զկազմութիւն անուանց, ապա ասէ. « Այս են գահոյք և այլ ևս յոլովք, զորս ծանր ևս համարեցաք ածել զգրով, զոր նորոգեաց Արշակ Թագաւոր. և կարգեաց 'ի ժամ եկեղեցւոյ իւրում (այսինքն ժողովելոյ իւրոյ) բարձս չորեքհարիւր հրամանաւ մեծին Ներսիսի ». տես անդանօր 'ի Մեսրոպ։ Բայց ընդ իշխանս Թուեալ և դասեալ գտանես նաև զՍեբաստեանն՝ որ քաղաքապետս է 'ի փոքր Հայս. զՄծբնեանն՝ որ է քաղաքապետս 'ի Միջագետս և ոչ նախարարութիւն. և որ առաւելն է՝ նաև 'ի տարմնատացուց անուն, յիշատակեալ 'ի Թիւս նոցա զՀեճմատակեանս, և զայլս։

Իսկ Բուզանդ Գ. 2. իննհարիւր բարձ դնէ յաւուրս Նարին Արշակայ յասելն. « Թող զնահապետս մեծամեծս և զտանուտերս որք գործակալք միայն էին, իննհարիւր բարձ՝ որ մտանէր 'ի ժամ տաճարին ուրախութեան բազմականացն կարգելոց. Թող զամենայն գործակալութիւն սպասու »: Նաև 'ի Գ. 11. յիշէ զայլ և այլ իշխանս. և 'ի Գ. 8. զաշխարհատերս յիշելով ասէ. « Գնէր (փոքրն Խոսրով) օրէնս, զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն՝ որ էին բիւրաւորքն և հազարաւորքն, կայցեն առ արքային, և ընդ նմա շրջեսցին »: Տես և 'ի Գ. 9. և 12. զայլ և այլ իշխանս նահանգաց զորս յիշէ։

Իսկ յաղագս Թուոյ նախարարաց պարտ է գիտել, զի ոչ միայն նահանգք, այլ և գաւառք աշխարհիս Հայոց ունէին սեփական նախարարս, որպէս անկ է իմաստասիրել 'ի յիշատակելոցն 'ի գիրս, և որպէս յայտ առնէ նաև այս բան Յոհաննու կաթողիկոսի յասելն Թէ Ամրամն Ցլիկ անուանեալ վասն ուժոյն՝ գոլով գլխաւոր նախարար Ուտի

նահանգին ; "Նաեւ զայլս եւս զբազում նախարարութիւնս այնմ նահանգի գաւառ ըստ իւրեանց տուեալ 'ի նոյն յարգարէր ապստամբութեան ,,: Որք յայտ է թէ էին նախարարք գաւառացն Ուտի նահանգին : Այլ թիւ նախարարացն պակասեաց կատարածիւ որ ըստ ժամանակս ժամանակս լինէր . զոր օրինակ պատմէ Բուզանդ Ե. 15 . վասն Մուշեղայ սպարապետին Պապայ , թէ յարձակեալ 'ի վերայ բդեշխին Գուգարաց՝ որոյ ապստամբեալ ապաւինեալ էր 'ի Վիրս , "Հանէր ըստ սուր զամենայն Ազատս և զԱզգս նախարարացն զոր եգիտ . զփառաւորագեանսն . . . և զբդեշխն Գուգարաց . . . կալեալ գլխատէր . և զԱզգն որձակոտոր առնէր [1] , և զկանայսն և զդստերսն 'ի գերութիւն վարէին ,,: Սոյնպէս և վասն բդեշխին Աղձնեաց գրէ Ե. 16 . թէ նոյն Մուշեղ "Ձերբակալ արարեալ զբդեշխն Աղձնեաց , առ նմին կոտորեցին զկանայս , և զորդիս նոցա 'ի գերութն վարեցին և զմնացեալսն 'ի հարկի կացուցանէր ,,: Բայց 'ի Նախճաւան քաղաքի յորժամ այրեցան նախարարք 'ի սկզբան անդ ութերորդ դարու , կարի յոյժ պակասեաց թիւ նախարարաց . զորմէ յիշատակեալ է մեր յԱրշաւանսն անդ արարքացուց . քանզի որպէս գրէ Սամուէլ 'ի Թուին ՃԿ . բերելով 'ի Յովհաննու կաթողիկոսէ , "Առ այսու ժամանակօք 'ի ՃԾԵ . թուին այրեցին զիշխանսն Հայոց 'ի Նախճաւանին . և այնր աղագաւ պակասեաց կարգ այսր գաւառականի . զի գրէ տէր Յովհաննէս յիւրում գեղեցկաբան շարագրութեն այսպէս , եթէ վասն զի տապառապուռ տիրեցին հազարացիքն հայաստանեայցս , և մեծամեծք աշխարհիս նուազեցան : Եւ թէպէտ և մնացեալք էին՝ սակայն զօրեալ թագուցեալ կային ըստ լծով ծառայութե նոցա , վասն այնորիկ ասէ յայսմ վայրի պակասեաց 'ի պատմութէ աստի կարգ իշխանացն մերոց ,,: Քանզի պատմէ և Ղևոնդ գլ. Թ . թէ յետ այրելոյ զզօրս 'ի Նախճաւանի՝ "բազումք այլ 'ի նախարարարացն Հայոց՝ զոր ոչ բաւեմ մի ըստ

1 Յասեւ Բուզանդայ որձակոտոր առնել , և 'ի ձեռնէն ըստ գերեալ գըրտերանն նաև զուստերս , չէ պարտ այնպէս իմանալ՝ որպէս թէ զամենայն արուս կոտորեալ իցէ Մուշեղայ , և ոչ ըղք յարուաց ապրեցուցեալ . այլ քանզի և յետ այնորիկ յիշատակին առ հարք Գուգարացյ , յայտ է թէ զպարզութի կոտորելոյն կամի ցուցանել , որպէս յայտ առնէ նաև այս բան նորին Բուզանդայ , որ 'ի Ե . 17 . առէ նոյն վասն մեծի Ծոփաց . թէ նոյն Մուշեղ "զազգսն (մեծի Ծոփաց) հանէր ընդ սուր ,,: Եւ սուղ ինչ զկնի . "Եւ զազգն (մեծի Ծոփաց) 'ի հարկի կացուցանէր ,,: Այլա ոչ զամենայնն հանեալ էր Մուշեղ ընդ սուր , այլ բազմութի մնացեալ էր 'ի ծոփացւոց , զորս 'ի հարկի կացոյց : Այլ և զիտելի է , զի ոճ Բուզանդայ փոքր մի չափազանց է :

միոջէ պատմել, փոխա զամենեսեան բարձեալ 'ի կենացն՝ անժառանգ աւանելին զաշխարհս 'ի նախարարացն. յայնմ ժամանակի թագաւոր եղեալ աշխարհս Հայոց 'ի տոհմէ նախարարաց ", և այլն. Եղեն և տոհմք ինչ նախարարաց որք ընաւելին բարձան, զորոց ունիս տեսանել 'ի պատմութեան իւրաքանչիւր նախարարութեանց. և տոհմք ինչ որք յապագայ ժամանակս յաղետից և 'ի գերութեանց թշնամեաց երևելին ընաջինջ լեալ կամ կորուսեալ. Այս երևի պատճառ՝ յոյր սակս յաւուրս թագաւորացն Բագրատունեաց՝ մանաւանդ վերջնոց, ոչ տեսանեմք յիշատակեալ 'ի գիրս զանուանս տոհմից նախարարութեանց՝ բայց միայն յոյժ երևելեաց. իսկ անուանք նախարարաց որ 'ի կողմանս չորրորդ Հայոց, զոր օրինակ է Անգեղտան, Մարդպետական, և այլն, ոչ յիշատակին՝ 'ի վաղուց անտի անցեալ գոլով առ տէրութեամբ Յունաց, և անդ կորուսեալ որպէս թուի.

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ

Ցայս վայր տուեալ ընդհանուր տեղեկութիւն յաղագս նախարարութեանց, քանզի կարևոր տեսանեմ գիտել ինչ ինչ նաև զիւրաքանչիւրոցն առանձին առ կատարեալ տեղեկութիւն կառավարութե աշխարհիս մերոյ, աստանօր ճառեսցուք զնոցունց մի ըստ միոջէ ըստ այսմ կարգի.

Ա. Յաղագս թագակալ նախարարութեանց, այսինքն է՝ որք զանուն թագաւորի ընկալան, և մի ըստ միոջէ պայազատեցին.

Բ. Յաղագս նախարարութեանց, որք մտին 'ի գործ ինչ կառավարութե.

Գ. Յաղագս նախարարութեանց, զորոց ոչ յիշատակի գործ ինչ 'ի կառավարութե.

Զամենեցուն զոցա յիշեսցուք զսկզբնաւորութիւն ցեղից, զերկիրս, զպաշտօնս և զերևելի անձինս. բայց անթերի կարգել զպատմութիւն նոցա, և զամենայն անձինս 'ի նոյն ցեղից՝ որք յիշատակին 'ի պատմութիւնս՝ յիշել աստանօր, չէ տեղւոյս.

իցն՝ չնորհակալութիւն նմա վասն յառաջագոյն անձնատուր ձեռնտուութեան առ թագաւորն՝ և միամտութեան և քաջութեան՝ զյառաջացեալ տանուտէրական պատւոյն ազգին պարգևելով. և իշխել նմա թագ 'ի գլուխ դնել թագաւորին, և կոչել Թագադիր և Ասպետ„[1]: Զայս յիշատակէ և Բուզանդ վկայելով Ե. 44. «Տայր նմա (Բ. Վաղարշակայ արքայի) զպատւոյ Ասպետին բագրատունւոյ 'ի Սպեր գաւառէ. որ թագաւորըն Թագակապն լեալ էին 'ի բնմէ ազգին թագաւորութեան արշակունւոյ„: Վասն այսր թագակապ իշխանութեան է որով 'ի կարգս նախարարաց առաջին զատեցաւ տոհմն Բագրատունեաց, զոր Ստեփաննոս Օրպելեան Դ. նորին Վաղարշակայ այսպէս կարգեալ ասէ. «Հրամայէ Բագրատունեացն թագադիր լինել. և անուանէ զնոսա ասպետս, և չնորհէ ունել ընդելուզեալ բարձ 'ի վերոյ քան զամենայն„: Ցայնմհետէ թագադրութիւն այնպէս սեփական եղև այսր տոհմի, մինչև առանց Բագրատունեաց թագաւորելն ապօրինաւոր համարեալ լինէր 'ի ժամանակս Արշակունեաց, որպէս և համարեալ եղև Բ. Երուանդ ըստ ցուցանելոյ Խորենացւոյն Բ. 37. յասելն. «Միաբանեալ թագաւորեցուցին զնա առանց արանց յազգէն Բագրատունեաց լինել թագադիր„:

Երկրորդ պաշտօն էր Բագարատայ Վաղարշակ՝ կացուցանելով զնա Կողմնակալ իշխան. այսինքն՝ զօրավար զօրաց յարևմտեան կողմն աշխարհիս Հայոց. զայս յայտ առնէ Խորենացին Բ. 3. յիւր յառաջին բանն, ուր յետ պատմելոյ զթագադիր լինելն նորա՝ առաջ դնէ. «Եւ սա 'ի դրան արքունի. իսկ 'ի ծայրս հայերէն խօսից՝ Կողմնակալ իշխան բիւրուց և հազարաց յարևմտից կուսէ„: Այսինքն է, զոր գրեցաքն թագադրութիւն, էր սա պաշտօն և իշխանութիւն 'ի դրան արքունի, իսկ 'ի ծայրս՝ որ է 'ի սահմանագլուխս երկրին՝ կարգեցաւ նոյն Բագարատ կողմնակալ իշխան կամ զօրավար 'ի վերայ արևմտեան զօրաց հայաստանեայց: Զայս առաւել որոշակի յայտ առնէ նոյն ինքն Բ. 14. յասելն վասն միջնոյն Տիգրանայ. «Առնու 'ի նոցանէ ('ի Բագրատունեաց) 'ի բաց զիշխանութիւն զօրուն. բայց միայն զթագակապ ասպետութիւնն ոչ հանէ„: Եւ 'ի 47. յասելն վասն Բ. Արտաշիսի. «Տայ զայերկին իւրոյ

[1] Թէ զինչ սահմանեալ էր վասն թագադիր ասպետին, տես 'ի գլուխն չորս զդեհնալ Բագարատայ 'ի ներքս Սմբատայ 'ի գլխոսս :

Սմբատայ . . . աւելի քան զհայրենական զիւր Թագակապ ասպետութիւնն, և զիշխանութեան արեւմտեայ զօրուն (զոր ունէր), հաւատայ 'ի նա զամենայն զօրս Հայոց ,,: Սմբատ էր բագրատունի, որոյ հայրենական պատիւն էր Թագակապ ասպետութիւն, նաև իշխանութիւն կամ զօրավարութիւն 'ի վերայ արեւմտեայ զօրուն. այլ այժմ, ասէ, 'ի նա յանձնեաց Է. Արտաշէս նաև զսպարապետութիւն 'ի վերայ ամենայն զօրաց [1]: Այսպէս արար և Գ. Խոսրով արքայ ընդ Սահակ ասպետ, որ էր բագրատունի. զի յորժամ Սահակ ելեալ 'ի բաժնէն Յունաց եկաց 'ի բաժինն Պարսից ուր նստէր Խոսրով, "Մեծապէս ուրախ եղև, ասէ Խորենացին Գ. 43. ընդ գալն Սահակայ ասպետի, և Սպարապետ զնա 'ի վերայ զօրաց իւրոց կարգեաց ,,: Բայց այժմ 'ի հարկէ և զԹագադրաւն՝ որոյ անուամբ ցուցանէ լինել 'ի բագրատունի ազգէ, Բուզանդ Գ. 4. կոչէ "Մեծ իշխանին ասպարապետութեան ,,: Որպէս և զԵնանոս բագրատունի Թոմա արծրունի կոչէ Սպարապետ Հայոց: Երեւելի սպարապետ եղև նաև Սմբատ բագրատունի յաւուրս Պապայ արքայի, որ և առաջնորդ եղև 'ի հռչակաւոր մարտին որ 'ի Ձիրաւ դաշտին. Խոր. Գ. 37:

Պատուանուն Բագրատունեաց:

Այս տոհմ Բագրատունեաց էառ և ուրոյն պատուանուն, որ է կոչիլ Ասպետ. զայս անուն սեփականեալ ցուցանէ Խորենացին. Թագադիր պատուոյն. զոր օրինակ 'ի նախագրեալ բանին, ուր միանգամայն յիշէ յասելն՝ թէ Վաղարշակ շնորհեաց Բագարատայ կոչիլ Թագադիր և Ասպետ: Եւ յայլ բանս իւր Բ. 14. և 47. ընդ յիշելն զասպետուն Բագրատունեաց՝ յիշէ 'ի կրկին անդր Թագակապ ասպետութեան կոչելով. յայտ առնելով թէ Ասպետ անուանեցաւ վասն Թագ կապելոյն 'ի գլուխ արքայի: Վասն որոյ և յորժամ Սմբատ բագրատունի զերկաթհրացեալ բոլորելով 'ի գլուխն Մեհրուժանայ դնէր, Պա-

1 Ի բանից աստի յայտ է թէ բառնալն Տիգրանայ 'ի Բագրատունեաց զիշխանութիւն արեւմտեայ զօրուն՝ առ ժամանակ մի միայն եղեւ. զուցէ միայն յաւուրս նորին Տիգրանայ. զի նոյն այնորիկ անդրէն դարձեալ էր առ Բագրատունիս. զի Թոմա արծրունի ա. 9. զԵնանոս բագրատունի որ յաւուրս Արշամայ արքայի՝ կոչէ Սպարապետ Հայոց, և յայր սակս գրեաց Խորենացին 'ի վերոյ՝ թէ Է. Արտաշէս առաւել քան զիշխանութիւն արեւմտեայ զօրուն՝ յաւել այժմ առ և զՍպարապետութիւն ամենայն զօրաց:

կեմ զքեզ Թագաւոր, ասելով ընդ խաղս, ասպետութե տայ զԹագադիր լինելն. « Քանզի 'ի խնդիր էիր (ասէ, առ Խորենացւոյն Բ. 37.) Թագաւորել Հայոց, և ինձ Ասպետտէս պարտ է զքեզ պսակել ըստ սովորական իշխանութե իմոյ հայրենեաց » թագդրութեանց: Վասն որոյ և Ագաթանգեղոս յծԴ. 'ի յիշելն յանուանէ զայլ և այլ իշխանս՝ զԲագրատունեացն առանց անուան յիշէ, կոչելով Իշխանն Թագակապ Իշխանութեան Ասպետութեան. և 'ի Թղթ. յձԹ. կոչէ միայն Զթագադիրն Ասպետ: Վասն որոյ և այլք նաև զԹագադրութեան զանունն չյիշելով միայն զասպետութեան անունն յիշեն իբր նոյն, և իբր սեփականեալ Թագադրութե գահին և պաշտօնին. « Աքանչելի Ասպետաւն Սահակաւ մարզպանաւ » ասէ Ղազար 224: « Յետ մահուանն մեծին Սահակայ Բագրատունւոյ սպարապետի Ասպետի և զօրավարի Հայոց ». Թովմ. արծ. Ա. 15: Եւ Յոհաննէս կաթողիկոս 'ի յիշելն զՎարազտիրոց Բագրատունի՝ « Ասպետն Վարազտիրոց » կոչէ [1]: Յայսմանէ Թուի ինձ պիտակարար եւեթ Ասպետ կոչեցեալ 'ի Ստեփաննոսէ Իբ. զԹէոդորոս Ռշտունի, և 'ի Կիրակոսէ զՋաքարիա՝ յասելն. Ժողովականք, որ 'ի հրամայելոյ Լեւոնի Թագաւորին ժողովեցան 'ի Սիս, գրեցին. « Մեծապատիւ Ասպետն և շահնշահ արևելեան կողմանց Զաքարիա »: Այս տոհմ զինի էառ և զմեծն 'ի պատուանունս զանուն Թագաւորի [2]. և որ նախ Արշակունեաց տանն դնէր Թագ, զինի իւրով արդեամբք իւրոյ տանն եդև Թագադիր, և արժանացաւ կոչիլ Թագընկալ:

## Երէէր Բագրատունեաց:

Ի վաղ ժամանակաց անտի 'ի յիշելն պատմագրաց զՍպեր, սեփական լինել անհարկեն այսմ տոհմի Բագրատունեաց, Թէպէտ և յայտնի ինչ չգրեն [3]. որպէս և 'ի յիշելն զՍմբատաւան 'ի նմին գաւառի, որում և Բագրատունեան անուանս Սմբատ վկայէ. և այս ըստ Խորենացւոյն

1 Մեսրոպ 'ի Թիւն ժՁ. 'ի յիշելն զեսախտարար՝ յառաջ քան զանձնեանն յետ Թագաւորական տոհմին իսկ և իսկ յիշէ զԲագրատունիս, և զինի այնր անդէն յիշէ զԱսպետունիս. զոր կարծեմ 'ի գրչաց անջնջեալ. փոխանակ 'ի մի յօդելոյ: Բայց որ անկի է՝ առաւել զարմեալ յիշէ զԲագրատունիս:

2 Զորմէ տես 'ի կարգս Թագաւորաց Բագրատունեաց:

3 Տես վասն այսր 'ի մեծ Հայս 'ի Թղթահամարն 26:

Է. 43. «Բայց եթէ ոմանք և 'ի նախարարացն՝ որք ունէին զիշխանութիւն իւրեանց 'ի բաժնին Յունաց առ Արշակայ. որպէս Սահակ ասպետ (թագադրաւնի), որ էր լեալ անդր Վաղարշակայ եղբօր Արշակայ» ասէ այլ։ Իշխանութիւն ասելով իմանայ աստէն զերկիր նոցին նախարարաց. որոց զի՞նչ այլ երկիր կարեմք դնել սեփական իշխանութեան Բագրատունեաց քան զՍպեր յայնմ ժամանակի՝ յորում աշխարհս Հայոց յերկուս բաժանեալ, Այրարատ և մեծ մասն մեծին Հայոց էր 'ի մասին Պարսից և ոչ Յունաց։ Ի մեծէն Վաղարշակայ, որպէս ինձ թուի, տուեալ էր Բագրատունեաց այս երկիր Սպերոյ, յորժամ կողմնակալ կացոյց արեւմտեան կողմանն, լինել նոցա իբր քաղաք զօրանիստ, որ և էր յարմար. զի յայնմ ժամանակէ հետէ մինչև 'ի բնականալ նոցա յայրարատեան նահանգ՝ ոչ ինչ այլ երկիր յիշատակի վասն տոհմին Բագրատունեաց։ Նորին աղագաւ բագրատունին Աշոտ Մսակեր յորժամ զԳնունիս կամեցաւ յապահով տեղւոջ բնակեցուցանել, 'ի Տայս փոխադրեաց, ասէ Վարդան, որ սահմանակից էր իւրում գաւառին Սպերոյ, կամ թէ գուցէ մինչև 'ի Տայս ձգեալ էր յայնժամ Բագրատունեաց զսահմանն իւրեանց։

Նոյն զօր յայտնի դրեն պատմագիրք՝ է վասն բնականալոյ նոցա յայրարատեան նահանգի. զի Թովմա արծրունի ա. Գ. յաւուրս Արշամայ մերոյ արքայի՝ զԲագրատունիս բնակեալ ասէ յԱյրարատ, գրելով վասն Ենանոսի որ յայնժամ նահապետ էր Բագրատունեաց. «Զօր առեալ Զաղուա (իշխանն արծրունի) աքսոր և աննայն պատրաստ կազմութեամբ բնակեցուցանէ 'ի կողմն Արագածոյ 'ի գիւղն Թալին կոչեցեալ։ Սա (Ենանոս) առաջին 'ի տանէն Բագրատունեաց եկեալ կայանայ զայսու կողմամբ այրարատեան նահանգի»։ Եւ ոչ միայն բնակութիւն կալեալ՝ այլ նաև զերկիր ինչ սեփականեալ ցուցանեն յայնմհետէ բանք պատմագրաց վասն այսր տոհմի. զի զԲագարան որ 'ի Կոգովիտ գաւառին Այրարատայ՝ շինեալ ասէ Խորենացին Բ. 45. 'ի Սմբատայ բագրատունւոյ որ յաւուրս Բ. Արտաշէսի, [illegible] կոչելով, և 'ի նմա բնակեցուցեալ զիւր զերութիւն իբր յիւրում սեփական երկրի։ Զքաղաքն Դարունք, որ էր 'ի Կոգովիտ, Ղևոնդ կոչէ նոյն [illegible] [illegible] վասն Աշոտոյ պատրկի բագրատունւոյ որ 'ի յելս եօթներորդ դարուն. նաև զեկեղեցի ևս շինեալ 'ի նմա իբր յիւրում սեփա-

կան երկրի։ Եւ Վարդան վասն Աշոտոյ որդւոյ Սմբատայ գրէ, թէ որովհետեւ զգլուխ մեռելոյն մամիկոնեան Գրիգորոյ առաքեաց առ Մահմէտ ոստիկան՝ հրամանաւ Ջաֆրէ ամիրապետին, "պատուէ զԱշոտ, տալով նմա զգաւառն Բագրեւանդ (որ էր Գրիգորի), և արծաթ բիւրս հինգ։ Իսկ վասն մսակերն Աշոտոյ թագաւորութեան գրեն զարքունիս իւր 'ի Կոգովտէ փոխեալ յԱրշարունիս. ապա յայտ է թէ յառաջ քան զնա արքունիք Բագրատունեաց էր 'ի Կոգովիտ։ Զկնի այնորիկ Արշարունեաց գաւառն Այրարատոյ եղև սեփական երկիր Բագրատունեաց արծաթոյ գնելով, որպէս պատմէ Ասողիկ Գ. 2. "Իսկ ըստ իշխանացն կարգին՝ զկնի Սմբատայ որդւոյ Աշոտի՝ Աշոտ որդի նորա որ մսակերն կոչիւր՝ ամնքան. սա զանձագին առեալ զգաւառն Արշարունեաց յազգէն Կամսարականաց և զարքունիսն 'ի Կոգովտէ յԱրշարունեաց փոխեաց"։ Այլ նաև յառաջ քան զայն Աշոտ՝ էր 'ի ձեռս Բագրատունեաց. յայտ առնէ Խորենացին Գ. 45. "Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուանդայ զոր դերեացն 'ի Բագարանէ (Արշարունեաց), տարեալ բնակեցուցանէ 'ի Թիկանց Մասեաց (ուր անկանի Կոգովիտ). 'ի նոյն անուն Բագարան կոչելով (նաև) զձեռակերտն"։ Իսկ Ղևոնդ վասն Աշոտոյ պատրիկի որ բազմօք յառաջ է քան զմսակերն, գրէ. "Շինէր զեկեղեցին Դարունից յիւրում ոստանին". Եւ թէ թաղեցաւ 'ի կայս հանգստեան իւրոյ 'ի գիւղն Դարունս, "որ էր 'ի Կոգովիտ գաւառի"։ Իսկ Յովհաննէս կաթողիկոս վասն մարմնոյ քաջին Սմբատայ թագաւորութեան, որ յետ անդ վկայորոդ դարուն, գրէ. "Բարձեալ տարան զմարմին նորա 'ի Հայս, և դնեն 'ի Դարոյնս որ 'ի Կոգ. գաւառի"։ Եւ վասն Վարազտիրոցի և վասն Սմբատայ եղբօրորդւոյն ա. Սմբատայ, "Տարեալ թաղեցին 'ի Դարոյնս ընդ հարս իւր"։ Եւ որպէս թուի, էառ նաև զՇիրակ գաւառ. զի քաղաքք Շիրակայ գաւառի, ընդ նոսին և Անի, յախտահեալ 'ի ձեռս Բագրատունեաց լեալ յիշատակին ¹։ Եւ այսպէս երկիր Բագ-

¹ Այլովք պարագայիւք պատմէ [illegible] զայս Վարդան. "Իսկ որդիքն Սմբատայ Աշոտ (մսակեր) և Շապուհ՝ [illegible] զհայրենիս իւրեանց. և զի Ջաֆրայ ( [illegible] ) [illegible] յԱրշարունեաց, և [illegible] 'ի ձեռն [illegible] յիշխանս Աշոտ և Շապուհ. և ելեալ [illegible] Շիրակայ, և [illegible] և առին զՇիրակ, և զԱշոցք, և զգաւառն Տայոց։ Եւ այսպէս [illegible] Աշոտ [illegible] ( [illegible] զԱնի որ 'ի Շիրակ). և

րատունեաց եղև նախ Սպեր գաւառ 'ի բարձր. Հայոց նահանգի, ապա Կոգովիտ, Արշարունիք, Շիրակ յԱյրարատ նահանգի. այլ ընդ ժամանակս ինչ և զՏարօն գտանեմք 'ի ձեռս արանց տոհմին Բագրատունեաց լեալ. զայս ցուցանէ բան Թովմայի արծրունւոյ Է. 5. «Իշխանն Տարօնոյ Բագարատ վասն զի ունէր յայնժամ զգլխաւորութի բարձակցութի իշխանաց Հայոց, որ էր 'ի տոհմէն Բագրատունեաց, տաւաքէ զոմանս 'ի մեծամեծաց»: Եւ Յովհաննէս կաթողիկոս յաւուրս Ա. Սմբատայ արքայի գրէ. «Իսկ յետ ամաց ինչ ապա վախճանեցաւ և մեծ իշխանն Տարօնոյ Դաւիթ Բագրատունի. փոխանակ նորա կացուցեալ 'ի տեղի եղբօրորդի նորին Գուրգէն, ապա և ընդ նմա եւ Աշոտոյ մարտ եղեալ մինչև սպանանել 'ի պատերազմի. իսկ Աշոտայ ոտն առ ոտն յառաջ մատուցեալ միապետել ջանայր զկողմանսն զայնոսիկ»:

Ոստան Բագրատունեաց:

Ղևոնդ 'ի գլուխն Դ. զԴարունս դնէ, յասելն վասն Աշոտոյ պատրկի' որ հրամանատար էր յետ եօթնեքորդ դարուն. «Շինէր զեկեղեցին Դարունից յիւրում Ոստանին»: Զկնի Դարունից ոստան նոցա երևի լեալ Բագարան որ յԱրշարունիս. զի անդ զնեն զորքունական ապարանս կամ զտուն. որպէս կարես տեսանել 'ի մեծ Հայս 395. տատանօք յաւելցուք և զայս բան Թովմայի արծրունւոյ Գ. 13. զոր գրէ վասն Ա. Աշոտոյ նախ քան զթագաւորել իւր. «Եւ անյապաղ գլխաւորեալ խորհրդոյն առ ընդ իւր զԴերենիկն, և էանց գնաց 'ի տուն իւր 'ի Բագարան»: Իսկ յաւուրս Ա. Սմբատայ նորին յաջորդի արքունական ապարանք մերթ յԵրազգաւորս յիշատակին լեալ առ Յովհաննու կաթողիկոսի, զորմէ կարես տեսանել 'ի մեծ Հայս 428. վասն որոյ և Վարդան յառաջ քան զընդարձակել Անւոյ քաղաքին' «Նա էր, ասէ, նախագահ թագաւորացն Բագրատունեաց»: Որով յայտ առնէ զԵրազգաւորս լինել նոցա ոստան յայնմ ժամանակի. իսկ յորժամ Գ. Աշոտ ողորմած ձայնեալ զառաջինն ընդարձակեաց զքերդն Անի 'ի Շիրակ գաւառի,

ընակեցուցանէ 'ի նմա զընտանիս իւր»: Սոյն գովելով և զհաւանեալն նորա ասէ. «Եւ ինքն նմանեալ նախնեացն իւրոց Սմբատայ որդւոյ Բիւրատայ իշխանին Սմբատաւանայ' որ է ընդ 'ի Սպեր գաւառի»: Յետ որոյ և զորդին Գնունեաց հանեալ ասէ նոցա յԱղիովտայ, և ընակեցուցեալ 'ի Տայս:

յայնմհետէ յայտ է թէ Անի եղև աթոռ Բագրատունեաց, և արքայանիստ քաղաք նոցա. անդ նստէին թագաւորքն բագրատունիք, և անդ օծանէին մինչև ցվերջն։

## Շիրիմ Բագրատունեաց։

Նախ յիշատակի 'ի Դարոյն լեալ շիրիմ Բագրատունեաց. զի Սմբատ բագրատունի ՚Քաջ անուանեալ կամ Բազմայաղթ որ 'ի յետս վեցերորդ դարուն, թէպէտ 'ի Տիզբոն մեռաւ, այլ “ բարձեալ տարան զմարմին նորա 'ի Հայս, և դնեն 'ի Դարոյնս որ 'ի Կոգ գաւառի „. որպէս գրէ Յովհաննէս կաթողիկոս։ Եւ Վարազտիրոց որդի նորա, ասէ Վարդան, “ յաւանուլ զիշխանութիւնն (կուրապաղատութեան) մեռաւ և թաղեցաւ 'ի Դարոյնս առ հօր իւրում քաջին Սմբատայ „։ Որպէս և Աշոտ պատրիկ, զորմէ Ասողիկ Բ. Կ. “ Իշխանն Աշոտ պատրիկ . . . . . . վախճանեցաւ և դնէր 'ի տապանի 'ի գիւղն Դարիւնս „։ Իսկ զկանս Պլեոնգայ տես 'ի մեծ Հայս 451։ Յետ այնորիկ շիրիմ նոցա եղև լեալ 'ի Բագարան Արշարունեաց, ուր թաղեալ ասէ Յովհաննէս կաթողիկոս զԱշոտ Ա. թագաւոր և զՇապուհ զսպարապետ Հայոց զեղբայր Ա. Սմբատայ արքայի։ Երբեմն և խառն թաղէին. զի Յովհաննէս կաթ. վասն մանկանն Մուշեղայ որդւոյ Ա. Սմբատայ ասէ. “ Տարեալ թաղեցին 'ի Դարոյնս ընդ հարս իւր „։ Յետ սոցա յընդարձակելն Անի քաղաքին Շիրակայ և 'ի նստիլն անդ թագաւորացն Բագրատունեաց՝ յԱնի սկսան թաղել. զի Մատթէոս Ուռհ. գրէ. “ Եւ մեռաւ Աշոտ (թագաւոր եղբայր Յովհաննու թագաւորի) 'ի քաղաքն Անի, և թաղեցին զնա 'ի տապանատունն առաջին թագաւորացն Հայոց „։ Եւ 'ի թիւն ՆԶ. գրէ. “ Ի ՆԶ. մեռաւ թագաւորն Հայոց Յովհաննէս, եղբայրն Աշոտոյ որդի Գագկայ, բագրատունի ազգաւ, և թաղեցին զնա 'ի քաղաքն Անի 'ի գերեզմանսն առաջին թագաւորացն Հայոց „[1]։

1 Ուր շփոթելով ընդ միւս Անի քաղաքին Դարանաղեաց այսպէս գրէ. զի յառաջ քան զԱշոտ ողորմած, և զՍմբատ Բ. որք ընդարձակեցին զայս Անի Շիրակայ, ոչ նստէին անդ թագաւորք, և ոչ թաղեալ լինէին։ Տես զոր ինչ գրեցաք վասն այսր 'ի մեծ Հայս 'ի թղթ. 10 և 419։

Հատուած Բագրատունեաց:

Զօրմանք մեծ են, զի այս տոհմ Բագրատունեաց յաւուրց անտի առաջին նահապետին իւրեանց Շամբաթայ՝ մինչև իւրեանց հրէութեան օրինօք կեցին, ոչինչ բռնադատութիւն լեալ նոցա 'ի մերոց թագաւորաց հայկազնեաց. միայն 'ի Վաղարշակայ առէ Խորենացին Բ. Ը. « Աղերսեալ որ 'ի Հրէիցն Շամբայ Բագարատ, որ և թագադիր և ասպետ, համոզերձ հարկեցուցանող բռնիւք թողուլ զօրէնս հրէութեան, և պաշտել զմեհեանս. զոր չառեալ յանձն՝ ըստ կամաց թողու զնա արքայն Վաղարշակ »: Այսպէս ոչինչ այլայլութիւն մուծեալ 'ի հաւատս նոցա, մինչև 'ի յաջորդն Վաղարշակայ Արշակ առաջին՝ որ բռնադատել սկըսաւ, զորմէ պատմէ Խորենացին Բ. Թ. « Ի սմանէ նեղեալ որդիք Բագարատայ վասն զկուռս պաշտելոյ, երկու 'ի նոցանէ որով կատարեցան արիաբար 'ի վերայ հայրենի օրէնացն. զորս ոչ պատկառիմ ասել հետևող լինել Անանիանցն և Եղիազարայնոց: Բայց այլքն յանձն առնուն այս չափ միայն, 'ի շաբաթու հեծանել յորս և 'ի պատերազմունս, և զմանկունս թողուլ անթլփատս, յորժամ լինիցին. քանզի անկին էին: Եւ հրամայեցաւ յԱրշակայ մի տալ նոցա կանայս յամենայն նախարարութեցն, եթէ ոչ ուխտ պայմանի հաստատեսցեն՝ թողուլ զթլփատութիւն. զորս յանձն առնուն զերկուսս զայս միայն, այլ ոչ զերկրպագութիւն կռոցն »:

Երկրորդ անգամ հալածանս կրեաց այս տոհմ 'ի մէջ նոյն Տիգրանայ, որպէս գրէ Խորենացին Բ. ԺԴ. « Եւ այսպէս մեհեանս շինեալ և առաջի մեհենիցն բագինս կանգնեալ՝ զոհս ամենայն նախարարացն հրամայէ մատուցանել համոզերձ երկրպագութեամբ. զոր չառեալ յանձն ազգին Բագրատունեաց, զմիոյ լեզուն հատեալ՝ որում անուն էր Ասուդ՝ վասն պատկերացն անարգութեան, ոչ այլ ինչ խոշտանգէ. քանզի յանձն առին ուտել 'ի զոհիցն և զխոզի, թէպէտ և ոչ ինքեանք զոհեցին երկրպագութեամբ: Վասն որոյ առնու 'ի նոցանէ 'ի բաց զիշխանութիւն զօրուն. բայց միայն զթագադիր ասպետութիւնս ոչ հանէ »:

Երրորդ անգամ կրեալ հալածանս յԱրշամայ արքայէ առէ Խորենացին Բ. ԻԴ. վասն յանցանաց ինչ Ենանոսի նահապետին բագրատունւոյ, և յաւէտ վասն քութեն Զուրայի աշտունւոյ, և յախժամ յանձն առեալ ըզ-

կուապաշտութիւն. « Զայսու ժամանակաւ եղև մեծ ցասումն Արշամայ ՚ի վերայ Եննանոսի ասպետի որումն Թագակապի . . . Հրամայեաց տանջանս պէսպէս ՚ի վերայ Եննանոսի կուտել. և վախճան գործոյն՝ կամ թողուլ խոպառ զօրէնս Հրէութեան և երկիր պագանել արեգական և պաշտել զկուռս արքայի, ընդ որում հարկեալ արքայ տացէ նմա զնոյն իշխանութիւն, կամ կախել զփայտէ և բնաջինջ լինել ազգի դորա: Եւ պատմեալ մի յազգականացն առաջի նորա որում անուն էր Սարիայ, և առընթեր զորդիսն մատուցեալ ՚ի տեղի պատանմանն՝ որոց անուանքն Սափատիայ և Ազարիայ, յերկիւղէ մահուան որդւոցն և ՚ի թախանձելոյ կանանցն կատարէ զկամս արքայի հանդերձ ամենայն ազգատոհմիւն, և յառաջին պատիւն իւր հաստատի »:

Յովսեփհեայ և հրէական անուանց նոցա փոխեալ ասէ Խորենացի Բ. 63. « Բայց գիտեա, զի ՚ի թողուլն ազգին Բագրատունեաց զօրէնս հարցն, նախ խժական ժառանգեցին յորջորջումն, Բիւրատ և Սմբատ, և այլ այսպիսի կոչմունս, զերկեալ ՚ի նախնական անուանցն՝ որպէս կոչէին յառաջ քան զուրանալն, Բագադիա, Տուբիա, Սենեքիա, Ասուդ, Սափատիա, Վազարիա, Եննանոս: Եւ ինձ թուի թէ որ այժմդ կոչին Բագրատունիք Բագարատ՝ Բագադիա է դա, և Ասուդ՝ Աշոտ. դոյնպէս և Վազարիա՝ Վարազ. որպէս Շամբատ՝ Սմբատ »: Բայց եղեն և ոմանք ՚ի տոհմէ որք ոչ ուրացան զհրէութի, և արժանի եղեն յառաջ քան զամենայն նախարարս ընդունել զքրիստոնէութի ՚ի սրբոյն Թադէոսէ. « Որոյ եկեալ (ասէ Խորենացին Բ. 33. յեդեսիա) ՚ի տուն Տուբիայ իշխանի հրէի, զոր ասեն լինել յազգէն Բագրատունեաց, որոյ խուսեալ յԱրշամայ ոչ ուրացաւ զհրէութիւն ընդ այլ ազգականս իւր, այլ նոյն օրինօքն եկաց՝ մինչև հաւատալ ՚ի Քրիստոս »:

Երևելի անձինք ՚ի Բագրատունեաց:

Ի սկսանելոյ այսր տոհմի ՚ի ժամանակս թագաւորութեան Արշակունեաց թէ քանի անձինք եղեն երևելիք՝ յայտ եղև ՚ի յիշատակելոցս մինչև ցայժմ. յայր սակս իբրաւացի են գովութիւք Խորենացւոյն ա. 1. ուր գրելով առ Սահակ ասպետ բագրատունի՝ այսպէս ասէ. « Զի և ազգի ես նախնականի (Բագրատունեաց, որ եղև) և քաջ և արգասաւոր ոչ միայն ՚ի բանս և ՚ի պիտանաւոր խոհա-

կանոնութիւնս, այլ և 'ի մեծամեծ և 'ի բազում գործս արժանաւորաց, զոր յիշատակեսցուք 'ի կարգի պատմութեանս, յորժամ զորդի 'ի հօրէ ծննդաբանելով ազգաբանիցեմք զբովանդակն„: Այլ որ առաւել զովութիւն է այսր առնելի, նաև յետ բառնալոյ թագաւորութեան Արշակունեաց ոչ պակասեցան 'ի նմանէ անձինք երևելիք, որք և գլուխ եղեն ազգին յամս թշուառութեան ժամանակի. որպէս յետ հինգերորդ դարուն Սահակ ասպետ. յետ վեցերորդ դարուն քաջն կամ բազմայաղթն Սմբատ, որ եղև մարզպան նաև Վրկան աշխարհի. նոյնպէս և այլք ոմանք յեօթներորդ դարուն հրամանատար ազգին կարգեալք:

Այլ 'ի կարգս սոցա առաւելեալ գտաւ Աշոտ Բագրատունի որդի Վասակայ, որ երևելի և սիրելի լեալ նոցին իսկ արաբացւոց՝ Մրուան ոստիկան նախ քան զլինելն իւր ամիրապետ՝ կացոյց զնա հրամանատար 'ի վերայ Հայոց 'ի 743: Յորժամ արաբացիք յաւուրս ամիրապետին որ կոչէր Ծաֆէր իւլ մանսուր, ըստ մեզ Ջաֆրէ, անհնարին ծանրացուցին զհարկս, իշխանք Հայոց խորհեցան ապստամբիլ. և յընդդէմ դառնալն Աշոտոյ՝ թշնամիք նորա մամիկոնեան իշխանքն Գրիգոր և Դաւիթ կալեալ կուրացուցին զնա. բայց սերունդ իւր այնչափ երևելի եղև՝ մինչև պատմագիրք զայս Աշոտ համարին իբր սկիզբն և նախահաւ նորոյ թագաւորութեանն՝ որ սկիզբն կալաւ 'ի Բագրատունի տոհմէն՝ ոչ միայն Հայոց, այլ և Վրաց. վասն որոյ գրէ Վարդան. "Սա է նախնի թագաւորացն Հայոց և Վրաց„: Եւ այսպէս կարգէ զազգաբանութի̃ նորա. "Բայց առեալ է աստ զսկիզբն թագաւորացն Հայոց և Վրաց որք 'ի Բագրատունեաց անտի սերեցան. քանզի որպէս ասացաւ, զկնի քաջին Վարդանայ իշխանք Հայոց կացին ըստ դիպելոյ մինչև 'ի Սմբատ Բագրատունի, և զկնի նորա Աշոտ որդի Վասակայ զոր կուրացուցին մամիկոնեանքն: Սմա լինին երկու որդիք, Սմբատ նախնի թագաւորացն Հայոց, և Վասակ սկիզբն թագաւորացն Վրաց . . . Իսկ Հայոց նախնոյն Սմբատայ որդի Աշոտ մսակեր, որոյ որդին Սմբատ խոստովանող (Ապլաբաս ձայնեալ), որոյ որդին այս Աշոտ բարեպաշտ, որ անուանեցաւ Իշխանաց իշխան 'ի յԱլեայ որդւոյ Վահէի հրամանաւ ամիրապետին Ջաֆրայ„: Սա է որ ապա եղև թագաւոր՝ կոչեցեալ Ա͞. Աշոտ. զոր և Յոհաննէս կաթողիկոս գովելով ասէ. "Պատուականագոյն և առաջին նա գտեալ եղև քան զամենայն նա-

խաղաղութիւն Հայոց »։ Որով տոհմն այն որ պատիւ ունելով թագակապ ասպետութեան զգլուխս այլոց պճնէր թագաւորական թագիւն, զկնի ժամանակաց զիւրն և զիւրոցն պճնեաց յորդւոց յորդիս հանապազորդեալ ընդ ամս 160. զորոյ զթագաւորութիւնն բազում ամօք յառաջ գուշակեալ էր մարգարէութեամբ նոյն ինքն պատմաբանն Բագրատունեաց երանելին Մովսէս Խորենացի 'ի Նամակի անդ՝ որ առ Սահակ արծրունի։

Ծագումն տոհմին Բագրատունեաց ։

Մեծութիւն այսր տոհմի ոչ ամփոփեալ մնաց միայն 'ի Հայս՝ թագաւորելով 'ի Շիրակ գաւառի, այլ բարգաւաճեալ ծաւալեցաւ թագաւորելով նաև յայլ տեղիս աշխարհիս Հայոց, որպէս 'ի Վանանդ գաւառի. զի տոհմ թագաւորացն Վանանդայ կամ Կարուց էր Բագրատունի. թագաւորելով նաև 'ի հիւսիսակողմն աշխարհիս յանուն Աղուանից, զորմէ գրեցաք 'ի վերոյ։ Սոյնպէս ծաւալեալ զաւակ նաև արտաքոյ աշխարհիս Հայոց յայլ շրջակայ ազգս թագաւորելով 'ի Վիրս և յԱփխազս։ Վասն Վրաց գրէ Վարդան 'ի նախադրեալ բանս իւր. « Զկնի Նարսա (Սմբատայ) Աշոտ որդի Վասակայ, զոր կուրացուցին մահմետականքն. սմա լինին երկու որդիք, Սմբատ նախնի թագաւորացն Հայոց, և Վասակ սկիզբն թագաւորացն Վրաց, որոյ որդին Ատրներսեհ. սորա որդի Աշոտ, սորա Բագարատ, որոյ եղբայրն Գուարամ[1]. յետ սմա Դաւիթ որդի Բագարատայ, որ սպանաւ 'ի Գուարամայ հօրեղբօրէն իւրմէ, որոյ որդին Ատրներսեհ, սորա որդի Դաւիթ, սմա եղբօրորդի Գուրգէն, որոյ որդին Բագարատ, որ առ իւր կին զդուստր Սենեքերիմայ թագաւորին Վասպուրականի. այս է կարգն »։ Որով յայտնի կացուցանէ զսերունդն թագաւորութեան Վրաց լինել 'ի տոհմէն Բագրատունեաց. յորս Ատրներսեհ ձեռնտուութեամբ մերոյ արքային Ա. Սմբատայ թագաւորեաց 'ի Վիրս[2]։

Իսկ վասն Ափխազաց թէպէտ չունիմք այնպէս վկայութիւն բացայայտ որպէս զՎրացն, բայց գրէ նա ինքն Վարդան. « Թագաւորեաց Աշոտ որդի Գուրգենայ որդւոյ

1 Յայլում օրինակի գրի Գուարամ։ Բագարատ յորդէ Հերեկը ...

2 Զբագրատունիս նաև Թամա ... թագաւորք եղեն յետոյ ... և 'ի նեծոցնի փոխադրեալ փոխանակեալ զուէ ... փոխանակեալ 'ի տանն գնէ 'ի Վիրս. « Իսկ թագաւորն Վրաց Վրաց »։

Աշոտոյ ողորմածին 'ի վերայ Աբխազաց „: Եւ զայս բերէ 'ի պատմութեան Մխիթարայ երիցու¹: Թող և զԹագաւորութիւն՝ զոր Ռուբէն սերունդ այսր տոհմին Բագրատունեաց կանգնեաց արտաքոյ աշխարհիս Հայաստանեայց 'ի Կիլիկիա: Ոչինչ այլ տոհմ նախարարութեան արդարև զատանեալք այսչափ ծաւալեալ յայլ և այլ թագաւորութիւնս. յորմէ ստուգեալ արդիւնացեալ սեռանի նաև 'ի վերայ այսր տոհմի աստուածային օրհնութիւն ասացեալ առ նախնի նահապետ իւրեանց Աբրահամ, յիշատակեալ նաև 'ի Խորենացւոյն Ա̃. 1. թէ "Թագաւորք ազգաց 'ի քէն ելցեն „:

Ծաւալեալ զատու այս տոհմ նաև խնամութեամբ. զորոյ զառաջին խնամութիւնն ընդ Արծրունիս պատմէ Թովմա Արծրունի լեալ 'ի ժամանակս մեծ կուսակալութեան յաւուրս Աշոտոյ արքայի. զի յայնժամ, ասէ, Ջաջուռ Արծրունի միջնորդեալ զերծոյց զնշանաւոր բագրատունի 'ի մահուանէ. և զդուստր նորա կոչեցեալ Սմբատուհի էառ 'ի կնութիւն որդւոյ իւրում Սահակայ. "Այս առաջին խնամութիւն եղև ընդ միմեանս, Բագրատունեաց և Արծրունեաց „: Թողեալ զայլ խնամենալ նոցա ընդ Արծրունիս՝ յորոց մի էր և Գրիգոր Դերենիկ արծրունի փեսայացեալն Ա̃. Աշոտոյ բագրատունւոյ, և զխնամենալսն ընդ այլ և այլ նախարարս մեր, նաև ընդ թագաւորացն Արշակունիս, բայց և արտաքոյ հայաստանեայց կալան սոքա խնամութիւն. այսինքն է՝ նաև ընդ կայսերականս. զի նախ քան զթագաւորելն Բագրատունեաց յորժամ Հալ տառիկան 'ի սկիզբն Լևոնորդ դառնու եկն 'ի Դուին, "էր, ասէ Սամփանոս լէ. և այր մի անուն 'ի կայսերական տոհմէ, Սևադա անուն, որ առեալ էր իւր կին 'ի բագրատունի տանէ զԱրուսեակ. և սակս այնորիկ բանսացեալ ունէր զյոլով մասն աշխարհիս Հայոց „. իբր սերնդական համարելով կնոջն բագրատունւոյ:

1 Առ Թոմայի մեծագունեցոյ Աբխազք ընդ Վիրս զատին. ասէ գրէ, թէ Բագրատունի Թագաւոր Վրաց առաց առ Ջաղաթայ. "Ջի ուրեմն հերու է մեր աղջն ... որ են այսոքիկ. Դրամ, Օսէթ, Իմերեթ, Իմերել, Ապխազ, Սօնգեթ, Վրացի, Մեգր „: Վարդան ասէ թէ զինչ նախապարակալ բանիցն գրէ, թէ յորժամ երեք որդիք Գուրգէնոյ Թագաւորին մեծի կարգեցին վասն սահմանաց իւրեանց, "Գայ Թագաւորն Ապխազաց Գուրգէն որդի Բագրատայ, որդւոյ Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ ողորմածին, և առնէ խաղաղութիւն 'ի մէջ նոցա և գնայ „: Որով բանիւ զարմանալ հաստատի Թագաւորելն Բագրատունեաց յԱփխազս:

## ԱՐԾՐՈՒՆԻՔ

### Ծագումն Արծրունեաց։

Նախկին ծագումն և ազգաբանութիւն այսր տոհմի է 'ի Սենեքերիմայ թագաւորէն Ասորեստանեայց, զոր և յայտ առնէ սուրբ գիրն. "Ադրամելէք և Սարասար որդիք նորա (Սենեքերիմայ) սպանին զնա սրով, և ինքեանք գնացին փախստական 'ի Հայս,,. Եսայի ԼԷ. 38։ Զայս յուշ առնելով Խորենացին Ա. 23. պատմէ ապա թէ զինչ եղեն յետ գալըյն նոցա 'ի Հայս. "Ութսուն ամօք աւելի կամ պակաս յառաջ քան զթագաւորութիւն Նաբուգոդոնոսորայ էր և Սենեքերիմն կացեալ արքայ Ասորեստանի, որ զԵրուսաղէմ պաշարեաց առ Եզեկիայիւ Հրէից առաջնորդաւ, զոր սպանեալ որդւոց նորա Ադրամելեայ և Սանասարայ՝ եկեալ փախստական առ մեզ. յորոց զմինն յարևմտից հարաւոյ աշխարհիս մերոյ մերձ 'ի սահմանս նորին Ասորեստանի բնակեցուցանէ Սկայորդին մեր քաջ նախնին (որ էր նախորդն առաջին թագաւորին մերոյ Պարոյրայ), այսինքն զՍանասարն . . . իսկ Արգամոզանն [1] յարևելից հարաւոյ նորին կողմանն բնակեալ։ Ի սմանէ [2] ասէ պատմագիրն (Մարիբաս) լինել զԱրծրունիս և զԳնունիս,,։ Զնոյն կրկնէ և Բ. 7. ասելով. "Եւ են այս երկու տունք 'ի զաւակէ Սենեքերիմայ, Արծրունիս և Գնունիս,,։ Այնուհետև այսր յիշատակութիւն այսորիկ միշտ մնացեալ կայր 'ի Հայս, որպէս և յայտ լինի յայս բանս Յովհաննու կաթողիկոսի. "Զայսու ժամանակաւ մեծ իշխանն Արծրունեաց Աշոտ՝ որ 'ի թոռնոջից թոռնոյ Սենեքերիմայ արքայի եղեալ գտանիր,,։ Մինչև նաև անուամբ Սենեքերիմ հասարակաց լինել բազմաց Արծրունեաց։

Յաջորդութիւն այսր ականաւոր տոհմի Արծրունեաց գտանեմք յիշատակեալ առ Թովմայի արծրունւոյ Ա. 9.

1 Ի վերոյ կոչեաց Ադրամելէ, համաձայն անուանս Ադրամելէք՝ 'ի սուրբ գրոց յիշատակեալ. իսկ աստ կոչէ Արգամոզան, որ գուցէ էր երկրորդական անուն նորա տուեալ 'ի Հայս. Թերևս այլայլեալ յԱրգայազան անուանէս։

2 Ի սմանէ ասելով խնդրոյ յԱրգամոզանէ կամ յԱդրամելէքայ, և ոչ 'ի Սանասարայ. բայց Շաւասպ արծրունի առ Խորենացւոյն Գ. 55. 'ի Սանասարայ ասէ զինքն սերեալ. "Ճանաչեմ և զիս սերեալ 'ի սերմանէ Սանասարայ. և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո զգլուխն արքայի համբուրել, որպէս և անուանակոչեցեալ եմ,,։ Գիտելի է, զի Սարասար և Սանասար նոյն անուն է։

յիշելով զխուրանն արծրունի զայրն երևելի յաւուրս Աւգարու Թագաւորին. զորմէ ասորէ: Եւ 'ի ա. 11. յաւուրս Է. Արտաշէսի. յորոյ աւուրս զքանի մի անձինս 'ի նոցունց յիշէ պատմելով. « Սահակ որդի Վաչէի կացեալ 'ի դրան Արտաշէսի շքեղ երևելի ճոխութբ՝ յոր ձեռն հաւատաց Արտաշէս զգաւառն Աղբակ. զի յայն վայր ոմանք 'ի զարմիցն Աժդահակայ մարի բնակէին անդ, որք քաջք կորովաղէնք և դիպողաղեղունք. բայց նուաղեալ ազգին՝ ոչ զոք ունէին՝ որ կարող լինէին զգործ պատերազմաց վճարել, և զաղաչանօն Թագաւորին... Բայց կին ոմն յազգէ Աժդահակայ բնակէ յամուրսն Զլմար, և 'ի Սրեմնդ, 'ի գաւառին փոքր Աղբակ. և անուն կնոջն Զայլմար, որ և զամուրսն յիւր անուն անուանէ. և ունէր կինն զանձ բազում. և նորա դուստր մի Աշխայշ անուն. Առնու զնա Սահակ կնութե հրամանաւ Արտաշէսի. և կիքեալ զաշխարհն հաստատէ Սահակայ 'ի սերահական ժառանգութիւն... Սահակայ ասեալ 'ի պատրդէի զաշխարհն Թողու զորդի իւր զԱշոտ զլեռնականզմանքն առաջին իւրեանց տէրութեան շինել բնակել ժառանգեցուցանել զերկիրն մերոսին 'ի ժառանգութե իւրեանց ազգի 'ի զաւակ տանն Արծրունեաց... Եւ նուաղեալ ազգին Արծրունեաց՝ ոչ ոք մնայր, բայց մանուկ մի Համամ անուն՝ որդի Աբշաւրի ծերոյ եղբօր Խուրէնայ որ կայր 'ի դրան արքունի. զորոյ նախնեացն ջանն և վաստակ յաւարաբեալ Թագաւորին փոխանակեացն Համամայ՝ յառաջ մատուցեալ 'ի գահ և 'ի բարձ հայրենեացն ձգեալ զնա, ժառանգեցուցանէ զերկիրն Աղբակ, որպէս Սահակայ նոյնպէս և Համամայ »:

Նայց յաւուրս Է. Տիրանայ Թագաւորի 'ի չորրորդ դարու եհաս այսր տոհմի մեծանգամայն ընդ տոհմին Ռշտունեաց մազապուր զերծանիլ 'ի բնաջնջն լինելոյ. զի որ ունէր զհազարապետութի տանն Տիրանայ արքայի՝ նորքինի ոմն « այր ժանտ չարաբարոյ, ասէ Թովմա Արծրունի ա. 14. որում Հայր մարդպետ անուն էր, սա մատուցեալ առ Թագաւոր Տիրան սկսաւ քսութի խօսել 'ի գաղտնիս ըն-տանեկն Արծրունեաց և Ռշտունեաց, զի էին ազգք ճոխք և երևելիք, քաջք և անուանիք և ամենեցուն պատկառելիք: Ասէ՝ Թէ ոչ բառնաս կորուսանես 'ի միջոյ զերկուս նախարարութիւնդ, ոչ բարիոքագոյն քո Թագաւորութենդ խորհէին խորհուրդ. զի ձեռն նոցա է ընդ Շապհոյ արքայից արքայի »: Յայնժամ, ասէ Բուզանդ Գ. 18.

"Միահաղոյն զտոհմն Ռշտունեաց եւ զտոհմն Արծրունեաց բառնայցեն 'ի միջոյ առանց ամենայն վնասու եւ յանցման, մինչ անգամ եւ զէգսն կոտորեցին ազգացն ,,:

Յայնմ ժամանակի Արտաւազդ եւ Վասակ Մամիկոնեանք զօրավարք Հայոց՝ սուսերամերկ 'ի վերայ հասեալք յափշտակեցին զերկուս տղայս մանկունս, զՏաճատ որդի Մեհնդակայ Ռշտունւոյ եւ զՀամազասպ որդի Վաչէի Արծրունւոյ, եւ տարան յամուրսն Տայոց, եւ անդ նոցա ամս բազումս սնուցանելով զմանկունս. իսկ յանձն նոցա՝ զդստերս իւրեանց եդուն նոցա 'ի կնութիւն. "Ուստի, ասէ, դարձեալ միւսանգամ աճեցին այն սերեցան ,,. մինչեւ յաւուրս Աշոտայ արքայի դարձան յերկիր իւրեանց: Եւ այսպէս 'ի միոջէ անտի Համազասպայ սկսաւ նորոգ բազմանալ տոհմն Արծրունեաց:

Անուն եւ պաշտօն Արծրունեաց.

Խորենացին Բ. Է. 'ի պատմելն կարգաւ զնախարարութիւնս եւ զպաշտօնս զորս սահմանեաց Վաղարշակ, ոչ գրէ յայտնի թէ զԱրծրունիս կարգեաց 'ի նախարարութիւն, այլ 'ի յիշելն զնախարարութիւնս զԱբեղեան եւ զԳաբեղեան, ապա ասէ. "Եւ զԱրծրունիսդ գիտեմ ոչ Արծրունիս, այլ արծիւ-ունիս, որք արծուիս առաջի նորա կրէին ,,: Ցայս բան այնպէս ցուցանէ Խորենացին՝ թէ Արծրունիք որդէն յառաջ քան զՎաղարշակ կոչէին այսպէս. իսկ Վաղարշակ յանուանէ նոցա յարմարութիւն իմն հանեալ՝ ասաց ոչ Արծրունիս, այլ Արծիւ ունիս. Իբր զի կամ որդէն արծիւ կրէին առաջի իշխանին 'ի ժամանակի որպէս ըստ յարմարութեան անուան իւրեանց, եւ կամ ինքն Վաղարշակ կրել սահմանեաց. Նման ամենայնիւ անուանակոչութիւն Գնունեաց 'ի յարմարութենէ ձայնին առեալ. զորմէ զկնի. եւ այսպէս Վաղարշակ յետ զտանելոյ զյարմարութիւն անուան ըստ գործոց նոցա, եւ զԱրծրունիս կարգեաց 'ի թիւ նախարարութեան. վասն որոյ եւ յաւելու Խորենացին. "Եւ են այս երկու տունքս 'ի զաւակէ Սենեքերիմայ, Արծրունիս եւ Գնունիս ,,: Տուն ասելով իմանայ առաւել զտունս նախարարականս, զի զնախարարութեանց է բանն. որպէս եւ յանուանէ յայտ առնէ վասն տանն Գնունեաց լինել նախարարական:

Զայս առաւել յայտնի գիտեմք առ հասարակ 'ի յետագայ պատմութեանց ազգիս, որք զԱրծրունեաց տոհմն

դասէն ընդ մեծամեծ նախարարս. զոր օրինակ Ղազար 'ի յիշէն զԱղան արծրունի՝ գովելով յիշէ զտոհմն. «Որ էր այրն 'ի հոյակապ և յականաւոր տոհմէն Արծրունեաց»։ Նոյնպէս և 'ի 220. «Առաքէր զօրավարն Հայոց մամիկոնեանն Վահան յերեւելի և յականաւոր ազգէն Արծրունեաց»։ Այսչափ 'ի Խորենացւոյն ասեն անուանակոչութեան այսր տոհմի։ Իսկ Թովմա արծրունի զերիս կարծիս բերէ վասն այսր ա. 8. ասելով վասն Վաղարշակայ. «Անուանէ զնա Արծրունի, առաջին լինելով նորա 'ի դաշտավայրին Արծուոյ կոչելոյ. դարձեալ ըստ պատահման և տարբերութեան արծուունեան կերպարանօք (լինելոյ նորա). բայց ոչ գիտեմ թէ յանուն աշխարհին՝ թէ ըստ կերպարանին անուանեաց զնոսա Արծրունիս։ Երկրորդ՝ վասն բնակութեան նախնեացն նորա Ադրամելեայ և Սանասարայ Արծն կոչեցին Արծրունիս[1]։ Երրորդ՝ վասն արիութեան քաջութեանն արծուաբէր (արծուաբար) քաջասրտապէս խիզախութեանց 'ի մարտս պատերազմացն՝ յարծուիս առակեցին զնոսա։ Բայց թէպէտ և երկոքին պատճառք անուանակոչութեանց պատկանաւոր վարկանելի է, որպէս իմաստասիրացն համոյ թուի, այլ ինձ զառաջինն ախորժելի զհաւատարմութիւն 'ի մէջ առնուլ»։

Իշխանութիւն Արծրունեաց։

Արծրունեաց իշխանք միշտ ընդ առաջին նախարարս իշխանս յիշատակին. որպէս ունիս տեսանել 'ի բանս մատենագրաց 'ի վերոյ յիշատակեալս. և ո առաւել առ Թովմայի արծրունւոյ, որ ասէ ա. 14. «Իսկ 'ի տանէն Արծրունեաց ընդ մեծ նախարարսն Հայոց միշտ լինէր Տիրոց որդի Բազգենի երկրորդի այր հեզ խոհական խորհրդական, համբաւ 'ի բանս .......... (որ) վասն հեզ և ցած բարուցն կամօք յանձին կրել՝ ոչ յառաջանայր 'ի բարձր նախագահս ձախանալ երևելեօքս ... ոչ եթէ ոչ ունէր նազելի և բարձրագահ պատիւ 'ի մէջ մեծ նախարարութեանցն Հայոց. զի ով ոք այլ ձեռն քան զՍենեքերիմայն, զոր համարձակախօսն Եսայիաս հրապարակէ առ խրոխտալեան զարմն զօրայս մեծափառութի. այլ և մակեդոնացին Աղեքսանդրոս ոչ սակաւ դրուատեօք առ-

1 Գրեալ էր յաւելուածս թերեւս այս նոյն Ադրամելեքայ և Սանասարայ ասէ. «Վասն բնակութեան նախնեացն ,Արծն՝ կոչեցան Արծրունիք»։

ձանագրէ 'ի մատեանս դիւանապահ աւանդութիւնս (Թերեւս ըստ Մարիբասայ) զսորայս մեծափառ գլխաւորութ̃ի „ [1] :

Բայց չիք ուրեք գտանել թէ Արծրունիք զինչ գործ ունէին 'ի բանի կառավարութեան . միայն յաւուրս Վաղարշակայ 'ի Խորենացւոյն գիտեմք արծուէկիրս լեալ նոցա , զոր ոչ միայն 'ի պէտս որսոյ արքայի է իմանալ , այլ միանգամայն 'ի գործս զինուորութ̃ե պատիւ իմն կարգեալ ըստ ասիացւոց Թագաւորաց , որպէս. և երբեմն էր տեսանել 'ի գործս զինուորութ̃ե օսմանեանց կարգեալ յաւագագոյն բարձս զՊուռնաձի պաշին , և զՉաղարձի պաշին . այլ յետ Վաղարշակայ նաև այս անուն պատուոյ արծուէկիր գոլոյ ոչ յիշատակի ուրեք : Այպա պարտ է ասել , թէ մեծութ̃ի իշխանութ̃ե Արծրունեաց՝ առեալ էր 'ի տանուտիրական պատուոյն , այսինքն է՝ վասն տէր գոլոյ ընդարձակ երկրին Վասպուրականի . յորում էին անչափ բերդք զօրաւորք , քաղաքք , աւանք և շէնք . վասն որոյ և Յովհաննէս կաթողիկոս զԱրծրունեաց իշխանութիւն մեծապատիւ ցուցանէ ասելով . “ Պայազատէ զիշխանական պետութիւն զայն Գրիգոր Դերենիկն կոչեցեալ . և թէ , զկնի Դերենկին “պայազատէ զիշխանութիւն մեծ Աշոտ որդի իւր „ : Յորժամ մեռանէր իշխանն Վասպուրականի՝ որդիք նորա բաժանէին զաշխարհն 'ի մէջ իւրեանց, բայց մին լինէր գլուխ և կոչէր Վասպուրական իշխան . որպէս է տեսանել յայս բան Թովմայի արծրունւոյ Դ̃ . 1 . “ Ելեալ իշխանքն յանցնիւր տեղեաց գնացին յանդիման լինել նմա . Դերանիկն , տէր Գագիկ և տէր Գրիգոր և միւս այլ տէր Գրիգոր Վասպուրական իշխան „ : Ըստ այսմ և 'ի Դ̃ . 2 . կոչէ “Զիշխանն Վասպուրական զԴերանիկն „ : Եւ այս գլխաւորութ̃ի էր՝ որ կոչէր Իշխանութիւն . “ Եկն այնուհետև (ասէ Թովմա արծրունի Դ̃ . 2 . յետ սպանանելոյ Թշնամեաց զԴերանիկն) Հասպուհ որդի Թագաւորին Աշոտի . և ետ զիշխանութիւն (այսինքն Վասպուրականի) 'ի ձեռս Աշոտի որդւոյ Դերանկին „ : Իսկ մնացեալ երեք որդիք այսր մեծի Դերանիկ իշխանին բաժանեցին զաշխարհն 'ի մէջ իւրեանց յերիս մասունս . Աշոտ որ էր անդրանիկ նորա՝ բաց 'ի յերկրէն էառ , ասէ Թովմա արծրունի Դ̃ . 4 . նաև “ զգահն նախնական իշխանութ̃ե „ զոր և զանազան անուամբ 'ի նոյն գլուխ կոչէ Ծոխանութիւն իշխա-

[1] Այս Տէրոյ իշխան այն է՝ որ ընդ սուրբն Գրիգոր 'ի Կեսարիա , որպէս այլ մեծամեծ նախարարս տարաւ ընդ. ասէ անդէն :

ոց՝ մախացեալ ընդ նոմա, և զարթուցանել ջանայր զայլազգիսն կրկին անգամ 'ի վերայ իշխանին (Գագկայ), և իբրև այնու ոչինչ կարաց առնել, ապա պատրողական բանիւք և խոստմամբք դաւաճանէ զայր՝ զոր կարգեալ էր յամրոցին Ամիւկ, որում անուն Ճանաչիւր Ապուսահր 'ի տանէն Վահունեաց... (որ) տայ զբերդն 'ի ձեռս Սմբատայ Թագաւորին Հայոց. և Սմբատայ առեալ զբերդն՝ դարձեալ վաճառէ իշխանին Գագկայ, և առնու 'ի նմանէ զանձս բազումս. և յայնմ օրէ անկանի կասկած չարութ յիւրաքանչիւրոցն միտս. վասն որոյ և ոչ սիրով խաղաղութեամբ զմիմեամբք թևակոխէին, որպէս յառաջագոյնն„։ Այլ յամենայնի՝ զոր գրէ արծրունին Թովմաս 'ի մեղադրութի Սմբատայ և յիրաւունս Գագկայ, կայ միշտ կուսակցութիւն արքային իւրոյ, և պակասի անաչառութի. զոր քաջ իմանայ՝ որ ընթեռնու 'ի միւս կողմանէ և զբանս Յովհաննու կաթողիկոսի։

## Թագաւորութիւն Արծրունեաց։

Այս գժդմնութ էր՝ որ ետ հնարել կանգնել նոր թագաւորութիւն 'ի Վասպուրական. և պատճառ այնորիկ էր վասն Նախջուան քաղաքի, որպէս յիշատակեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի թղթ. 219. 'ի Յովհաննու կաթողիկոսէ. այլ Թովմա արծրունի Է. 3. ոչ զգժդմնելն և ոչ զմախանս դնէ պատճառ, այլ յետ պատմելոյ զըմբռնիլն Սմբատայ արքայի՝ Յուսուփ ոստիկան զԳագիկ եգիտ, ասէ, անձն յարմար թագաւորութ. « Տեսեալ (Յուսփայ) եթէ ոչ ոք է որ կարողանայ տիրել և ունել զաշխարհս Հայոց, բայց միայն Գագիկ, զորոյ զփորձ առեալ գիտէր զնա այնպիսի այր. զոր ոչ թողեալ 'ի կամս անձնիշխան կամացն, թագաւորեցուցանէ զնա 'ի վերայ Հայոց. և եդեալ թագ 'ի գլուխ նորա զուտ ոսկի բազմարուեստ յօրինմամբ հիւսեալ մարգարտովք, և մեծագնի ակամբք պատուականօք...(և զպատմուճան և զգօտի ուսերան) ոսկեհուռն փայլեալ զարդու, որ 'ի վեր քան զմիտս և զբան անցանէ պատմողաց... Եւ այսպիսի փառաւորութբ հաստատեալ տայ 'ի ձեռս նորա զբոլոր հայաստան աշխարհս հանդերձ մեծամեծ քաղաքօք և ամենայն վայելչութբ„։ Ապա և վասն Ջափր ամիրապետին գրէ՝ թէ առաքէ «Նմա թագ և հանդերձս զարդուց զարմանալիս. և յանձն առնէ նմա զհարկս արքունի„։ Նաև կրկին անգամ բերեալ, ասէ,

"Թագ և հանդերձս պատուականս յարքունուստ (այս ինքն 'ի Ջափրայ), և շքեղացուցանեն զԹագաւորն Գագիկ կրկին փառաւորութ[եամբ] առաւելեալ քան զոր վերագոյնն ասացաք":

Իսկ որպէս յամիրապետէն՝ նոյնպէս և 'ի Յուսփայ կրկին անգամ առնէ պսակեալ. զի յորժամ յուլթամեան բանակէն էառ իշխանութի 'ի վերայ Պարսից և բոլոր Հայոց՝ "առաքէ, ասէ, և Թագ և հանդերձս երևելիս Թագաւորին Հայոց Գագկայ, հաստատել 'ի ձեռս նորա զհայաստան աշխարհս": Որով ըստ Թովմայի չորիցս լինի պսակեալ. այլ Յովհաննէս կաթողիկոս երիցս միայն ասէ. այսինքն է՝ երկիցս 'ի Յուսփայ ոստիկանէն՝ և երրորդ անգամ 'ի Փարկինի ոստիկանէն պսակեալ, զորմէ գրէ. "Բերեալ Թագ դնէր 'ի գլուխ Թագաւորին Գագկայ. երեքկին զնա պսակեալ 'ի վերայ հայաստանեայցս": Այս բան առայ մեզ իմաստասիրել, թէ Յովհաննէս կաթողիկոս որ ըստ այլ մասանց անհամաձայն է ընդ Թովմայի արծրունւոյ, միաբանի յայսմ. զի զԳագիկ ոչ սոսկ 'ի վերայ Վասպուրականի՝ այլ 'ի վերայ համօրէն հայաստանեայցս թագաւորեալ ասէ՝ յայտ է թէ 'ի ձեռն սոսկացն Սմբատայ՝ զոր և հաստատէ 'ի գրելն վասն Յուսփայ, թէ յորժամ կրկին եղև ոստիկան՝ հայցէր 'ի Գագկայ տալ զհարկս աշխարհին, այլ և զընծայս վասն անձին. "Յուշս և սնոտի արարեալ միանգամայն իսկ զերախտիս Թագաւորութեանն՝ և ձեռներէց զնա առնել, առ 'ի տիրելոյ նմա բոլոր հայաստանեայցս": Այլ պարտ է առնել թէ այս էր միտք և բանք Յուսփայ որ կամէր յաւէտ սովին պատճառաւ խռովութի արկանել 'ի մէջ երկուց Թագաւորաց. բայց իրօք միայն 'ի Վասպուրական իշխեաց Գագիկ. զի ազգն զՍմբատ ա. յետ նորա զԱշոտ Բ. զորդի նորա Երկաթ յորջորջեալ՝ ճանաչէր իւր Թագաւոր Հայոց. զայս ոչ միայն Յովհաննէս կաթողիկոս, այլ նաև յետագայ պատմագիրք Ասողիկ, Կիրակոս և Վարդան այսպէս պատմեն[1]:

1 Վասն որոյ ոչինչ իւիք մնացանեն ընդ ճշմարիտ պատմութեան այս բանք Թովմայի արծրունւոյ. որ. զԳագիկ խօսի իբրև զԹագաւորէ համօրէն Հայոց առնելով Ե. Յ. "Եւ գործեալ ինքն արքայ վառեալ 'ի վէն և 'ի զարդ ան հանդերձեալ քաջութե, միապետեալ զբոլոր աշխարհս հայաստանի . . . իբրև զծով բազմացուցանէ զխաղաղութի 'ի հայաստան աշխարհն": Եւ 'ի Կ. "Տայ ընդ (Յուսուփ) 'ի ձեռս արքայի զաշխարհս Հայոց և Վրաց": Այլ յայտնի է թէ Գագկի ոչինչ իշխանութի կայր 'ի վերայ Վրաց: Ըստ այսմ ասէ և Ե. Ց. վասն Աբասայ որդւոյ Սմբատայ. "Կամեցեալ յառաջագոյն քան զզօրութեան մեծի Թագաւորին Հայոց Գագկայ՝ անձին ինչ առնել պարծանս":

Իսկ թէ 'ի պատճառս զայս օրինակ թագաւորելոյն Գագկայ և կուսակից Յուսփայ լինելոյ՝ անցին այն անցք աղէտից յախժամ 'ի Հայաստան, յայտ է 'ի բանից Յովհաննու կաթողիկոսի՝ որ զկնի 'ի զղջումն եկեալ ասէ զնա. « Զայս ապա տեսեալ և զմտաւ միանգամայն ածեալ թագաւորն Գագիկ հանդերձ եղբարբն իւրով Գուրգենաւ, իբր թէ 'ի ձեռանէ նոցա և 'ի կարապետելոյն այս ամպրոպ չարուէ զեղեալ շուրջ զեկեղեցեաւն Քրիստոսի, և զԱստուծոյ հաւատացեալ ժողովրդովք, այլ և զիւրեանց ևս անձանց զխորհրդականն մահու կարծիս 'ի մտի եդեալ, և զանդիտեալ յերկիւղէ բռնաւորին, այնուհետև աստուածային իմն գոգցես երկիւղիւ կշտամբեալ և յանդիմանեալ զանձինս իւրեանց և զղջացեալ 'ի սիրտս իւրեանց, ապաշխարեցին ապաշխարողական կարգօք »: Ապաշխարողական կարգ նախնեաց քանզի հրապարակաւ լինէր, չմարթէր զայդ ստուգ ասել պատմիչն. որոյ և գոլով կաթողիկոս՝ դուցէ ինքն էր եդեալ զայն կարգ ապաշխարութեան 'ի վերայ Գագկայ և Գուրգենայ: Այլ այս թագաւորութիւն Արծրունեաց կամ Վասպուրականի 'ի վեց թագաւորս միայն կալաւ պայազատութիւն. յետ այնորիկ տուեալ զերկիր իւրեանց Վասլի կայսեր, ինքեանք 'ի սկիզբն մետասաներորդ դարու փոխադրեցան 'ի փոքր Հայս 'ի Սեբաստիա [1] ուր 'ի տիրապետելն Յունաց եդին զօմն գլխաւոր զոր Լաստիվերտցի Թ. կոչէ Գատատաղքփ Վասպուրականի:

### Երկիր Արծրունեաց:

Պատմութիւնք առհասարակ յայտ առնեն զՎասպուրական նահանգն լինել սեփական երկիր Արծրունեաց. բայց ոչ Խորենացին և ոչ այլ ոք պատմագիր նշանագրեն ուրեք թէ երբ էանց 'ի ձեռս նոցա այս նահանգ՝ որ մեծագոյնն է քան զամենայն նահանգս մեծին Հայոց. միայն Խորենացին 'ի յիշելն ա. 23. թէ 'ի գալ նոցա 'ի Հայս՝ Սկայորդին մեր որպէս բնակեցոյց զՍանասար մերձ յասորեստան, նոյնպէս և զնահապետ Արծրունեաց բնակեցոյց առ նովաւ, և որպէս գիտեմք զբնակութիւն սանասարեանց լինել յԱղձնիս, նոյնպէս և զնոցա բնակութիւնն անկ է

1 Տես վասն այսր 'ի Մեծ Հայս 'ի Թղթ. 159:

դնել 'ի Վասպուրական. մի՝ զի սահմանակից է Աղձնեաց, և երկրորդ՝ զի որպէս ասացաք, 'ի սկզբանէ անտի 'ի յիշելն զՎասպուրական՝ սեփական դնեն Արծրունեաց. մինչև երբեմն զՎասպուրական կոչել Արծրունեաց աշխարհ. զոր օրինակ է տեսանել առ Ագաթանգեղոսի յԾԴ. և առ Լաստիվերտցոյն Ը:

Այլ զարմանք են, զի զԱրծրունեաց անուանն փոխանակ յերկրին Վասպուրականի գտանելոյ՝ գտանեմք յԱղձնիս. որպէս ցուցանէ մեզ նախագրեալ բան Թովմայի արծրունւոյ, նաև այլ բանք և անուանք տեղեաց, զորոց տես 'ի մեծ Հայս յԱրզն գաւառ Աղձնեաց: Վասն որոյ 'ի զանազան բանից Թովմայի արծրունւոյ և Խորենացւոյ և այլոց՝ թուի ինձ 'ի սկզբան անդ յԱղձնեաց նահանգի բնակեցուցեալ զերկոսին որդիսն Սենեքերիմայ, 'ի կողմն ինչ զՍանասար, և այլ ուրեք զԱդրամելէք. ապա մեծին Տիգրանայ զհամօրէն Աղձնիս կամ գէթ ըստ մեծի մասին պարգևեալ 'ի ժառանգութիւն սերնդոցն սոցա [1]: Սերունդ սանասարեանց ելից զլեառն Սիմ որ 'ի Տարօնական, որպէս յայտ առնէ Խորենացին Ա. 23. ապա յորժամ Վաղարշակ արքայ 'ի սերնդոց սորա կարգեաց բդեշխութիւն, յայնժամ պարգևեաց նոցա ընդ Սիմ լերին նաև զԱրձն կամ զԱրզն գաւառ շրջակայիւք, որպէս առնէ Խորենացին Բ. 8: Իսկ յորժամ նա ինքն Վաղարշակ 'ի սերնդոց Ադրամելէքայ զԱրծրունիս կարգեաց 'ի նախարարութիւն, յայտ է թէ պարգևեաց նոցա և զերկիր ինչ, որ գուցէ ըստ մասին էր յԱղձնիս և ըստ մասին 'ի Վասպուրական. որովհետև Թովմա արծրունի վասն Աղձնեաց գրէ՝ 'ի ձեռաց Արծրունեաց հանեալ և յարքունիս գրաւեալ Սանատրկոյ, ապա Գ. Արտաշէսի անդրէն առ նոսա դարձուցեալ. յետ այնորիկ հետզհետէ ընդարձակեցին զսահմանս իւրեանց, տիրապետեալ վասպուրական աշխարհի, յոյր սակս ոչ գտանեմք որոշ ինչ առ մատենագիրս [2]:

1 Որպէս յայտ առնէ Թովմա արծրունի. զորոյ զբանս տես 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 64:

2 Առ Թովմայի արծ. Ա. 6. գտանի բան ինչ, ուր ցուցանէ թէ այլ էր վասպուրականն իշխան, և այլ էր տոհմն Արծրունեաց. «Իսկ յանդիման եղեն, ասէ, զօրապետքն մեծ իշխանին Աշոտայ... համագումարեալ ժողովել առնէր ամենայն աշխարհին, և ամենայն նախարարք վասպուրական տէրութեանն փութանակի և վաղվաղակի իւրաքանչիւր զօրօք անդր հասանէին... և 'ի տոհմէն Արծրունեաց Վահան և Վասակ... որք ամենեքեան արք վեհագոյն 'ի տանէն Արծրունեաց զօրացն իւրեանց»: Այլ առաւելն մեծ իշխան վասպուրական տէրութեան՝ պարտ է իմանալ զտանուտէրն յԱրծրունեաց տոհմէն, որ և էր իշխող Վասպուրա-

### Ոստան և Շիրիմ Արծրունեաց։

Հադամակերտ էր ոստան Արծրունեաց ըստ Թովմայի արծրունւոյ․ այլ զի նաև զՆախճաւանն կոչէ Ոստան Վասպուրականի, երևի թէ երբեմն այս և երբեմն այն եղև ոստան Արծրունեաց[1]։ Իսկ շիրիմ նոցա էր 'ի մենաստան Խաչին որ յԱղբակ գաւառի, նաև նախ քան զթագաւորութեան Արծրունեաց․ տես և 'ի մեծ Հայս 207 զբանս նորին Թովմայի․ յաւել և զայս զոր ասէ Գ․ 12․ վասն Գրիգորի վասպուրականի․ "Տարեալ հանգուցանեն զնա 'ի վանս սրբոյ Խաչին յԱղբակ գաւառի"։ Այս Գրիգոր էր յաւուրս Բուղայի նախ քան զթագաւորութիւն Արծրունեաց։ Եւ Գ․ 13․ գրէ վասն Գուրգենայ արծրունւոյ․ "Տարեալ հանգուցանեն 'ի տեղւոջ հանգստարանացն իւրեանց 'ի սուրբ Խաչի վանս"։ Այս վանք էր յԱղբակ գաւառ 'ի գիւղն Ոսի, որպէս դնէ նա նոյն Գ․ 11․ յասելն վասն Աշոտոյ իշխանին Վասպուրականի, որոյ քեռին էր Ա․ Սմբատ թագաւոր․ "Եւ տիկինն Սեդայ առեալ զդի նորա տարեալ հանգուցանէ 'ի յԱղբակ, 'ի գեօղն Ոսի, 'ի վանս սուրբ Խաչին"։

Իբր յետին մատենագիրս գտանեմք թաղեալ նաև 'ի սուրբ Խաչն որ յԱղթամար, որպէս գրէ ընդարձակող Թովմայի արծրունւոյ վասն Աբդլմսեհի արծրունւոյ, զոր երբեմն կոչէ կուրապաղատ, և երբեմն արքայ․ "Եւ ինքն բարիոք ծերութեամբ ննջեաց առ հարս իւր, և թաղեցաւ 'ի նոյն աստուածաբնակ կղզւոջն Աղթամար 'ի դուռն սուրբ Խաչին… և էր թուականն Հայոց մինչ փոխեցաւ արքայն Աբդլմսեհ չէ․ և սրբասնեալ անուանն իւր… եդաւ 'ի նոյն տապանի"։ Բայց վրիպակ պարտ է համարել զբանս Մատթէոսի կէ․ որ զգերեզմանս տանն Արծրունեաց դնէ 'ի Վարագ, շփոթելով զվանս սրբոյ Խաչին Աղբակայ ընդ Վարագայ, յասելն․ "Յայսմ ամի մեռաւ Սենեքերիմ թագաւորն Հայոց, և տարան զնա 'ի գերեզմանատունն հարց իւրոց, ուր առաջին թագաւորքն Հայոց թաղեալ կան 'ի Վարագ 'ի վանքն սրբոյ Նշանին, և անդ թաղեցին զՍենեքերիմ ընդ հարսն իւր"։ Այլ թէ և զՍենե-

կանի․ իսկ այլքն էին 'ի նոյն տոհմէն Արծրունեաց․ բայց չէին թագաւոր իշխօղք Վասպուրականի։

1 Զբանս Թովմայի արծրունւոյ տես 'ի մեծ Հայս 'ի թղթ․ 206 և 217։

*քերեմ դիցուք 'ի Վարազ Թաղեալ ըստ բանի նորա , բայց առաջին Թագաւորք Արծրունեաց չէին անդ Թաղեալ ։*

### Տեղի ծննդեան և բնակութեան Արծրունեաց ։

*Արծրունեաց ծննդոց էր աւանն Մառաքան . որպէս յայտ առնէ Թովմա արծրունի յերկրորդումն անդ գլուխ Գրիգորի վասպուրականն իշխանի . "Եւ մեծանուն իշխանն ըստ նախնականն սովորութեանն չու արարեալ ընդ ձորն Անձաւացւոյ՝ եկն 'ի Խէրականն կոչեցեալ դաշտ , և կամէր փութապէս անցանել 'ի Ձերոյ աղբեւանն 'ի գաւառն Ծուաշ յաւանն Մառաքան ,, ։ Նախնական սովորութեին առնելով յայտ առնէ , Թէ նախնիքն նորա անդ նստէին 'ի ծննդայինն . որպէս և առաւել յայտ առնէ 'ի Դ . 2 . կոչելով Ձերոյ վասպուրական իշխանաց ,, ։ Թէպէտ և ոչ յիշէ զՄառաքան զանուն աւելոյն . որպէս և յաւելուն . "Ի գնալ Դերենկին 'ի Ձերոյ վասպուրական իշխանացն՝ Ճանապարհ արարեալ ընդ ձորն Ընձահեաց ,, ։ Իսկ տեղի բնակ կայանի Արծրունեաց՝ էր գլուխ Ոձ ձորոյ , ուր այժմ շինեցաւ Գաւղկակերտ . "Որ տեղի բնակի դաշինկ (դակինշ) առնելոյ էր տանն Արծրունեաց ,, . Թովմա արծրունի Դ . 11 ։ Տես զայս անունն 'ի մեծ Հայս 227 ։*

### Երեւելի անձինք յԱրծրունեաց ։

*Նախնումն զանունն յԱրծրունեաց առ հմէն երեւելիք 'ի սրբութե և 'ի նահատակութե՝ յորոց յաւուրսն Վարդանանց ընդ կատարեալ նախարարսն յիշէ Եղիշէ 'ի 343 . "Յազգէն Արծրունեաց Ներշապուհ և Շաւասպ և Շնգին և Մեհրուժան և Պարգև և Տաճատ ,, ։ Սոորև յիշէ . "Յարծրունեաց առհմէն Արպրամ ,, ։ Երեւելի եղև և Ադամ արծրունի , որդի Վասակայ եղբօր Տաճատայ և Գոտորզի , այնչափ ճգնաւոր և աղօթասէր , մինչև զվարս նորա նահատակութե կոչել Ղազարայ Թղթ . 15 . "Եւ կատարեալ զընթացս նահատակութե իւրոյ հանգչէր . և եդեալ 'ի մատրանն 'ի յԱղամակերտի . որոյ յիշատակարանն ընդ անուանս վկայիցն որոց պատմեալ քարոզի ,, ։ Եւ Սահակ և Համազասպ արծրունիք նահատակեալք 'ի 785 . գուշակեալք 'ի Խորենացւոյն , զորս տօնէ եկեղեցիս հայաստանեայց ։*

*Նոյնպէս բազումք երեւելիք 'ի քաջութե , և 'ի կառավարութեան որպէս Խուրան զօր և Խուրէն կոչէ Թովմա*

արծրունի ա՟. Գ. զօրավար Աբգարու Թագաւորի, «Այր իմաստուն և քաջամարտիկ, կորովի յաղեղն և 'ի զէն և յասպազէն»։ Զպատմութիւն այնր ժամանակի պանծալի կոչէ, «սակս բարձրագահ համաթոռ ճոխագոյն ազգապետութեան Արծրունեաց, մեծ զարմի Սենեքերիմայ ծննդոց, որ ընտ անձամբ և սերելոյ նախարարութեանց եկեալ հաստատել ցայս վայր ժամանակի Թագաւորել Աբգարու և հաւատալ 'ի Քրիստոս. ընդ որում և մեծ իշխանն Արծրունեաց Խուրան, և մկրտեալ 'ի ձեռաց Թադէոսի առաքելոյ, որ յետ հաւատոցն որ 'ի Քրիստոս՝ բազում ուղղութեամբ և երկիւղածութեամբ կրօնս ըստ արժանի հաւատոյն ցուցեալ, գրեթէ 'ի ծայրս առաքինութեան զաճումն հաւատոյն տարեալ հաստուցեալ»։ Պատմէ ապա թէ այս Խուրան տեսեալ զորդիսն Աբգարու խոտորեալ 'ի հաւատոց՝ նախ էանց առ Ցոփս. ապա լուեալ զգնալն Հեղինեայ տիկնոջ յԵրուսաղէմ, գնաց անդ. և յաւուրս սովոյն առեալ զոսկի տիկնոջն և զիւրն՝ գնաց յԵգիպտոս գնել ցորեան, և բերեալ բաշխեաց որբոց և այրեաց, և անդ յԵրուսաղէմ մեռաւ։

Յետ իններորդ դարուն և 'ի սկիզբն տասներորդին քան զբազումս գերագոյն գտաւ Դերանիկն, զորմէ Թովմա արծրունի դ՟. 1. «Առաւելոյր և առատանայր օր ըստ օրէ առ շինութիւն և խաղաղութիւն աշխարհիս շինել և տնկել և խնամել զաշխարհս. և դադարութիւն լինէր յաւուրս սորա հինից և աւազակաց 'ի վերայ երկրիս. և քաջավայելչապէս բարեձեւանայր կարգք սրբոյ եկեղեցւոյ Քրիստոսի, և երկիւղ և կասկած և ոչ ուստեք։ Եւ ծնան նորա երիս որդիս Սարգիս որ և Աշոտ յիշ. Թագաւորութեան Հայոց, Խաչիկ որ և Գագիկ յիշ. և Գուրգէն. մանկունք կայտառք և գեղապանծք և բարեձոյլք, և ամենեցուն ցանկալիք. ծնաւ և երկուս դստերս»։

## ՍԻՒՆԻՔ

### Ծագումն և Երկիր Սիւնեաց։

Սա է 'ի հին հայկազեան զարմէ, զի Խորենացին ա՟. 12. 'ի յիշելն զԳեղամ և զԳեղաքունի զերկիր Գեղամայ, ասէ. «Այս ծնաւ զորդի իւր զՍիսակ, զայր սէգ և. անձնեայ, բարեգեղ, կորովաբան և գեղեցկադէմ. սմա զմեծ մասն յընչից իւրոց տուեալ, և ծառայս անձինս

բաղում , սահմանս հաստատէ նմա ժառանգութեան 'ի ծովէն (Գեղամայ) ընդ արեւելս , մինչեւ ցդաշտ մի՝ ընդ որ գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմանձիգս եւ նեղս ահագին գնդնչմամբ իջանէ 'ի դաշտն ։ Անդ բնակեալ Սիսակ լնու շինուք զսահմանս բնակութեան իւրոյ , եւ զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք . այլ Պարսիկք յստակագոյն իսկ Սիսական կոչեն ,, ։ Որպէս աշխարհն նոյնպէս եւ իւր տոհմ կոչեցաւ Սիւնիք , բայց նախարարութիւն տոհմին սկսաւ 'ի ժամանակէ անտի Վաղարշակայ , որպէս ծանուցանէ անդէն Խորենացի . « Ի սորա (Սիսակայ) ծննդոց տոհմ ուրեմն Վաղարշակ . . . գտեալ արս անուանիս , տեարս աշխարհին կարգէ , որ է Սիսականն ազգ . եւ զայս տանէ Վաղարշակ 'ի պատմուէն (Մարիբասայ) առուգեալ ,, ։

Այլ այս նախարարութիւն Սիւնեաց եղեւ կողմնակալութիւն , միանգամայն ընդ նախարարութեան Կադմեայ , որպէս ասէ Խորենացին Բ . 8 . « Եւ յարեւելից կողմանէ զեզերբ հայկական խօսից (այսինքն 'ի սահմանագլուխս , կարգէ Վաղարշակ) զերկու ցեղից նահապետութեանցն՝ Սիսականն եւ Կադմեայն ,, ։ Ստեփաննոս Օրպէլեան Ա . Հ . այլովք բաւելուածովք պատմէ , զոր ոչ յիշէ Խորենացին . « Իսկ յարեւելից կողմանս ասէ , կարգէ (Վաղարշակ) մեծ եւ առաջին նահապետութիւն զՍիսական տոհմ , ընդ սմա եւ զԿադմեանն . եւ հրամայէ 'ի Սիսականեացն հրամանատար լինել 'ի վերայ ամենայն արքունի զօրացն . եւ Երկրորդ Թագաւորին իւրոյ . եւ ընդդէմ կալ հանապազ պատերազմաւ դրանն Հոնաց , որոյ անուն առաջնոյն Սիսան կոչիւր ,, ։ Այլ ըստ Խորենացւոյն երկրորդ թագաւորութեան եղեւ 'ի ժամանակս Վաղարշակայ 'ի Մուրացան տանէ ։ Այս տոհմ Սիսական Գծ եւ անուանի , որպէս կոչէ Խորենացին Բ . 8 . բազմացեալ զկնի ժառանգեաց նաեւ զդաշտն՝ որ Աղուանից աշխարհ կոչեցաւ . զորմէ տես յԱղուանս ։

Այդքան է տեղեկութիւն վասն ծագման եւ սկզբնաւորութեան այսր տոհմին , զի թէպէտ պակասի առ մեզ Ե . գլուխն Ստեփաննոսի Օրպէլեան որոյ խորագիր 'ի ցուցակին գրի սակս ազգաբանութեան Սիւնեաց . բայց բանք Է . գլխոյն յայտ առնեն թէ չգոյր ինչ աւելի տեղեկութիւն [1] ։ Միայն թէ յա-

[1] Զի ասէ անդէն . « Եւ արդ ըստ կարգի եւ հարազատութեան նահապետացն եւ իշխանացն Սիւնեաց ոչ ունիմ ինչ ասել զանուանս եւ զծննդոց նոցա մինչեւ ցայս վայր . զի եւ յառաջագոյն պատմագրաց անյայտ էին իրքն . եւ մեզ թէ եւ բազում անգամ հնարեցաք , այսքան միայն գտաք զոր վերագոյն

ւուրս Ը. Շապհոյ Պարսից արքայի տոհմն այս 'ի մեծի վը-տանգի կայր ընաջնջնջ լինելոյ, որոյ պատճառ. որպէս յի-շեցաք 'ի վերոյ, եղև փոփոխելն Շապհոյ զկարգ նախարա-րին Սիւնեաց. ընդ որ ցասուցեալ Անդովկ՝ որ յայնժամ էր իշխան Սիւնեաց, 1700 զօրօք գնաց 'ի Տիսբոն իբր 'ի տեսութիւն արքային Շապհոյ՝ մինչդեռ նա ամենայն զօ-րօք իւրովք գնացեալ էր 'ի պատերազմ ընդդէմ Խազ-րաց. ուր և եգիտ պատիւ մեծ. այլ քանզի միտք նորա էր վրէժ առնուլ, 'ի վաղիւ անդր վաղ քաջ ընդ այգն՝ ամենայն դարանամուտ զօրօք իւրովք յարձակեալ 'ի մէջ քաղաքին յապարանս արքունի և իշխանաց նորա, զամե-նայն յաւարի առեալ դարձաւ եկն եմուտ 'ի Բաղաբերդ 'ի Սիւնիս, զոր ապա բազում զօրօք պաշարեալ Շապուհ, բայց երիցս կոտորեալ 'ի բերդականացն, եթող զպաշա-րումն, այլ զամենայն զերկիրն Սիւնեաց հրաման ետ յաւ-եր դարձուցանել: "Հրաման ել, ասէ Ստեփաննոս Թ. յար-քունուստ եթէ մարդ և անասուն ձեզ Արեաց աշխարհի զօրաց 'ի ծառայութիւն լիցի,,: Եւ Բուզանդ. Դ. 58. գրէ վասն Շապհոյ և զօրաց նորա. "Զազգն Սիւնեաց տոհմին զամենայն այր 'ի չափ հասեալ կոտորեցին, և զկանայսն տղայոցն. և զամենայն մանր մանկտին ներքինիս հրամայ-էր առնել, և խաղացուցանել յերկիրն Պարսից. և առնէր զայս ամենայն վասն վրիժուցն Անդովկայ,,: Այս է ասելն Խորենացւոյն Գ. 28. վասն Շապհոյ. "Անպայազատ զՍիւ-նեացն հրամայէ առնել զտոհմ,,: Այլ Անդովկ պա-րապորդ գտեալ՝ ել, ասէ Ստեփաննոս "Յամրոցէն Բա-ղաբերդու մեծ աւարաւն անցանէ յաշխարհն Հոռոմոց առ մեծ կայսրն Թէոդոս արքայն Յունաց, և 'ի նը-մանէ պատիւ մեծագոյն գտեալ. այս կայսրն Պատրկաց պատ-րիկ արարեալ զԱնդովկ, վախճանի անդէն յաշխարհին Հոռոմոց,,:

կարգեցաք: Նմանապէս և յառաջի-կայող է իմանալ... որպէս 'ի սկզբան պատմութեան ցուցաք, թէ ոչ գտաք յառաջնոց փոյթ եղեալ զայսմանէ. և գրել ուրոյն առանձին զգործս և զբովանդակութիւն այսմ աշխարհի և անցանց որպէս զայլոց ազգաց, զՄակեդոնացւոց, զՅունաց, զԲագրատունեացն, ըզ-Վասպուրականացն (զԱրծրունեաց) որք յետոյ թագաւորեցին, զՍիւնեացն, զԱղուանիցն: Վասն այնորիկ ոչ երե-ւին կարգ իշխանացն, և թիւ ժամա-նակացն. այլ զեր և ցան գտաք յառաջ-նոցն վիպասանութեան առաւ և անգ ընդ աղօտ նշանակեցաք,,:

Նորոգումն Երկրին և իշխանութիւն Սիւնեաց։

Յետ այսպէս հետախաղաղ քանդելոյ աւերելոյ Սիւնեաց երկրին՝ թէպէտ անյոյս էր նորոգութիւն նորա, բայց այնպէս իմն յաջողեցաւ դառնալ նմա յառաջին վիճակ իւր, մինչև հրաշալի իմն թուիլ. զի մի միայն մնացեալ որդին Անդոկայ Բաբիկ անուն՝ ելեալ 'ի Յունաց գնաց 'ի դուռն Շապհոյ առանց ծանուցանելոյ զինքն ամենեւին. և 'ի պատերազմունս թագուոր քաջութիւն արար 'ի կողմանէ Պարսից, զհոնն Հոնանդուր մենամարտութեամբ սպանեալ զերծոյց զՇապուհ 'ի մահուանէ. ընդ որ և Շապուհ զարմացեալ առաջարկեաց խնդրել զոր ինչ և կամի. յայնժամ համարձակեցաւ Բաբիկ ծանուցանել զինքն Շապհոյ, և խնդրել 'ի նմանէ զնեպհական զաշխարհ իւր, և յինքն դարձուցանել զտէրութիւն ազգին։ Յայնժամ, ասէ Ստեփաննոս Օ. «Շնորհեալ նմա արքայից արքայի Շապհոյ՝ առաքէ զնա մեծաւ պատուով յաշխարհն իւր Սիւնիս. և աւանդէ նմա նախադաս լինել ընդ Պագրատուն (թագդրատունս), և ընդ Մամիկոնի համապատիւ եղանիլ»։ Իսկ և Բաբիկ եկն 'ի Սիւնիս, «Տեսանէր ապա (ասէ Օ̃Ա) ողորմելի տեսակաւ զցանկալի աշխարհս այս, ապականեալ 'ի մարդոյ և յանասնոյ, և հիմախիլ արարեալ զգեղեցկայարմար աւանս շինից, գեղից, և ագարակաց, վասնեալ զամենայն և յաւար դարձուցեալ»։ Այսպէս մնացեալ էր աշխարհն զամս քսան և հինգ։

Բայց այս Բաբիկ շինեալ նորոգեաց զամենայն երկիրն, և 'ի սմանէ ածեցան սերունդք նորա։ Այս «Բաբիկ, ասէ Օ̃Գ. որդի Անդոկայ, գործով գովելի և հաւատով գերազանց ընաւից՝ յետ առնլոյ զնեփական տէրութիւն Սիւնեաց՝ և շինելոյ զամենայն աւերեալ գաւառս կրկնապատիկ քան զառաջինն՝ ստանայ ուստր մի Վաղակ անուն. և 'ի զարգանալ հասակին ընծայեցուցանէ զնա 'ի դուռն արքունի Վռամայ Պարսից արքայի . . . իսկ Բաբիկ առեալ զտէրութիւն Սիւնեաց 'ի վաթսուներորդ ութերորդ ամի Շապհոյ Պարսից արքայի, վարեալ զիշխանութիւնն ամս քսան և մի փոխի յաստեացս»։

Յետ Բաբկայ՝ Վռամ Պարսից արքայ տէր Սիւնեաց կացոյց զմնեկապետն նորին Բաբկայ կոչեցեալ Սամգնթունի, որ տիրեաց ամ մի, յետ նորա Վաղինակ'ի ընիկ



ցեղէ իշխանացն Սիւնեաց [1] ամս ԽՆ. իսկ յետ նորա "Վասակ որդի Բաբկայ առնու 'ի Վռամ Շապհոյ զտէրութի իւր. և վարէ ամս երեսուն և ԽՆ„: Այսպէս զկնի մի-մեանց պայազատեալ մինչև եհաս 'ի Գրիգոր. "որ վասն առաւելութեան և առոյգ և ուժեղ հասակի քաջաց նախրակ կոչեցաւ„ ասէ 'ի գլ. ԺԳ. և վասն քաջութեան զդուստր Խոսրովայ Պարսից արքայի էառ 'ի կնութի. յորմէ իմանա ցիս, ասէ Ստեփաննոս, զտոսա "աստիճան բարձր և փառա-ւոր գոլ, զի հաւասար էին խնամութեամբ ընդ Պարսից թա-գաւորութեան և ընդ Հայոց„: Հայոց ասէ, զի խնամութի կալան նաև ընդ Բագրատունիս, որպէս պատմէ 'ի գլ. ԼԷ. "Պայազատէ զտէրութի նորա (Սուփանն Գրիգորի) Վասակ որդի իւր, որ ըստ գգուանաց փաղաքշականին Գաբուռ կոչիւր. սա փեսայացաւ Աշոտի Բագրատունւոյ որդւոյ Սմբատայ, որ թագաւորեաց իսկ Հայոց, և էառ զդուստր նորա Մարիամ իւր 'ի կնութի. որ և 'ի տիրելն Աշոտի՝ յայժ հպատակ էր սա գործոյ իւրոյ աներոյն (որ էր նոյն Աշոտ). և նա մտերմաբար հոգայր վասն Վասա-կայ. սակս որոյ և անցեալ եղև փառօք և իշխանութ ընդ նախնիս իւր, խառնեալ 'ի թագաւորեալ ցեղն Բագ-րատունի„:

Բայց այս իշխանք Սիւնեաց թուի թէ հրամանաւ-դրանն Պարսից նստէին. զի Սահակ եպիսկոպոս Ըռշ-տունեաց յանդիմանութեանն զուրացելոյն Վասակայ առ Պարսս, ասէ առ Եղիշէի Թղթ. 239. "Նստուք դմա զտէ-րութիս Սիւնեաց, լուարուք յաղթականաց այսոր դորա, զինչ պատմեն զդմանէ„: Եւ թէպէտ ինքն ուրացեալն Վասակ հնարիւք էր առեալ զայն, որպէս յայտ առնէ 'ի Թղթ. 264. "Զի ոչ ըստ կարգի ունէր նա (Վասակ) զտէ-րութին Սիւնեաց աշխարհին, այլ նենգութ և քսութ ետ սպա-նանել զհօրեղբայր իւր զՎաղինակ, և տարաւ զտէրութին իբրև քրտնկար յարքունիս„: Բայց Յոհաննէս կաթողի-կոս նաև վասն նախայիշեալ իշխանին Սիւնեաց գրէ յար-քունուստ կացուցեալ, զորոյ զհրամանին էառ Աշոտ Ա. յորժամ չև ևս էր թագաւորեալ, այլ էր իշխանաց իշ-խան. "Յայամ ժամանակի, ասէ, Վասակ հայկազուն որ Գաբուռն յորջորջիւր, վասն զի փեսայացեալ էր Աշոտոյ

1 Այս բան Մովսիսեանն ցուցա- Շապհոյ՝ նաև այլք 'ի ցեղէ իշխանացն
նէ, թէ բայց 'ի յորդւոյն Բաբկայ Սիւնեաց
փոխեալ մնացեալ էին 'ի կատարածէ

իշխանաց իշխանի, իշխան զնա Սիւնեաց առա կացուցա-նէր. յարքունուստ (որ է 'ի դրանէ պարսից) նմա տանլով պատիւ, որ բազում ճոխութ̃ վարեալ զիշխանական պե-տութիւն իւր, տիրելով միանգամայն Սիսական աշխարհին»։ Ասելովն՝ տիրել միանգամայն 'ի վերայ Սիսական աշխարհին՝ զայն յուշ ածէ, զոր գրեալ եմք 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 234. թէ 'ի Սիւնիս երկու ցեղք և երկու իշխանութիւնք էին, երկոքին եւս նախարարութիւնք, զի երկոքին եւս խառն յիշատակին ընդ նախարարս, բայց մի ցեղն էր միայն գա-հագլուխ իշխան Սիւնեաց նահանգին, որոյ ունել ինչ պաշ-տօն 'ի կառավարութ̃ մասին ոչ ուրեք ընթեռնումք. զի թէ-պէտ վասն Դարայ Սիւնոյ՝ որդւոյ Բաբկայ տեառն Սիւ-նեաց ընթեռնումք առ Խորենացւոյն Գ. 43. 46. ապարա-պետ լեալ Գ. Արշակայ արքայի, այլ այն ըստ դիպաց իմն էր լեալ, յորժամ երկու թագաւորք էին Հայոց Ար-շակ և Խոսրով, և յորժամ երկոքին եւս ընդ միմեանս պատերազմ մղէին, վասն որոյ և այն կողմնակալութ̃ զոր ետ Վաղարշակ, ոչ թուի տևեալ։

### Թագաւորութ̃ Սիւնեաց։

Տոհմն Սիւնեաց՝ որ նախ իշխանութ̃ կապեցաւ ընդ թագաւորեալ տոհմն Բագրատունեաց, ապա 'ի տա-ներորդ դարուն ինքն ուրոյն ամբարձաւ 'ի գահ թագա-ւորութ̃ յիւր անուն յորջորջեալ. յոյր սակս Ստեփաննոս դնէ խորագիր ԾԹ. գլխոյն. «Վասն թագաւորացն Սիւ-նեաց»։ Ապա 'ի սկսանելն յիշել, նոյնպէս զՍիսական ա-նուանս յիշելով ասէ. «Արդ՝ առաջին թագաւորեալ 'ի Սիսական աշխարհիս արին և քաջն հզօր և բարեպաշտ արքայն Սմբատ»։ Այլ բաց յանուանէ սորա կոչեցաւ և այլ զանազան անուամբ՝ Բաղաց. Կապանին. և Փառի-սոսոյ, զորմէ գրեցաք 'ի վերոյ 'ի յիշելն զզանազան թագա-ւորութիս, որպէս և 'ի մեծ Հայս 236. և 309։ Բայց և 'ի ժամանակս անդ թագաւորութ̃ գէթ 'ի սկզբանն կարգեալ կայր նաև այլ ոմն Իշխանաց իշխան կոչեցեալ Սիւնեաց. զոր յայտ առնէ Ստեփաննոս ԾԹ. 'ի գրելն վասն Վասա-կայ երկրորդ թագաւորի Սիւնեաց, թէ զքոյր իւր տու-եալ էր «կին Աշոտի 'ի նոյն Սիսական տոհմէ, որ էր Իշ-խանաց իշխան յամենայն թագաւորութիս»։ Որպէս 'ի գրելն՝ թէ Վասակ թագաւոր չունելով իւր որդի, «թա-գաւորեցուցանէին զՍմբատ որդի Աշոտի, և կարգեն 'ի

տեղի հօր Իւրոյ զԳրիգոր եղբայր սորա Իշխանաց իշխան Սիսական աշխարհիս ,, ։

### Ոստան և Շիրիմ Սիւնեաց ։

Գլխաւոր տեղի իշխանացն Սիւնեաց էր Ծղուկք գաւառ, զորմէ գրէ Ստեփաննոս Է․ « Որ ունի զբուն գահ իշխանացն և հայրապետացն Ծղուկք գաւառ ,,։ Իսկ Շաղատ¹ գիւղաքաղաք այսր գաւառիս էր ոստան նոցա ուր նստէին իշխանքն, որպէս գրէ նոյն ինքն․ « Անցեալ 'ի գաւառն Ծղկաց՝ հասանէ յաւանն իշխանանիստ Շաղատայ ,,։ Որոյ և եկեղեցին հրամանաւ Բաբկայ Սիւնեաց տեառն սահմանեցաւ լինել ըստ նորին Ստեփաննոսի « Մայր եկեղեցեաց․ և մայրաքաղաք ամենայն աշխարհին սիւնեաց ,,։ Յաւուրս Յովակիմայ եպիսկոպոսի վերստին հաստատեցաւ Շաղատայ լինել մայրաքաղաք․ նաև 'ի վարդապետութե փոխագահութի ունել։ Գերեզման կամ շիրիմ Թագաւորաց Սիւնեաց՝ էր ուխտն Վահանու․ « Բարձեալ տարան (ասէ Ստեփաննոս ԾԹ․ վասն Սենեքարիմ արքայի) 'ի սուրբ ուխտն Վահանու, և անդ եդին 'ի շիրմի ընդ այլ Թագաւորսն ,,, Թէպէտ 'ի վերոյ վասն Սմբատայ Թագաւորի գրէ․ թէ « Դնի 'ի Յովհաննու վանս առ դրան տաճարին ,,։

### Երեւելի անձինք 'ի Սիւնեաց ։

Արդարև բազումք ծաղկեցան 'ի ցեղէ Սիւնեաց արք երևելիք քաջութք, գիտութք և աշխարհաշինութք, որպէս յայտ առնեն շինութիք այնչափ բերդորէից, աւանաց, մենաստանաց, և եկեղեցեաց, որք գտանէին 'ի Սիւնիս․ զորոց զյիշատակութի սփռեալ գտանես յայսմ Նկարագրութե և 'ի մեծ Հայս, այլ եթէ յիշել կամիցաք զերևելի անձինս երկուց ցեղիցս Սիւնեաց և Արծրունեաց, զորոց գրեցին Ստեփաննոս և Թովմա արծրունի, հարկ էր ուրոյն մատեան յօրինել։ Եւ որ առաւելն է՝ նաև 'ի կանայս Սիւնեաց եղին անձինք երևելիք, յորոց մին եղև Բիւրեղ անկին, զորմէ գրեալ կայ 'ի պատմութե խաչին Հացունեաց, թէ յորժամ Հերակլ կայսր 'ի տեղին

¹ Շաղատ երևի լինել այժմեան Ձուան․ որպէս էր և Շաղատ․ որոյ և Շաւաթ․ զի բաց 'ի մերձաւորութէ եկեղեցին է յանուն սրբոյն Ստեփաննոսի՝ նաև գրիւք մերձ է 'ի նախ- փաննոսի․ որպէս էր և Շաղատոյն ։

եօթներորդ դարուն բազմութիւն զօրաց խաղայր 'ի վերայ Պարսից յառնուլ զսուրբ խաչն 'ի նոցանէ. «Զօր արարեալ Եհաս յաշխարհն Վասպուրականու. և իբրև լուաւ Բիւրեղ տիկինն Սիւնեաց, և եկն ընդ առաջ նորա. և բերեալ գանձս բազումս և հանդերձս, ձիս և ջորիս և սպառազէնս, զրահս հազարս, և զէնս ոսկեկուռս չորեքհարիւր, և սաղաւարտս հազարս, և արք պատերազմի երից հազարաց զինի նորա. և էր նա կին գեղեցիկ և իմաստուն յոյժ. և հաճոյ թուեցաւ յաչս արքային»։ Նոյնպէս և 'ի դարձին Հերակլեայ ասէ. «Եկն դարձեալ տիկինն Սիւնեաց ընդ առաջ արքային. և խնդութեամբ երկիր եպագ խաչին. և բերեալ պատարագս բազումս առաւել քան զառաջինն»։ Որոյ փոխարէն ընկալաւ ապա զմասն ինչ 'ի փրկական խաչէն։

Այսպիսի անձնիշխեցեղէն արդարև պարծանք տոհմին Սիւնեաց. բայց եղեն 'ի Սիւնիս և բազումք՝ որոց 'ի չարիս անկղզիացեալ՝ չարութեամբ իւրեանց արատաւորեցին զանուն տոհմին, զի տիրեալ գոլով 'ի նոսա գեր քան զամենայն հեռ և ոգի վրէժխնդրութեան՝ բազում աւերմանց պատճառք եղեն 'ի սկզբանէ անտի ոչ միայն երկրին իւրեանց, այլ նաև ընդհանուր հարուածոց 'ի վերայ համօրէն Հայոց աշխարհին։ Հռչակաւոր եղև 'ի պատմութեան ոխակալութիւն որ 'ի մէջ ուրացելոյն Վասակայ և Վարազվաղենի փեսային իւրոյ, որ այնչափ չարեաց պատճառք եղև. նոյնպէս և նախանձ Բաբկենի ընդ Գրիգորոյ. «Մինչ վարէր զիշխանութիւն Ճոխաբար Գրիգոր, ոչ ժուժկալեալ չարին, ասէ Ստեփաննոս լէ. այլ արկ նախանձ չար 'ի սիրտ Բաբկենի եղբօր Փիլիպէի որդւոյ Վասակայ միւս նահապետին Սիւնեաց՝ որ է 'ի նոյն ցեղէ. և խանդացոյց և գրգռութեամբ չար 'ի մէջ նոցա զարթոյց զօրէն Կայենի և Հաբելի, որք և գումարտակ 'ի վերայ իրերաց կարգեալ պատերազմեցան. և սպան Բաբկէն զԳրիգոր»։ Եւ այն զոր պատմէ Յոհաննէս կաթողիկոս վասն երկուց եղբարց, թէ փոքրին Բաբկէն սիւնի յանիրաւի զրկեալ համարելով զինքն 'ի Սահակայ սիւնոյ, գնաց առ Նսր ոստիկան առ 'ի ամբաստանել և վրէժ առնուլ. և նա ոչ միայն զՍահակ՝ այլ և զնա ինքն զԲաբկէն կալեալ եդ 'ի բանտի երկաթի կապանօք, որով ոչինչ շահեցաւ, այլ երկոքին եւս ծանր տուգանս վճարելով հազիւ զերծան։

Տիրեալ էր 'ի նոսա և անհնազանդութիւն առ թագաւոր իւրեանց, և յարիլ յօտարին, յորոց մին եղև Սմբատ,

զորմէ Թովմա արծրունի է. 10. «Սմբատ իշխանն Սիւնեաց 'ի բաց եկաց 'ի հնազանդութենէ Թագաւորին Հայոց (ա. Սմբատայ), արգել առնելով հարկացն տալ Թագաւորին, Թեւակոխելով Պարսից բռնաւորին հատուցանել զհարկս և զհասս. և ինքն ժողովեալ զզօրս իւր տասն հազար արանց զօրաւորաց՝ եկն եմուտ յամուրսն Հայոց ձորոյն»: Սմբատ Թագաւոր եկն 'ի վերայ նորա բազմութ զօրաց աւելի քան զ25. հազարաց. բայց Աշոտ իշխանն Վասպուրականն ընդ մէջ մտեալ համոզեաց 'ի խաղաղութի. որով Սահակ եղբայր իշխանին Սիւնեաց եկն առ Թագաւորն ընդ իւր բերելով զհարկսն: Այսր ախտակալութեան մինչև 'ի կանայս անգամ հռչակեալ դտաւ 'ի Սիւնիս. զոր օրինակ էր Փառանձեմ սպանօղն Ողոմպիադայ տիկնոջ. և կինն այն, որ սպան զՍտեփաննոս սիւնեցի:

Ի յայլում բարոյական պատճառք եղեն գրեթէ, որք կրկին անգամ չարաչար աւերումն ածին 'ի վերայ նահանգին Սիւնեաց՝ սաստկագոյն քան զայլոց ժամանակաց աւերմունս. մի՝ յաւուրս Անդոկայ, զորոյ զպատճառն յիշեցաք 'ի վերոյ, և երկրորդ՝ յաւուրս Յուսփայ ոստիկանին՝ որ զամենայն քանդեաց, զորմէ պատմէ Ստեփաննոս օրպելեան 'ի գլուխն լը:

Ինչ էր 'ի կարգիս գրել և զտոհմէն Արշակունեաց, բայց զնմանէ լիով գրեցաք 'ի վերոյ 'ի կարգերն զԹագաւորս արշակունիս սկսեալ 'ի Վաղարշակայ. քանզի ընդ սկսաներն Թագաւորութե 'ի մեզ, սկիզբն կալաւ և Արշակունեացս տոհմ. և ոչ որպէս զԲագրատունեացն, Արծրունեացն և Սիւնեաց, որոց այլ սկզբնաւորութի է տոհմին և նախարարութե և այլ Թագաւորութեն, որ յետոյ է ժամանակաւ: Ոչ եդաք այնպէս 'ի կարգիս Թագակալ նախարարութեանց և զՎանանդացն, զի Թագաւորք որք 'ի Վանանդ Թագաւորեցին՝ չէին վանանդեցիք, այլ բագրատունիք. վասն որոյ յիշատակութի նոցա 'ի դէպ գայր միայն 'ի կարգս բազմաւորութե Թագաւորութեց, որպէս և յիշեցաք անդանօր. իսկ զնախարարութեց նոցա ունիմք յիշել զկնի 'ի կարգս այլոց նախարարաց:

Բ. Նախարարութիւնք 'ի կառավարութեան դրան արքունի:

## ԱՂՁՆԻՔ. ԳՈՒԳԱՐՔ

Օտացմանէ մնաց էր խօսել աստանօր, ըստ որում էին գահերէց իշխանք արքունի տաճարին. բայց քանզի գրեալ է մեր փնոցանէ 'ի մեծ Հայս, տես անդ: Վասն Աղձնեաց տես 'ի Թղթ. 64. և ինչ 'ի ինչ մասունս 'ի գլուխն Պատմութեան, ուր խօսեցաք վնուագմանէ աշխարհիս: Աստանօր յաւելցուք միայն որ ինչ պատմի առ Բուզանդայ Գ. 9. յաղագս ազգահատութեան այսր տոհմի. զի յետ ապստամբութեն Բակուր բդեշխին Աղձնեաց՝ Ի. Խոսրով արքայ Հայոց առաքեաց, ասէ, զօրս 'ի վերայ նորա, որք "առհասարակ ընդ սուր հանին զամենայն. և սպանին զբդեշխն եղբարբք և որդւովք իւրովք հանդերձ. բայց զաղջիկ մի զդուստր նորածին, և զգլուխն Բակուր բդեշխին բերին առ արքայ. և իբրև այլ ոք ոչ էր մնացեալ յազգէն՝ ետ արքայ զաղջիկն 'ի կնութիւն սիրելւոյն արքայի Վաղինեկայ սիւնւոյ, և զտունն Աղձնեաց. և արար զնա բդեշխ և պայազատ տանն նորուն: Ժառանգն բազմացաւ, և հանդերձ աշխարհաւն և ամենայն ուժովն կայր բդեաշխն Վաղինակ 'ի ծառայութեան արքային հանապազ":

Նոյս ցեղ 'ի կողմանէ աղջկան միայն սերեալ է. բայց զկնի պատմէ նաև 'ի կողմանէ արուի մնացեալ. "Բայց յորդւոցն Բակուր բդեշխի, ասէ, պատանեակ մի փախեաւ անկաւ առ զօրավարն Հայոց Վաչէ, և անդ ապրեցաւ թագուցեալ 'ի տան նորա, որ առ յապա ժառանգ տան նորա լինէր, որ յայլում ժամանակի դարձաւ կալաւ ըզտունն իւր. որոյ անունն Խեղայ կոչէր":

Իսկ վասն ազգահատութեան ցեղին Գուգարաց այսպէս գրէ Բուզանդ Ե. 15. Սպարապետն Մուշեղ, ասէ, Ը. Արշակայ արքայի "զբդեաշխն Գուգարաց որ յառաջն ծառայէր թագաւորին Հայոց և ապստամբեաց, կալեալ գլխատէր. և զազգն որձական առնէր, և զկանանյսն և զդստերսն 'ի գերութիւն վարէին": Բայց քանզի և զկնի յիշատակին 'ի գիրս սերունդք Գուգարաց, յայտ է թէ նաև 'ի ցեղէ աստի ապրեալ գտան պատանեակք: Իսկ զայլ տեղեկութիւն վասն Գուգարաց՝ տես 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 354. և աստ յարտաքին Նախարարս, ուր գրեցաք զբդեշխից:

## ԱՆԳԵՂՏՈՒՆ

Յաղագս սկզբնաւորութեան այսր ցեղի գրէ Խորենացին ա. 23. «Բայց զԱնգեղտունն ասէ նոյն պատմագիր (Մարիբաս) 'ի Պասքամայ ումեմնէ 'ի Հայկական թոռնէ լինել»: Հայկակ կրկին գոլով 'ի մեզ, մին 'ի կարգս նախահարց, և միւսն 'ի կարգս թագաւորաց, ոչ որոշէ թէ ո էր, բայց զանուն թոռին՝ և զպատճառ Անգեղտան անուան՝ բացայայտ ասէ 'ի Ե. 8. «Իսկ զայր խոժոռագեղ և բարձր, և կոպտար անձն, և տափաքիթ, խորակն և դժնահայեաց, 'ի զաւակէ Պասքամայ 'ի Հայկական թոռնէ Տորք անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահագիմութեանն ձայնէին Անգեղեայ, մինթխարի հասակաւ և ուժով, հաստատէ կուսակալ արեւմտից. Այերեսացն անպիտանութեն կոչէ զանուն ազգին Անգեղ տուն»: Ցայս բան յայտ արար և զպաշտօն նորա, այն է կուսակալ արեւմտից. բայց յառաջնումն 'ի գլուխն 3. վասն Բագարատայ գրեալ էր՝ կացուցեալ կողմնակալ իշխան յարեւմտից կուսէ, զոր և Բ. 47. Բագրատունեաց ասպահական և հայրենական կոչէ զայն իշխանութիւն արեւմտեայ զօրուն.

Աստ որոյ պարտ է ասել, թէ Վաղարշակ որպէս յարեւելեան կողմն զերկուս կողմնակալս կացոյց. զմին 'ի ընիկ յարեւելից՝ 'ի ձեռս սիսակեանն և կադմեայն ցեղից. իսկ զմիւսն յարեւելից հիւսիսոյ 'ի ձեռս Առանայ ըստ նշանագրելոյ Բ. 8. նոյնպէս և յարեւմտեան կողմն զերկուս կացոյց. զմին 'ի ձեռս Բագրատունեաց, որ թուի լինել յարեւմտից հիւսիսոյ, ուր եղև և Սպեր քաղաք նոցին սեփական. իսկ զմիւսն 'ի ընիկ յարեւմտից 'ի ձեռս Անգեղտան։ Եւ այսպէս թէպէտ ցեղն էր հին՝ այլ նախարարութիւն՝ և Անգեղտուն անունս ցեղին՝ սկիզբն էառ 'ի Վաղարշակայ. կացուցաւ 'ի նմանէ կուսակալ արեւմտեան կողմանն, և դասեցաւ ընդ նախապատիւ իշխանս. զի Ագաթանգեղոս յՃԹ. 'ի թուելն զիշխանս զօրս Տրդատ տարաւ ընդ իւր 'ի Հռոմ, յետ չորից բդեշխից յիշէ «զմեծ իշխանն Անգեղտան»: Իսկ 'ի յՃԴ. յառաջ քան զամենեսին՝ նաև քան զբդեշխն Աղձնեաց՝ յիշէ զԱնգեղտան իշխանն. և Բուզանդ Ե. 7. 'ի յիշելն զԴրաստամատն ներքինին զիշխանն Անգեղտան, «Բարձ նորա 'ի վեր քան զամենայն նախարարացն» ասէ։

Երկիր Անգեղտան իշխանին էր 'ի մեծ Ծոփս. այսինքն՝

ըստ Բուզանդայ՝ 'ի ծոփք անուանեալ գաւառին չորրորդ Հայոց. որպէս յայտ առնէ այս բան նորա Դ. 24. «Եւ ինքեանք 'ի ծոփս մեծ արշաւեցին . . . պահ արկանէին շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն՝ որ էր յԱնգեղ տանն գաւառին»: Դարձեալ Ե. 7. «Իսկ Դրաստամատն ներքինին, որ յաւուր Տիրանայ Թագաւորին Հայոց և Արշակայ որդւոյ նորա Թագաւորին Հայոց լեալ էր իշխան տան գաւառին և հաւատարիմ գանձուց Անգեղ բերդին, և ամենայն բերդացն արքունի՝ որ 'ի կողմանս յայնս. այնպէս և յերկրին ծոփաց 'ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ նովաւ»: Այլուր 'ի Գ. 12. զԲնաբեղ բերդն դնէ 'ի մեծ ծոփաց գաւառին. իսկ ըստ նորա մեծ ծոփք է գաւառն չորրորդ Հայոց, իսկ ծոփք Շահունւոյ՝ է համօրէն նահանգն կոչեցեալ չորրորդ Հայք.

Արդ այս մեծ ծոփք կոչեցեալ գաւառ չորրորդ Հայոց, որ էր երկիր Անգեղտանն, կոչէր Ոստան. որպէս ասէ Բուզանդ Ե. 18. «Հարկանէր և զԱնգեղ տունն զգաւառն, և հանէր ընդ սուր. բայց աշխարհն զի Ոստան արքունի լեալ էր, վաղ վաղ բնակիչք գաւառին և ինքեանք կային 'ի հարկի ծառայութե»: Նա այս հայի բան Խորենացւոյն Ա. 30. ուր յետ ասելոյ թէ մեծն Տիգրան յուղարկեաց զքոյր իւր զՏիգրանուհի 'ի Տիգրանակերտ քաղաք մեծաւ ամբոխիւ, այսինքն է՝ բազմութ., ապա ասէ. «Զգաւառսն զայնոսիկ 'ի ծառայութի նմա հրամայէ. և զՈստանն անուանեալ կողմանցն այնոցիկ ազատութի (այսինքն ազնուականութիւն), 'ի զարմից սորա ասէ (Մարիբաս) լեալս իբր Թագաւորական զարմն»: Որ է ասել, թէ ազատազգիք կամ ազնուականք որք բնակեալ կան 'ի կողմանսն յայնոսիկ, և կոչին Ոստան, Մարիբաս պատմագիր ասէ, թէ 'ի զարմից Տիգրանուհւոյ են, և համարին իբր Թագաւորական զարմն: Եւ այսպէս այս բան երկոցունց յայտ առնէ, թէ Ոստան կոչէր ուրոյն տեղի ինչ, ուրանօր սփռեալ բնակեալ էին զարմք Տիգրանուհւոյն, որք և նոյնպէս կոչէին Ոստան:

Արդ ծոփք գաւառ որպէս և համօրէն չորրորդ Հայք կարեն կոչիլ գաւառք կողմանցն Տիգրանակերտի, համաձայն բանից Խորենացւոյն, զի ընդ հիւսիսակողմն Տիգրանակերտի միացեալ է չորրորդ Հայք: Եւ քանզի յայնմ զարմէ՝ նաև յայլոց հին զարմից Թագաւորացն, Վաղարշակ ներքինիս արար, որպէս ասէ Խորենացի Բ. 7. նմին իրի նահապետ նոցա կոչեցաւ Հայր իշխան և Մարդպետ, որ

է ներքինապետ. այն զի՝ և երբեմն կամ քաղաքում անգամ՝ ի նոյն իսկ յԱնգեղտանէ եղև մարզպետն, յորմէ և մարզպետն կոչեցաւ իշխան Անգեղտան։ Եւ զի 'ի Հայկական Թուականէ զՏորքն յորջորջեալ Անգեղեայ՝ Վաղարշակ կարգեաց կուսակալ արեւմտից՝ որոյ զօրանիստ տեղի եղև մեծ ծոփք ըստ Բուզանդայ, որ է գաւառ չորրորդ Հայոց, վասն որոյ և ազգն՝ նաև տեղին յանուն նորա կոչեցաւ Անգեղտուն. բայց քաղաքում ուրեք 'ի գիրս առաջին անուանն մնաց Ոստան, վասն որոյ և Անգեղտուն գաւառ յետ Բուզանդայ ոչ յիշատակի, իսկ ծոփք սակաւ ուրեք։ Զայս յայտ առնեն իշխանքն յիշատակեալք առ Ղազարայ անուամբ յՈստանիկաց, որպէս և Անձաղան յՈստանեայ տանէն. սոյնպէս և յիշատակեալն առ Եղիշէի յարքունի տանէն Ոստանիկ մարդիկ. կամ բազում և այլ մարդիկ զոր Ոստանիկ անուանէին յարքունի տանէ [1]։

Արդ այսպիսիք յայտ է թէ էին յԱնգեղտանէ. կամ 'ի գաւառէն ծոփաց որ կոչէր և Ոստան, ուր էին և ոստանիկ կամ Թագաւորական զաւակք Հայկազանց՝ մանաւանդ Տիգրանուհւոյն [2]. զի բաց 'ի նախագրեալ պատ-

1 Որ ինչ գրեալ է մեր 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 459. վասն Ոստանի, ոչ համաձայնի այժմ. զի հաւաստի է թէ գունդն 'ի Վաղարշակայ ընտրեալ 'ի պահապանութիւն դրան արքունի՝ Ոստանիկ կոչիլ սկսան յայնժամ պատրուակաւ անուանս. զի էին արքունականք. զաւակք յորմէ և զօրքս անուանեալ Ոստան կոչեցեալ յետ ժամանակաց յանուանէ այսր գնդի յորջորջեալ յայժ հաւանական երեւի, և յայնմանէ անուանեալ Ոստան կոչել նաև զնախագահ քաղաքս ոմանց նախարարաց։ Բայց ըստ այժմեան տեսութեան՝ պարտ է 'ի վերայ այնր յաւելուլ ևս, թէ պատմութիւն Անգեղտան և Մարզպետական նախարարութեան յայտնի կացուցանէ Ոստան կամ Ոստանիկ լինել նաև յատուկ անուան որոշ տեղւոյ՝ ուրեք նախնական բնակութիւն այսր արքունի կամ ոստանիկ զարմի, որ այն ինքն է ծոփք գաւառ չորրորդ Հայոց, և ոչ նահանգն ծոփք որ էր համօրէն չորրորդ Հայք։

2 Ինձ թուի եթէ Ոստանիկք, կամ Մարդիկ ոստանիկք կոչէին ոչ միայն որք 'ի զարմից Տիգրանուհւոյն էին սերեալք, այլ նաև այլ Թագաւորունք Արշակունեաց, սերեալք յարքայորդւոց՝ զորս Վաղարշակ բնակեցոյց 'ի Հաշտեանս գաւառ չորրորդ Հայոց, և յայնմհետէ ամենայն արքայորդւոց Արշակունեաց՝ որոց ոչ անկանէր Թագաւորել՝ օրէն եղև բնակել անդ 'ի Հաշտեանս, որոց զկնի այնչափ եղև բազմանալ՝ մինչև սփռել նաև յԱղիովիտ և յԱռբերանի։

Արդ յայտ է թէ 'ի բառնիլ Թագաւորութեան Արշակունեաց՝ ոչ բարձան սերունդք նոցա և ոչ սպառեցան, այլ մնացին յիւրեանց քաղաքս և 'ի գիւղօրէս որ նոցին էր սեփական, ուրեք օրըստօրէ բազմանային. բայց մինչ զարմանք՝ զի այսպիսի զարմք բազմաթիւք երեւելիք և արքայազունք՝ որոց յայտ է 'ի մեծի համարոյ լինել յաչս ամենայն նախարարաց, ոչ ուրեք 'ի գիրս յիշատակիլ, ոչ նախարար անուամբ, և ոչ իսկ արքայազուն կամ արքայորդիք անուամբ։ Արդ յայտ է թէ նոքին Ոստանիկ անուամբ յիշատակէին որպէս զարմք Տիգրանուհւոյն՝ նոյնպէս և զարմք նոցա, երկոցուն ևս գոլով զարմք արքայականք, կամ որ նոյն է՝ զարմք ոստանիկ. երկոցուն ևս տեղի բնակութեան գոլով ծոփաց միջերանց, որ նոյնպէս կարէր կոչիլ Ոստան.

Ճառայ՝ նաեւ Բուզանդ 'ի բանս զոր 'ի վերոյ յառաջ բերաք՝ զերրորդն եղեալ յԱնգեղտան կոչէ Արքունի. մանաւանդ զԹնաբեղ բերդն Ծոփաց գաւառին 'ի Գ. 12. կոչէ Արքունի, որ նոյն է ասել Ոստան. յայն բերդն արքունիս, և որոշակի յԱնգեղ բերդին՝ յիշատակէ 'ի Դ. 24. լեալ գանձք արքունի նաեւ գերեզմանք. " Գահ արկանէին (ասէ Պարպեցի) շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն որ էր յԱնգեղ տանն գաւառին. զի անդ էին բազում Հայոց թագաւորացն (իմա և թագաւորազնեայցն) գերեզմանք շիրմացն արանցն արշակունեաց „. Թերեւս և Հայկազնեայց: Բաց 'ի շիրմաց ասէր նաեւ " Բազում գանձք, (ասէ, անդ) մթերեալ ամբարեալ կային 'ի նախնեացն 'ի Հնոց ժամանակաց Հետէ „:

Արդ այսչափ արքունական բերդորայք արքունական և գանձք 'ի Հնոց ժամանակաց Հետէ, այսոքիկ գուցէ նաեւ 'ի Հայկազանց թագաւորաց Հետէ ամբարեալք, պատճառեղեն ուրոյն անփական անուանս Ոստան կամ Արքունի կոչել զայն գաւառ, որ յառաջին կոչէր Անգեղտուն, և մասն էր չորրորդ Հայոց. և Ոստանիկ կոչել զարքունի զարմն ծնանկեալս 'ի նմա: Թուի ես թէ յետ դադարելոյ թագաւորութեան Արշակունեաց՝ բարձաւ և գահն Հայր իշխանին և Մարդպետի, նմին իրի յետ այնորիկ ոչ յիշատակի ոչ այս իշխան և ոչ ցեղն, այլ փոխանակ սորա յամենայն ժողովս նաեւ 'ի պատերազմունս՝ ուր պատմի առ Եղիշէի և Ղազարայ ժողովել իշխանաց Հայոց, անդ 'ի բազում յիշատակին Ոստանիկք կամ մարդիկ յԱրքունի և յՈստանկաց տանէն, որք յայտ է թէ տոքա էին. այսոքիկ բնակեալքն 'ի Ծովք գաւառ չորրորդ Հայոց, երբեմն Անգեղտանն գաւառ յորջորջեալ, թերեւս նաեւ բնակեալքն 'ի շրջակայս նորա: Եւ գուցէ իշխանն որ էր անդ փոխանակ Մարդպետին՝ զինի 'ի Ցունաց կոչեցաւ Կուրապաղատ, յորյ ասկս Ցովաբ կաթողիկոս որ յեւս ութերորդ դարուն՝ ասի լինել յՈստանկէն 'ի Կուրապաղատին ազգատոհմից. մանաւանդ թէ՝ որպէս ինձ թուի, որ ինչ գործ էր Կուրապաղատին առ-

Վասն որոյ 'ի պէսպէս բանս որպէս և յայս բան Եղիշէի Թղթ. 344. գրոցանէ Համարիմ զգեալ. "Եւ բազում են այլ ազատ մարդիկ, են որք յԱրքունի տանէ (նոյն է ասել Ոստանիկ), և են որ 'ի տանէ նախարարացն իւր նոցուն „: Ուր որոշէ զարքունի մարդիկ կամ ոստանիկս յայլոց նախարարաց: Նոյնպէս և գերեզմանքն յիշատակեալ 'ի Բուզանդայ յանուն արանց արշակունեաց. Համարիմ լինել գերեզմանս ազգի այսոքիկ ոստանկաց կամ արքայազանց:

Ցոյնս՝ նոյն գործ էր և Մարդպետին առ մեզ . այսինքն է՝ հոգ և վերակացուն պալատան, ըստ որում էր ներքինապետ, յորմէ չէր տարադէպ Ցունաց զՄարդպետն մեր կոչել Կուրապաղատ : Որով 'ի նախագրեալ բանս վասն Ցովաքայ կաթողիկոսին, իմանամ լինել Ցովաքայ յոստանէն Անգեղտան յապարանից Մարդպետին, ուր թէ և մարդպետութիւն խափանեալ էր յայնժամ, բայց ցեղն Ոստանկաց և ապարանք Մարդպետին մնացեալ գոլով անմ պալատան երեւց էր Ցովաքայ, և մարթ էր յայն անուն կոչել :

Նոյն այսպէս զբան Ցոհաննու կաթողիկոսի, պարտ է իմանալ, թէ Ցովաք էր յՈստան տեղւոջէն յապարանից իշխանին Կուրապաղատին, որ 'ի հնումն առ մեզ կոչէր Մարդպետ իշխան : Այս ապարանք են որ առ Սորաքանի գիրք ԺԱ. թղթ. 527. յիշատակի Արքայակերտ անուամբ ասելով. "Արքունիք Սոփինայ (այս է Ոստանին Ծոփաց) է Գարգառխոկերտա ,, : Ուր պարտ է բաժանել զառաջին և զվերջին տառսն 'ի յունականն հնչմանէ մուծեալ. և զկերտ վանկն հայկական ուղղել յԱրքայակերտ. զի 'ի Սոփինի որ է Ծոփք՝ ոչ գտանեմք 'ի գիրս մեր արքունիք ինչ լեալ, բայց եթէ ապարանք այսոցիկ արքայազանց որ կոչէր Ոստան, և 'ի հարկէ յարքայից կերտեալ գոլով կոչէր և Արքայակերտ : Ցիշէ զայս և Պլինիոս Է. 9. դնելով 'ի մեծ Հայս առ Տիգրիսիւ. այսինքն 'ի սկզբան Տիգրիսի, որ բղխէ 'ի չորրորդ Հայս 'ի Հաշտեանք գաւառ ուր բնակէին արքայորդիք համաձայն գրելոյս : Նոյն համարիմ և զոր յիշէ Պտղոմէոս Ե. 13. 'ի կողմանս Ծոփաց և Հաշտենից Վաւնլխոնէ տեղի, որ է թարգմանութիւն արքայական անուան . զի անուն անկանէր և ապարանք Ոստանկաց : ըստ այսմ է տեսանել և զՁարիշատ քաղաք Աղիովտի գաւառին՝ ուր նստէին արքայազունք, Արշամունեան քաղաք կոչեցեալ առ Խորենացւոյն Է. 23 : Տես սաորև և զցեղն Մարդպետական, նաև զՈստանիկն :

## ՄԱՐԴՊԵՏԱԿԱՆ

Նախարարութիւն այս սովին ձայնիւ միայն առ Մագիստրոսի կոչի՝ 'ի թուղթն որ առ Սարգիս վարդապետ յասելն . "Այլ է հարցիր ընդ բոլոր յաջեթեան նահանգի . զինչ յաւուրս յայսոսիկ 'ի բոլոր տանս Մարդպետական եղեալ գործառնութիւն ,, : Ուր և բանն է անյայտ : Իսկ յայլ գիրս նախարարքն միշտ Մարդպետ կոչի . և նախարարութիւնն՝

Մարդպետութիւն. որպէս է տեսանել յայս բանս Բուզանդայ Դ. 17. "Տան զնա 'ի ձեռս իշխանին Մարդպետութեանն, որում անուն իւր Հայր կոչէր": Եւ 'ի 18. "Որ ունէր զպատիւն մեծի Մարդպետութեան. այր ներքինի՝ չարաչար չարախորհուրդ չարագործ, որում Հայր կոչէին":

Իսկ պաշտօնին էր ներքինապետ արքայի. որպէս յայտ առնէ Խորենացին Գ. 7. յասելն վասն Վաղարշակայ. "Նաև ներքինիս հրամայէ 'ի նոյն ազգէ լինել. (այսինքն յազգէ հին զարմից Թագաւորաց հայկազնեայց, յորոց էին և ոստանիկք՝ զորոց խօսի 'ի վերոյ.) և նահապետ նոցա զՀայր իշխանն մասին յԱտրպատականէ մինչև ցԾունաշ, և Նախճաւան": Այսինքն է՝ նահապետ նոցա կարգէ զՀայր իշխանն՝ որ էր տէր այնր մասին երկրի՝ որ սկսեալ յԱտրպատականէ ձգէր մինչև ցԾունաշ և ցՆախճաւան: Եւ զոր աստ կոչէ Հայր իշխան, 'ի Դ. 15 Մարդպետ կոչէ. "Տիրանայ զայս լուեալ և յոյժ զարհուրեալ, առաքէ զՄարդպետն կոչեցեալ Հայր": Մարդպետ անուանս եղև հասարակ անուն այսմ բարձի և պատուոյ: "Մարդպետն, ասէ Բուզանդ Ե. 6, որ անուանեալ կոչէր ըստ գործոյն՝ Հայր Թագաւորին": Որով և ներքինապետութիւն կոչեցաւ Մարդպետութի: "Եւ քանզի, ասէ Ե. 7. այս գործակալութի և մարդպետութի, որում Հայրն կոչէին Ներքինեաց՝ գործ լեալ էր 'ի բնէ ժամանակաց 'ի Թագաւորութեն Արշակունոյ, և զայս Դրաստամատն ներքինի զիշխանն զԱնգեղ տանն գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից 'ի ժամանակին՝ յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց": Նոյնպէս յայտ առնէ և յայս բանս Ե. 3. "'Ի նորա տեղի հայրութեան մարդպետութեն զԴղակ ոմն անուն, որ յաւուրս Արշակայ Թագաւորին կամ Տիրանայ հօր նորա գաւմու միով լեալ նոյն գործ մարդպետութեան":

Այլ երեք ինչ կան 'ի քննել՝ յաղագս այսր մարդպետիս: Առաջին յայտ է 'ի նախակարգեալ բանից, թէ գործ նորա էր լինել Հայր Թագաւորին, և վերակացու և հազարապետ ապարանից նորա. զայս յայտ առնէ բաց 'ի յառաջելոց՝ նաև այն կամիլն ուրումն մարդպետի յարքունիս գրաւել զտեղիս ինչ Աշտիշատուն Տարօնոյ, զորմէ պատմէ Բուզանդ Դ. 14. և Մեսրոպ ԺԲ. պատմէ վասն տեղեաց ինչ Այրարատու: Յայտ է և թէ կոչէր Ներքինի. զի բաց 'ի յառաջագրեալ բանից Բուզանդայ Դ. 14. (ըստ ձեռ. 13.) զնոյն անձն 'ի վերոյ կոչէ մարդ-

ղէփ Հայր, իսկ ստորև կոչէ ՚Ներսէհի, բայց թէ արդեօք խը-ղճեալ ներքինացուցանէին որպէս արար Վաղարշակ, և որպէս մարթ է կարծել նաև վասն այլոց կռապաշտ թագաւորաց արշակունեաց, թէ միայն անուամբ կոչէին ներքինի 'ի ժամանակս քրիստոնէութեան [1], անյայտ է. ու-րեմն հետև այս գործ 'ի պէտս և 'ի պահպանութիւն բազմա-կնութեան կռապաշտից թագաւորաց սահմանեալ գոլով ա-ւելորդ էր 'ի ժամանակս քրիստոնէութեան. և զի զվերոյի-շեալ Դրաստամատն թէպէտ ներքինի կոչէ Բուզանդ, բայց այնչափ և այնպիսի քաջութիւն պատմէ վասն նորա որ զանցանել թուի քան զբնութիւն ներքինւոյ:

Երկրորդ՝ անկ է քննել յաղագս ցեղին. զի թուի թէ նախարարութիւն այս կամ մարդպետական իշխանութիւն ոչ իջանէր ուղղութեամբ յորդւոց յորդիս՝ որպէս զայլսն, այլ 'ի զանազան ցեղէ լինէին Մարդպետ, որպէս և նախագրեալ Դրաստամատն էր յԱնգեղտանէ. իսկ զԴղակ յայլմէ տոհմէ ակնարկէ լինել: Եւ Ագաթանգեղոս 'ի յԺԴ. ու-րոյն յիշէ զիշխանն Անգեղտան, և ուրոյն զիշխանն մարդ-պետութեան. բայց 'ի բանի կառավարութեան ընդ երևելի իշ-խանս է դասեալ Մարդպետն. զոր օրինակ է տեսանել յայս բանս Բուզանդայ Ե. 33. որ յետ մահուան Պապայ արքայի ասէ. «Ժողովեցան եկին ամենայն իշխանքն Հայ-ոց մեծամեծք 'ի մի վայր 'ի միասին, և Մուշեղ սպարա-պետն, և Հայր Մարդպետ, և ամենայն իշխանքն»: Այլ զկնի չիք գտանել զյիշատակութիւն Մարդպետի, ոչ 'ի ժամանակս դադարման թագաւորութեան Արշակունեաց, և ոչ 'ի ժամանակս թագաւորաց Բագրատունեաց. յորմէ թուի ինձ ընդ բառնիլ թագաւորութեան Արշակունեաց՝ որպէս ընտանիք և տուն թագաւորական և ամենայն կարգ և հանդերձանք նորա բարձան, նոյնպէս և վերակացուն կամ հազարապետ տան թագաւորի բարձաւ. որ այն ինքն էր պաշտօն մարդպետութեան, կամ Հայր իշխանն, զի ցորչափ յոտին կայ թագաւորութիւն՝ յոտին մնան և հին կարգք պաշտօնէից պալատականաց. միայն մնացին յայնժամ հետէ արքայազունք հանդերձ ապարանօք իւ-

1 Փաւղաւէնի գրէ թէ 'ի սկզբան անդ Ներսէհի կոչէին սենեկապետք արքային, իբր ներքին ընտանեաց պահապանք, և հոգաբարձուք, ուր ընտանիք արքային բնակէին. ապա նա-խանձ իշխանաւորաց և ապականու-թեան բարուց պատճառաւ եղև հնարել զխը-զուած ծառայից կարգելոց 'ի ներքին ծառայութիւն ընտանեաց: Այսմ 'ի դէպ գայ և մեր հայկական անուն Ներսէհի. իբր որ կարգեալ է 'ի ներքին սպասաւորութիւն արքայի:

րեանց որ 'ի ծովս. որք Ոստանիկ անուամբ յիշատակին 'ի գիրս, այլ սոցա եւ տոհմ ոչ մնեաց՝ որչափ ինչ մնեաց միւս նախարարացն ։

Երրորդ՝ վասն երկրի Մարդպետին կան ինչ ինչ քննե-լի. զի 'ի նախագրեալ բանից Խորենացւոյն իմանամք, թէ Մարդպետն էր իշխան երկրին Ծուաղայ և Նախճուանու. բայց զինչ զարմանք, զի ոչ ուրեք առ պատմագիրս գտա-նեմք զՆախճաւան երկիր յանուն Մարդպետ իշխանի կամ Մարդպետականի ձայնեալ, այլ փոխանակ քաղաքա-կան իշխանին զեկեղեցականն այսինքն զեպիսկոպոսն Նախ-ճուանու գտանեմք ծարդպետական անուամբ յորջորջեալ առ Թովմա Արծրունւոյ. զոր օրինակ կարես տեսանել 'ի մեծ Հայս 220 և 221. որ արդարև՝ յայտ իսկ է՝ թէ առ-նեփական գոլոյ Մարդպետ իշխանին՝ եպիսկոպոսն Նախ-ճուանու ընկալաւ զանուն Մարդպետականն. նա զի մեր-ձակայ գաւառն եւս Մարդաստան՝ յանուանէ Մարդպե-տին այսպէս կոչեցեալ համանական երևի մեզ, որ թե-րևս էր ընդ իշխանութեամբ նորա ։

Նշանել զարմանալին այն է՝ զի Բուզանդ ոչինչ յի-շատակեալ զՆախճաւանայ, փոխանակ այնր՝ սեփական երկիր Մարդպետին զՏարօն ասէ լինել, 'ի Դ. 14. "Եւ էր Մարդպետն Հայր՝ այր չար և ժանտաբարոյիւք անօրէն և անիրաւ քան զառաջին Հայր անուն Մարդպետն. սա կա-տարեաց զամենայն ազգս նախարարացն 'ի ժամանակս թա-գաւորութեան Տիրանայ արքայի. և սոյնպէս առ թագա-ւորութեամբն Արշակայ՝ եւս չար քան զառաջինն գործել չար առ ամենայն մարդ. Արդ եղանէր սա շրջէր ընդ մարդպետութեն իւր. (կամի ասել ընդ երկիրս որք մարդ-պետութեան էին սեփական) ապա եկն էջ Հայր Մարդպետ 'ի գաւառն Տարօնոյ ընդ իւր գիւղսն տեսանել . . . եկն էջ և Հայրն Մարդպետ զիւրով իշխանութեամբն շրջել"։ Ուր թէպէտ իւր գիւղս ասէ իշխանութեան իւրև սեփական Մարդպետին, այլ զՏարօն՝ Մամիկոնեանց գիտեմք լեալ սեփական. որպէս և ինքն Բուզանդ Ե. 3. խառն յիշե-լով զերկոցունց ասէ. "Ապա մինչդեռ Մարդպետն Հայր զիւրով իշխանութեամբն շրջէր յերկրին Տարօնոյ, և Մու-շեղ սպարապետն Հայոց (Մամիկոնեան) էր 'ի նմին գաւա-ռին յիւրում բերդին՝ որում Ողական կոչեն"։

Նա 'ի միաբանել զայս ամենայն պարտ է ասել, թէ այս պատիւ մարդպետութեան բարձեալ էր 'ի ժամանակս Թովմայի Արծրունւոյ, որպէս ասացաք 'ի խօսին զՍն-

գեղ տանն է. և միայն յեկեղեցական կարգի յեպիսկոպոսս մնացեալ հին անունս Մարզպետական: Վասն որոյ որպէս իշխանն Անգեղ տան, յորմէ բազումք եղեն Մարզպետ կամ Հայր իշխան, զառաջին բարձ ունելով զիշխանաց՝ յառաջ յիշատակի քան զայլ իշխանս, այսպէս և եպիսկոպոսն մարզպետական նախ քան զայլ եպիսկոպոսունս յիշատակի զկնի կաթողիկոսի [1], մինչև երբեմն լինել և մետրապօլիտ: Եւ զի բնակեալքն ընդ իշխանութեամբ Մարզպետին կոչէին Ոստանիկք, սակս գոլոյ զարմ Թագաւորական, և զի Նախճաւան ևս էր ընդ իշխանութեամբ Մարզպետին, յայսմանէ ապա Նախճաւանու կոչեցեալ համարիմ Ոստան. ուր գուցէ առ ժամանակ մի բնակէր և մարզպետն և եպիսկոպոսն ևս ընդ նմա. ապա 'ի բառնիլ աշխարհական իշխանին՝ եպիսկոպոսն որ մնաց 'ի Նախճաւան, պահեաց յիւր վերայ զհին անունն Մարզպետական եպիսկոպոս, կամ Ոստանի եպիսկոպոս անուանելով. որով իմանայ զՆախճաւան քաղաք [2]:

Իսկ վասն Տարօնոյ մարթ է ասել, թէ թէպէտ սեփական էր Մամիկոնէից՝ որպէս նշանագրեն և այլ ամենայն պատմագիրք, բայց 'ի Տարօն էին գիւղօրէք ինչ՝ որք էին կալուածք մարզպետութեան, կամ կալուածք արքունի՝ որոց եկամտից տէր էր Հայր Մարզպետն [3], վասն որոյ և կամեցաւ գրաւել զեկեղեցին Աշտիշատու, և ապաքան չինել անդէն արքայի, զորմէ Բուզանդ: Կամ թէ այս Մարզպետն էր յերկրէն Տարօնոյ՝ և կամ յայնպիսի տոհմէ՝ որում սեփական կալուածք էին գիւղօրէք ինչ Տարօնոյ: Այլ բանիւ Խորենացւոյն անկ է մեզ կնքել զայս գլուխ բանի, որպէս և նա զգլուխն Բ. 7. յետ գրելոյ զՀայր իշխանէն ասէ. "Բայց թէ որպէս է, և ուր սորա իրք անցին անյիշատակելի, ես ոչ գիտեմ":

## ՄԱՂԽԱԶՈՒՆԻՔ

Սկիզբն այսր ցեղի է 'ի Խուայ. զորմէ ասես 'ի Խուախո-

1 Տես 'ի Մեծ Հայս 220:

2 Տես վասն այսր 'ի վերոյ և զԱնգեղ տանէն:

3 Զի այդ յայտ է 'ի բանից Խորենացւոյն Բ. 12. Վահունեաց քրմապետութեան զՀերակլեայ զառանձնապատկերն բերեալ 'ի գ. Աշտիշատ. "Կանգնեցին 'ի Տարօն յիւրեանց սեփական գիւղն յԱշտիշատ": Այլ զայս գիւղ միջինն Տիգրան յարքունիս գրաւեաց ասէ 'ի գլ. 14. "Յառաջացեալ ընդ Վահունեացն եթէ ընդէր յիւրեանց սեփական կամեցին իշխեցին կանգնել զպատկերն Երակլի... զգիւղն յարքունիս առնու":

ռունիս. իսկ սկիզբն այսր Մաղխազ անուան սկսաւ ընդ սկզբնաւորութեան Պաշտծնէի, յորժամ Վաղարշակ զոմն Մաղխազ 'ի տոհմէն Խոռխոռունեաց կարգեաց իւր Թիկնապահ “ Եւ Թիկնապահս իւր զխուռ հանդերձ (կարգէ, ասէ Խորենացին Բ. 7.) 'ի զաւակացն Խոռայ Հայկազնոյ արս ընտիրս և քաջս, նիզակաւորս և սուսերաւորս և գլուխ նահապետ նոցա զՄաղխազ ոմն, բայց անուն ազգին զնախնականն պահէ ,, :

Երկու ինչ պարտ է 'ի միտ առնուլ յայս բանս. մի՝ զի Վաղարշակ բազում Թիկնապահս սահմանեաց փառաւորս զինու, որոց գլուխ եղև Մաղխազ. բայց 'ի յետագայս 'ի յիշելն՝ միումն և եթ տան զանուանս Թիկնապահ. և զայն փոխանակ կոչելոյ Թիկնապահ՝ կոչեն Մաղխազ. երկրորդ՝ Խորենացին ասէ, թէ անուն ազգին զնախնականն պահէ, այսինքն է Խոռխոռունի. բայց պարտ է ասել, թէ յորո-շումն ապա անուամբ Մաղխազ էանց 'ի սերունդս և 'ի յաջորդս Մաղխազայ, և եղև անուն ցեղի նաև պաշտօնի. զոր օրինակ առ Ղազարայ 75. 'ի յիշելն զնախարարսն՝ յիշէ և Վրիւ Մաղխազ. և 'ի 212. Գարջոյն Մաղխազ, փոխանակ ասելոյ Թիկնապահն Վրիւ և Գարջոյլ սերեալ 'ի Մաղխազայ.: Եւ Բուզանդ Ե. 38. նախ յիշէ Գարջոյլ Մաղխազ. ապա զնոյն կոչէ Խորխոռունի. “ Եւ եկն եհաս Գարջոյլն Խորխոռունի յերկրէն Հայոց ,,: Իսկ 'ի Ե. 43. զերկոսին միանգամայն յիշէ ասելով. “ Եւ զմարմինն Գարջուլայ Մախազու Խոռխոռունոյ եդին ,,: Որպէս և Խորենացին Գ. 9. առաւել որոշակի. “ Եւ փոխանակ Միհրանայ կարգէ զԳարջոյլ Մախազ նահապետ Խոռխոռունեաց 'ի վերայ զօրուն ,,:

Ագաթանգեղոս յԺԹ. զԹիկնապահութիւն նաև զանուն ցեղին կոչէ Մաղխազութի, յասելն վասն Տրդատայ թէ 'ի գնալն 'ի Հռոմ էառ ընդ իւր “ Եւ զիշխանն Մաղխազութեան տանն ,,: Սոյնպէս կոչէ և Մեսրոպ Է. յաւուրս Բ. Արշակայ Թագաւորի. բայց ուրոյն յիշէ “ Զիշխանն Խոռխոռունեաց Հմայեակ ,,. Ապա “ Զիշխանն Մաղխազութեան տանն ,, : Իսկ 'ի Թիւն ԺԵ. ուրոյն մի զկնի միոյ յիշէ զերկոսին. “ Մաղխազեանք Խոռխոռունիք ,,: Ապա յետ բազում իշխանաց յիշէ և զանուանս Մախազունիք : Զայս անուն իշխանութեան կամ ցեղին ոչ գտանեմք յիշատակեալ առ այլս, բայց զանուն մարդոյ ուրեք ուրեք զոր օրինակ 'ի պատմութեան խաչին Հացունեաց յասելն վասն Մօրկայ. “ Եւ զՄաղխազ ոմն յաշխարհէն Հայոց

կացոյց յարեւելս„։ Ինձ թուի թէ Մաղխազ՝ և իւր սե-րունդք միայն զպաշտօն թիկնապահութեն ընկալան, իսկ ուրոյն երկիր սեփական ոչ ընկալան 'ի Վաղարշակայ, այլ երկիր նոցա էր առաջին երկիրն Խոռխոռունեաց, յորմէ 'ի հարկէ ունէին իւրեանց հաս և բաժին։

## ՄԱՄԻԿՈՆԵԱՆՔ

Յաղագս ծագման այսր ականաւոր զարմի Խորենացին Բ. 81. ուրոյն գլուխ կարգելով "Եթէ ուստի և զիա՞րդ ազգ Մամիկոնէից„ պատմէ անդանօր զծագումն նոցա զոր յա-ռաջ բերցուք. "Ի մի աւուրս (Արտաշրի Պարսից արքայի) եկեալ 'ի Հայս Նախնի ազգին Մամիկոնէից յարեւելից հիւ-սիսականէն, 'ի քաջատոհմիկ և 'ի գլխաւոր աշխարհէ, և ամենայն հիւսիսականաց ազգաց առաջին, ասեմ իսկ զՃե-նացն'որ ունին զրոյցք այսպիսի։ Յամն կատարման կենացն Արտաշրի՝ Արբոկ ոմն Ճենբակուր, որպէս ասի 'ի նոցա լեզուն պատիւ թագաւորութե. սորա երկու դայեկորդիք Բզդոխ և Մամգուն անուն կոչեցեալ մեծ նախարարք, և չարախօսեալ Բզդոխայն զՄամգունայն, հրամայեաց թա-գաւորն Ճենաց Արբոկ սպանանել զՄամգունն. զոր իմա-ցեալ Մամգունայն ոչ գայ 'ի կոչն արքային, այլ փախու-ցեալ ազխիւ իւրով անկանի առ Արտաշիր թագաւորն Պարսից„։ Պատմէ զկնի թէ Ճենաց թագաւորն Արբոկ հրաւէկ լեալ այսմ խնդրեաց յԱրտաշրէ. բայց Արտաշիր յայնժամ մեռեալ գոլով, ա՟. Շապուհ յաջորդ նորա զՄամգուն առաքէ առ գործակալս իւր որ 'ի Հայս. գրե-լով առ թագաւորն Ճենաց վտարանդի արարեալ զնա 'ի մուտս արեւու յերկիր կէս մահարեր. և այնպէս խափանէ զպատերազմն՝ զոր ունէր յարուցանել թագաւորն Ճենաց. "Իսկ Մամգունայ (ասէ անդէն Խորենացի) յոչ կամաց ե-կեալ յաշխարհս մեր հանդիպեցաւ գալստեանն Տրդա-տայ ... և Տրդատ ընկալաւ զնա ... ետ տեղի ազխի նորա; և ռոճիկ 'ի կերակուր. փոփոխելով տեղ 'ի տեղւոջէ զգա-վանդակ ամս„։

Այս ցեղ հանապազորդեալ մնեաց 'ի Հայս մինչ յին-ներորդ դար. այլ 'ի մէջն անդ իններորդ դարու յաւուրս Բուղայի՝ Գրիգոր Մամիկոնեան զերծեալ 'ի բանտէն, և ե-կեալ 'ի գաւառն Բագրեւանդ՝ կամելով ամրանալ 'ի գա-ւառն Գաբեղենից մեռաւ. զորոյ զգլուխ մեռելոյն հա-տեալ Աշոտ որդի Սմբատայ առաքէ առ Մահմէտ ոստի

կան, իբր զկենդանւոյ հատեալ ցուցանելով. «Եւ յայնմ հետէ, ասէ Վարդան, բարձաւ 'ի Հայոց աշխարհէս ազգն Մամիկոնէից»։ Այլ զայս պարտ է իմանալ վասն իշխանութեան մամիկոնէից. զի չեղև ինչ կոտորած այսր ցեղի որպէս ընթեռնումք վասն այլոց բազմաց. իսկ միոյ ուրուք Գրիգորի մեռանելովն ոչ բառնի ցեղն։ Ո՛ւր թողցուք զի և ինքն իսկ Վարդան նաև զկնի Բուղայի մնացեալ ցուցանէ զՄամիկոնեանս յայս բան իւր. «Զայսու ժամանակաւ եմուտ ուրբ խաչն Նուննեայ 'ի յԱնի ... ապա ազգ արարեալ մամիկոնեանն Գրիգորոյ որդւոյ Համայեկի՝ տարաւ 'ի Կապոյտն կոչեցեալ բերդ, և անտի փոխեցաւ 'ի Վանանդ, և կոչեցաւ Վանանդայ խաչ։ Եւ 'ի բառնալ տանն Մամիկոնէից յանօրէնն Սուքմանայ՝ բերաւ 'ի յԱնի 'ի հայրապետութեան տեառն Բարսղի, և կարգեցաւ նմա տօն կիրակէն՝ որ զկնի ութօրէիցն Խաչվերաց տօնի»։ Եթէ բարձումն տանն Մամիկոնէից եղև յաւուրս Բարսղի կաթողիկոսի, ապա մինչև յերկոտասաներորդ դարու կայր ցեղն այն բազում ժամանակօք զկնի Բուղայի, որ էր 'ի մէջն անդ իններորդ դարուն։

Որդ որպէս տեղւոյն բանիւ Վարդանայ առաջին իւր բանն 'ի գերև ելանէ, նոյնպէս և այս բան նորա. մանաւանդ զի Կիրակոս յիշէ զՄամիկոնեանս նաև յերեքտասաներորդ դարուն յասելն. «Զայս պատմեաց մեզ Գրիգոր իշխանն որդի մարզպանին, եղբայր Ասլան Պէկին Սարգսի և ամիրային յազգէ Մամիկոնէից»։ Զորոց և զքոյրն յիշէ, 'ի պատմելն թէ. Հեթում թագաւոր 'ի գնալն առ Մանգու խանն թաթարաց յերեքտասաներորդ դարուն, 'ի Վարդենիս գիւղն՝ «Զանեղի առ 'ի տան իշխանին զոր Քուրդ անուանէին Հայ ազգաւ, կրօնիւք քրիստոնեայ, որդիք իւր Վաչէ և Հասան, և կին նորա Խորիշահ յազգէ Մամիկոնէից, դուստր մարզպանայ, քոյր Ասլան Պէկին և Գրիգորոյ»։ Մեսրոպ 'ի թուին ԺԸ. յանուանէ յիշելով զիշխանս զանազան ցեղից, նախ յիշէ զՄամիկոնեանս, ապա յետ բազում ցեղից յիշէ Մամիկոնեան երկրորդ. այլ այսպէս անուանել կարծեմ նախ զտանուտէր եղնահայեա տանն Մամիկոնէից, ապա երկրորդ զմիւս նախարարս 'ի նոյն Մամիկոնեան ցեղէ։

Երկիր Մամիկոնէից։

Որպէս տեսաք 'ի վերոյ 'ի գալն Մամգունեայ 'ի Հայս՝ տեղւոջէ 'ի տեղի փոփոխէր զբնակութիւն իւր սակս չունե-

լոյ երկիր ինչ սեփական, մինչև 'ի ժամանակս յորում Մամգունն եբարձ ըստ հրամանի Տրդատայ արքայի զապըստամբեալն զՍլուկ նահապետ Սլկունեաց. զորմէ ասէ 'ի ցեղն Սլկունեաց. զի յայնժամ "Ուրախացեալ Տրդատայ, ասէ Խորենացի Բ. 84. գրէ հրովարտակ իշխել նմա ամենայնի,,: Այսինքն իշխել ամենայն երկրին՝ որ էր Սլկունեաց տոհմին, որպէս խոստացեալ էր Տրդատ յառաջագոյն ասելով. "Որ ոք ածէ առ իս զնահապետն Սլկունեաց (զՍլուկ) տաց նմա յաւիտենական իշխանութեամբ զգեօղս և զդաստակերտս, և զամենայն իշխանութիւն ազգին Սլկունեաց,,: Եւ զի Տարօն էր երկիր Սլկունեաց՝ Մամգուն և տոհմն իւր Մամիկոնեան՝ տէր եղև համօրէն գաւառին Տարօնոյ, մինչև երբեմն փոխանակ Տարօնոյ զանուն տոհմին տալ. տես 'ի մեծ Հայս զՏարօն: Առ Զենոբայ 27. գտանեմք Դեմետրեայ որդւոյ Արծանայ քրմապետին ասացեալ առ իշխանս Հայոց. "Մեք պատերազմաւ ձեզ չկարեմք ընդդիմանալ զի այս տուն է Թագաւորին Հայոց,,: Զայս վասն այնորիկ ասէ, զի Աշտիշատ Տարօնոյ յարքունիս գրաւեալ էր երբեմն՝ որպէս նշանակեցաք 'ի վերոյ: Իսկ առ այլս յայլոց ցեղից իշխան Տարօնոյ գտանեմք ուրեք ուրեք յիշատակեալ. զոր օրինակ առ Յոհաննու կաթողիկոսի 'ի Բագրատունեաց յասելն. "Իսկ յետ ամաց ինչ ապա վախճանէր և մեծ իշխանն Տարօնոյ Դաւիթ Բագրատունի. փոխանակ նորա կացուցեալ 'ի տեղի եղբօրորդի նորին Գուրգէն,,: Որպէս և առ Թովմայի Արծրունւոյ Բ. 5. զԲագարատ Բագրատունի. իսկ 'ի Գ. 1. 2. յԱրծրունեաց յիշէ զոմն Աշոտ կուրապաղատ Տարօնոյ, որոյ յաջորդ Դերանիկ իշխան Վասպուրականի կամ Արծրունեաց՝ կացոյց զԴաւիթ զեղբայր նորա իշխան 'ի վերայ Տարօնոյ: Յորմէ զհետ գայ ասել թէ թէպէտ զկնի նաև յայլոց ցեղից եղեն իշխանք Տարօնոյ, բայց բնակիչքն էին Մամիկոնեանք, և երկիրն էր կալուած նոցա[1] մինչև ունել վասն այսր և սեփական գիրս. "Աւանք են (ասէ Զենոբ) նոքա մեծամեծք, որպէս կայ 'ի գրի իշխանացն Մամիկոնէից,,:

Բաց 'ի Տարօնոյ՝ Բուզանդ բազում ուրեք զՏայս սեփական լինել ցուցանէ Մամիկոնէից. զի ասէ Գ. 18. "Եւ անդ-

1 Իսկ թէ Բուզանդ Գ. 14. ընդէր գրեցաք վասն երկրին նախարարութեն զՏարօն սեփական ցուցանէ լեալ Մարդպետին:
Մարդպետին, տես 'ի վերոյ զոր ինչ

դիպեալ Արտաւազդ և Վասակ՝ որք 'ի Մամիկոնեան տոհ-
մէն, որք էին զօրավարք ամենայն զօրացն Հայոց ... չոգան
յաշխարհն Յունաց յամուրս Տայոց, և անդ նստան ամենայն ազգաւ
ընտանեօք իւրեանց »: Եւ 'ի Ղ. 2. «Ցայնմ ժամանակի
խնդրեր ելանել արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազ-
գին քաջացն Մամիկոնենից. մանաւանդ զի իւր դայեակք
և սնուցիչք էին. ապա երթեալ գտանէր զնոսա յամուրս
աշխարհին Տայոց յերկրին աշխարհին. և դարձուցանէր զնոսա
յիւրատնութիւն. զի պատուականք և քաջք էին յեր-
տանութենէն և յամենայն գործոց Հայոց »: Եւ 'ի 18.
« Ապա երթեալ գտանէին զնա (զՎարդան Մամիկոնեան)
յերբեմն գաւառին 'ի Տայս, յերբ ամուր բերդին՝ որում անուն
Երախանի կոչի »: Եթէ ոչ գտանէաք զայսչափ կրկնութիւն
մարթ էր կարծել վրիպակ դրչաց, զուցէ 'ի մերձաւորու-
թենէ անուանցս Տարօն և Տայք շփոթեալ, որովհետև
ոչ յիշատակի այս յայլ պատմագիրս, բայց միայն առ Մես-
րոպայ Է. որ իբր օրինակելով զբանս նորին Բուզանդայ
գրէ, թէ Արշակ թագաւոր գտանէր զՄամիկոնեանս
« յամուրս աշխարհին իւրեանց Տայոց »: Սովին օրինակաւ
խօսից և Վարդան զԲագրեւանդ սեփականէ Մամիկոնէից,
յաւելու վասն նախայիշատակեալ Գրիգորի Մամիկոնէի.
«Ելանէ 'ի բանտէն, և գայ մտանէ 'ի գաւառն իւր Բագ-
րեւանդ »:

Ոստան և Շիրիմ Մամիկոնեանց.

Ոստական բերդ թուի լինել ստանն կամ նախադահքա-
ղաք Մամիկոնէից. ըստ որում 'ի նմա ամրացեալ յիշատա-
կին երբեմն երբեմն գլխաւորք Մամիկոնեան տոհմին: Որպէս
և շիրիմ նոցա երևի լինել վանքն Գլակայ. քանզի Մես-
րոպ զմարմին Մուշեղայ և զՄանուէլայ Մամիկոնեան զօ-
րավարացն դնէ թաղեալ 'ի վանս Գլակայ. զոր օրինակ
յաւելու վասն Մանուէլայ. « Եւ տարեալ զնա 'ի Տարօն
իւր գաւառն, և թաղեցին զնա 'ի վանսն Գլակայ »:

Պատիւ և իշխանութիւն Մամիկոնեանց:

Սպարապետութիւն սեփական եղև այսր տոհմին, որ-
պէս յայտնի ցուցանեն պատմութիւնք, նաև այս բան Բու-
զանդայ Գ. 11. « Եւ հրամայեն եւտուն մեծ եպիսկոպոսա-
պետն Վրթանէս հանդերձ թագաւորաւն՝ Արշաւրայ
և Անդովկայ սնուցանել զպատանեակն զԱրտաւազդ (զոր

դի Մամիկոնեան Վաչէի,) զի կացցէ 'ի տեղի նախնեացն իւրոց և հօր իւրոյ, և գործ քաջութե գործեսցէ ամենատեառն Քրիստոսի. և առաջի իւրոյ մարմնաւոր ընտանեբանց արշակունեաց քաջ արանց, և տան և կենաց. և խընամակալ լիցի այրեաց և որբոց, և փոխոցուն գործ քաջութե Սպարապետութե անուանի զօրավարութեն յաջորդեսցէն զամենայն աւուրս կենաց իւրոց»: Եւ այս բան է. 3ր. «Յորժամ եհաս եկաց Մանուէլն (Մամիկոնեան) 'ի փառս տէրութե իւրոյ . . . յինքն յափշտակեաց զզօրավարութիւն զՍպարապետութիւն. զի այն ինչ որ իւրոց նախնեացն 'ի բնէն կալեալ էր 'ի սկզբանէ . . . զայն Մանուէլ յինքն հանեալ ունէր զիշխանութիւն»: Այնչափ եղև սեփական՝ մինչև զազգն Մամիկոնեան՝ կոչել ազգ Սպարապետութե 'ի Դ. 4. «Արձակեաց Թագաւորն (Խոսրով) 'ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ փսահայեա մամիկոնեան տոհմին՝ յաջէ Սպարապետութե Հայոց, զմեծ զօրավար զօրաց իւրոց»: Որպէս և Թովմա արծրունի Դ. 5. զերկիրն Տարօն յայն անուն կոչէ. «Եւ տիկինն Սպարապետական Տարօնոյ եկեալ, և նշանացի զդի նորա գտեալ, տարաւ 'ի Պորպ յիւր աւանն»:

Նաև արդարև գրեթէ միշտ 'ի Մամիկոնէից լեալ տեսանեմք զսպարապետս Հայոց. որք քանզի յաւուրս Տիրանայ արքայի թողեալ զամենայն, խոյս տուեալ մնացեալ կային յամուրսն Տայոց, Արշակ վերստին կոչեալ, 'ի նոսա յանձնեաց զսպարապետութիւն, որպէս գրէ և Մեսրոպ 'ի Թիւն Ե. յետ Բուզանդայ. «Դարձուցանէր (Արշակ Թագաւոր) զնոսա առ ինքն ընդ իւր, վասն զի պակասեալ էին յընտանութէ և 'ի զօրավարութէ և յամենայն գործոց Հայոց 'ի ժամանակին Տիրանայ Թագաւորին: Եւ էին յազգէն Մամիկոնէից եղբարք չորք, և անուանք նոցա Վարդան, Վասակ, Վահան, Վարուժան՝ որդիք Արտաւազդայ որդւոյ Վաչէի Մամիկոնոյ. և կացուցանէր զնոսա զօրավարս Հայոց մեծաց, զոր առաջին Թագաւորքն վաղճանեալ էին յիւրեանց յաւուրսն. և տան զգունդն Հայոց 'ի ձեռն Վասակայ կալ ընդդէմ պատերազմաց Սպարապետութէ. և զերիս եղբարս նորա ընդ նմա հազարապետս կացուցանէր»: Վկայէ այսմ և Ղազար 305. յասելն վասն Վահանայ Մամիկոնէի, թէ առաջի Վաղարշու Թագաւորին Պարսից «բազմեցուցանէին զնա 'ի գահու տէրութե Մամիկոնէից. տուեալ ցնա ըստ օրինի նախնեաց իւրոց և զՍպարապետութէ Հայոց աշխարհին»:

Այլ Թէպէտ երբեմն լինէր նաեւ 'ի Բագրատունեան ցեղէ կարգել սպարապետ, որպէս յաւուրս Բ. Արտաշիսի եղեւ Սմբատ, եւ յաւուրս Գ. Խոսրովու Սահակ ասպետ, բայց ընդ մեռանել նորա սուրբն Սահակ խնդրեաց յԱրտաշրէ Պարսից Թագաւորէ զփեսայն իւր զՀամազասպ Մամիկոնեան կացուցանել սպարապետ. իսկ Արտաշիր 'ի շնորհս մեծին Սահակայ ոչ միայն սպարապետ կացոյց, այլ եւ հրամայեաց "զազգն Համազասպայ՝ որ է տոհմ Մամիկոնեան, 'ի վեր մատուցանել, զի կարգեսցին ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց. եւ 'ի դիւանին իւրում գրել", որպէս ասէ Խորենացին Գ. 51։ Ի հաստատուն այսմ՝ Թուղթ հրամանի գրեաց առ Վռամշապուհ Թագաւոր մեր ասելով. "Զորդիացեալդ դորա (Սահակայ) զՀամազասպ կացուսցես 'ի վերայ զօրացդ Սպարապետ մեր հրամանաւ. եւ ազգի դորա տացես զհինգերորդ պատուոյ նախարարացդ, եւ զդիւղս եւ զդաստակերտս՝ զոր առեալ է նախնեացն քոց՝ հօրն դորա, կալցին դոքա"։

Նոյն 'ի սպարապետութէ ունէին մեծութիւն իմն արքայակերպ. զի ասէ Յոհաննէս կաթողիկոս վասն Գրիգորի Մամիկոնեան իշխանի որ 'ի մէջ անդ եօթներորդ դարուն, թէ 'ի քաղաքագեօղն Արուճ, որ է յԱրագածոտն գաւառի, շինեաց եկեղեցի. "Եւ 'ի հարաւոյ կողմանէն դնէ զարձանն իւր յեզր քարաժայռ ձորակին, յորում բղխէ աղբիւր պղպջակեալ"։

Մեսրոպ Ե. 'ի գրեան վասն Արշակայ Թագաւորի՝ այնպէս իմն ցուցանէ, թէ Մամիկոնեանք լինէին նաեւ սնուցիչք եւ դայեակք Թագաւորին. զի ասէ. "Այսպ յարուցեալ լինէին իսկ Թագաւորն զօրօքն իւրովք 'ի խնդիր լինէր քաջ ազգին Մամիկոնէից, որ էին Մնուցիչք եւ Մանկունք Թագաւորին"։ Այլ զայս պարտ է իմանալ միայն վասն նորին Արշակայ Թագաւորի. զոր օրինակ առաւել բացայայտ նշանակէ Բուզանդ Դ. 2. "Եւ կացոյց արքայն (Արշակ) զՎարդան զերէց եղբայրն 'ի նահապետութեան ազգին իւրեանց (Մամիկոնէից), եւ զՎասակ զմիջին եղբայրն զիւր Դայեակն 'ի սպարապետութիւն զօրավարութեան յիւրս պատերազմացն. այնպէս եւ զկրսերն 'ի պետս զօրացն կացուցանէր"։ զի այլ եւ այլ Թագաւորաց յայլ եւ այլ ցեղից լինէին դայեակք. զոր օրինակ Սանատրկոյ Թագաւորին 'ի Բագրատունեաց եւ յԱրծրունեաց էին. "Զօրս ժողովէ, ասէ Խորենացին Բ. 35. 'ի ձեռն քաջացն Բագրատունեաց եւ Արծրունեաց Դայեկաց իւրոց"։

### Մեծութի և վաստակք Մամիկոնեանց ։

Այս տոհմ արդեամբք եցոյց զմեծութի թագաւորազուն տոհմին իւրոյ, ոչ միայն 'ի զինուորական քաջագործութիս, այլ նաև 'ի բարոյական բարետոհմութիս ։ Բուզանդ Դ. 2. այսպէս գովէ զՄամիկոնեանս. «Որպէս տոհմատէրութե սպարապետութեն զօրավարութեն մարտի կռուելոյ... աներկիւղք քաջասիրտք նահատակք քաջամուտք, բարենշանս բարեհամբաւք բարեգործք յաջողակք 'ի գործ պատերազմաց 'ի բուն 'ի նախնեացն կարգաց 'ի Մամիկոնեան ազգին, 'ի վերայ իշխանութեն բովանդակ՝ 'ի վերայ ամ զօրաց զօրավարութեն բազմութեն Հայոց մեծաց, հանապազ յամենայն ժամ յաղթող ազգին (Մամիկոնէից) պարգեւեալ յերկնից բարիանուն իրաքաջ 'ի մեծի նահատակութե պատերազմի »։

Յորժամ արք չարանախանձք և քսուք երկիցս ամբաստանեցին զՄուշեղայ քաջ զօրավարէ Մամիկոնեան, մի զի զկանայս Շապհոյ Պարսից արքայի ձերբակալ արարեալ 'ի մարտի՝ պատուով առ Շապուհ էր արձակեալ. երկրորդ՝ զՈւռնայր արքայ Աղուանից յորժամ կարօղն էր սպանանել՝ ոչ սպան, նա այնպիսի փաստիւք զանձն արդարացոյց, մինչև Պապայ արքայի յարտասուս հարեալ, ասէ Բուզանդ Ե. 4. « Արկանէր զինովաւ դիրկս, և լայր 'ի վերայ պարանոցին Մուշեղի, և ասէր մահապարտ են այնքանիկ որ իշխեն խօսել չարութի զՄուշեղէ, զառնէ քաջէ և զպատուականէ. զի այր որ ազգաւ պատուական է իբրև զմեզ, և նախնիքն դորա իբրև զնախնիսն մեր, և թողեալ նախնեացն դորա զթագաւորութիւն Ճենաց աշխարհին, եկեալք առ մեզ նախնիքն՝ 'ի նախնեացն մերոց 'ի վերայ կեցեալք և մեռեալք են, և հայր սորա 'ի վերայ հօրն իմոյ մեռաւ, և սա միամտութ մինչև 'ի մահ վաստակեալ է... 'ի ձեռն դորա շնորհեցաւ բազում խաղաղութի, զիարդ ասեն ցիս զայս բանս, եթէ Մուշեղ քեզ մահու պարտ է »։ Զնոյն մեծութի տոհմին և Մանուէլ Մամիկոնեան յանդիմանս ասէ Վարազդատայ թագաւորի առ նորին Բուզանդայ Ե. 37. «Ոչ մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք, այլ ընկերք ձեր և 'ի վերայ քան զձեզ. զի մեր նախնիքն լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց, և վասն եղբարց իւրեանց գրգռութեն, զի արիւն մեծ անկեալ է 'ի վերայ, վասն այնր եմք գնացեալք ('ի մեր երկրէն), և վասն բա-

րուոյ հանգստի գտանելոյ եկեալ դադարեալ եմք ('ի Հայս). առաջին Թագաւորքն արշակունիք, որք գիտէին զմեզ ով էաք, կամ ուստի էաք. այլ զի դու քանզի չես արշակունի ,, և այլն ։

Պարծանք մեծ է մամիկոնեան զարմին գովեստն՝ զոր միաբան ամեն նախարարք Հայոց ժողովեալք 'ի դուռն Պարսից՝ առ Ղազարայ 85. "Վասն զի տեսեալ էր ամենեցուն, և լուեալ 'ի գրոց ճանաչէին, եթէ ամենայն իրք այսպիսի գործոյ 'ի ձեռն յոլով Մամիկոնէից ազգաւ, և նոցա միաբանութեամբ եղեալ էին 'ի գլուխ,,: Եւ ինքն Ղազար 97. զայս գովեստ տայ նոցա. "Քանզի տեղեկացեալ ճանաչէին ամենեքեան՝ թէ առանց առաջնորդութեան ազգին այնորիկ՝ և ոչ մի ինչ իրք և գործք աշխարհիս Հայոց երթեալ էին 'ի գլուխ,,: Եւ 'ի 193. 'ի խօսելն զուրացելոց՝ ասէ. "Եւ այնպիսի անպիտան իշխանք ժամանակին (ուրացեալք) իբրև տեսանէին օր ըստ օրէ զաճումն յառաջադիմութեան յորդիս ազգի նահատակելոց Մամիկոնէիցն, զոր ոչ 'ի տուչուէ մարդոյ վստահեալ ունէին յանձինս, այլ օգնութեամբ վերին խնամակալութե 'ի բարեխօսութէ սուրբ արեանն նախնեացն իւրեանց.. թէպէտ և արհամարհեալք էին առ նախանձու, սակայն լաւագոյնք էին և երևէին յամենայնի, և ականաւորք 'ի խորհրդի, մտաւորք և իմաստնագիւտք, 'ի նետաձգութեն գեղեցկաձիգք և դիպեցուցողք. յորս ('ի յորսորդութե) թեթևաշարժք և նախասպանք, յերկոցունց ձեռաց աջողակք, և յամենայն կողմանս ուղղակիք և չնորհալիցք,,:

Մեծ են արդարև գովութիւնք տուեալք այսմ ականաւոր տոհմի, մեծ են և արդիւնք նորա. բայց անօրէնն Բատ սահառունի, որ դայեակ և սնուցիչ էր Թագաւորին Վարազդատայ, առ 'ի յինքն կորզել զսպարապետութե պատիւ 'ի ձեռաց մամիկոնեանն Մուշեղայ՝ սկսաւ զամենայն զտոհմէն նոցա չարախօսել յանձին Վարազդատայ՝ այսպէս ասելով առ Բուզանդայ Ե. 35. "Իսկզբան 'ի նախնեացն հետէ զձեր արշակունեաց տոհմին (զօգուտ) Մամիկոնէից է կորուսեալ. զի հակառակորդք ձեր դոքա լեալ են 'ի ձեռն անտի. և համակ զերկիրս Հայոց դոցա է կերեալ, մանաւանդ Մուշեղի. մանաւանդ զի այր չար է և նենգաւոր. զի սիրելի է թշնամեաց ձերոց, և ատելի սիրելեաց ձերոց. և համակ ընդ ձեզ նենգաւ է գնացեալ, երկմտութք և դժխեմութք,,:

Այսպիսի բանիւք անչափ յաճախեաց զիւր չարա-

խօսութի՛ն, մինչև զայլս քաջ և զգաւրեացապարտ զՄուշեղ եւ սպանանել 'ի զուր. յոյր սակս 'ի խոր խոցեալ Մանուէլ Մամիկոնեան՝ այսպէս բողոք բառնայ 'ի դիմաց Մամիկոնեանց առ Վարազդատ ըստ գրելոյ Բուզանդայ Ե. 37. «Փոխանակ ամենայն (Մամիկոնեան) ազգին մերոյ վաստակոցն, զոր 'ի նախնեացն 'ի Հնոց ժամանակաց հետէ միամտութիւն առ ձեզ Արշակունիս վաստակեալ եմք, և եդեալ զանձինս մեր 'ի վերայ ձեր, կեցեալ և մեռեալ եմք 'ի վերայ ձեր, ամենայն նախնիքն մեր առաջինքն անկան 'ի պատերազմունս 'ի վերայ ձեր, Վասակ հայր Մուշեղի կորեաւ 'ի վերայ Արշակայ արքային, և մեք հանապազ վաստակեալ և աշխատեալ եմք 'ի վերայ թագաւորութեան ազգին ձերոյ, և փոխանակ կեանս առնելոյ ընդ վաստակոցն, արդ որք (ամենք) 'ի թշնամեացն մեռան, (իսկ) որք մնացին՝ զայն դուք Արշակունիքդ կոտորեցիք։ Արդ Մուշեղ այր քաջ եղբայր իմ, որ 'ի վերայ ձեր մաշեաց զանձն իւր 'ի մանկութէ իւրմէ, վանեաց կոտորեաց զթշնամիս ձեր, և (զոր) ոչ կարացին թշնամիքն սպանանել, դու կալար 'ի բազմականի խնդրեցեր զնա»։

Նոյն օրինակ գանգատ և մեծն Վարդան առնէ առ նախարարս Հայոց առ Ղազարայ 100. «Թէ որպէս 'ի վերայ ընկերի բարւոյ առաւել քան զանձին միշտ հոգալով զանձն եդեալ է այսմ (Մամիկոնեան) տոհմի, զայն և ամենայն դուք Հայք գիտէք ստուգութիւ 'ի պատմութէ գրոց, և 'ի լսելոյ ձեր յաւագաց. բայց 'ի նեղութեան խաղէութէ ձերմէ զոր արարեալ է ձեր ընդ նախնիսն մեր հանապազ, զայն ամենայն յիշելով զնացեալ եմք լինել անձնապաշտ. որպէս ցանկ ձեր մղեալ է զմեզ 'ի նեղ, և զձեր անձինս 'ի բաց ունելով, մեր միայն ազգս (Մամիկոնեան) պատահեալ է վշտաց մեծաց և մահուց»։ Նոյնպէս գանգատէ և Վահան Մամիկոնեան առ նմին 207. «Բայց միաբանել խորհրդոյդ . . . ոչ կարեմ ասել և չիշխեմ. վասն զի . . . և զձեր (խաբէութիւն) ծանուցեալ է փորձիւ իմ, թէ որպէս հարանց մերոց ուխտեցին երդմամբ և ստեցին . . . բայց քան զամենայն և առաւել յանձանց երկերուք. վասն (զի) մարդիկ սուտք էք և անհաւատք»։

Երևելի անձինք 'ի Մամիկոնեանց ։

Բազում երևելի անձինս դաստնեմք յայսմ տոհմի 'ի զօրավարութեան և 'ի քաջութեան. զոր օրինակ Վաչէ յաւուրս

փոքուն Խոսրովու Թագաւորի առ Բուզանդայ Գ. Կ. իսկ յետ մեռանելոյ Վաչէի 'ի պատերազմի, ասէ Գ. 11. „Փոքրիկ մանկիկ մի մնացուն որդի 'ի Հայրենի բարձ գահուն մատուցանէին, որում անուն էր յանուն հօր իւրոյ Արտաւազդ. առաջի Թագաւորին զհօրն պատիւն 'ի գլուխն դնէին, և զսպարապետութեն նորուն տեղի. զի կարի որդի վաստակաւորի էր, և 'ի վաստակաւոր ազգէ. զի այլ յազգէն ոչ գտաւ հուժկու, զի 'ի մեծ պատերազմին մեռան„: Եւ զի այս Արտաւազդ որդի Վաչէի մանուկ գոլով ոչ կարէր գործ սպարապետութե առնել, վասն այնորիկ, ասէ պատմիչն, „զզօրավարութե զգործ յանձն առնէին Արշաւրայ կամսարականի իշխանին Շիրակայ և Արշարունեաց գաւառին, և Անդովկայ իշխանին Սիւնեաց. զի նոքա փեսայք էին տանն մամիկոնեան տոհմին„:

Նշանակէս երեւելի եղեն և քաջութեամբ և կերպարանօք երկոքեին եղբարքն մամիկոնեանք որդիք Արտաշինայ Մանուէլ և Կոմս, զորոց ասէ Բուզանդ Ե. 37. „Էին երկաքեան մեծք անհեղեղք, երկոքեան անձնեայք որպէս սկայազունք„: Եւ առաւել վասն Մանուէլի գրէ. „Իբրև զաշս 'ի վեր ամբառնայր արքայն Վարազդատ, և նայէր ընդ գաւառն իւր և տեսանէր զսպարապետն Մանուէլ, 'ի մեծութէն հասակին և 'ի շքեղուն անձինն, և յամբակուռ յերկաթապատ սուսերն մինչև ցգլուխն առհասարակ յանվթար զինուէն, 'ի հաստատամբուտ անձնէն, և 'ի հաստատուն երիվարէն, և յառապաղէն վառելոյն յանշարժ սպառազինէն համարեցաւ կշռեաց միտս 'ի միտս իւր իբրև զլեառն մի բարձր զանմատոյց„: Մեծ քաջագործութի պատմէ Ե. 37. արարեալ սորին Մանուէլի 'ի զօրս Պարսից ընդդէմ Քուշանաց:

Զարմանալի գովութիւնք պատմին 'ի գիրս պատմագրաց և վասն մեծին Վարդանայ մամիկոնէի հռչակեալ 'ի գունդն Պարսից. զոր օրինակ առ Ղազարայ 135. յորժամ յետ նահատակելոյն Վարդանայ՝ Միհրներսեհ հազարապետ և այլ աւագանին դրան Պարսից յանդիմանէին զքահանայս ասելով. „Կորուսէք ձերով կախարդութեամբ զայնպիսի քաջ այր զՎարդան. զի օգտակարուն էր Արեաց տեառն. և զմեծամեծ գործոց նորա յիշումն առ Արեաց աշխարհին՝ զոր բազում զօրագլուխք և այլ Արիք յիշէին՝ ընդ որս նորա և կռիւ եղեալ էր, այլ և զոր իւր իսկ աստուածանման տեառն իւրով աչօք տեսեալ էր 'ի Մարկէռաստ զնորա քաջարութինս. սակաւ մարդիկ են յԱրեաց

աշխարհին որ կարեն ասել ըստ արժանի գովութեան յայնմ
և 'ի նորա արարած„ . այսինքն և 'ի նորա արարս կամ 'ի
գործս ։ Այսպէս և Յազկերտ արքայ յասելն առ Վասակ
Սիւնեաց տէր . "Զայսպիսի ծառայ մի զմեր որպէս զՎար-
դան՝ և կայսր՝ և կամ Հոնաց արքայ՝ (եթէ) բռնութեամբ
յինէն հանել կամէին, ամենայն Արեաց ուժովս կռուէի,
և չտայի հանգչել, մինչև այսրէն յիս հանէի„ ։ Մի յե-
րեւելի արանց մամիկոնէից գտաւ և Վահան, առաւելեալ
ոչ միայն 'ի գործս քաջութեան, այլ նաև յամենայն արդա-
ռիս բարեպաշտութեան, 'ի կառավարութեան, 'ի բարերարութեան,
նաև 'ի գործս կենցաղօգուտս, զորս կարես գտանել 'ի մա-
տենիս սփռեալ 'ի պէսպէս գլուխս ըստ պէսպիսութեան
գործոց նորա ։

Նոյն յիրաւի՝ ըստ անխարկելոյ պատմագրաց՝ մանաւանդ
Ղազարու, 'ի Մամիկոնեանս սերնդեամբ գտանէին տպա-
ւորեալ սկզբունք գովելի բարոյականութեան, և բնական իմն
յօժարութիւն և յարմարութիւն 'ի կրթել զմանկունս 'ի հրա-
հանգս բարի քաղաքավարութեան, ոչ միայն զիւրեանցն, այլ
և զայլոցն . և զայս ոչ միայն յարս էր տեսանել՝ այլ և 'ի
կանայս նոցա . "Նորքա զարդարէին (տե՛ս 'ի 193. վասն մա-
կոնեանց) յամենայն տունս օտարք և ընտանիք . Նմանե-
ցուցեալ լինքեանց և յառաջանալ փութային . և զորդիս
երանելոյ կամնարականին Արշաւրայ տեառն Արշարու-
նեաց, որք և ազգախառն իւրեանց էին, ծնունդք դստեր
մարտիրոսին Վարդանայ, խրատել և հրահանգել ըստ
իւրեանց իմաստութեան և արուեստի ջանային„ ։

Այս բնական յօժարութիւն կրթութեան էր որ ետ Մանուէլի
Մամիկոնեայ 'ի մեռանել իւրում խրատել զորդի իւր յայս-
պիսի գործս, որք արժանի են քաջատոհմիկ ազին . զորմէ
ասէ Բուզանդ. Ե . 44. "Յետ այսորիկ հիւանդացաւ սպա-
րապետն զօրավարն Հայոց Մանուէլ զախտ հիւանդութեան
մահու . և կոչեաց զորդի իւր զԱրտաշիր, և ետ նմա զտէ-
րութիւն իւր և զսպարապետութիւն զօրավարութեան իւրոյ . և
պատուիրէր նմա հնազանդ հպատակ կալ արքային Արշա-
կայ, և լինել միամիտ . ջանալ և վաստակել, և տալ պա-
տերազմ փոխանակ աշխարհին Հայոց զանձն քո, որ-
պէս քաջ նախնիքն 'ի վերայ աշխարհին մատուցին մեռա-
նել . զի, ասէ, առ Աստուած այն արդարութիւն մեծ է
և ընդունելի, և ոչ Աստուած թողու 'ի ձեռաց՝ յորժամ
այնպէս լինիք ։ Անուն քաջութեան յերկրի թողուք, և զար-
դարութիւն յերկինս ընծայեցուցանէք . և ամենեւին 'ի

կարգեցաւ լինել տակառապետ արքայի․ այսինքն պատ-րաստող զգինի, և վերակացու մթերանոցաց գինւոյ, որ ըստ Ճիշտ առմանս տարբերի 'ի մատռուակէ՝ որ 'ի սեղանի մատակարարէ գինի ։ Բայց մատենագիրն ը․ 19․ պատմէ և 'ի գործ զինուորութե 'ի կիր արկեալ 'ի սոցանէ, յա-ւելն վասն Բարդափրանայ սպարապետին միջնոյն Տիգրա-նայ․ “Զգնել ոմն Տակառապետ արքային Հայոց որ էր յազգէն Գնունեաց, առաքէ յերուսաղէմ հանդերձ հեծելազօրաւ„։

Իսկ Բուզանդ Դ․ 2․ զայլ մեծագոյն պաշտօն տայ այսմ տոհմի ասելով․ Կացոյց Արշակ արքայ “ սկիզբն գործա-կալութեն հազարապետութեն աշխարհատեսն խնամա-կալութեն ... աշխարհատարած դեհկանուն, շինականա-չէն ազգն Գնունեաց, Հազարապետն ամենայն երկրին„։ Այլ զկարգ և իցէ՝ ընդ մեծ նախարարս յիշատակի և այս ցեղ․ Խորենացին Դ․ 43․ յիշէ ընդ նախարարս զոմն “Ա-տատ յազգէն Գնունեաց„։ Եւ Ղազար 124․ ընդ նահա-տակեալ նախարարս յիշէ “Յազգէն Գնունեաց երանելին Վահան„։ Եւ 'ի Թղթ․ 75․ յիշէ ընդ ժողովեալ նախա-րարսն “Տէրն Գնունեաց Ատոմ„։ Թովմա արծրունի Դ․ 4․ յիշէ և զոմն Գաբրիկ անուամբ․ “Եւ Գնունիք Վահան և Շապուհ և Ապուսեթ և Գաբրիկ„, որ էր 'ի զօրս Գուր-գենայ եղբօր Աշոտոյ վասպուրականի յաւուրս Բուղայ ոստիկանին ։ Ի մէջ նահատակեալ վկայից այսր տոհմի հռչակաւոր են առ պատմագիրս յաւուրս Յուսփայ ոս-տիկանին, “ փառաւոր և մեծ իշխանքն Դաւիթ և Գուր-գէն 'ի տանէն Գնունեաց„, որպէս ասէ Վարդան․ զորս և Ասողիկ Դ․ 5․ կոչէ “մեծք և պատուականք„։

Իսկ վասն երկրին Գնունեաց թէպէտ յայտնի ինչ ոչ գտանեմք 'ի գիրս, այլ 'ի բանից Վարդանայ յայտ է լինել Աղիովիտ գաւառ Տուրուբերանոյ․ մանաւանդ զի շարու-նակող Թովմայի արծրունւոյ զԱրճէշ քաղաք Աղիովիտ գաւառի կոչէ “Քաղաք Գնունեաց գաւառի„։ Տես 'ի մեծ Հայս 125․ 126։ Նոյնպէս և զՇահապիվան լեառն ծաղ-կոտն գաւառին Այրարատու 'ի մօր կողմանէ ժառան-գութե հասեալ Գնելոյ գնունւոյ ասէ Խորենացին Դ․ 23․ “Գնելոյ բազում էրէս քան զայն առնել ընդ նոյն աւուրս յիւրում լերինն՝ որ Շահապիվանն անուանի, որ 'ի մայ-րենի հաւոյ իւրոյ Գնելոյ գնունւոյ հասեալ էր նմա„։ Բայց մթին իմն է յիշատակեալն 'ի Մեսրոպայ 'ի Թիւն Է․ “ Ապա մի ոմն 'ի մեծ նախարարացն 'ի գաւառէն Շի-

«Քակէր յարքայէ զմանս, և յայլոց ևս նախարարացն Վանանդացւոց և Հաւնունեաց զհամազգիս իւր դղեակաւորս . . . և այսպէս զոմն Հաւնունի զանուն Համամեայ . . . յաւղարկէին 'ի սպանումն արքային»: Եւ յասելն վասն Գագկայ արքային Վասպուրականի, թէ առ ատենիւն Սբաւք առաքէր «այսպէս զոմն Գէորգ Հաւնունի 'ի կրօնաւորական կարգէ»: Սոյնպէս և առ Թովմայի արծրունւոյ Գ. 6. յիշատակի «Վարհան Հաւնունի սեպուհն Դաւիթ», որ եկն յօգնութիւն Բագարատայ իշխանին Տարօնոյ 'ի պատերազմին ընդդէմ Մուսէի հագարացւոյ: Յաշխարհագրութեան Խորենացւոյն մի 'ի գաւառացն Այրարատու գրի Հաւնունիք. այլ անտ զայամանէ 'ի մեծ Հայս 380:

## ՍԼԿՈՒՆԻՔ

Սոքա ևս 'ի վերայ սոյնց կարգեալ գոլով, զկնի Հաւնունեաց յիշեսցուք. զորմէ գրէ Խորենացին Բ. 8. «Այլ մտաւացաք և զդժնեայ Սլաքն անուանեալ այր. զոր ոչ կաբեմ հաւաստեաւ ասել, 'ի Հայկայ՞ եթէ յառաջագունից քան զնա եղելոց յաշխարհիս՝ զոր հնին զրոյցքն պատմեն լինել. բայց էր այր քաջ: Զսա կարգէ սակաւ արամբք պահել զլեառնն, որսալ զքօշմն. որք անուանեցան Սլկունիք»: Սերունդ նախարարութեան թէպէտ հին, գուցէ 'առաւել քան զՀայկ, որպէս յուշ առնէ Խորենացին յայս բան, այլ յետ ժամանակաց պատմագրութեն իւրով արհամարհեցաւ, մինչև ընդաջինջ լինել համօրէն ազգի իւրոյ յաւուրս Տրդատայ Թագաւորին: Զի յորժամ Շապուհ Պարսից արքայ յարոյց զհիւսիսականս ընդդէմ Տրդատայ 'ի գնալն նորա 'ի Հռոմ, միաբանեցաւ ընդ Շապհոյ և Սլուկ նահապետ ազգին Սլկունեաց, և յայտնի ապստամբեալ 'ի Տրդատայ՝ սպան զՕտայ նախարար մանուցող Խոսրովիդխտոյ, և փախեալ ամենեցունց՝ ամրացեալ 'ի բերդին իւր Ողական յերկրին Տարօնոյ. զի համօրէն Տարօն էր իւր սեփական երկիր. Տրդատ խոստացաւ տալ զերկիրն Սլկունեաց զՏարօն այնմ՝ որ զՍլուկ ապրստամբ կալեալ ածցէ առ ինքն: Զոր և կարող եղև առնել Մամգուն նահապետ Մամիկոնեանց որ նորոգ եկեալ էր 'ի Ճենաց. և սպանեալ զՍլուկ՝ յինքն էառ զՏարօն. զորմէ Ճոխագոյն պատմէ Խորենացի Բ. 84. Մամգուն, ասէ, ՙնաև զազգն Սլկունեաց խորհեցաւ բառնալ, և կոտորեաց զամենեսեան. երկուք ոմանք փախստականք անկան յաշխարհն

ծոփաց... բայց (Տրդատ) մնացելոցն Ալկունեաց հրամայէ չխնայել»։ Յորոց էր Գինդ յազգէն Ալկունեաց, յիշատակեալ 'ի Խորենացւոյն Գ. 20. յաւուրս Մեծին Ներսէսի. և Այրուկ Սղկունի՝ յիշեալ առ Եղիշէի 174. որ եմուտ 'ի դունդն Վարդանայ. այլ 'ի գիրս չէք այնչափ ինչ յիշատակութիւն զԱլկունեաց։

ՄԱՆԴԱԿՈՒՆԻՔ

Խորենացին Բ. 8. յետ գրելոյ՝ թէ Վաղարշակ կարգեաց զԱլկունիս որսալ զքօշս, ապա ասէ. «Այսպէս և 'ի նոյն իրս (կարգէ) և զՄխանդակն անդատանայլի. և 'ի սմանէ (սերեալ են) Մանդակունիք»։ Որով յայտ առնէ, թէ և Մանդակունիք կարգեալ էին 'ի վերայ որսոյ։ Ի ցեղէ աստի էր Արտաւազդ Մանդակունի, որ զՏրդատ արքայ 'ի մանկութեան իւրում զերծոյց 'ի կոտորածէ Արտաշրի Պարսից արքայի հասուցեալ 'ի դուռն կայսեր. այսմ 'ի վերայ հասեալ Արտաշրի, ասէ Խորենացի Բ. 78. թէ որ զերծոյցն՝ էր «Արտաւազդ յազգէն Մանդակունեաց, հրամայեաց զամենայն ազգն ջնջել սատակմամբ... և սատակին որով ամենեքին. բայց կոյս մի գեղեցկադիտակ 'ի քերցն Արտաւազդայ գողացեալ Տաճատայ ուրումն՝ որ էր լեալ յազգէն Աշոցան 'ի զաւակէ Գուշարայ Հայկազնոյ, փախուցեալ 'ի կեսարացւոց քաղաքին ապրեցուցանէր, ամուսնացուցեալ ընդ ինքեան վասն չքնաղագեղ կերպարանին»։ Ահա 'ի յաղջկանէ աստի սերեալ են յետագայք այսր տոհմի՝ սակաւ ուրեք յիշատակեալք. որոց պարծանք եղև Յոհան Մանդակունի Հայրապետ։ Այլ Տրդատ 'ի հաստատել 'ի թագաւորութեան՝ 'ի շնորհակալութիւն պատուէ «զիւր դայեկորդին զՄանդակունի Արտաւազդ, վասն լինելոյ նորա նմա պատճառ փրկութե, և հայրենականացն հանելոց փառաց. յաղագս որոյ 'ի ձեռն նորա տայ զսպարապետութիւն զօրացն Հայոց»։ որ և մեռաւ 'ի մեծի պատերազմին որ ընդդէմ Հիւսիսականաց. այլ սպարապետութիւն ոչ մնաց 'ի ձեռս տոհմին, և տոհմն իսկ անյիշատակ մնաց։

ՎԱՐԱԺՆՈՒՆԻՔ

Մին է 'ի տոհմից սերելոց 'ի բնիկ Հայկազանց. «Իսկ զԴատ (ասէ Խորենացին Բ. 7. վասն Վաղարշակայ), 'ի

զաւակէ Գառնիկայ որ 'ի Գեղամայ՝ 'ի վերայ որսոց արքունականաց կարգէ. որոյ որդի եղեալ Վարժ՝ յանուն նորա անուանի ազգն. բայց այս զկնի յաւուրս Արտաշիսի ,,: Զորմէ և գրեալ էր ա. 12. "Ի սորա (այսինքն Գեղամայ) ծննդոց ասա ուրեմն առ Արտաշիսիւ Թոռամբ Վաղարշակայ ոմն Վարժ անուն պատանի լեալ, աջող յորս եղջերուաց և այծեմանց և վարազուց, դիպաձգութե նետից կորովի, զսա 'ի վերայ որսոց արքունեաց կարգէ. և շէնս պարգևէ նմա առ եզերբ գետոյն՝ որ անուանեալ կոչի Հրազդան. և 'ի սմանէ ասեն լինել զտունն Վարաժնունի ,,: Որով բանիւ յայտ առնէ՝ թէ Գառն՝ թէպէտ եղև որսապետ, բայց զիւր անուն 'ի վերայ տոհմին ոչ եդեն՝ այլ իւր որդին եթող. զորմէ դարձեալ պատմէ բ. 11. յաւելն վասն ա. Արտաշէսի Թոռանն Վաղարշակայ. "Տայ զՏիգրան որդի իւր ցպատանի ոմն Վարաժ անուն՝, որդի Գառայ՝ որ 'ի զաւակէ Գառնիկայ որ 'ի Գեղամայ. քանզի էր պատանին նշաւակ 'ի նետաձգութե կորովութե ուսուցանել զՏիգրան: Զնա իշխան արքունականացն արարեալ որսոց, և շէնս պարգևեալ նմա առ Հրազդան գետով, յանուն նորա կոչի ազգն Վարաժնունի ,,: Այս՝ որպէս և նախագրեալ բանն ցուցանեն թէ Վաղարշակ չէր ինչ պարգևեալ Գառայ երկիր կամ կալուած, այլ զկնի ա. Արտաշէս պարգևեաց:

Այսմ Վարաժնունեաց երկրին որ յԱյրարատ նահանգի՝ տես 'ի մեծ Հայս 457. բայց քանզի նաև 'ի Տուրուբերան և 'ի Վասպուրական նահանգս գտն գաւառք Վարաժնունի անուանեալք, պարտ է ընտրութի առնել 'ի գիրս. զի յիշատակեալն 'ի գիրս Թովմայի արծրունւոյ թուի լինել այն՝ որ 'ի Վասպուրական նահանգին. զոր օրինակ յաւելն Զ. 7. "Բայց միայն զԱշակ (զԱշոտ) ոմն 'ի տոհմէն Վարաժնունեաց խնդրեալ դստերն Շապհոյ բագրատունւոյ, զոր առեալ յայնժամ Ափշնի կնութե յանօրէն ամուսնութե. զսա աղերսեալ տիկինն Վասպուրական Սեդայ կին Աշոտի, և դուստր Ապումրուանայ՝ զերծին զնա 'ի սրոյն Ափշնի ,,: Զի յայնժամ յաւուրս ա. Սմբատայ զօրք Ափշնի ոստիկանին 'ի Վասպուրական եկեալ էին 'ի կոտորել զիշխանս, որպէս գրէ նա ինքն:

1 Այս կոչէ Վարաժ. իսկ 'ի Զ. 7. կոչէ Վարժ. յորոյ 'ի գործ սոսաստեղծուն հայերէն առաջինն թուի ուղիղ ասել վարժ գոլոյ 'ի նետաձգութիւն այսպէս անուանեալ. այլ յանուն տոհմին հայերէն որ Վարաժնունի կոչեցաւ՝ երկրորդն երևի ուղիղ:

Եւ յայս բան Գ. 17. «Իսկ ընդ առաւօտն ընդ այնոսիկ սպանեալ էր Ութմանկանցն որ յամուրսն նստէին զԹրատոմ Վարաժնունի, որ զտանուտիրական պատիւ յայնժամ ունէր զՎասպուրականն աշխարհին»։ Եւ 'ի ունել զտանուտիրական պատիւ Վասպուրականի՝ որ է ասել զահագլուխ իշխան Վասպուրականի՝ հարկ էր լինել 'ի Վասպուրականէ, և ոչ յԱյրարատոյ։ Սոյնպէս 'ի յիշեալն զՎարաժնունիս միացեալս ընդ զօրս Գուրգենայ Արծրունւոյ եղբօր Աշոտոյ ընդդէմ Բուղայ՝ ասելով Գ. 4. «Եւ Վարաժնունիք և Մլեհ և Ըստոմ և Վարազշապուհ», իմանայ զՎարաժնունիս Վասպուրականեանս, ուր էին Արծրունիք։ Այլ Թէ այս տոհմ նոյն էր արդեօք ընդ Վարաժնունիս Այրարատու՝ մեզ չէ յայտ։

## ՍՊԱՆԴՈՒՆՔ

Խորենացին 'ի Բ. 7. գրէ. «Առեալ և զՍպանդունիս 'ի վերայ զէնարանաց»։ Այսինքն Վաղարշակ կարգեաց նախարարութի՛ 'ի վերայ զինարանաց, զոր կոչեաց Սպանդունիս. յորոց սերնդոցն յիշէ զոմն Նա ինքն Խորենացին Գ. 56. ասելով. «Սպանանէ Արտաշամ Սպանդունին զգօրագլուխն»։ Եւ Մեսրոպ 'ի ԺԶ. ընդ այլ իշխանս յիշէ զՍպանդունիս։

## ՁԻՒՆԱԿԱՆՔ

Սման այսր տոհմի գրէ Խորենացին Բ. 7. «ԶՁիւնականդ (կարգեաց Վաղարշակ) ամարայնոցաց պահակս, և ձիւնակիրս, և յառաջադիմութէ ազատացեալս որպէս ընտանիք Թագաւորաց»։ Այսինքն յառաջադիմութէ կամ հետզհետէ յառաջադէմ լինելով այնր ցեղին՝ ազատացեալ եղեն, կամ անցին 'ի կարգս ազատաց՝ որ է նախարարաց, այնպիսի իմն ազատութէ կամ ազնուականութէ որպէս էին ընտանիք Թագաւորաց. որովհետև պահապանք էին Թագաւորական տանց կամ ապարանից որ յամարանոցս։ ԶՎրէն Ձիւնական յիշէ Ղազար 75. ընդ նախարարս ժողովոյն՝ որ ժողովեցան ընդդէմ առաջարկութէ Պարսից։ Եւ Մեսրոպ ԺԶ. 'ի կարգս իշխանաց յիշէ զՁիւնականս։

պանութին ամրոցին Համշունէի „ . որ էր յաւուրս Յ . Աշոտոյ թագաւորի ։

Օ բարուց Գնթունեաց յայտնի ինչ ոչ նշանակէ Խորենացին . բայց 'ի պատմութեանց Յովհաննու կաթողիկոսի երևի ընտական բարք լեալ նոցա նենգութիւն և ապստամբութիւն . յայտնի է և առ Խորենացւոյն Բ . 24 . քսութիւն Զօրայի նախարարի ազգին Գնթունեաց , զոր մատնեցանէր յունկն Արշամայ արքայի վասն Ենանոսի բագրատունւոյ , որով պատճառ եղև նմա 'ի հրէութէ դառնալոյ 'ի կռապաշտութիւն ։ Այլ պարծանք եղև տոհմին նախարարեանն ընդ Վարդանանց՝ յիշատակեալն 'ի Ղազարայ 124 . "Յազգէն Գնթունեաց երանելին Տաճատ „ ։

Սամն երկրին Գնթունեաց ոչ գտանեմք ուրուք ինչ յիշատակութիւն 'ի գիրս . բայց 'ի գրելոյ Խորենացւոյն Բ . 4 . վասն Վաղարշակայ թէ զօրս ժողովէր առ քաղս , "և զծովեզերեայն մանկունս որք 'ի Գեղամայ և 'ի Քանանացւոց „ , մարթ է կարծել թէ որպէս Գեղամեանք , նոյնպէս և Գնթունիք բնակէին զծովեզերբք Գեղամայ նախ քան զամբառնալն 'ի նախարարութիւն , զորս առա կոչէ Քանանացիս .

ՈՍՏԱՆԻԿ

Գունդ կարգեալ 'ի պահպանութիւն դրան արքունի , որպէս է տեսանել առ Խորենացւոյն Բ . 7 . յունարէն կոչեցեալ [illegible] . և յօմանեաց Գուարդիա պալէ ։ Այս Ոստանիկ անուն , որպէս նշանակեալ է մեր 'ի Մեծ Հայս 458 . նշանակէ Արքունի . վասն որոյ և երբեմն կոչի այս զօրս Ոստանիկ , և երբեմն Արքունի , որ է նոյն ։ Սեպհականութիւն սոցա գոլով յարանց ընտրելոց Տիգրանուհւոյն՝ կոչեցան Արքունի կամ Արքունական . մի՝ զի էին զօրք արքայազունք . "Ի հին զարմից թագաւորացն որ 'ի Հայկայ „ , որպէս ասէ Խորենացին Բ . 7 . և երկրորդ՝ զի էին 'ի գործս արքունիս կարգեալ , այսինքն յընկերութիւն և 'ի պահպանութիւն պալատան Տիգրանուհւոյն . զայս յայտ առնէ Խորենացին յասելն Ա . 30 . "Յուղարկէ թագաւորապէս զքոյր իւր Տիգրանուհի մեծ ամբոխիւ 'ի Հայս „ ։ Ուր ամբոխ ասելով իմանայ զբազմութիւն ծառայից սպասաւորաց , զբազմութիւն զօրաց և պահապանաց 'ի դրան նորա որպէս թագաւորի , որով արդարանայ ասելն՝ թագաւորապէս . և քանզի Տիգրանուհին էր թագուհի Մարաց , 'ի նոցին բարբառ , առ որս մուծեալ էր և

պարսկականն, կոչեցաւ այս իւր գունդ պահապանաց երբեմն Ոստանիկ, և երբեմն հայկական անուամբ Արքունի։

Այս առհմ Թերևս յետ Տիգրանուհւոյն ոչ մնաց 'ի սպասաւորութե կամ 'ի պահպանութե պալատան արքունի, բայց նոյն առհմն մնաց մինչև 'ի ժամանակս Մարիբասայ, որ վկայէ 'ի պատմագրութե իւրում, թէ Ոստան կոչեցեալ ախուազարմք՝ որք կային 'ի ժամանակս իւր՝ որով և 'ի ժամանակս Վաղարշակայ 'ի կողմանս գաւառացն Տիգրանակերտի՝ էին 'ի զարմէ Տիգրանուհւոյն. զայս յայտ առնէ բան Խորենացւոյն ա. 30. "Եւ զՈստանն անուանեալ կողմանցն այնոցիկ ազատութիւն (նախարարութի կամ ազնուազարմութի,) 'ի զարմից սորա (Տիգրանուհւոյ) ասէ (Մարիբաս) լեալս իբր թագաւորական զարմն,,։ Ուր և յայտ առնէ թէ նոյն Ոստան անուն մնացեալ էր 'ի վերայ այնր ցեղի. Վաղարշակ 'ի ցեղէ աստի առեալ նոր գունդ մ՝ կարգեաց զչորս 'ի նոցանէ 'ի պահպանութի արքունեաց իւրոց, որք նովին հին անուամբ Ոստան և Ոստանիկ անուանեցան. զայս արար իբր նորոգել կամելով զհին սպասաւորութի իւրեանց՝ կարգեալ 'ի մեծէն Տիգրանայ։

Ա՝ և այլ ինչ գիտելի վասն սոցա. զի այս ցեղ Ոստանիկն՞ որ պարտ էր ընդ աւագ նախարարսն յիշատակիլ, գոլով ցեղ արքայազարմ, այլ սակայն ոչ ուրեք առ նախնիս գտանի յիշատակեալ ընդ նախարարսն, ոչ առ Ագաթանգեղոսի և ոչ առ Բուզանդայ. նոյնպէս և ոչ Սեբէոսաննոս յիշէ, յորժամ կարգաւ դասաւորէ զհին գահագլուխ իշխանս Տրդատայ. այլ փոխանակ Ոստանկաց՝ առ Ագաթանգեղոսի և Բուզանդայ գտանեմք պատուով յիշատակեալ կամ զիշխանն Մարդպետութեան, և կամ զիշխանն Անգեղտան, որ գլուխ և նահապետ էր Ոստանկաց 'ի լինելն մարդպետ. իսկ առ Եղիշէի և Ղազարայ ոչ գտանեմք զանուանս իշխանացն Անգեղտան և Մարդպետութեան ընդ այլ իշխանս յիշատակեալ. բայց եթէ երբեմն զզօրս նոցա. այլ փոխանակ նոցին բազում ուրեք յանուանէ յիշատակին Ոստանիկք. որով յայտ է՝ թէ այն իշխանք կամ անուանք իշխանացն խափանեալ էին յայնժամ, և միայն զարմն Ոստանկաց մնացեալ։

Խորենացին Ը. 7. տարակոյս 'ի մէջ բերէ 'ի լռոյ այլոց՝ փոխանակ առաջին ցեղին՝ այլ կամ տարբեր գունդ ինչ յարուցեալ գինի նովին Ոստան անուամբ. բայց քանզի ինքն տարակուսելով գրէ, որպէս լսեմ՞ ասելով. իսկ այլ պատմագիրք աներկբայ յայտնի յարքունի տանէ լեալ յիշեն,

Գ. Նախարարութիւնք, որոց չյիշատակի ինչ գործ յիւր պետութեան աշխարհի։

Այլ քանզի սոքա եւս համարեալ են 'ի թիւս նախարարաց, մանաւանդ ոմանք 'ի ցեղից առաւել ընդ գլխաւոր եւ ընդ երեւելի ցեղս նախարարաց դասեալ, վասն որոյ արժան համարեցաք յիշել աստանօր մի ըստ միոջէ. զի թէպէտ 'ի կարգս տեղւոյն ոչ յիշատակի ինչ գործ սեփական ցեղի նոցա, բայց գոլով նոցա տեարք աշխարհի՝ ունէին պատիւ տանուտիրական, եւ մտանէին 'ի պատերազմունս աշխարհիս Հայոց, եւ ոմանք մտին նաեւ 'ի գործ իրիք իրիք անտեսունք. թող զի նաեւ ոմանք 'ի տոհմից ունէին գործ, բայց այլով անուամբ՝ զորս յառաջ եդաք։ Այլ զի՝ առ 'ի զանազանութիւն միւս դասու նախարարաց մինչեւ ցարդ յիշելոց՝ անկ է ընթերցողին առաջի աչաց ունել եւ զայս դաս նախարարաց, որք բազմագոյն են, եւ ոմանք 'ի նոցանէ սակաւ յիշատակեալ 'ի գիրս.

## ԱԿԵԱՑԻՔ

Վաղարշակ հաստատեաց նախարարութիւն, որպէս գրէ Խորենացին բ. 8. "Նախարարութիւն հաստատէ. նոյնպէս եւ զկորդուացիս, զանձեւացիս, զԱկէացիս 'ի նոյն գաւառաց"։ Կամի ասել՝ թէ յայսմիկ գաւառս հաստատեաց նախարարութիւնս, որով յանուն գաւառացն կոչեցան այս նախարարութիւնք. զի Ակէ՝ որպէս եւ Անձեւացիք՝ էին գաւառք Վասպուրական նահանգի։ Ըստ այսմ Ակէացիք կոչին եւ առ Եղիշէի 174. որք մտին 'ի գունդն Վարդանայ. նոյն է՝ որ առ Թովմայի արծրունւոյ գ. 4. գրի Ակեայք. նաեւ 'ի յիշելն զտոհմն՝ ասէ անդէն, թէ յաւուրս Բուղայի նահատակեցան եղեն երկուք. "որոց անուանք Ճանաչին միոյն Գէորգ յԱկեաց տոհմէ"։ Որպէս եւ առ Եղիշէի 160. "Իշխանն Ակեաց Ընջուղ անուն"։ Առ Մեսրոպայ ժբ. կոչին Ակեայք։ Յիշատակին 'ի սոցանէ արք քաջամարտիկք առ Թովմայի արծրունւոյ 'ի նոյն գլուխն՝ յաւուրս ա. Սմբատայ. ուր ասէ. "Եկին տալ պատերազմ ընդ ամրոցին Վան քաղաքի. եւ զի 'ի գնալն Աշոտի... հաւատացեալ էր Ցիսէի եղբօր Թադէոսի, որոց Շերեփայ որդիք անուանեալն 'ի յԱկեաց 'ի տոհմէ, քաջամարտիկք եւ հմուտք պատերազմական յարդարմանց"։

## ԱՂԲԵՐԿԱՑԻ

Յիշատակեալ առ Ղազարու 282․ "Առաքեաց և մամիկոնեանն Վահան ... զԱռաւան Աղբերկացի"․ որ թուի լինել 'ի թուոյ նախարարաց։

## ԱՄԱՏՈՒՆԻՔ

Տոհմ՝ 'ի Հրէից իջեալ որպէս Բագրատունիքն, և երևելի յամենայնի, զորոյ զսկսան և զայլ ամենայն գիտելիս ուրոյն գրով նշանագրէ Խորենացին Բ․ 57․ ասելով․ "Յաւուրս սորա (Բ․ Արտաշիսի) առեն եկեալ զազգն Ամատունեաց 'ի կողմանցն արևելից Արեաց աշխարհին․ բայց են սոքա բնութբ (այսինքն բնական սերնդեամբ) Հրեայ 'ի Մանուէայ ումեմնէ, որոյ որդի իւր մեծահասակ և ուժեղ Սամսոն անուն կոչեցեալ, որպէս սովորութիւն է Հրէիցն՝ ըստ յուսոյ զնախնեացն կոչել անուանս։ Բայց է ճշմարիտ և այժմ իսկ տեսանել 'ի զարմն Ամատունեաց․ քանզի անձնեայքն և թարեձևք ըստ պատշաճի վայել են ամենայն իրօք և ուժեղք։ Տարեալք են սոքա 'ի յԱրշակայ առաջին 'ի Պարթևաց թագաւորեցելոյն, և յառաջադիմութբ անդէն յԱրեաց աշխարհին 'ի պատիւ հասեալք 'ի կողմանս Ահմատանի։ Բայց թէ յինչ պատճառաց գաղուստ նոցա այսր՝ ոչ գիտեմ․ այլ պատուին յԱրտաշիսէ գեղիւք և դաստակերտօք, և անուանին Ամատունիք, որպէս թէ Եկք․ և կէսք 'ի Պարսից Մանուեանս զնոսա կոչեն յանուն նախնւոյն"[1]։

Տիրասիրութի Պարգև անուն նախարարին Ամատունւոյ՝ պատճառ եղև վնասու անձին իւրոյ և տոհմին․ զի սա ընդ Շաւարշայ կամսարականի միաբանեալ՝ 700 զինուորօք խաղաց 'ի վերայ Պարսից զերծուցանել զխոսրով զարքայն Հայոց մինչդեռ 'ի կալանս էր, այլ գործն ոչ յաջողեցաւ․ զի փոխանակ նորին ինքն կալեալ եղև, զոր Արտաշիր Պարսից արքայ "տիկնեսակ գործեալ ուռուցմամբ հրամայեաց դնել յանդիման Խոսրովայ հանապազ", որպէս ասէ Խորենացին Գ․ 50։ Եւ զտուն նորա

1 Եկք կոչեցեալ ասէ զոստ․ զի տեղւոյ 'ի բարբառ Պարսից նշանակէ էկ․ բայց դուցէ և վասն եկեալ գոլոյ 'ի կողմանց Ահմատանի, մարթ էր կոչել զոստ Ամադանիս։

ընդ կամսարականացն հրամայեաց յարքունիս ունել. բայց ապա սակս աղաչանաց մեծին Սահակայ, ասէ, « Հրամայեաց զտունս երկաքանչիւրոցն ( զԿամսարականաց և զԱմատունեաց) զկալեալսն յարքունիս՝ դարձուցանել 'ի նոսա »: Արդ թէպէտ զտունս նոցա դարձոյց, բայց զպատիւ նախարարութեն նուաստացոյց, 'ի կարգ կրտսերագոյն նախարարացն ածեալ անցուցեալ, մինչև Թագաւորեաց Վռամ Պարսից Թագաւոր. յայնժամ դարձեալ աղաչեալ մեծին Սահակայ՝ զի գէթ 'ի նուաստուէ 'ի վեր հանեալ զտոհմն՝ ընդ այլ նախարարսն դասեսցէ՝ յորում կարգի և կամեսցի արքայն. և կամ զոնէ որպէս զարքունի գործակալ կալցի 'ի գործ իւր, մինչև 'ի ձեռն այլոյ ուրուք Թագաւորի 'ի կարգ հայրենի նախարարութե եկցէ: Զայս ամենայն կատարեաց Վռամ Թագաւոր, ասէ Խորենացին, զորոյ զբանս կարես տեսանել 'ի նախարարութե Կամսարականաց:

Նոյն այսպէս Ամատունիք միշտ ընդ երևելի նախարարս են յիշատակեալք. "Տէրն Ամատունեաց Վահան", որ յիշատակի առ Ղազարայ 75. գտաւ 'ի ժողովն նախարարաց որ ընդդէմ Պարսից: " Ամատունիքն Մուշեղ և Ասիթ և Սահակ" յիշատակեալք առ Թովմայի արծրունւոյ գ. 4. որք միացան ընդ զօրաց Գուրգենայ արծրունւոյ ընդդէմ Բուղայի: Սոյնպէս "Շապուհ յԱմատունի տոհմէ" գ. 7. յաւուրս Աշոտի ոստիկանի: Յորոց և քաջք ոմանք ընդ ժամանակս ժամանակս երևեալք, որպէս Վահանն Ամատունի յաւուրս փոքուն Խոսրովու 'ի պատերազմին որ ընդդէմ Հիւսիսականաց. զորմէ Խորենացի գ. 9. և 'ի գ. 67. կոչէ զնա հազարապետ աշխարհիս Հայոց, "զօրաւոր հաւատովք և ձոխութ մարմնաւորաւ": Եւ Առանձար, զորմէ Եղիշէ 184. "Սեպուհ մի յազգէն Ամատունեաց Առանձար անուն՝ ընտրեցին յամենայն զօրականեն լի իմաստութբ և քաջութբ": Երևելի եղև և Օտա նախարար ամատունի սնուցօղ Խոսրովիդխտոյ, յիշատակեալ առ Խորենացւոյն բ. 77. որպէս և առ Ագաթանգեղոսի:

Նորկիր Ամատունեաց տոհմին երևի լինել Արագածոտն գաւառ Այրարատու. զի առ Խորենացւոյն գ. 9. Օշական գիւղ Արագածոտան գաւառի պարգևեալ 'ի փոքուէն Խոսրովայ արքայէ առ նախագրեալ Վահան ամատունի. և Զաքարիա եպիսկոպոս ռմ կոչէ զինքն, "Առաջնորդ Ամատունեաց սրբոյ Կարապետիս որ 'ի սառրոտս Արագածու": Տես և 'ի մեծ Հայս 438:

## ԱՆՁԵՒԱՑԻՔ

Նախարարութիւն սահմանեալ 'ի Վաղարշակայ. "Նախարարութիւն հաստատէ. նոյնպէս և զկորդուացիս, զԱնձևացիս, զակէացիս 'ի նոյն գաւառաց ", ասէ Խորենացին Բ. 8։ Որով բանիւ յայտ առնէ թէ յառաջագոյն գոյին այսոքիկ գաւառք և անուանք նոցա, զորս Վաղարշակ ամբարձ 'ի նախարարութիւն։ Անձևացեաց իշխանք ընդ երևելիս դասեալ կան 'ի գիրս. զոր օրինակ առ Խորենացւոյն Գ. 39. "Գնէլ նահապետ Անձևացեաց, և սպարապետ Պապայ արևելեան զօրուն "։ Եւ առ Ղազարայ 75. անէրն Անձևացեաց Շմաւոն. իսկ առ Յովհաննու կաթողիկոսի՝ Գուրգէն իշխանն Անձևացեաց, որ ընդ իշխանսն Մոկաց մարտուցեալ սպան զնա. առ Թովմայի Արծրունւոյ Բ. 6. Գատրիկ անուամբ յիշատակի, որ ընդ այլ նախարարս եկն յօգնութիւն Բագարատայ իշխանին Տարօնոյ. բայց թուի յատուկ անուն առն, և ոչ անուն պատուոյ. զի 'ի Գ. 4. բացայայտ ես գրէ ասելով. " Եկն յարեցաւ 'ի Գատրիկն Անձևացի ... Եւ Անձևացիք Գատրիկն և Գէորգ, Դաւիթ և Հասան "։ Յովհաննէս կաթողիկոս Տէրութիւն կոչէ յաւելն՝ թէ յետ մեռանելոյ Գուրգենայ "պայազատէր զտէրութիւն զայն մեծն Ատոմ որդի նորա ընդ նորա "։ Որպէս և Թովմա Արծրունի Գ. 14։ Իսկ թէ զիարդ կոչի այն նաև թագաւորութիւն, ահա զոր գրեցաք զզանազան թագաւորութեանց. բայց ըստ ասելոյ Թովմայի Արծրունւոյ՝ յաւուրս առաջնոյն Սմբատայ էր " ընդ ձեռամբ վասպուրական իշխանութեանն "։

Զսորա ծանր հարկատուութիւն յիշէ Յովհաննէս կաթողիկոս, զոր պահանջէր 'ի նմանէ Յուսուփ 'ի լինելն երկրորդ անգամ ոստիկան. " Դեսպանս առ իշխանն (Անձևացեաց) Ատոմ առաքէր, տալ նմա զսակ հարկացն արքունի, և ըստ սովորակի հրահանգացն տուեալ, տալ (նաև) զօժտուն նորա, որպէս զի ընկալեալ երթայցէ "։ Հարկն արքունի էր վասն ամիրապետին. իսկ օժտութիւն էր վասն ոստիկանին, զոր ըստ սովորութեան քաղաքական կարգաց պարտ էր տալ։ Ատոմ, ասէ, " ոչ ևս խնայէր 'ի զանձս և 'ի կարասիս, և վաղվաղակի հասուցանէր նմա ըստ ձեռին բաւականի զմնասս հարկին կրկին յաւելուածով, այլ և ընծայս ձեռաձիրս առատապէս պարգևէր "։ Բայց Յուսուփ և զմնացեալ ամացն զհարկս պահանջէր 'ի նմանէ.

վասն որոյ և Ատոմ "զմնացելոցն հարկաց ըստ ծանուցս խնդրողին պատասխանիս յազատատոհմէ տուեալ լինէր, զոր առեալ ընկալեալ՝ չուէ գնայ": Տես և 'ի մեծ Հայս 196:

## ԱՇՈՑԱՑ

Ի Նախնի հայկազանց տոհմէ. իսկ նախարարութիւն նորա 'ի Վաղարշակայ կարգեալ, զորմէ Խորենացին Բ. 8. "Բայց զտէրութիւն Աշոցայ, և զսեպհականութիւն Տաշ-րայ՝ կարգէ Վաղարշակ 'ի զաւակացն Գուշարայ հայկազ-նոյ": Այս Գուշար էր յորդւոցն Շարայի, որպէս ասէ անդէն: Եւ քանզի 'ի Վաղարշակայ անտի սահմանեցաւ տէրութիւն Աշոցայ, վասն որոյ զբան Խորենացւոյն Բ. 82. ասացեալ վասն Տաճատայ՝ որ էր 'ի տոհմէ Աշոցայ, թէ Տրդատ "իշխան 'ի վերայ գաւառին Աշոցայ կարգէ", չէ պարտ իմանալ՝ որպէս թէ յայնժամ կարգեցաւ այս իշխանութիւն, այլ վասն անձին միայն պարտ է իմանալ. այսինքն է՝ զտանուտիրական պատիւն յայնժամ ետ Տըր-դատ Տաճատայ, որ 'ի նոյն տոհմէ էր. որով Տաճատ եղև յայնժամ տէր և իշխան Աշոցայ գաւառին Այրարատու: Այս Տաճատ է՝ որ զգացոյց եղբօր կնոջ իւրոյ Արտաւազ-դայ Մանդակունւոյ՝ և նա Տրդատայ արքայի՝ նախ զլի-նելն Գրիգորի որդի Անակայ, և ապա վասն որդւոցն Գրի-գորի եղելոց 'ի Կեսարիա: Ագաթանգեղոս յՃԴ. յիշէ յասելն. "Երկրորդին Տաճատ անուն իշխան Աշոցացւոց գաւառին": Խորենացին Գ. 65. յիշէ "Համայեակ Աշոցայ տէր": Եւ Ղազար 75. "Զտէրն Աշոցայ Հրահատ":

## ԱՊԱՀՈՒՆԻՔ

Տոհմն հայկազեան, իսկ նախարարութիւն 'ի Վաղարշա-կայ. զորմէ Խորենացին Բ. 8. Հաստատէ, ասէ, Վաղարշակ "այլ և զնախարարութիւն Ապահունեաց, և զՄանաւա-զեանն և զԲզնունեանն՝ 'ի նոյն զաւակացն Հայկայ, 'ի բնակչաց գտեալ պերճագոյն, տեարս կարգէ յանուն շինից և գաւառաց կոչելով": Սոքա անուանի եղեն 'ի քաջութեան, զոր յայտ առնէ Խորենացին Գ. 32. յասելն. "Եւ քանզի էին նորա տագերք դստերն 'ի մեծ նախարա-րութեանցն, 'ի Կորդուք և 'ի քաջ ազգէն Ապահունեաց": Յաւուրս Աբգարու թագաւորին ընդ գլխաւորս դասի նահապետ այսր տոհմի առ Խորենացւոյն Բ. 30. "Առ որ

(առ Մատթէոս Հազարապետ համայեցւոց) առաքեաց Աբգարիոս երկուս 'ի գլխաւորաց իւրոց, զՄարիհաբ բդեշխն Աղձնեաց և զՇամշագրամ Նահապետ Ապահունեաց տոհմին": Յիշատակի առ Նմին գ. 65. յաւուրս մեծին Սահակայ նաև "Մանէճ Ապահունեաց տէր". որպէս և առ Ղազարայ 75: Այլ յաւուրս ա. Սմբատայ տիրէին անդ Տաճիկք բռնաւորք, Թէպէտ և հարկատուք. զորոց զապստամբութիւն գրէ Թովմա Արծրունի դ. 10. "Ընդ այն ժամանակս զօրաժողով եղև Թագաւորն Հայոց Սմբատ 'ի վերայ Ապահունեաց աշխարհին. զի որդիքն Աբդռահմանի որ Կայսիկքն անուանեին՝ ապստամբեալ էին 'ի ծառայութենէ Թագաւորին, տալ հարկս և զինուորել որպէս օրէն էր. և գրեթէ ամենայն իշխանք Հայոց, Վրաց և Աղուանից եկեալ էին ընդ զօրս Հայոց 'ի վերայ աշխարհին Ապահունեաց":

## ԱՌԱՒԵՂԵԱՆՔ կամ ԱՌՈՒԵՂԵԱՆՔ

Տեղ՝ եկեալ յԱլանաց. զորմէ Խորենացին բ. 58. յուրոյն գլուխ վերնագիր եդեալ՝ "Վասն Առաւեղենից տոհմին, թէ ուստի սերեալ ազգ", այսպէս պատմէ. "Ի սորա (բ. Արտաշէսի) աւուրս և Առաւեղեանքն՝ յազգէ Ալանաց մերձաւորք Սաթինկայ զհետ Նորա (Սաթինկայ Թագուհւոյն) եկեալք, կարգեցան յազգ և 'ի նախարարութիւն աշխարհիս Հայոց որպէս հարազատք Թագուհւոյն մեծի, և 'ի ժամանակս Խոսրովու հօրն Տրդատայ խնամացեալ ընդ ումեմն քաջի Բասլացւոյն եկեալ հասուածի": Ի ցեղէ սորա յիշատակի "Վահան Առաւեղեան" առ Խորենացւոյն գ. 43. իսկ առ Եղիշէի 343. ընդ կալեալ նախարարս յիշատակի "Ցազդէն Առաւեղինից Փառակ և Վարազդէն և Դատ": Որպէս և առ Ղազարայ 75. Փապագ "տէր Առաւեղենից": Առաւեղեանք յիշատակին և առ Մեսրոպայ ժթ.

## ԱՌԱՒԵՆԵԱՆՔ

Նախարարութիւն սերեալ յորդւոյ քաջազնոյն Վահագնի, որպէս գրէ Խորենացին ա. 31. "Ի սորա (Վահագնի) կրտսեր որդւոյն Առաւանայ (սերեալ է զարմն՝ կոչեցեալ) Առաւենեանք": Այլ տակաւ ուրեք յիշատակեալք. որպէս առ Խորենացւոյն գ. 43. "Որդատամ Առաւենեան": Եւ առ Ղազարայ 267. 'ի պատերազմին որ ընդ Վահանայ

մամիկոնեայ «յարձակեալք նահատակեցան 'ի ժամուն ե-րանելոյն Քանոթ Արաւենեան»։ Երկիր տոյա սեփական՝ Թուքի լինել չորրորդ գաւառն Մոկաց՝ Արաւենից նոր կո-չեցեալ, զորմէ գրեալ է մեր 'ի մեծ Հայս 134։

## ԱՐՇԱՐՈՒՆԻՔ. Տէր ԿԱՄՍԱՐԱԿԱՆՔ

## ԲԱԳԵՆԻՑ

Միայն առ Բուզանդայ յիշատակեալ գտանեմք «Կիշ-կէն նահապետն Բագէնից»։ Դ. 11։

## ԲԶՆՈՒՆԻՔ

Գրիգոր մագիստրոս 'ի Թուղթն իւր որ առ Սարգիս վար-դապետ՝ զԲազուկ համարի գլուխ Բզնունեան տոհմին, շը-փոթելով ընդ Բագ անուան, որ ըստ Խորենացւոյն Ա. 12. էր գլուխ Բզնունեաց, բազմօք յառաջեալ քան զԲա-զուկ նահապետ. «Թողեալ (ասէ, Արմենակայ) երկուս յեղբարց իւրոց զԽոռ և զՄանաւազ... և զորդի Մանա-ւազայ զԲազ. յորոց Մանաւազ ժառանգէ զՀարք. իսկ որ-դի նորա Բազ՝ յարևմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբն. և 'ի սոցանէ ասեն լեալ զնահապետութիւս (զնախարարութիւս) Մանաւազեան, և զԲզնունեաց, և Որդունին անուանեալ. որք աստ ուրեմն յետ որոյն Տրդատայ բարձեալ ասեն 'ի միմեանց պատերազմաւ»։ Կամի ասել՝ թէ 'ի սկզբան անդ թէպէտ տեարք էին երկրին, բայց չունէին պատիւ նա-խարարութեան, այլ զկնի Վաղարշակ հաստատեաց, որպէս գրէ Բ. 8. զորոյ զգանս տես 'ի վերոյ յԱպահունիս. որ և 'ի Բ. 62. յիշէ զԴատաքէ զիշխանն Բզնունեաց։

Նոյն տոհմ զկնի մահուն Տրդատայ բարձաւ որպէս գրէ Խորենացին Գ. 2. Զի աշխարհս Հայոց յայնժամ յան-իշխանութեան մնացեալ, ասէ, «յարեան ազգ յազգի մե-րոյ նախարարութիւնք կոտորել զմիմեանս. ուստի և երեք տոհմքն որ Բզնունականն և Մանաւազեանն և Որդունին անուանէին՝ սպառեալ բարձան 'ի միմեանց»։ Այլ Բու-զանդ Գ. 8. յաւուրս փոքուն Խոսրովու յիշելով զայս ցեղ, ոչ 'ի միմեանց բարձեալ ասէ, այլ 'ի հրամայելոյ Խոսրովու արքայի, յայտնելով և զպատճառն այսպէս. զԴատաքէն, ասէ, զգլխաւորն Բզնունեաց՝ Խոսրով առա-

քեաց 'ի վերայ Պարսից զօրօք, այլ նորա միաբանեալ ընդ զօրս Պարսից՝ եւ կոտորել զզօրս Հայոց, նա զի կամէր անկանել և 'ի վերայ Խոռոբովլու. իսկ յայնժամ զօրք Խոռոբովլու նոր բանակ կազմեալ 'ի ձեռն զօրավարին Վաչէի յաղթեցին զօրացն Պարսից, յայնժամ զԴատաբէն կալեալ քարկոծեցին առաջի արքայի իւրեւ զդաւաճանն. « և զազգ նորա և զկին և զորդիս գտանէր յամրոցի անդ իշխանին Ռշտունեաց յանուանեալն յԱղթամար կղզւոջ. 'ի նաւ ելեալ Վաչէ սպարապետն, անցեալ 'ի կղզին՝ առ հասարակ ոչ եթող Թոգոյր և ոչ զարու. և այսպէս բարձաւ ազգատոհմն նախարարութեան այնորիկ. և զտուն նոցա յարքունիս կալան »: Իսկ Մեսրոպ ժբ. նաև յաւուրս ե. Արշակայ 'ի գահս իշխանաց յիշէ զԲզնունիս, որպէս և զԲագնունիս:

ԳԱՐԳԱՐԱՑԻՔ

Օրմէ Խորենացին ը. 8. « Ի սորա (Արամայ) զաւակէ ասեն սերեալ զազգ Ուռծեացւոց, և Գարդմանացւոց, և Ծովքէացւոց, և Գարգարացւոց իշխանութիւնս »: Այլ ոչ գտանեմ զսոսա յիշատակեալ ընդ թիւս նախարարաց. վասն որոյ այնպէս համարիմ, թէ սոքա՝ որպէս և միւս ցեղք յիշատակեալք յայս բան Խորենացւոյն՝ էին միայն աւագք երկրին, վասն որոյ և կոչէ իշխանութիւն: Զլեզուն Աղուանից Խորենացին գ. 54. կոչէ՝ լեզու Գարգարացւոց, կամ վասն գոլոյ մի և նոյն լեզու, և կամ վասն նմանութեան աղխաղուր կոկորդախօս հնչմանն, զոր անդէն յիշէ: Տես և 'ի մեծ Հայս 342:

ԳԱՐԴՄԱՆԱՑԻՔ

Օ բան Խորենացւոյն որ վասն սոցա՝ ասէ 'ի վերայ, զոր 'ի կարգի նախարարութեան բաս Գարգարացւոց համարիմ լեալ, թէպէտ և սորայս յիշատակի ուրեք ուրեք. որպէս առ Խորենացւոյն գ. 43. « Պերոզ յազգէն Գարդմանացւոց »: Եւ 'ի գ. 55. « Խոսրով Գարդմանացի ». որ էր այր անն զօրաւոր: Իսկ Բուզանդ գ. 17. Իշխան կոչէ՝ յաւելն վասն Շահակայ կաթողիկոսին, թէ եառուն տանել զնա 'ի ձեռս մարդպետս իշխանին. « Եւ յաւագաց զաւմարեն ընդ նմա զիշխանն Գարդմանայ ձորոյն »: Որպէս և Խորենացին գ. 60. զԽուռս կոչէ իշխան Գարդմանայ: Զի որպէս զգեցայք 'ի վերայ՝ աւագք էին երկրին, և իշխանութեն ունէին 'ի վերայ երկրին: Տես և 'ի մեծ Հայս 338:

## ԳՈՂԹՆԵՑԻ

Մի յերեւելի ցեղից սերեալ 'ի Սիսակայ որդւոյ Գեղա-մայ, և կարգեալ նախարարութի 'ի Վաղարշակայ, որպէս գրէ Խորենացին Գ. 8. զորմէ տես 'ի մեծ Հայս 214։

## ԴԻՄԱՔՍԵԱՆ

Նախարարութի յաւուրց անտի Բ. Արտաշէսի. զորոյ զա-նունն և զպատճառն այսպէս պատմէ Խորենացին Բ. 46. Թէ 'ի պատերազմի Բ. Արտաշէսի ընդ Երուանդայ՝ այն ինչ ոմանք հասեալ էին 'ի վերայ Արտաշէսի սպանանել զնա, "որոց դիպեալ հեռոյ ընդ մէջ անցանէր Գիսակ, որդի սնուցին Արտաշիսի, և սատակեալ զնոսա, ուր և զկէս դիմացն նորա 'ի վայր բերեալ սուսերաւ, զյաղթութիւն տուեալ մեռանի 'ի վերայ այսպիսեացս"։ Վասն որոյ և Արտաշէս փոխարէն, ասէ Բ. 47. "զՆերսէս զորդի որ-դւոյ իւրոյ սնուցին Գիսակայ՝ ազգ զնա սերելով, ա-նուն կոչէ զնահապետութեանցն հօրն Դիմաքսեան (իբր դիմա-կիսեան). քանզի որպէս ասացաքն՝ զկէս դիմացն սուսե-րաւ 'ի վայր բերէին 'ի վերայ Արտաշիսի"։ Ազգ ասելով՝ իմանայ զնախարարութի, որպէս և 'ի Գ. 43. ընդ նա-խարարս յիշատակի "Աշխադար յազգէն Դիմաքսենից"։ Սոյնպէս և Ղազար 111. 'ի գրեալն վասն մեծին Վարդա-նայ. "Նիզակակից տայր զՄուշ զաւագ սեպուհ յազգէն Դիմաքսենից. և զահեակ կողմն տայր 'ի ձեռն Խորենայ Խորխոռունոյ. և զօրավիգն ընդ նմա կացուցանէր զՀմայ-եակ Դիմաքսեանն", որ և ընկալաւ զնահապետութիւն։ Այլ ոչ յիշատակի երկիր այսր տոհմի։

## ԶԱՌԱՒԵՆԵԱՆՔ

Ցեղ սերեալ 'ի հայկազուն Թագաւորաց, որպէս գրէ Խորենացին Բ. 8. յասելն վասն Վաղարշակայ. "Սոյնպէս և Զառաւենեանն և Զարեհաւանեանն գտեալ 'ի զարմից առաջնոյ Թագաւորացն՝ կարգէ 'ի նոյնանուն աւանս"։ Այլ իշխանք սորա անյիշատակ 'ի գիրս։ Ա՛յլ են և Ա-ռաւենեանք ըստ նախագրելոցս։

## ԶԱՐԵՀԱՒԱՆԱՆՔ

Ի վերոյ Խորենացին 'ի զարմից Թագաւորաց միայն ասելով անորոշ եթող. այլ 'ի ա. 30. յետ յիշելոյ զՆերսեհ, որ էր որդի Թոռնին Մեծին Տիգրանայ, ասէ. "Սորա (Ներսեհի որդի) Զարեհ. 'ի սորա զարմից (ելին) և որ Զարեհաւանիցն կարդան ազգք": Այլք գրեն Զարեհաւանեանն, որոց իշխանք նախնեաց անյիշատակք: Տես և 'ի մեծ Հայս 153. 154. և 410:

## ԸՆԾԱՅԻՆՔ

Գրեթէ մի միայն յիշատակեալ ընդ քաջ նահատակին ընկերս որոց Վարդանանց առ Եղիշէի Է. "Յազգէն Ընծայնոց արդարն Արսէն եօթն արամբք". զոր յիշէ և Ղազար 124. "Յազգէն Ընծայնոյ երանելին Արսէն": Թուի լինել նոյն որ առ Մեսրոպայ ժԷ. կոչի Ընծայնոյք 'ի կարգս նախարարաց:

## ԸՆՏՐՈՒՆԻՔ

Միայն առ Թովմայի Արծրունւոյ յիշատակեալ, որ Գ. 6. ելլին, ասէ, յօգնութիւն Բագարատայ իշխանին Տարօնոյ "Ի տոհմէն Ընտրունեաց Արտաւազդ եօթն հարազատօք և զօրօք իւրեանց": Իսկ 'ի Դ. 2. յիշէ "Վահրամ յազգէ Ընտրունեաց": Ի Դ. 4. գնացին, ասէ, ընդդէմ Բուղայի ընդ զօրսն Գուրգենայ եղբօր Աշոտոյ վասպուրականի "և Ընտրունիքն Գէորգ և Ցիաէ": Գուցէ նոյն է ընդ Տրունիս յիշատակելոյն 'ի Խորենացւոյն:

## ԽԱԴՈՒՆԻՔ

Միայն յիշատակեալ առ Խորենացւոյն Գ. 52. յասելն վասն Վռամշապհոյ արքային Հայոց. "Առաքեաց հրեշտակս զայր մի պատուական և հաւատարիմ իւր Խադունի ազգաւ՝ Վահրիճ անուն":

## ԽՈՌԽՈՌՈՒՆԻՔ

Ցեղ հին յոյժ, որպէս է տեսանել առ Խորենացւոյն, ա. 12. "Իսկ Խոռն (որ է որդի Հայկայ, եղբայր Արմենակայ) 'ի կողմանս հիւսիսոյ բազմանայ. կարդէ զշէնս իւր,

և 'ի նմանէ ձգեալ առի մեծ նախարարութիւն ազգին Խոռխոռունեաց, որք քաջք և անուանիք. որպէս և որք առ մեզ են այժմ երևելիք»: Ի սորա զաւակէ երևելի գտեալ Մաղխազ մի՝ Թիկնապահ արքայի կարգեցաւ 'ի Վաղարշակայ սերնդեամբ, զորմէ տես 'ի Մաղխազունիս: Իշխանք այսր ցեղի գտանին յիշատակեալ 'ի գիրս. զոր օրինակ առ Խորենացւոյն Գ. 43. «Սուրէն Խոռխոռունի»: Եւ առ Ղազարայ 114. «Իշխանն Խոռխոռունեաց Գադիշոյ», նահատակեալ ընդ Վարդանանց: Վասն համանուն երկրի տեսցես որ 'ի Տուրուբերան՝ տես 'ի մեծ Հայս 131.

## ԾՈՎԴԷԱՑԻՔ

Խորենացին Բ. 8. Թէպէտ յԱրամայ ասէ սերեալ զսոսա, բայց գրեթէ միայն առ Աղաթանգեղոսի յծէ. գտանեմք յիշատակեալ ասլին բանիւ. «Երկոտասաներորդ իշխանն Ծոդէից աշխարհին»: Որոց և ոչ աշխարհն մեզ յայտնի:

## ԾՈՓԱՑ ԻՇԽԱՆ

Խորենացին Բ. 8. ասէ վասն Վաղարշակայ. «Բայց զկնի դորա (Անգեղտանն) հաստատէ զմեծ նահապետութիւն Ծոփաց 'ի չորրորդն կոչեցեալ Հայս»: Զսոյն ասէ զկնի գրելոյ զանգեղեայն Տորքայ, թէ Վաղարշակ հաստատեաց զնա կուսակալ արևմտից. թող 'ի բաց զառասպելն վասն ուժոյ Տորքայ, զի այն միջանկեալ բան է: Այսպէս վասն անմիջապէս գրելոյ Խորենացւոյն՝ և վասն Ծոփաց գաւառին երկիր Անգեղտան գոլոյ ըստ Բուզանդայ, թուի մեզ՝ թէ այս նախարարութի Ծոփաց միացեալ էր ընդ նախարարութեն Անգեղտան դէթ զկնի ժամանակաց. բայց այս նախարարութի այլ էր 'ի միւս նախարարէն կամ իշխանէն Ծոփաց, որ էր իշխան համօրէն Ծոփաց, այն է համօրէն չորրորդ Հայոց. զի ասելն աստանօր Խորենացւոյն՝ 'ի չորրորդն կոչեցեալ Հայս, յայտ առնէ՝ թէ էր 'ի մէջ չորրորդ Հայոց, և ցուցանէ լինել զԾոփք գաւառն՝ որ էր 'ի չորրորդ Հայս, և ոչ զԾոփաց նահանգն՝ որ էր համօրէն չորրորդ Հայք[1]:

1 Զերկոցունց տեղւոյ զիշխանս ընդ խառն միւսոյ Ծոփաց. ուր 'ի յիշելն այլ իշխանաց յիշէ Բուզանդ Գ. 4. և զայլ իշխանս անուանս՝ ոչ յիշէ զիշ- զՆշանիէլ մեծ իշխանն Ծոփաց, և զիշ- խանն Անգեղտան, բայց պատմէ նոյն

ԿԱԴՄԵԱՆՔ. Տես ՍԻՍԱԿԵԱՆՔ

ԿԱՄՍԱՐԱԿԱՆՔ, ԱՐՇԱՐՈՒՆԻՔ, ՊԱՀԼԱՒՈՒՆԻՔ

Յաղագս ծագման այսր զարմի՝ որ երիւք անուամբք կոչեցաւ, գտանեմք 'ի պատմութե Խորենացւոյն Բ. 28. ուրանոր պատմէ թէ յորժամ Աբգար դնաց 'ի Պարս խաղաղել զազգայորդիս վասն թագաւորելոյ, զայս ինչ սահմանեաց. զի Արտաշէս թագաւորեսցէ 'ի վերայ Պարսից յորդւոց յորդիս՝ որպէս և կամէր. բայց միւս երկու եղբարքն և մի քոյր նոցա յուրոյն ցեղ որոշեսցին վերագոյն քան զամենայն ցեղս նախարարութե Պարսից. իսկ յորժամ սպառեսցի ցեղ Արտաշէսի՝ յայնժամ նոքա թագաւորեսցեն: Զերեսին զայսոսիկ ցեղս նոր անուամբ կոչեաց Կարենի տոհմն զայն՝ ուստի եղեն Կամսարականք: Սուրէնի տոհմն՝ ուստի եղև սուրբն Գրիգոր. և զքոյրն Ասպահապետ տոհմն, զի այր նորա սպարապետ էր Պարսից[1]: Այս ցեղ որ առ Խորենացւոյն Բ. 73. կոչի Կարենի կամ Կարենեան տոհմն, կամելով փախչել 'ի Հայս առ մեծն Խոսրով թագաւոր մեր 'ի ձեռաց սատանեան Արտաշրի՝ կոտորեցաւ առհասարակ 'ի նմանէ, միայն զտղայ մի եւեթ ապրեցոյց Բուրդ՝ փախուցեալ յերկիրն Քուշանաց, և յանձնեալ 'ի ձեռս ազգականաց իւրոց. և այն տղային կոչեցաւ Պերոզամատ. "Սա է, ասէ Խորենացին Բ. 73. Պերոզամատն նախնի մեծի ազգին Կամսարականաց": Իսկ Կամսար է առաջին որդի Պերոզամատայ. որ ըստ պատմելոյ Խորենացւոյն Բ. 87. "ամենայն ընտանեօք իւրովք և ազխիւ գայ առ Տրդատ մեր թագաւոր... Այս Կամսար ահագին քաջութե նահատակեալ առ Հարքն 'ի պատերազմունս, 'ի շահատակելն իւրում հարկանի յումեմնէ սակրով գլխոյն. և վերացուցեալ մասն ինչ յոսկերէ սկաւառակին, բժշկեալ 'ի դեղոց, (այլ) պակաս գոլով բոլորութիւն գագաթանն՝ անուանեցաւ Կամսար այնր աղագաւ":

Սկզբնաւորութի նախարարութեան եղև յաւուրս Տրդա-

էր ընդ Ծոփաց. այլ յետէ միայն գլխ-խանն Մարդպետութե, ըստ որում իշխանք Մարդպետք լինէին նաև եր-բեմն արտաքոյ Անգեղտան: Վասն Ծոփաց կարծես ուսանել և 'ի մեծ Հայս:

1 Խորենացին յետ զայս գրելոյ, ասէ. "Զի ծանիցես զազգս (զցեղս) զայս մեծ՝ թէ հաւաստի որդւոյն Վաղարշակայ են, այսինքն զարմ Արշակայ մեծի, եղբօր Վաղարշակայ": Դարձեալ գրէ անդէն. "Եւ առեալ զսուրբն Գրիգոր 'ի Սուրենեանն տոհմէն, և զԿամսարականս 'ի Կարենեանն տոհմէն":

տայ, զորմէ այսպէս պատմէ Խորենացին Բ. 90. " Ցայնմ ժամու և ազգային նոցա (որքոյն Գրիգորի և Արիստակէսի) կամօք մկրտի իւրայովքն հանդերձ 'ի ձեռն մեծին Գրիգորի, արքայի (Տրդատայ) ընդունելով 'ի Ջրոյն, տալ (տալով) նմա ժառանգութի զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ ասի Դրասխանակերտ, և զգաւառն Շիրակ, որպէս ազգականի իւրում և մտերիմ հարազատի. այլ նա ոչ աւելի բաւեալ քան զեօթն աւուրս յետ մկրտութեն վախճանի: Բայց թագաւորին Տրդատայ մխիթարեալ զգլուխ որդւոցն Կամսարայ զԱրշաւիր, զկնքն փոխանակ ծնողին սահմանելով, ազգ. զնա սերելով յանուն հօրն, և կոչէ 'ի Նիւ- նախարարութեն. յաւելու և այլ պարգևս՝ զքաղաքն Երուանդայ և զնորին գաւառն մինչև ցկատար ձորոյն մեծի. միայն զի 'ի մնոց նորա հեռացուսցէ զյիշատակ ընիկ աշխարհին որ Պահլաւն կոչի, որպէս զի անկորուղ զհաւատն պահեսցէ: Իսկ Արշաւիր առաւել սիրեալ զգաւառն՝ յիւր անունն անուանէր Արշարունիս. քանզի յառաջ Երասխաձոր կոչիւր „: Եւ այսպէս կամսարականն է առաջին անուն այսր ցեղի. իսկ Արշարունի՝ երկրորդ անուն յորդւոյն Կամսարայ սկսեալ[1]: Երկիր նոցա առաջին եղև Շիրակ, ապա Արշարունիք. իսկ ոստան նոցա՝ Երուանդաշատ:

Այլ այն ինչ այսպէս ծաղկեալ յառաջանայր այս տոհմ ազնուականն, կոտորել տայր Արշակ Բ. զամենայն զտոհմն. յորմէ մի միայն որդի զերծեալ մնաց. " Կոտորեաց (Արշակ, ասէ Խորենացին Գ. 31.) զբազումս 'ի նախարարացն, մանաւանդ զազգն Կամսարականաց բառնայր 'ի միջոյ, չարակնելով ադաւհեալ յամուրն Արտագերս, և 'ի քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ... միահաղոյն զարս և զկանայս հանդերձ մանկամբք հրամայեաց կոտորել. և ոչ ոք 'ի նոցանէ ապրեցաւ, բայց Սպանդարատ որդի Արշաւրի... հանդերձ որդւովքն Շաւարշաւ և Գազաւոնիւ, և բոլոր ընտանեօք գնաց փախստական 'ի Յոյնս „: Այլ այս Սպանդարատ՝ քանզի քաջութե մեծ այրար 'ի պատերազմին որ 'ի Ձիրաւ դաշտի յաւուրս Պապայ արքայի, " Ցայնժամ դարձոյց 'ի կամսարականն Սպանդարատ զա-

1 Նախնի իրք և ուրեք ուրեք երկոքին անուանքս եւ յիշատակին. " Արշա ա- ւագեցին, ասէ Բուզանդ Գ. 21. զՆախանձ նահապետն Սիւնեաց և զԱրշաւիրն կամսարական զնահապետն Արշարունեաց „: Եւ Ղազար 111. " Առջոյ կողմանն կացուցանէր զօրավարս զԳիշերան Արշարունեաց զԱրշաւիր Կամսարականն „:

և զԿորդուացիս »: Թէ զինչ մեծութիւն ունէին յաւուրս Տրդատայ, տես 'ի մեծ Հայս 143:

## ՀԱՄԲՈՒԺԵԱՆՔ

Յիշատակեալ առ Մեսրոպայ ժբ. իսկ առ Բուզանդայ դ. 11. յիշատակի « Վրկէն նահապետն Համբուժենից »:

## ՀՐՍԻՁՈՐՈՑ

Յիշատակի առ Բուզանդայ դ. 11. « Սուրիկ նահապետն Հրսիձորոյ »:

## ՄԱՐԱՑԵԱՆ

Ի Թիւս նախարարաց յիշեալ առ Թովմայի Արծրունւոյ դ. 6. որք եկին յօգնութիւն Բագարատայ իշխանին Տարօնոյ. « Սմբատ Մարացեան, սեպուհ մի Սահակ »: Թերևս Մուրացան. զորմէ տես առաջև:

## ՄԱՆԱՁԿԵՐՏԵՑԻՔ

Պատար 191. իբրև զազգ ինչ կամ զգաւառ նախարարաց յիշէ, յասելն. « Տէր Մելիտէ կաթուղիկոս յազգէն Մանազկերտեցւոց »:

## ՄԱՆԱՒԱԶԵԱՆՔ

Յաղագս ծագմանն այսր ցեղի և նախարարութեան՝ տես զԱպահունիս և զԲզնունիս. իսկ վասն բարձման ցեղին՝ զոր Խորենացին միայն յիշատակէ, այսպէս պատմէ Բուզանդ դ. 4. Յաւուրս փոքուն Խոսրովու, ասէ, երկու մեծ իշխանք Մանաւազեան տոհմին և Որդունեայ տոհմին՝ հակառակութիւն 'ի մէջ իւրեանց բորբոքեալ սատակապէս կռուէին, և զիրեարս կոտորէին. Խոսրով առաքեաց զեպիսկոպոսապետն Վրթանէս, և զեպիսկոպոսն Աղբիանոս հաշտել 'ի խաղաղութիւն, նոցա անսաստեալ՝ աւերէին նաև զաւանս արքունի. յայնժամ Խոսրով արքայ առաքեաց 'ի վերայ նոցա զՎաչէ զօրավար իւր, որ « հարկանէր վանէր զազգսն երկոսեան. և ոչ թողոյր զերկոցունց տոհմից զորձ կորիւն և ոչ զմի »: Տես և 'ի մեծ Հայս 118:

## ՄԱՆՈՒԵԱՆՔ. Տէր ԱՄԱՏՈՒՆԻՔ

### ՄԱՐԶՊԵՏՈՒՆԻՔ

Յիշատակեալ առ Մեսրոպաւ ԺԲ. յորոց և մի Գէորգ անուամբ քաջութեամբ երևելի՝ յիշատակի առ Յովհաննու կաթողիկոսի ։

### ՄՈԿԱՑԻՔ

Նախարարութիւն՝ հաստատեալ 'ի Վաղարշակայ. տես վասն այսր զբանս Խորենացւոյն 'ի վերոյ 'ի Կորդուացիս ։ Երևի այսր նախարարութիւն էր նահանգ մի ողջոյն Մոկք անուանեալ յինն գաւառօք. բայց զարմանք մեծ՝ զի իշխանն սորա ոչ այնպէս երևելի, և այնչափ յիշատակեալ, որպէս և ոչ քաղաքք և ոչ շէնք սորա. յորմէ իմն թուի 'ի վաղուց անտի խառնեալ սոցա ընդ դրացի ազգս Մարաց և Պարսից մանաւանդ ասորեստանեայց, և 'ի թիւս նոցա յաւելեալ. զկնի խառնեալ նոցա գուցէ ըստ մեծի մասին նաև ընդ արաբացիս՝ յորժամ տիրեցին այնց սահմանաց ։ Բնակիչք Մոկաց գոլով լեռնայինք և սրիկայք ըստ ասելոյ Խորենացւոյն, էին և պատերազմականք. և զի պատերազմական արանց իբր անհնարին իմն է 'ի հանդարտութեան կալ, պարտ էր 'ի պատերազմունս ազգին մերոյ առէպ լինել յիշատակութեան զնոցանէ. այլ զայս քանզի հազիւ ուրեք է տեսանել՝ յայտնի երևի ընդ օտար ազգս խառնեալ սոցա որպէս սովորական բնութիւն է ազգիս, և 'ի նոցին պատերազմունս շահատակեալ. վասն որոյ և առ Թովմայի արծրունւոյ պատմի վասպուրականն իշխանաց ընդ իւրեամբ նուաճեալ զիշխանն Մոկաց, յայտ է թէ վասն զի սակաւ արամբք ոմամբք մնացեալ տկարացեալ կայր ։ Սակաւ ուրեք յիշատակին և իշխանք սորա. որպէս առ Խորենացւոյն Գ. 43. « Մուրայ յազգէն Մոկաց ». և 'ի 55. « Աշոտ Մոկացին ». Եւ առ Ղազարայ 75. « Տէրն Մոկաց Արտակ ». Տես և 'ի մեծ Հայս 133 ։

### ՄՈՒՐԱՑԱՆ

Նայս ոչ էր 'ի կարգս միւս նախարարութեանց Հայոց. այլ քանզի Ա. Վաղարշակ զոմն 'ի ցեղէն Մարաց Աժդահակայ՝ իւր երկրորդ թագաւորութեան կարգեալ, ուրոյն ցեղ որոշեալ սերեալ գտաւ, վասն այնորիկ եդաք յայս կարգ ։

Իսկ վասն ունելոյն զերկրորդ գահն՝ գրեցաք 'ի պաշտօնէայս արտաքին կառավարութե. իսկ աստ գրեսցուք վասն ցեղին, զորմէ պարտ է գիտել, զի Արտաւազդ արքայ նախ քան զթագաւորել իւր յոյժ հակառակութե մերժեալ ընդ ծերունւոյն Արգամայ նահապետի Մուրացան տոհմի առ 'ի յինքն գրաւել 'ի նմանէ զպատիւ երկրորդականն գահի, ամբաստանութե յարուցեալ 'ի վերայ նորա, նախ "զբաղումս յազգէն Մուրացան ,, ետ սպանանել, և զՆախճաւան և զամենայն գիւղս նորա յինքն յափշտակել: "Այլ ոչ կարացեալ համբերել որդւոյն Արգամայ, ասէ Խորենացին·Բ. 51. ընդդիմանայ նմա պատերազմաւ. բայց յաղթեալ արքայորդւոյն (Արտաւազդայ") սատակէ զամենայն ծնունդս Արգամայ հանդերձ հարբն, և որք միանգամ երևելիք էին յազգէ Մուրացան. և գրաւէ յինքն զշէնս և զամենայն իշխանութիւնս նոցա. և ոչ ոք ապրեաց 'ի նոցանէն՝ բայց միայն աննշանաւորք ոմանք և կրտսերք փախուցեալ առ Արտաշէս (արքայ հայր Արտաւազդայ) ապրեցան 'ի գրան արքունի,,: Սոցա սերունդք էին, զոր Մեսրոպ ժէ. 'ի Թուելն զիշխանս ասէ. "Եւ այլք (իշխանք) որք չէին 'ի գահս,,: Այլ անունն գրի առ նմա Մոացեանք. կամ ըստ այլ օրինակի Մոյացեանք. որպէս և Մարացեանն անուն զոր յիշատակեցաք 'ի վերոյ՝ Թուի լինել նոյն: Ցաղագս սկզբնաւորութե այսր տոհմի տես 'ի գլուխն Բնակչաց՝ զԳաղթականս եկեալս 'ի Մարաց,,[1]:

## ՆՈՐ ՇԻՐԱԿԱՆ

Մեզ Թուի ելանել այս անուն 'ի բառէս Նոր Սիրիա, որ է Նոր Ասորիք. քանզի զոր օտար ազգք Սիրիա կոչեն՝ մերքն Ասորիք կոչեն, որպէս և յայտնի գտանի 'ի Թարգմանութե քրոնիկոնին Եւսեբեայ հտ. Բ. Թղթ. 96. "Ասորոցն Սիրոս պատմի լեալ երկրածին, յորոյ անուն կից և Սիրիա անուանեցաւ, որ են Ասորիք,,: Այլ վասն նախարարութե քանզի խօսեալ է մեր 'ի մեծ Հայս 530. տես անդ:

1 Տե՛ս Ղազարայ 267. յիշատակի. "Ցարձակեալք նահատակեցան ... երանելեան Ներսէս (Ներսէս) յովսեպեան,,: Այլ քանզի ոչինչ նշան ցուցանէ լինել զորոյ նախարարութե, և ոչ իսկ յիշատակեալ է այլուր, զանց արարաք դնել առանձին 'ի կարգի խարամ, որպէս և զայլ պայմանիս:

### ՈՒՏԷԱՑԻՔ

Խորենացին Բ. 8. գրէ. «Ի սորա (Արամայ) զաւակէ տանն սերեալ զազգն Ուտէացւոց»։ Տես զոր ինչ գրեալ է մեր վասն սոցա 'ի մեծ Հայս 134. և 'ի գլուխն Բնակչաց՝ 'ի ստորագրութեան գետոյն Գեհոնի։

### ՈՐԴՈՒՆԻ

Ծագումն սորա նշանագրէ Խորենացին Բ. 8. յասելն վասն Վաղարշակայ. «Իսկ 'ի հովտին մեծի Բասենոյ կարգէ նահապետութիւն զՈրդունին անուանեալ որ 'ի զաւակացն Հայկայ»։ Իսկ վասն բարձման այսր ցեղի՝ տես զոր գրեցաք 'ի ցեղն Մանաւազեան և Բզնունեան. և 'ի մեծ Հայս 384։

### ՈՒՐԾԱՑԻ

Միայն առ Ղազարայ 114. յիշատակի Ներսեհ անուն իշխան սորա. և 'ի 210. Սեպուհն Ուրծայի։ Տես 'ի մեծ Հայս 535։

### ՊԱԼՈՒՆԻՔ

Յիշատակեալ առ Մեսրոպայ ԺԶ. իսկ առ Ղազարայ 75. յիշատակի տէրն Պալունեաց Վարազշապուհ, զոր 'ի 114. կոչէ «Իշխանն Պալունեաց Վարազշապուհն»։ Եւ ընդ Վարդանանց նահատակեալ ասէ «յազգէն Պալունեաց երանելի սեպուհն Արտակ»։ Տես 'ի մեծ Հայս 212։ Որոց երկիր էր Տարօն, ուր էր Կուառ։

### ՊԱՀԼԱՒՈՒՆԻՔ. ՊԱՐԹԵՒԱԿԱՆՔ

Պարտ է գրել և զսոցանէ տոհմ Լուսաւորչին [1], զորմէ գրէ Խորենացին Բ. 91. «Սա որպէս ամենեցուն յայտնի է՝ աշխարհաւ Պարթև, գաւառաւ Պահլաւ, յազգէ թագաւորեալ, զատուցեալ արշակունի, 'ի ցեղէ սուրենեան»։ Զսկզբնաւորութիւն այսր ցեղի գրէ նա ինքն

1 Այնկ է 'ի գեղջ ասելով զբան Խորենացւոյն Բ. 68. «Մի՛ առասպելօր բանս բամբասեցես զմեզ, իբրև զաւելորդածն ոք ... այլ զխօսս զի ահաբեկելով վասն ազգաբանութեան մերոյ Լուսաւորչին քաջահմտա կամեցեալ լինել ընթերցողացն»։

Ժ. 68. յԱբրահամայ նահապետէ բերելով 'ի Քետուրայ կնոջէն իւրմէ. «Յորոց սերեալ ազգ Պարթևաց, և 'ի նացանէ Արշակ քաջ, որ ապստամբեալ 'ի Մակեդոնացւոց՝ թագաւորեաց յերկրին Քուշանաց... ապա Արշակ նարին որդի որ կոչեցաւն մեծ... չուեալ 'ի Բահլ հաստատեաց զթագաւորութիւն իւր անդ յիւում և երիս վասն որոյ զարմք նորա Պահլաւք անուանեցան»[1]: Ապա յայտ է թէ Պահլաւունիք անուանեցան 'ի Բահլ քաղաքէն որ էր յերկրին Քուշանաց, և ուր էր նախկին բնակութիւն իւրեանց: Վասն որոյ Արտաշիր Պարսից թագաւոր ասաց առ Անակ ըստ ասելոյ Ագաթանգեղոսի Ժ. եթէ զխորով Հայոց թագաւոր սպանանիցես, «զբնակութիւն պարթևական զձեր սեփհական Պահլաւն 'ի ձեզ դարձուցից»: Իսկ 'ի Թղթ. Ը. գրէ վասն նորին Անակայ. «Եւ 'ի բուն աշխարհն փափագէր որ Պահլաւն կոչէր»: Եւ Խորենացին Բ. 74. գրէ. «Խոստանայր զբուն տունն դարձուցանել 'ի նոսա որ Պահլաւն կոչէր, զարքայանիստ քաղաքն Բահլ, և զամենայն աշխարհն Քուշանաց»: Նոյնպէս և Բ. 90. ասէ վասն Արշաւրի որդւոյն Կամսարայ, թէ Տրդատ ջանայր՝ «զի 'ի մտաց նորա հեռացուցէ զյիշատակ բնիկ աշխարհին՝ որ Պահլաւն կոչի»:

Սոյն այս ցեղ կոչէր և Պարթև, վասն սերեալ գոլոյ յԱրշակայ պարթևէ. նորին աղագաւ Ագաթանգեղոս ասէ անդէն վասն Անակայ, որ «գլխաւոր նահապետ էր Պարթևաց տէրութե»: Եւ վասն նորին Անակայ ասէ Թղթ. Է. «Իբրև զայն լսէր Պարթևն», փոխանակ ասելոյ Պահլաւն. որպէս և 'ի Թղթ. Թ. գրէ. «Բայց միայն երկուս մանկունս յորդւոցն Պարթևին» Անակայ: Սոյնպէս և սուրբն Սահակ երբեմն անուանի Պարթև, և երբեմն Պահլաւիկ. զորմէ 'ի գրեն Խորենացւոյն Գ. 51. մեծարի, ասէ, յԱրտաշրէ Պարսից թագաւորէ «վասն քաջատոհմիկ ազգին Պահլաւկաց»[2]: Իսկ վասն ցեղի սուրբննեան Պահլաւի աստի ծագելոյ՝ տես 'ի ցեղն Կամսարականն:

1 Զոր և յիշէ Վարդան 'ի Նկրբալ Լուսաւորչին ասելով. «Մեծն Աբրահամ.. ծնանէր 'ի Կենտուրայ որդիս վեց զԵմրան և զԵկսան, զՄադան և զՄադիան, զՅսբոկ և զՍովէ. և ապանեալ Եմրանայ զԵկսան և զՄադիան, զոտնի հալածեալ Աբրահամու գալ է և զխառնակ ապականէ զկնի մեհեւ նորա, որոյ նման և երգարան ճնչա և որձակէ յարեւելս. յորոց ծնեալ Բահլ քաղաք, յանուն որդւոյ Եմրանայ. յորմէ և կոչեցաւ ազգն Պահլաւ»:

2 Խորենացին Բ. 90. երկուս ցեղս կոչէ զատոս. «Ահա տունդ և զածուս զարդարեաց երկուց ցեղից Պարթևաց և Պահլաւկաց»: Վասն զի զցեղն թագաւորական կոչէ ցեղ Պարթևաց, որ եկն առ մեզ 'ի ձեռն Վա-

## ՌՄԲՈՍԵԱՆ

Յիշատակեալ առ Եղիշէի 122. որ եղեւ մի 'ի գրողացն զնամակ առ Թէոդոս կայսր. ուր նախ յիշատակի Յովսէփ եպիսկոպոս, Վասակ մարզպան, և երրորդ՝ Ներշապուհ Ռմբոսեան: Թերևս Ռոփսեան:

## ՌՇՏՈՒՆԻՔ կամ ԸՌՇՏՈՒՆԻՔ

"Իսկ զՌշտունիս և զգողթնեցիս (ասէ Խորենացին Բ. 8. 'ի գրելն զնախարարութեանց զորս սահմանեաց Վաղարշակ,) գտի պատմեալ 'ի սիսականէն արդարև հաստուած. (բայց) ոչ գիտեմ թէ յանուն արանցն զգաւառն անուանեալ, և թէ յանուն գաւառացն զնախարարութիւնն կոչեցեալ": Որով յայտ առնէ թէ այս ցեղ իջանէ 'ի Սիսակայ յորդւոյ Գեղամայ, զորմէ գրեալ ունի Ա. 12: Վասն այսր ցեղի՝ թէ որպէս մարդպետն կամեցաւ կոտորել յաւուրս Տիրանայ արքայի, և զհարդ զերծեալ գտաւ մի միայն տղայ, ուստի սերեցան յաջորդքն նորա, տես զոր գրեալ եմք 'ի ցեղն Արծրունեաց: Յորոց և ոմանք՝ որպէս Բարզափրան և Զօրայ, եղեն և սպարապետք. այլ զայսցանէ՝ որպէս և վասն անցից Մանաճհրի և Զօրայի տես 'ի մեծ Հայս 164. և 172:

Երևելի անձինք այսր մեծի տոհմիս բաց 'ի նախագրելոցս եղեն Մեհենդակ Ռշտունի, ընդ այլ երիս իշխանս, "մեծք և գլխաւորք նահապետք" յորջորջեալք 'ի Բուզանդայ Գ. 16: Եւ Թէոդորոս Ռշտունի 'ի սկիզբն եօթներորդ դարուն. որ և եղեւ հրամանատար ազգիս 'ի ձախող ժամանակի նորոգ երևելոց արաբացւոց. զորմէ Ասողիկ Բ. 3. "Իսկ իշխանն Հայոց Թէոդորոս Ռուշտունեաց տէր, որ շինեաց զԱղթամար կղզին՝ պատերազմեցաւ ընդ նոսա 'ի Կոգովիտ (ընդ իսմայէլեան զօրս որ յաւուրս յաջորդին Մահմէտի), և ոչ կարաց յաղթել. և եղեւ այս յամն Եզրի կաթողիկոսի": Համհուանէ սորա գրէ Յովհաննէս կաթողիկոս. "Բայց Թէոդորոս Ըռշտունեաց տէր գնայ ընդ իսմայելեան զօրուն յասորեստան իւրայովքն համազգօք,

զարշակայ, զորմէ գրեալ էր Բ. 68. իսկ զցեղն նախարարականն՝ կոչէ ցեղ Գահլաւեաց, որ եկն առ մեզ 'ի ձեռն Անակայ, մանաւանդ թէ 'ի ձեռն որդւոյն Գրիգորի և որդւոյ նորա, զորմէ գրեալ էր Բ. 74. և 80: Այլ արմատ երկոցունց ցեղիցս էր պարթևական, որպէս յայտնի եղեւ 'ի նախագրելոցս:

կանայց ։ Ի սերնդոց սորա զաւանեալք յիշատակեալ առ Ղազարայ 148. «Ի տոհմէն Ռոփսենից Բաբիկ և Յոհան»։ Ուր առ Եղիշէի 344. այլ ազգ յիշատակի. «յՌափսոնեան տանէն Բաբիկ և Յուսիկան»։ Նոյն թուին ընդ սոսա Առափսոնիք կոչեցեալքն առ Մեսրոպայ մէջ.

## ՍԱՀԱՌՈՒՆԻՔ

Այս անուն 'ի կրկին տեղիս Բուզանդայ Է. 35. գրեալ կայ Սահուռունի. թէպէտ և 'ի 37. գրի՝ որպէս և գրեն այլք Սահառունի։ Յիշատակի առ Մեսրոպայ մէջ. ընդ այլ նախարարս, որպէս և ուրեք ուրեք առ այլ պատմագիրս. զոր օրինակ առ Ղազարայ 252. «Երանելին Արձի 'ի տոհմէ Դիմաքսենից, և երանելին Քաջաջ 'ի տոհմէն Սահառունեաց եդեալ զանձինս 'ի վերայ ուխտին սրբոյ՝ պսակեցան» յաւուրս Յոհաննու Մանդակունւոյ։ Ի տոհմէ աստի էր «Բաս, որ նահապետն էր, ասէ Բուզանդ Է. 35. ազգին Սահառունեաց տոհմին, դայեակ սնուցիչ թագաւորին Վարազդատայ, կամեցաւ նա զգործ զօրավարութե սպարապետութեն Մուշեղայ յինքն յափշտակել 'ի նմանէ»։ Երևելի զսա Դաւիթ սահառունի յեօթներորդ դարուն. «Ի սմին յայսմիկ աւուրս, ասէ Յոհաննէս կաթողիկոս, կայսրն Հերակլ զԴաւիթ Սահառունի կուրապաղատ արարեալ իշխան Հայոց կացուցանէր, որ մեծաւ ճոխութե և յաղթութե բազմաւ քաղաքավարէր զիշխանութին ամս երիս»։ Ի տոհմէ սորին երևի՝ թերևս 'ի մայրենի տանէ՝ և Բուզանդ պատմագիր, ըստ որում գրի առ նմա այսպիսի ինչ 'ի Գ. 12. «Եւ զմերոյ տոհմի ազգի իշխանն Սահառունեաց»։ Թէպէտ և հայրենեօք համարեալ է Բուզանդ Փաւստոս այս՝ բուզանդացի յոյն, ոչ այնչափ բարեկամ ազգիս. որպէս յայտ է քաջ քննողաց զամենայն բանս նորա։

## ՍՈՒՐԷՆԵԱՆՔ

Ցեղ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի լուսաւորչին և մեծին Սահակայ, զորմէ տես զոր ինչ գրեցաք 'ի ցեղն Կամսարական և Պահլաւունիք. յաւել աստանօր և զայս պատմական գովեստ՝ զոր Արտաշիր Պարսից արքայ գրէ առ Վռամշապուհ թագաւոր մեր. «Ընկալայ զգրեալսդ որ ինչ վասն եպիսկոպոսին Սահակայ, և յիշեցի զերախտիս նախնեաց դորա, որք էին նահապետք Սուրենեան Պահլաւայ և

կամաւ յանձն առեալ զտէրութիւն իմոյ նախնեացն և համ-ատեանն Արտաշրի ... իսկ որդի սպանողին (Անակայ) Գրիգոր՝ զկեանս և զթագաւորութիւն կորուսեալ հիւան-դութեան Տրդատայ՝ վերստին ետ իւրով բժշկութեամբ. և ա-ռաւել առ ձեզ եղև երախտաւոր"։ Խորենացի Գ. 51։

## ՍՐԲԻԱՆՁՏԵԱՑՔ

Յիշատակեալ առ Ղազարայ 124. ընդ նահատակեալ ընկերս Վարդանանց. "Յազգէն Սրբուանձոյ երանելի Գարեգին"։ Իսկ առ Եղիշէի 174. յիշատակի "Խուրս Սրբուանձեանց"։ Առ Մեսրոպայ ժԶ. գրի Սրբուանձեայց։

## ՎԱՆԱՆԴԱՑԻՔ

Ովկզմնաւորութէ սոցա և զեւլուզակօղ բարուց գրեալ է մեր 'ի մեծ Հայս 431-435. ընդ ունիս զտանել զամե-նայն. սատանոր զայս միայն ունիմք ծանուցանել, զի ոչ ուրեք առ Խորենացւոյն գտանեմք վասն Վանանդացեաց կարգեալ նախարարութի, ոչ 'ի Վաղարշակայ և ոչ յայլմէ ու-մեքէ 'ի թագաւորաց. բայց 'ի յիշելն պատմագրաց մերոց զՎանանդացիս՝ 'ի կարգս նախարարաց գտանեմք զասեալ զնոսա և անուանեալ։ Զի Ղազար 75. 'ի յիշելն զնախարարս ասէ. "Եւ որք 'ի նախարարացն էին ժողովեալք տէրն Սիւնեաց Վասակ, և տէրն Արծրունեաց Ներշապուհ... տէրն Վանանդեայ Արաւան"։ Եւ 'ի 267. Սեպուհ կոչէ զոմն 'ի վանանդացւոց՝ որ է անուն սեփական նախարա-րաց. "Յարձակեալք նահատակեցան ... երանելին Առ-դէն Սեպուհն վանանդացի"։ Եւ առ Յոհաննու կաթո-ղիկոսի. "Քակէր յարքայէ զոմանս, և յայլոց ես նախա-րարացն Վանանդացեաց"։ Ի կարգս նախարարաց դասել ցուցանէ և այս բան Խորենացւոյն Գ. 56. "Ժողովեալ նա-խարարացն Հայոց հանդերձ զօրօք իւրեանց առն ընդ-դէմ Պարսից պատերազմ... յորում համօրէն Վանան-դացիք երևեցան նահատակեալ քաջութի"։ Վասն որոյ և Մեսրոպ ժԶ. յաւուրսն Բ. Արշակայ 'ի կարգս նախարարաց թուէ՝ Վանանդեանս կոչելով։ Յորմէ համարիմ նախա-րար կոչեցեալ զնոսա սակս գոլոյ տէր երկրի. որով ունէին և պատիւ տանուտիրական, որ է և նախարարական։ Ի վերջին ժամանակս թագաւորութեն Բագրատունեաց ըն-կալան և զանուն թագաւորական. բայց քանզի թագա-

ւոր անուանեալ ցեղն 'ի Բագրատունեաց էր՝ և ոչ 'ի սոցանէ, վասն որոյ ոչ եդաք 'ի կարգս Թագաւորօղ նախարարութեանց:

ՎԱՀՆՈՒՆԻՔ. ՎԱՀԵՒՈՒՆԻՔ

Խորենացին Ա. 30. յետ գրելոյ զՎահագնէ որդւոյ Տիծին Տիգրանայ, ասէ. «Եւ սորա են զարմք Վահնունիք»: Եւ 'ի Բ. 8. ասէ վասն Վաղարշակայ. «Բայց յորդւոցն Վահագնի գտեալ արս՝ որք ինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս, պատուէ մեծապէս 'ի ձեռս նոցա տալով զքրմութիւն, և կարգէ ընդ առաջին նախարարութիւնս, և անուն կոչէ Վահնունիս»: Այլ 'ի գիրս ոչ գտանեմք յիշատակեալ զայս անուն, բայց եթէ առ Մեսրոպայ Ժբ. առ որում ուրոյն ուրոյն յիշատակին Վահունիք և Վահեւունիք. որպէս և առ Թովմայի արծրունւոյ Դ. 6. և Ե. 3. յիշատակի Ապուսակ Վահունի: Այլ առաւել յիշատակեալն է Վահեւունիք. որպէս առ Ղազարայ 5. Տէրն Վահեւունեաց Գիւտ. զոր և 'ի 114. կոչէ իշխան Վահեւունեաց Գիւտ: Եւ առ Թովմայի արծրունւոյ Բ. 6. յիշատակի Խոսրով Վահեւունի, որ եկն յօգնութիւն Բագարատայ իշխանին Տարօնոյ. և Գ. 2. «Մուշեղ Վահեւունի՝ որ զտանուտիրական պատիւն ունէր»: Ի Բ. 6. յիշատակին Վահեւունիք, որք ընդ զօրացն Գուրգենայ արծրունւոյ գնացին ընդդէմ Բուղայի: Իսկ առ Եղիշէի 173. յիշատակի գունդն Վահեւունեաց:

ՏԱՇՐԱՑԻՔ

Խորենացին Բ. 8. այսպէս գրէ. «Զսեպհականութիւն Տաշրայ կարգէ Վաղարշակ 'ի զաւակացն Գուշարայ Հայկազնոյ». վասն որոյ ընդ տոհմս նախարարաց թուելով Ղազար յիշէ 'ի 148. «Ի տոհմէն Տաշրացւոց Վրէն»: Զոր Եղիշէ 344. գրէ «Յազգէն Տաշրացւոց Վրէն»: Իսկ 'ի 344. Ղազար կոչէ Տաշրայ իշխան Վրէն. և Եղիշէ 174. Վրէն Տաշրացի:

ՑՐՈՒՆԻՔ

Նախարարութիւն կարգեալ 'ի Դ. Արտաշիսէ. զորմէ գրէ Խորենացին Բ. 47. «Պատմի սորա 'ի նոյն աւուրս սերեալ ազգ և զօրդիսն Տուրայ, պատմենիս հզօր հանդերձ տառամբ, յանուն հօրն իւրեանց Տրունիս, ոչ վասն արութեան ինչ գործոց, այլ միայն վասն քսութե հօրն նոցա,

զոր առնէր 'ի տանէն արքային (Երուանդայ) առ Սմբատ. քանզի ընտանի էր Երուանդայ. սակս նորին և սպանաւ 'ի նմանէ»:

ՏՐԴԱՏՈՒՆԻՔ

Յիշատակեալ առ Եղիշէի 174. որք մնին 'ի գաւառն Վարդանայ: Նոյն երևի լինել ընդ Արպատունեաց անուան՝ որ է երեքտասաներորդ գաւառ վասպուրական. նահանգի. որ առ Մեսրոպայ ԺԷ. 'ի մերում օրինակի գրեալ կայ Արպատունեաց:

ՓԱՌԱՒԱԶԵԱՆ կամ ՓԱՌԱՒԱԶՆԵԱՆ

Յիշատակի առ Բուզանդայ Ե. 15. յասելն վասն սպարապետին Մուշեղայ. «Վանէր զամենայն աշխարհն Վրաց. և հանէր ընդ սուր զամենայն ազատս և զազգս նախարարացն զոր եգիտ. զՓառաւազեանն հրամանաւ տայր սպարապետն Մուշեղ հանել 'ի խաչ 'ի մէջ աշխարհին Վրաց»: Յայս բան աշխարհ Վրաց կոչէ զԳուգարս, զի Մուշեղ գնաց 'ի Գուգարս, որոյ բդեշխ ապստամբեալ 'ի Հայոց՝ միաւորեալ էր ընդ տէրութե՛ Վրաց, և կոտորածն եղև Հայոց նախարարաց, որք անդր հաւաքեալ միաբանեալ էին ընդ բդեշխին Գուգարաց: Նորին ազգաւ և այս ցեղ էր հայկազեան. յոր անուն և յառաջ իսկ գտանի յազգի մերում նահապետ նաև Թագաւոր 'ի ցեղէ հայկազանց Փառնաւազ կամ Փառնաւաս կոչեցեալ:

ՔԱՋԲԵՐՈՒՆԻ

Յիշատակի առ Ղազարայ 124. նահատակեալն ընդ ընկերս Վարդանանց «Յազգէն Քաջբերունեաց երանելին Ներսեհ»: Եւ առ Թովմայի արծրունւոյ Գ. 6. «Եւ այլք 'ի նախարարութեան վասպուրական իշխանին Սմբատ ապահունի, Գրիգոր Քաջբերունի». որք եկին յօգնութի Բագարատայ իշխանին Տարօնոյ: Տես և 'ի մեծ Հայս 126:

ՔՕՂԵԱՆՔ

Յիշատակեալ առ Եղիշէի 174. ընդ գաւառս Վարդանանց:

## ՕՐԲԷԼԵԱՆՔ

Սոցա ծագումն է 'ի Ճենաց . զորմէ գրէ պատմութիւն օրբելեան տպեալ 'ի Մադրաս գլ. ա. թէ յաւուրս Քեյքաւլուզ խոսրովու Պարսից թագաւորի խռովութիւն անկաւ 'ի Ճենաստան . զի 'ի մեռանել Ճենբակուր թագաւորին Ճենաց՝ թագաւորազունքն Ճենաց ընդ միմեանս մարտուցեալ, մի կողմն հանդերձ ընտանեօքն փախստեայ անկանի յախարհն Վրաց տեղի բնակութեան խնդրելով . տեսեալ աւագացն Վրաց զսոսա արս քաջակորովս և վայելուչս, "ետուն, ասէ, նոցա 'ի տուն բնակութեան և 'ի տեղի ամրութեան զանուանի ամուրն (զՕրբէթ, զոր 'ի վերոյ յիշէ), որ շինեալ էր ձեռամբն Քարթլայ . ետուն նաև զգաւառս բազումս, և զաւանս մեծամեծս, և զգերդս 'ի ժառանգութիւն նոցա : Այսպէս միամտեալ 'ի տեղւոջն բնակեցան 'ի յՕրբէթ . և վասն անուանն բերդին՝ յետ բազում ժամանակաց Օրբուլք կոչեցան . այսինքն՝ Օրբէթացիք ... որ մինչև ցայսօր սակս այսր պատճառի Օրբէլք կոչեցան ": Անուն գլխաւորի նոցա ոչ յիշատակի, այլ ասի լինել" այր յաղթողակ և պատշաճագեղ, ուժեղ և անձնեայ, երիտասարդ հասակաւ ": Առաջինն որ յիշատակի 'ի սոցանէ՝ է Լիպարիտն՝ այր անյաղթելի, յամի տեառն 958 : Յետ ժամանակաց խնամութ̃ խառնեալ ասէ զսոսա ընդ Հայս 'ի գլուխն Դ . " Եւ ծանիր զի սոքա խնամութ̃ խառնեալ էին ընդ թագաւորին Վրաց՝ և ընդ թագաւորին Հայոց կորիկեանց որք էին Բագրատունիք, և վասն այնր պատճառի առին 'ի նոցանէ զբագրատունի անուանսն . այսինքն զՍմբատ և զԻւանէն, որ է Յովհաննէս . բայց զԼիպարիտն և զԵլիկումն և զԲուրթէլս ունէին 'ի հին նախնեացն՝ որք 'ի Ճենացն եկին, նաև զայլ անուանսն առին 'ի Վրաց ":

### Սերունդ Օրբէլեանց :

Ի մեռանիլ Դաւթայ արքային Վրաց 'ի մէջն անդ երկոտասաներորդ դարուն, զմանկահասակ զորդի իւր Դեմնա յանձնեաց նախարարաց իւրոց, մանաւանդ իւրում սպարապետին Իւանեայ որդւոյ Սմբատայ Լիպարիտեանց 'ի տանէ օրբելեան . երդմնեցուցեալ զի 'ի չափ հասանել Դեմնայ՝ զնա կացուսցէ թագաւոր . այլ յորժամ Իւանէ ըստ ժամանակին հասանելոյ կամեցաւ թագաւորեցու-

ցանել զԴեմնա, Գորգէ եղբայր Դաւթի որ Թագաւորեալ էր 'ի վերայ Վրաց, կալեալ զԻւանէ և զԴեմնա՝ կուրացոյց զաչս նոցա. և Թշնամացեալ ընդ համօրէն ցեղին Իւանեայ՝ զամենայն զազգատոհմն նորա՝ այսինքն է զՕրբէլեանսն առհասարակ նաև զկանայս եւ սպանանել. “Հրամայեաց, ասէ, ջնջել զյիշատակ ազգին Օրբէլեանց 'ի պատմագրաց իւրեանց նաև յեկեղեցեացն. և ետ գրել զրոյց այսր պատասխանութեան ոչ որպէս եղեալ էր... և կարգեաց նաև նզովս՝ զի մի ևս յիշեսցեն զանուն նոցա, և մի Թողցեն 'ի նոցանէ զոք 'ի Վրաց աշխարհին. և եդ զայն կտակ չարի յիւրում գանձարանին. և այս եղև յամի տեառն 1177”:

Որոց ազգ 'ի գալստենէն Ճենաց մինչև ցայն ամ աւելի քան զհազար ամ լեալ հաշուէ. բայց զերծեալ մնաց եղբայր Իւանէի Լիպարիտ ձոյնեալ, որ առ Պարսիկս էր գնացեալ երկու որդովք, Ելիկումն և Իւանէ անուն, առ աթաբէկն Ելտիկուզ։ Լիպարիտ փութով վախճանեալ անդէն՝ որդիք նորա մնացին առ Պարսս։ Յետ մեռանելոյ Գորգեայ՝ Թամար դուստր նորա Թագաւորեալ՝ առ ինքն դարձոյց զԻւանէ զորդի Լիպարտին. որում, ասէ, “ետուն 'ի հայրենեաց իւրեանց զՕրբէլթ միայն, յորմէ ծնան որդիք. և այժմ նոքա են Օրբէլք”: Ելիկումն եղև որդի մի կոչեցեալ նոյնպէս Լիպարիտ, իսկ կին Ելիկումն՝ էր դուստր քեռ Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի[1]. յորժամ այս Ելիկումն մեռաւ 'ի պաշարման անդ Նփրկերտոյ՝ ուր գնացեալ էր ընդ Թաթարս, եթող որդի մի Բուրթէլ անուն. յայնժամ Սմբատ եղբայր Ելիկումն տիրեաց, զաւելին յամենեցունն, հանճարեղ, 'ի հինգ լեզուս խօսող, հայ, վրացի, ուղուր, փարսի և մուղալ, որ է Թաթար. և էր այր բարեպաշտօն, ասէ, “կանգնիչ և զօրացուցիչ վշտագնեալ ազգիս Հայոց”: Նա եղև սիրելի յոյժ Դաւթի Թագաւորին Վրաց, (որ էր որդի նախագրեալ Թամարայ Թագուհւոյն), որ և խնդրեաց 'ի նմանէ անհետ առնել զայն գիր որ վասն ջնջելոյ Օրպէլեան տոհմին, զոր Գորգէ գրեալ պահեալ էր 'ի գանձարանի իւրում. և այնպէս յուղեալ և գտեալ զայն գիր՝ ետ Սմբատ պատառել և 'ի հուր արկանել ձեռամբ նորին իսկ Դաւթի Թագաւորին։ Այս Սմբատ օրպէլեան Թէպէտ զօ-

1 Զի Ելիկումն յորժամ էր 'ի Նաւա-Հուամն՝ էառ իւր կին զդուստր Աշտասայ ուրումն՝ որոյ կին էր քոյր Ստեփաննոսի եպիսկոպոսին Սիւնեաց, որ գնաց 'ի ժողովն Հռոմկլայ:

բաւոր էր և սիրելի՝ բայց մանրդի մեռեալ յամին 1273. տիրեաց եղբայր նորա Տարսայիճ, այր անպարտելի 'ի մարտի, վասն որոյ և յոյժ սիրելի Աբաղա ղանին ։

Յորժամ Դեմետրէ դարձաւ յԱրղունն խանէն, «գնաց, ասէ գլուխ Թ. ընդ առաջ Տարսաիճն մեծամեծ պատուով և արքունական ընծայիւք մեծարեաց զԹագաւորն. և նա առեալ տարաւ զնա ընդ իւր յերկիրն աւագեան յԱյրարատ, և բազում Թախանձանօք բռնադատեաց զնա. և եդ աԹապակ (հայրիշխան) 'ի վերայ ամենայն տէրուԹե իւրոյ... և յանձնէ առնէր Տարսաիճն զաԹաբակուԹն աշխարհիս Հայոց. և զբազում գիւղսն և ողորմուԹն առնէր նեղեալ ազգիս Հայոց ,,։ Սա է որ 'ի 1280 ետ ձեռնադրել զորդի իւր զՍտեփաննոս 'ի քահանայ, որ ապա գնացեալ 'ի Կիլիկիա ձեռնադրեցաւ 'ի կաԹողիկոսէն Կոստանդեայ մետրապօլիտ աԹոռոյն Սիւնեաց, ուստի դարձաւ յամին 1287. որպէս պատմէ անդէն ։

Պարոնք Օրբէլեանց ։

Ի նմին պատմուԹե գլուխ Հ. գրի. « Իսկ պատիւ և բարձրուԹիւն ցեղին Օրբէլեանց 'ի տան Թագաւորին էր այս. լինել Սպասալար ամենայն աշխարհին Վրաց. և ամենայն գործակալք տանն արքունի ընդ ձեռամբ նոցին. ունել նաև սեպհական դրօշս երկոտասան, և ընդ իւրաքանչիւր դրօշաւ հազար այր. և զի սահմանն էր Թագաւորին սպիտակ լինել վառն՝ և կարմիր նշանն 'ի վերայ, հրամայեցին տոցա զկարմիր ունել զվառ, և սպիտակ նշան 'ի վերայ. և շրջեալ ('ի շրջիլն) առաջի Թագաւորին՝ և 'ի կանգնելն՝ ունել 'ի ձեռին զգաւազան առիւծագլուխ, և 'ի ժամ Ճաշոյն առանձին նստիլ 'ի բազմականացն՝ 'ի վերոյ քան զամենայն դէտէպաւլ նախարարսն 'ի վերայ բարձի, և ուտել զհաց արծաԹի սեղանով. նաև տոքա էին Թագադիրք Թագաւորին Վրաց ,,։ Եւ զարմանալի այն է, զի որպէս առ մեզ եկեալքն 'ի Ճենաց Մամիկոնեանք ընկալան զպատիւ սպարապետուԹե, մնոյն պատիւ ընկալան և եկեալքն առ Վիրս 'ի Ճենաց. յորմէ երևի սերնդեամբ ունել ազգին Ճենաց զքաջարտուԹի և զզօրուԹի ։ Եւ արդարև պատմուԹիւն օրպէլեան այնպէս ցուցանէ, Թէ Վիրք յետ տասներորդ դարու որչափ ինչ գործեցին 'ի պաշտպանել զերկիր իւրեանց ընդդէմ արշաւանաց արաբացւոց, Պարսից և Թաթարաց՝ զամենայնին գրեթէ 'ի

*ձեռն քաջաց օրպելեանց կարացին գործել, յորում ժա-
մանակի բազում ինչ ունէին գրաւեալ Վիրք 'ի սահմանաց
մեծին Հայոց ։*

### Երկիր Օրբէլեանց ։

*Նախնին գաւառ սոցա ասի լինել 'ի Վիրս . այլ եթէ Օրբէթ՝ ուր բնակեցանն՝ է Շամշուլտէ , որպէս ասէ պատմութիւն նոցա , յայնժամ բնակութիւն նոցա լինի 'ի հայաստան 'ի Գուգարս ։ Այլ թողեալ մեր խօսել զՕրբէթայ , զկնի բնակութիւն նոցա եղև 'ի Լօռէ , որ էր 'ի Տաշիր գաւառին Գուգարաց . բայց այն կողմանք գոլով յայնժամ ընդ տէրութեամբ Վրաց՝ նաև բնակեալ 'ի Վրաց բազմաց՝ ասին լինել 'ի Վիրս , որք և 'ի կողմանէ Վրաց թափէին 'ի ձեռաց Տաճկաց զքաղաքս և զերկրս հայաստանեայց ։ Իսկ առաւել զկնի՝ օրպելեանք 'ի Սիւնիս փոխեցան , տեարք եղեն բազում տեղեաց Սիւնեաց , ուր և խնամութեամբ խառնեցան ընդ Հայս , մի համարեալ ընդ նոսա ։*

*Թէ զիարդ եղև այս անհնարին՝ պատմէ պատմութիւն օրպելեան , զոր ընթերցուք համառօտելով ։ Ի գլուխն Ի. գրէ թէ յաւուրս Դաւթի Վրաց արքայի որդւոյ Գէորգեայ՝ մեծ սպարապետն Իւանէ օրբէլն ընդարձակեաց զսահմանս Վրաց . “Զի առին զՏփխիս 'ի Տաճկացն , և զՏաւուշ (որ է յՈւտի) , զԳագ , զԼօռէ և զԱնի յամի տեառն 1123 . վասն որոյ առաւել սիրեցաւ և պատուեցաւ 'ի թագաւորէն . և 'ի վերայ հայրենեաց իւրոց (որ էր Օրբէթ կամ Շամշուլտէ ,) տուաւ նմա 'ի թագաւորէն Լօռէ իւր գաւառաւն , և ագարակն 'ի տեղի գարպասի , նաև Շամշուլտէ որ էր հայրենիք նորին՝ վերստին տուաւ իւր գաւառաւն , և մեծ սիջիլով և թագաւորական մատանեաւն հայրենիք հաստատեցաւ նոցա ” ։ Այս Իւանէ և որդի նորա Սմբատ առին զխունանն , “որ 'ի բազում ամաց էր առ Տաճկացն . և այն ևս հաստատեցաւ հայրենիք նոցա յամի տեառն 1128 ” ։ Յետ մեռանելոյ Իւանէի , ասէ , “առնու զտէրութիւն նորա (օրպելեան) որդին իւր Սմբատ ” ։ Իսկ միւս Իւանէ որդի Աբուլէթի առնու , ասէ , և զԴմանիս ։ Ի նոյն Ի. գլուխն գրէ դարձեալ . “Այս Գէորգէ (արքայ Վրաց) էառ զԱնի քաղաքն յամի տեառն 1141 և զամենայն տունն Շիրակայ , և շնորհեաց մեծին Իւանէի Ամիր սպասալարին Վրաց , որդւոյն Սմբատայ օրբէլեանց . և եղև այնուհետև այն ևս նմա հայրենիք ” ։*

*Յորժամ յետ երկոտասաներորդ դարուն եղև կառա-*

րած օրպէլեան ցեղին զոր յիշեցաք 'ի վերոյ, և դէպ եղև Թամարայ Թագաւորել, փոխանակ օրպէլեանց որք ոչ էին մեծարեալ զորդիսն Սարգսի որդւոյ Զաքարիայ հայկազուն իշխանի՝ որք կոչէին Զաքարէ և Իւանէ, "Բարձրացուցանէ, ասէ 'ի գլուխն Ե. 'ի փառս և 'ի պատիւ զԶաքարէ, կացուցանելով 'ի տեղին օրբէլեանց՝ Ամիր սպասալար Վրաց. և տայ նմա զհայրենիսն օրբէլեանց զԼոռէ. և զեղբայրն Իւանէ կացուցանէ աթաբէկ 'ի վերայ աշխարհացն Հայոց և Վրաց, որք բազում ջանիւ թափեցին զաշխարհս 'ի Պարսից„ ։ Վասն որոյ յորժամ Թամար Թագուհին յետս դարձոյց 'ի Պարսից զԻւանէն, զՕրբէլթ ետ միայն, որպէս յիշեցաք 'ի վերոյ. զի Լոռէ սահմանօք իւրովք տուեալ էր նախայիշատակեալ Զաքարիայ։ Եւ յորժամ Ելտիկուզ աթաբէկ պարսիկ արձակեաց զԷլիկումն զեղբայր նախագրեալ Իւանէի՝ ետ նմա, ասէ, զերրորդն Երնջակայ, զՄաձուկ աւանն և զՆախիջևան. "Ապա յուղարկէ զնա, ասէ 'ի գլուխն Ե. բազում փարթամութ. և երևելի փառօք 'ի քաղաքն Նախիջևան. եկեալ այնուհետև Էլիկումն, և տիրեալ այնմ նահանգի՝ կոչէ առ ինքն զեպիսկոպոսն Սիւնեաց զտէր Ստեփաննոս որդի տեառն Գրիգորի„ ։ Զորոյ զքեռ զուստրն առեալ էր Էլիկումն յիւր կնութի, որպէս յիշեցաք 'ի վերոյ։ Սոյնպէս և գլխաւորն Պարսից Ալտան "էառ, ասէ 'ի գլուխն Է. զՎայոց ձոր և զԵղեգիս մինչև 'ի յԵրերոն գիւղն, որ է հանդէպ Գառնւոյ, և ետ զամենայն Էլիկումին, և ասէ. Թող առաջին և ոսկւով գնեցածն միապէս հայրենիք են մարդոյն. որդւարև՝ զոր ես որով խնով առի գաւառքս այսոքիկ՝ քեզ լիցին 'ի հայրենիս և ազգի քում... և ապա հաստատեցաւ այս լինել հայրենիք տանն և ազգին Օրբէլեանց„ ։ Աստի յայսմանէ յայտ է՝ թէ երկրորդ նորոգութի և զալուստ այսր ցեղի սկսեալ 'ի ժամանակաց անտի Թամարայ Թագուհւոյն եղև 'ի Հայս. զի սերունդք Էլիկմայ օրպէլեան 'ի Սիւնեաց աշխարհիս Հայոց բնակաւորեալ բազմացան, որպէս յայտ առնեն նախագրեալ տեղիք որք են 'ի Սիւնիս. իսկ Նախիջևանն՝ 'ի Վասպուրական. Նորին աղագաւ և վասն հայաստանեայց բազում պատերազմունս մղեցին։

Յայն ինչ դէպ լինէր մեռանել Էլիկումին՝ այլազգիք 'ի Նախիջևան պահէին զորդի Էլիկումին Լիպարիտ անուն, որպէս և զմայր մանկանն զկին Էլիկումին, այլ եպիսկոպոսին հնարիւք իմն գողացեալ զերկոսին տարաւ 'ի Վիրս. որում բազում շուք և պատիւ ետ Իւանէ աթաբէկն. և

տայ Լիպարտին անմնացական գրով զՀրաշկաբերդ իւր գաւառն, նաև զՎայոց ձոր, զյոլով գիւղօրէս 'ի Գեղարքունիս, 'ի Կայեան, նաև զԱղստև, և զայլ տեղիս Սիւնեաց. « Եւ կացուցանէին, ասէ 'ի գլուխն Ե. Թագաւորն (Վրաց) Լաշայ, և աթաբէկն Իւանէ զԼիպարիտն (զորդի Էլիկումին) կողմնակալ այսմ աշխարհի »: Որպէս և զմիւս իշխանն, ասէ, զՎասակ Խաչենեցի՝ կացուցին կողմնակալ 'ի Վայոյ ձորոյ գաւառին: Այսր Լիպարտի եղեն որդիք հինգ. յորոց հինգերորդն կոչէր Տարսայիճ. իսկ առաջին որդին Էլիկում ձայնեալ՝ փեսայանայր ազգին Մամիկոնէից:

Յետ այսորիկ դէպ լինէր Սմբատայ օրպէլեանն գնալ առ Մանկու խանն Թաթարաց, և տալ նմա 'ի պարգև զանգիւտ ակն յակինթ. Մանկու խանն փոխարէն այնմ՝ շնորհեաց Սմբատայ գրով վճռելով զամենայն երկիր զոր առեալ էր Աղանայ, որ ըստ մեծի մասին էր 'ի Սիւնիս. «Եւ ահա, ասէ 'ի գլուխն Է. այս կրկին հաստատուն եղև հայրենեաց նոցա. զի առաջինն Թրով առածն էր, որպէս ծառայ որ 'ի ձեռն Աղլան նոյինին. և երկրորդս արքայատուր, որպէս և գնոյ մեծագունի առեալ ընդ լաւատու գոհվարին»: Եւ արդարև այս մասն Սիւնեաց որ անկաւ 'ի ձեռս օրպէլեանց 'ի շնորհելոյ գլխաւորին Թաթարաց և Վրաց արքայի՝ անխնչափ սեփականեալ եղև հետզհետէ նոյն ցեղին օրպէլեանց, զի 'ի մեռանել Տարսայիճ իշխանին 'ի 1290, յորժամ որդիք նորա վիճէին 'ի վերայ իշխանութեան՝ Արղուն խանն Թաթարին, ազատք և եպիսկոպոսք Հայոց միաբան բաժանեցին 'ի մէջ նոցա զերկիրն իբրև հարազատ ժառանգութիւն իւրեանց. «Եւ այնպէս կային միաբանութք, ասէ 'ի գլուխն Թ. և վարէին զտէրութիւն այսր նահանգի մեծարգոյ և շքեղաշուք իշխանութեամբ. պահելով զաշխարհս զայս 'ի խաղաղութե, և զվանորայս 'ի շինութե. և զի յայսմ ժամանակի (յերեքտասաներորդ դարու) ամենայն աշխարհ աւերեալ և աւականեալ էր, և վանորայք խափանեալ էին 'ի պաշտամանց, և ամենեքին առհասարակ գերեալ 'ի տէրութե օտար՝ ատա զհանգիստ առեալ զետեղէին»: Սորին աղագաւ և Թովմա Մեծոփեցի յաւուրս Լէնկթեմուրայ յետ չորեքտասաներորդ դարուն զԲուրթել անուն զիշխանն յազգէն օրպէլեանց զտէրն Որոտան՝ կոչէ իշխան յաղթէս Մեծի:

## Ճիւղ Օրբէլեանց ։

Օրբէլեանք Թաղէին 'ի Նորավանս որ 'ի Վայոց ձոր, որպէս կարես տեսանել 'ի մեծ Հայս. և Թէ այլուր մեռանէր ոք 'ի նոցանէ, փոխէին մարմինն այսր բերէին. որպէս զմարմինն Էլիկումին բերին 'ի Մարտիրոսաց քաղաքէն՝ ուր մեռաւ. զօրպէլեանին Սմբատայ բերին 'ի Դավրիժէ. որպէս գրի 'ի պատմութե օրպէլեանց՝ գլուխ Ը. "Բերեալ 'ի Հայրենի գամբարանն սուրբ ուխտին Նորավանից. և աշխարհախումբ հանդիսիւ եդին 'ի տապանի ընդ հարս իւր"։ Թէպէտ և զկնի յայլ տապան փոխեալ ասէ, զոր շինեաց եղբայրն իւր Տարսայիճ, զորոյ մարմինն ևս անդ 'ի Նորավանս ասէ հանգուցեալ, որ մեռաւ 'ի 1290։

Աստանօր 'ի վախճան հասուցեալ որ վասն պատմութե առանձին նախարարութեանց են բանք զանազանք, ըստ բաւականին համարիմք տուեալ տեղեկութի զնոցունց որչափ ինչ յիշատակին 'ի գիրս. Թէպէտ են և այլք սակաւք, բայց անյայտ անուանք են. զոր օրինակ Բարմայ իշխան Սադ անուն յիշատակեալ առ Մեսրոպայ է. Ծորաց իշխան Մարաւազ անուն յիշատակեալ անդէն. զորս աւելորդ համարեցաք 'ի կարգս այլոց արձանագրել։ Ի մէջ այսչափ բազմաթիւ նախարարութեանց զորս կարգեցաք, չորեքին գտանին երևելիք քան զայլս. յորոց երեքն ծագեալ են յօտար ազգաց, որք են Բագրատունեացն, Մամիկոնեանցն և Արծրունեաց. իսկ չորրորդն որ է Սիւնեաց, է 'ի բնիկ որդւոցն Հայկայ։ Բագրատունեանք և Մամիկոնեանք արդեամբք իւրեանց գտան պանծալիք յաշխարհաշէն գործս, այլ երկիր կամ կալուած նոցա նուազ. իսկ Արծրունեացն և Սիւնեաց երկիր բազմածաւալ և բազմաբեր, բայց արդիւնք գործոց նոցա նուազ։ Ի Բագրատունեանս և 'ի Մամիկոնեանս բազումք եղեն արք օգտակարք, բարեկիրթք և երկիւղածք, և սակաւք վատթարք և վնասակարք. իսկ յԱրծրունիս և 'ի Սիւնիս ապականագործք բազումք, որք յոլով չարիս ածին 'ի վերայ համօրէն հայաստան աշխարհիս։

Զնախարարութեանց որոց գտանին յիշատակք անուանց, նահապետաց, երկրի, պաշտաման և այլն՝ զորոց ցարդ խօսեցաք, իբրև 'ի պատկերի տեսցես 'ի յաջորդսդ։

# ԱՂԻՒՍԱԿ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ

| ԱՆՈՒԱՆՔ | ՆԱՀԱՊԵՏՔ | ԺԱՄԱՆԱԿ | ԵՐԿԻՐ | ՈՍՏԱՆ | ՇԻՐԻՄ | ՊԱՇՏՕՆ |
|---|---|---|---|---|---|---|
| Արեղեան | Արէլ | Առ Վաղարշակաւ | . . . . . . . . | . . . . | . . . . . | Մատակարար |
| Աղձնիք | Շարաշան 'ի Սա-նասարայ | Առ Վաղարշակաւ | Աղձնիք<br>Սիմ | . . . .<br>. . . . | . . . . .<br>. . . . . | Բդեշխ. կուսակալ Հա-րաւոյ |
| Ամատունիք | Մանուէ<br>Սամսոն | Առ Բ. Արտաշիսիւ | Արագածոտն | . . . . | . . . . . | . . . . . . |
| Անգեղտուն | Պասքամ<br>Տորք | Առ Վաղարշակաւ | Ծոփք գաւառ | Անգղ - | . . . . . | Կուսակալ արեւմտեան |
| Արծրունիք | Ադրամելէք | Առ Վաղարշակաւ | Վասպուրական | Հադամակերտ | Սուրբ Խաչ յՕ-ձի որ յԱղթամար | Արծուեկիր |
| Բագրատունիք | Շամբաթ<br>Բագարատ | Առ Վաղարշակաւ | Սպեր<br>Արշարունիք | Դարոյնք<br>Բագարան<br>Երուանդաշատ | Դարոյնք<br>Բագարան<br>Անի | Թագադիր |
| Գարդմանեան | Գարդման | Առ Վաղարշակաւ | . . . . . . . . | . . . . | . . . . . | Համբարակապետ |
| Գնթունիք | Քանանիտացի<br>Գնէլ | Առ Վաղարշակաւ | Ի շրջակայս ծովուն Գե-ղամայ | . . . . | . . . . . | Զգեցուցանող արքայի |
| Գնունիք | Գին 'ի Սենեքե-րիմայ | Առ Վաղարշակաւ | Շահապիւան<br>Աղիովիտ | . . . . | . . . . . | Տակառապետ արքայի |
| Գուգարք | . . . . . | Առ Վաղարշակաւ | Գուգարք նահանգ | . . . . | . . . . . | Բդեշխ<br>կողմնակալ հիւսիսոյ |
| Խորխոռունիք կամ Մալխազունիք | Մալխազ 'ի Խոռ-ռայ Հայկազնոյ | Առ Վաղարշակաւ | Խորխոռունիք | . . . . | . . . . . | Թիկնապահ |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Կամսարականք | Կամսար | Առ Տրդատաւ | Շիրակ Արշարունիք | Երուանդաշատ | . . . . . | . . . . . . |
| Մամիկոնեանք | Մամգոն 'ի Չենաց | Առ Տրդատաւ | Տարօն | Ողական | Վանք Գլակայ | Սպարապետ |
| Մարդպետականն | . . . . . | Առ Վաղարշակաւ | յԱտրպատականէ գՆախճաւան | Նախճաւան | . . . . . | Մարդպետ Հայր իշխան |
| Ռոստոմեկ | . . . . . | Առ Տիգրանու-հեաւ | Ռոստոմ 'ի Ծոփս | . . . . | . . . . . | Արքունի պահապանք |
| | | Առ Վաղարշակաւ | | | | |
| Ռշտունիք | Սիսակ | Առ Վաղարշակաւ | Ռշտունի գաւառ | Ոստան աւան | . . . . . | . . . . . . |
| Սիւնիք | Սիսակ | Առ Գեղամաւ | Սիւնեաց նահանգ | Շաղատ | Ուխտն Վահանաւ | Կողմնակալ |
| Ալկունիք | Աղուէ | Առ Տրդատաւ | Տարօն | Ողական բերդ | . . . . . | . . . . . . |
| Վարաժնունիք | Դատա<br>Վարժ | Առ Ա. Արտաշի-սիւ | Առ Հրազդան գետով | . . . . | . . . . . | Որսապետ |
| Օրբելեանք | Թագաւորազունք 'ի Չենաց. տուջին յիշատակեալն է Լիպարիտ | Յամի տեառն 958 | Վայոց ձոր և այլ բերդք 'ի Սիւնիս | Շամշուլդէ<br>Լօռի<br>Հրաշկաբերդ | Նորավանս՝ որ 'ի Վայոց ձոր | Սպասալար առ Վիրս |

# ԱՂԻՒՍԱԿ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ

## ՄԻՆՉԵՒ ՑԱՅԺՄ ՄՆԱՑԵԼՈՑ

| ՆՈՐ ԱՆՈՒՆ | ՀԻՆ ԱՆՈՒՆ | ՑԵՂԻՆ |
|---|---|---|
| Պակրատունի․ | Բագրատունիք․ | Ի Վիրս․ 'ի Ռուսիա․ |
| Ուռպէլեան․ | Օրբէլեանք․ | Ի Վիրս․ 'ի Ռուսիա․ |
| Սասունք[1]․ | Սանասունք․ | Ի Մուշ․ |
| Սղնախք․ | Բաղաց․ Սիսականք․ Փառիսոսք․ | Ի Ղարաբաղ․ |
| Մանրդցիք․ | Մամիկոնեանք․ | Առ Քուրդս․ |
| Սլիվանցիք․ | Սլկունիք․ | Առ Քուրդս․ |
| Ռոշկրցիք․ | Ռշտունիք․ | Առ Քուրդս․ |
| Մալախովկի․ կամ Մալխասովկի․ | Մալխազունիք․ | Ի Լիթուանիա որ 'ի Լեհ․ |
| Սաբեղայ․ | Գաբեղեանք․ | Ի Լիթուանիա որ 'ի Լեհ․ |

Այս նախնի ցեղք են՝ որք այժմ այսպէս անուանին, զորս 'ի նախնեաց իջեալս վկայեն և իշխեանք և շրջակայք, զորոց և զանանս յայտնի գիտեմք 'ի գրոց․ զոր օրինակ են Բագրատունեացն՝ որք 'ի Հայաստանեայց անցին 'ի Վիրս։ Եւ քանզի սկզբնաւորութիւն բազմաց 'ի ցեղից աստի սկսանի 'ի ժամանակէ անտի Վաղարշակայ՝ հնութիւն նոցա զանցանէ քան զամս 1900․ որով և լինին հին և նախնագոյն քան զամենայն հին ցեղս որք գտանին յեւրոպիա․ զի նոցա սկզբնաւորութիւն ոչ յառաջէ քան զմեծն Կարոլոս, որ թագաւորեաց յամի տեառն 800․ որպէս և անուանք ազնուականաց վենետիկեանց ոչ են յառաջ քան զհինգերորդ դար յետ Քրիստոսի։

1 Սոքա երեքին ամենեքին անխառն են, զի 'ի սկզբանէ անտի մինչև ցայժմ ամուսնացեալք յիւրեանց ազնուականաց են․ Թէ՛ յօտարաց ոք չկարաց մտանել անդր․ որպէս՝ սերունդք գոլով Սանասարայ․

## ՇԻՆՈՒԱԾՔ ՆԱԽԱՐԱՐԱՑ ՈՐ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

Գտանի 'ի գիրս ինչ[1] յիշատակութիւն զանազան եկեղեցեաց և վանորէից՝ զորս շինեցին նախարարք մեր յԵրուսաղէմ, մանաւանդ յաւուրս սրբոյն Տրդատայ և Լուսաւորչի․ յորոյ հարազատ քանիցն առեալ և մեր՝ ուրոյն ուրոյն կարգեսցուք յառաջիկայդ։

Ռոփայէ վանք Շիրականցոց, որ Կնկղաւորաց վանք յետոյ անուանեցաւ։

Արծրունեաց վանք, որ յանուն սրբոյն Գէորգայ։

Զարեհաւանի վանք արտաքոյ քաղաքին Երուսաղէմի։

Մամիկոնէից վանք, որ յանուն սրբոյ Կարապետին։

Գուգարաց վանք։

Ռշտունւոյ վանք, շինեալ 'ի նոյն կողմն՝ որ կոչի սուրբ Սարգսի և Բագոսի։

Սիւնեաց վանք, որ յանուն սուրբ Գէորգայ, զոր Տաճիկք քակեցին։

1 Այս գիր է իբր վերջին գլուխ անօրինական առեղեացն որ յԵրուսաղէմ․ զորս յետ մի բան միոջէ Թուելոյ՝ գնէ վերնագիր․ «Ի յԱգաթանգեղայ պատմութենէն՝ որ էր գաղափարեալ սուրբ Լուսաւորչին Գրիգորի, վասն վանօրէիցն որ յԵրուսաղէմ»։ Ի պատմութէն Ագաթանգեղայ ասկեղծն՝ այս մեզ իմանալ թէ զայս ցուցակ անուանց վանօրէից յուրոյն իմն պատմութեան էր գրեալ Ագաթանգեղոս․ զի ոչ գտանի յայժմեան գիրս պատմութեան նորին զոր ունիմք։ Եւ ապա սկսանի․ «Ի ժամանակս Թագաւորութեան Տրդատայ և 'ի հայրապետութեան սրբոյն Գրիգորի Լուսաւորչին՝ մեծամեծք Հայոց շինեցին վանորայս 'ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ․ որոց անուանք վանօրէիցն են այսոքիկ»։

Եւ չեն ինչ զարմանք զանազան եկեղեցիս շինելն յԵրուսաղէմ մերոյն Տրդատայ և Լուսաւորչի և նախարարացն, քանզի 'ի սկզբան անդ զարմի քրիստոնէութեան մերոյն յայտնի է թէ ունէին առաւելագոյն իմն եռանդն աստուածպաշտութեան, և փափագ երթալոյ և պատուելոյ զտեղիս սրբազան ուր կոխեալ էր և շրջեալ մարմնով Որդին Աստուծոյ, մանաւանդ զի առասնէին զօրինակն այսորիկ 'ի մեծն Կոստանդիանոս և 'ի Հեղինէ դշխոյն, որք լցին զԵրուսաղէմ նորաշէն եկեղեցեօք․ նա զնոյն ինքն զԿոստանդիանոս կարծեմ լեալ յորդորիչ մերոյն Տրդատայ իբրև իւրում մտերիմ բարեկամի՝ և իւրոց նախարարաց 'ի շինութիւնս։ Դժար է եւս համարել, թէ առ ջերմեռանդն փափագանաց բաղձումն ուխտաւորաց 'ի մերոց հայկազանց յաճախէին գնալ անդր․ և նմին իրի դէպ լինէր այլ և այլ նախարարաց զանազան վանորայս շինել 'ի դիւրութիւն բնակութեան ուխտաւորաց իւրաքանչիւր ցեղից յուրոյն ուրոյն վանս։

Այլ չէ պարտ այնպէս իմանալ, թէ այս ամենայն վանորայք 'ի վերոյ յիշատակեալք առ հասարակ 'ի ժամանակս Տրդատայ և Լուսաւորչի շինեցան, զի ինքն իսկ անդամնօր յետ յիշելոյ զշինեալսն նախարարաց, զորս և դրաք 'ի վերոյ, զկնի ասէ․ «Այս ամենայն վանորայքս յԵրուսաղէմ 'ի սուրբ Լուսաւորչէն հաստատեցան, բայց յարեմս 'ի Ներսէսէ, զոր հրամայեաց շինել 'ի պատճառս աղօթից 'ի փրկութիւն հոգւոց․ զոր հայրապետանց անդրէն յե-

Րաշջերոսեանց վանքը, 'ի կողմն Գալիլեայ լերին։
Սահառունեաց վանքը, 'ի նոյն կողմանէ։
Մաղաղեաց վանքը, զոր այժմ Հոռոմն ունին։
Կողէայ վանքը, 'ի նոյն կողմն, զոր այժմ Հոռոմն ունին։
Սպանդունեաց վանքը։
Նշանունեաց վանքը, որ է աւերեալ։
Պետրջանոց վանքը։
Սեանեաց վանքը, յարևելից կուսէ։ Այլ վանք Սիւնեաց 'ի նոյն կողմն։ Այլ վանք Սիւնեաց 'ի ձորն Սարայի։ Չորրորդ վանք Սիւնեաց 'ի ձորն Յովսափաթու։ Հինգերորդ վանք Սիւնեաց, զոր Տաճիկք ունին։
Կողանդրոսայ վանքը, որ է 'ի նոյն կողմն։
Նշոլոյ վանքը, 'ի հարաւոյ կողմն։
Եւ այլ երեք վանք Աղուանից, զոր այժմ Տաճիկք ունին։
Տաշրացոց վանքը, որ յանուն սրբոյն Գէորգայ յԱրշակունեաց շինեալ։
Եւ այլ չորս վանք մեծամեծք 'ի Մամիկոնէից շինեալք։
Նմանայն բովանդակ եօթանասուն վանք շինեալ եղև յիշխանացն Հայոց 'ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, 'ի ժամանակս անօրինականացն Քրիստոսի, և յայլ յաստուածակոխ տեղիսն։

## ՏԻՐԱԿՑՈՒԹԻՒՆ[1] ՈՐ Է ԵՂԱՆԱԿ ԿԱՄ ԿԱՐԳ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՄԵՐՈՑ ԸՆԴ ՕՏԱՐ ՏԷՐՈՒԹԻՒՆՍ

### Ա. Երկրորդականութիւն և նախագահութիւն առ այլովք թագաւորօք։

Զառաջինն նահապետք մեր նաև թագաւորք զերկրորդական ունէին զպատիւ՝ ընդ դրացի թագաւորօք լեալ

1 Տիրակցութիւն՝ խմա որպէս Տիէէը-ճանջիա. որ է բառ յունական ածանցեալ 'ի բառէս փէէըօ՝ այս է կալնուլ. ուստի և փէէըճնա կոչեն զպատճէնս գլխաւորաց գաստառաանի կամ իշխանաւորաց, ըստ որում օրինակելոցն կրկնի բան սկզբնագրին։ Ի բառէ աստի առեալ արդի եւրոպականք Տէէըօճանջիա կոչեցին զայն զիշխանութիւն որ ուսուցանէ թէ զիարդ անկ է միոյ տէրութեան վարիլ ընդ միւս տէրութեան. և քանզի այս բերէ զմերձաւորութիւն, զհպատակութիւն և զդրակցութիւն ընդ միւս տէրութեան, վասն որոյ և մեք առաջի առեալ միով անուամբ կոչեցաք Տիրակցութիւն. զի արդարև դժուարին իմն էր այլ այդ միով բառիւ բացատրել։ Եւ ընդ սովին անուամբ յառաջ բերեմք զոր ինչ գտաք արտաբերել մերոց թագաւորաց ընդ այլ թագաւորս 'ի կառավարութեան մասին։

որք զօրաւորք էին. զոր օրինակ էր ասորեստանեայցն, ապա Պարսիցն ։ Ցայտ առնէ զայս պատմութիւն մերոյն Արամայ, որոյ թէպէտ տիրեալ 'ի վերայ Մադէսի գլխաւորի Մարաց՝ ինքն եղև նախադահ իշխօղ 'ի վերայ նոցա՝ 'ի հարկի կացուցեալ զաշխարհ նորա, որ էր Մարացն, մինչև ցկեանն Զարասպայ, իսկ նոքա եղեն երկրորդականք ընդ նովաւ, բայց այս անեալ միայն, ասէ Խորենացին ա. 13. մինչև ցթագաւորել Նինոսի 'ի վերայ Ասորեստանի և Նինուէի. զի ընդ տիրելն նորա 'ի վերայ ամենայն մերձակայ տէրութեանց, յուշ ածեալ 'ի միտ զմահ նախնոյն իւրոյ Բելայ 'ի Հայկայ, կամէր համել զքէն վրիժու, և "բառնալ ջնջել զամենայն ձեռս ներմանեալ յարանց քաջին Հայկայ,,։ Բայց երկիւղ 'ի սրտի ունելով ծածկէ առ ժամն զխեր չարութն, և հրամայէ մերոյն Արամայ "զայն իշխանութն (զոր ունէր) անկասկածաբար ունել, և համարձակութն տայ նմա վարսակալ ածել մարգարտեայ. և երկրորդ նորա կոչել,,։ Զայս պատիւ երկրորդականութե Արամայ ունէր և Արայ, զորմէ գրէ Խորենացի ա. 15. "Արայ տակաւ ամօք յառաջ քան զվախճանելն Նինոսի խնամակալեալ իւրոց հայրենեացն նոյնպիսում շնորհի առ ժամանակեալ 'ի Նինոսէ, որպէս և հայրն իւր Արամ,,։

Մ, յորպէս անեալ մինչև ցառաջին Արտաշէս. յորում ժամանակի նախագահութին էր առ Պարսիկս. այլ այս մերս Արտաշէս դոլով զօրաւոր՝ փոխեաց զամենայն. զորմէ այսպէս պատմէ Խորենացի բ. 11. "Ցառաջադէմ եղեալ՝ ոչ զերկրորդականն ունի գահ, այլ զաւագութն թելին ածէ. որում հաւանեալ յանձն առնու Արշական (Պարսից թագաւոր) տալ նմա զնախագահութիւն. քանզի էր այր հպարտ և պատերազմասէր . . . և զԱրշական ընդ իւրով ձեռամբ կացուցանէր թագաւոր Պարսից,,։ Այլ այս անեալ միայն 'ի ժամանակս իւր. զի բ. Տիգրան որդի և յաջորդ Արտաշիսի դարձոյց անդրէն 'ի Պարս. "Աղերսէ (ասէ Խորենացին բ. 19. վասն Տիգրանայ) 'ի սէր զԱրտաշէզ արքայ Պարսից յաղագս հպարտութե հօրն (զոր արար), հանելով 'ի նոցանէ զՆախագահութիւն. իսկ սա իւրովք կամօք զերկրորդականն ունելով ըստ կրաւանց՝ դարձուցանէ 'ի նա զնախագահութիւն. և 'ի հաշտութի ածեալ զԱրտաշէզ՝ առնու 'ի նմանէ զօր յօգնականութի իւրեանս,,։ Այսպէս մնացին նաև առ յապայս, որպէս յայտ առնէ Ագաթանգեղոս բ. յասելն զմեծէն Խոսրովայ. "Արդ իբրև յետ մահուն հասանելոյ դուժին այսորիկ առ Խոսրով թագա-

ւորն Հայոց, որ էր Երկրորդ տէրութեն Պարսից, զի որ Հայոց թագաւորն էր՝ նա էր Երկրորդ տէրութեն Պարսից »։ Եւ այսպէս թէպէտ երկրորդ էր մեր թագաւոր, բայց սիրով էին ընդ Պարսիկս, որպէս ունիմք գրել ստորև ։

Այլ որոց ծանօթ են պատմութե ազգիս՝ արժան է աստանօր զարմանալ, դիտաւ ածելով զկարգ ազգի միոյ երեւելոյ քաջագործութ. քան զայլ դրացից ազգս՝ որպիսի էր մերն, չերբե անցանել բնաւ 'ի կարգս առաջին և մեծամեծ տէրութեանց. այլ մանաւանդ լինել երկրորդ նոցա, և մնալ ընդ նախապատիւ տէրութ. նոցա ։ Զորոյ զպատճառն գտցեն լինել զերկպառակութե մերոցն՝ զորմէ ունիմք ճառել 'ի գլուխն Բարուց ։ Այս կորստական ախտ էր՝ որ ոչ թողոյր մերոց քաջ արանց զքաջութի իւրեանց 'ի վար արկանել 'ի յառաջադիմութի ազգիս, այլ ստիպէր զնալ ծառայել սրտի մտօք օտար տէրութեց 'ի յառաջադիմութի նոցին ։ Նոքա 'ի ձեռն մերոց զօրանային, 'ի ձեռն մերոց ընդարձակէին զտէրութի իւրեանց. բայց անուն ոչ մերոցն համբաւէր, այլ նոցին ։

Ի բազմաց սակաւք գրեցան, այլ այն սակաւ դիպուածք զբազումս տան իմաստասիրել իմաստուն ընթերցողի. զի զի՞ կարէր իմանալ, թէ 'ի ժամանակս քրիստոնէութե Պարսիկք 'ի ձեռն մերոց նախարարաց յաղթէին զօրաւոր թըշնամեաց իւրեանց Քուշանաց, Հոնաց, Հեփթաղաց և այլոց, եթէ Եղիշէ և Ղազար չէին զայս յայտնեալ վասն պատմելոյ զմարտիրոսութի Վարդանանց և զհալածանս Պարսից. զի գլուխ քաջազուն նախարարացն այնոցիկ էին Վարդան և այլք ոմանք 'ի նախարարաց ։ Նոյնպէս չիմանայաք թէ 'ի պատերազմին Շապհոյ Պարսից թագաւորի ընդդէմ Հոնաց՝ մի միայն Բաբիկ որդի Անդոկայ Սիւնեաց իշխանին գտաւ՝ որ կարաց զերծուցանել զՇապուհ 'ի ձեռաց Հոնանդուր հսկային՝ յորմէ դողային ամենեքին, եթէ չէր պատմեալ Գեւորգ քերթող, յորմէ առնու Ստեփաննոս օրպէլեանն ։

Այլ նաև 'ի հին մեր հասնելով զպատմութի ազգիս՝ ըստ այսմ չիմանայաք բնաւ, թէ հուչակաւորն այն Կիւրոս որ երարձ զհզօր տէրութի Մարաց՝ 'ի գլուխ տարաւ զայն 'ի ձեռն մեծին Տիգրանայ, որ ահագին քաջութե սպան 'ի մենամարտութե զայրն վիշապանման զԱժդահակ վերջին թագաւոր Մարաց. և յայնմհետէ կարաց Կիւրոս կանգնել զմեծազօր տէրութի Պարսից. զայս ամենայն ոչ իմանայաք ասեմ, եթէ Մարիբաս՝ յորմէ և Խորենացին՝ չէին

'ի վեր հանեալ զճշմարտութիւն, այլ մնայաք 'ի խաւարի յունականն կեղծեալ առասպելախօսութեան պատմագրաց։

Յայտնանէ իմանամք թէ և ոչ զբարեկամեալսն տէրութեան կարէին բառնալ և տիրել, եթէ մեր քաջազուն նախարարք ընդ թագաւորին մերոյ ոչ գնային յայն պատերազմ յօգնութիւն. զոր և Երեմիա մարգարէ ծնէ. 27. որպէս զազգս քաջ հրաւիրէ 'ի մարգարէութեան իւրում դալ առ 'ի բառնալ զԲաբիլոն։ Եւ այսպէս անշուշտ հաւանեալ եղեալ է իմ 'ի միտ՝ թէ բարձրանալն այսոցիկ երեցունց մեծամեծ տէրութեանց՝ Պարսից, Մարաց և ասորեստանեայց, եղև յաւէտ 'ի ձեռն մերոյ, որք օգնով ձար անլուր քաջութ ծառայէին օտար տէրութեանց՝ լինելով զինուոր և զօրապետ 'ի բանակս նոցա. բայց որոյ էր տէրութիւն, նորա լինէր և անուանն. վասն որոյ և ոչ ոք յիշէր թէ այս ոք հայկազուն արար զայս ինչ և զայն քաջութիւնն։ Չյիշատակս այսոցիկ միայն 'ի ժամանակս կայսերաց Յունաց գտանեմք, և զայն գոյժն ինչ. թէպէտ և ծառայութիւն նոցա 'ի դրան կայսեր բազում էր, մանաւանդ 'ի պատերազմունս որ ընդդէմ Բուլղարաց։

### Բ. Բարեկամութիւն կամ դաշնադրութիւն ընդ այլ թագաւորս։

## ԸՆԴ ՀՌՈՄԱՅԵՑԻՍ

Մեծ էր բարեկամութիւն թագաւորաց մերոց և մտերիմ և սերտ ընդ հռոմայեցւոց յաւուրց անտի քրիստոնէութեան, քան զոր ընդ այլ տէրութիւնս կալան։ Քանզի Տրդատ 'ի մանկութեան 'ի մէջ հռոմայեցւոց դոլով սնեալ, ապա 'ի ժամանակս լուսաւորութեան երկոքին նորահաւատ թագաւորք Տրդատ և Կոստանդիանոս՝ առանձին իմն մտերմութիւն կալան ընդ միմեանս, դաշն եդեալ մշտնջենաւորելոյ 'ի նոյն. որոյ գլխաւոր պատճառ եղև երթալն Տրդատայ 'ի Հռոմ, և անձամբ կենակցելն երկոցունց թագաւորաց։ Մանաւանդ զի Ջենոբ յայտ առնէ, թէ պատճառ գնալոյն Տրդատայ 'ի Հռոմ՝ էր զայս դաշն դնելոյ աղագաւ. "Ապա խորհուրդ 'ի մէջ առեալ (ասէ 'ի պատճէնն երկրորդ երես 40), գնալ 'ի դուռն կայսեր վասն դնելոյ դաշինս խաղաղութեան 'ի միջի իւրեանց,,։ Կոստանդիանոս յետ ցուցանելոյ սէր սրբոյն Գրիգորի որ էր ընդ Տրդատայ, ասէ Ագաթանգեղոս յՃԻա. "Սոյնպէս և արքային Տրդատայ իբրև եղբօր սիրելւոյ սէր ցուցեալ ուրախութ



մեծաւ, առաւել վասն աստուածածանօթութեան նորա, զուգինս առնել կարէր ընդ նմա. միջնորդ կալեալ որ 'ի տէր Քրիստոսն էր. զի անշուշտ մինչև 'ի բուն (կատարածն) զհաւատարիմ սէրն 'ի մէջ թագաւորութեանցն պահեսցեն, զի ևս քան զևս արքայն Հայոց առաւել հաստատէր»: Առ 'ի հաստատուն լինել այսր գրոյ դաշանց, ասէ Վարդան. «Եղլին երկու արքայքն և երկու հայրապետքն Գրիգոր և Սեղբեստրոս զուգինս, կեալ և մեռանիլ 'ի միմեանց վերայ. զգիր ուխտին ասեն 'ի գրին թացին յահաւոր խորհուրդըն»[1]:

Յիշատակ այսր դաշանց անմոռաց մնաց 'ի Հայս. զի զկնի մահուան Տրդատայ իսկ և իսկ յուշ առնէ զայս ժողովական թուղթն եպիսկոպոսաց և նախարարաց մերոց առ Խորենացւոյն Գ. 5. «Եպիսկոպոսապետս Արթանէս և որք ընդ նովաւ եպիսկոպոսունք և ամենայն նախարարք Հայոց մեծաց, տեառն մերոյ Կոստանդեայ կայսեր ինքնակալի խնդալ: Յուշ լիցի քեզ պայման ուխտի հօրն քո Կոստանդիանոսի, որ առ մերում թագաւորին Տրդատայ»: Արդարև այսչափ համարձակութեամբ գրել զայս առ նոյն ինքն կայսրն ոչ կարէին, եթէ չունէին առ իւրեանս զնոյն թուղթ դաշանց զաւանդն հաստատուն: Զնոյն կրկնեն 'ի գրին և ժողովք նախարարաց առ Թէոդոս կայսր, զոր բերէ Եղիշէ 122. «Յովսէփ եպիսկոպոս բազում եպիսկոպոսակցօք իմովք, և ամենայն զօրք Հայոց, Վասակ մարզպան և Ներշապուհ ռմբոսեան, հանդերձ սպարապետաւս և ամենայն մեծամեծ նախարարօքս առ մեծանուն Թէոդոս կայսր... ունիմք զանսուտ յիշատակարան զառաջինն նախնեացն ձերոց... Նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ 'ի տղայութեան փախուցեալ 'ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց, ապրեալ մնաց յերկիրդ Յունաց (հռոմայեցւոց), և 'ի ձէնջ թագաւորեալ տիրէր հայաստան աշխարհիս»: Այնչափ ստոյգ և հաւաստի լինել ասէ այսմ՝ մինչև զայն գիր ուխտին դաշնադրութեան գտեալ և ընթերցեալ Յունաց յախժամ 'ի դրան կայսեր.

[1] Զայս նշանակագրել կամի և Կիրակոս յասելն. «Նոյնպէս և զմեծն Տրդատ մեծարեաց, որպէս վայելէր նորա քաջութեան, արեամբն Քրիստոսի և հաւատովն որ 'ի նա՝ զուգինս կապեալ անքակ ունել զսէրն 'ի մէջ երկուց ազգաց յետ նոցա»: Այս բան է որ յիշատակի և 'ի Թղթին Դաշանց: Իսկ ըզմիաբանութեան այսր զուգին նշանագրել կամի բան Ճառընտրի որ 'ի գովեստ Լուսաւորչին. «Զուգինս գնէին, կասկս գրէին, երդմունս անլուծանելիս երդնուին 'ի վերայ միմեանց, 'ի կեալ և 'ի մեռանել ասելով յազգ մինչև յաւիտեան»:

«Իբրեւ յանդիման եղեն մեծի թագաւորին (կայսեր Թէոդոսի), և ընթերցան գիր պաղատանաց Հայոց աշխարհին, և պչեղապակորանն նախանձեացն՝ բազում մատեանք ՚ի մէջ եկեալ ընթերցան, որ վասն ամենայն հաստատութե ՚ի ներքս գտանէին»[1]։ Եւ արդարեւ մեք ևս գտանեմք առ մատենագիրս հռոմայեցւոց ինչ ինչ յիշատակութիւնս վասն այսորիկ մինչեւ ցայժմ մնացեալս. զի Զոսիմոս գիրք Ե. գլ. 27. յայտնի ցուցանէ թէ թագաւորն Հայոց ունէր բարեկամութիւն ընդ կայսեր։ Ցուլիանոս ՚ի բանն Ա. առ Կոստանդ, կոչէ զՀայս՝ հին նիզակակիցս հռոմայեցւոց։

Ուստի քանի մեծ էր յայնժամ սէր և մտերմութիւն հռոմայեցւոց առ թագաւորն Հայոց, ցուցանէ և այս բարեբարութիւն որ գտանի յիշատակեալ ՚ի նոմոսական վճիռսն Կոստանդիանոսի, ուր գիրք ԺԱ. 1. ասէ. «Բաց յառանձին իրաց մերոց, և ՚ի կաթողիկէ եկեղեցեաց, և ՚ի տանէ բարեյիշատակ Եւսեբիոսի, և Արշակայ (արշակունւոյ) Հայոց արքայի, այլ ոչ ոք օժանդակեսցի ՚ի մերոց հրամանաց գլխաւոր սատարութիւնք ընտանեկան ընչից»։ Զբարեբարութիւս հռոմայեցւոց յիշէ և Սամուէլ ՚ի թուին յձէ. ասելով. «Մեծին Թէոդոսի բազում բարեգործութե պատմի յիւրում ժամանակի յաւէտ առ Հայս»։ Սոյնպէս և յետ կուրացուցանելոյ Պարսից զՏիրան զարքայն Հայոց, իբրեւ նախարարքն դիմեցին առ կայսրն լինել ընդ ծառայութեամբ նորա, միայն թէ օգնեսցէ նոցա, «Իբրեւ լուաւ, ասէ Բուզանդ Գ. 21. կայսրն զիրսն զայնոսիկ, մեծաւ փութով և բազում պատրաստութե ՚ի խնդիր ելանէր իբրեւ հասանելոյ. և օգնական և թիկունք լինէր աշխարհին Հայոց. մանաւանդ զի զուխտն յիշեալ դաշանցն կռելոց՝ զերդմանցն հաստատութե, միջնորդութե ՚ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և ՚ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր»։

Այնչափ էր սէր հռոմայեցւոց առ Հայս, մինչեւ մանաւոր անուամբ պատուել զաշխարհն մեր. որպէս և յուշ առնէ առ կայսրն նոյն ժողով նախարարաց առ Եղիշէի. Հռոմայեցիք, ասեն, առ հասարակ ՚ի ձեռն «ունելով զԵւրոպէ, անցին և տիրեցին ասիացւոց կողմանցն ... և յայնչափ մեծ իշխանութե Դաշնակիցս մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէին»։ Նոյնպէս և Տրդատ թագաւոր

1 Զայս ուխտ յիշէ և Շնորհալին. «Ի յուխտ Դաշանց միաբանեալ, Թագաւորացն երկուց եղեալ»։

մեր 'ի յիշեցն 'ի հրովարտակին իւրում զՅոյնս, յայս անուն կոչէ զՀայաստան՝ գրելով առ Ագաթանգեղոսի ծա̄. այսպէս. «Ամենայն Հայոց աշխարհիս իմաստունք Յունաց հասցէ Դաստափոնէրտեցդ[1] կայսերաց»։ Յայտ արարեալ թէ Յոյնք այնպէս կոչէին յայնժամ զՀայաստան։

Նորոգութի այսր դաշանց ուխտի եղև 'ի ձեռն մեծին Ներսէսի, որպէս յիշէ Բուզանդ դ̄. 5. ասելով. «Այս վասն խաղաղութե ուխտին միաբանութե դաշինն, որ էր աշխարհին Հայոց ընդ կայսերն Յունաց, դէպ եղև առաքել անդր (զմեծն Ներսէս) կամութ̄ մեծաւ արքային Հայոց (Արշակայ) . . . զի երթիցէ. 'ի մէջ կայսերն (Վաղէսի) և 'ի մէջ իւրեանց զուխտն հաւանութե և խաղաղութե նորոգեսցէ»։ Զնոյն կրկնէ և Մեսրոպ ժդ̄. յաւելլով. «Զի հաստատեսցէ զդաշինսն որ ընդ Հայք և ընդ Հոռոմք, զոր եդեալ էին մեծամեծք թագաւորացն սրբոցն Կոստանդիանոսի և Տրդատայ, և լուսաւորչացն սրբոյն Գրիգորի և սրբոյն Սեղբեստրոսի, զի անխախտ կացցեն ընդ միմեանս, և մի ստել պայմանի ուխտին»։ Վերստին նորոգեալ ասէ Կիրակոս առ դ̄. Գրիգորիւ կաթողիկոսիւ, որ էր յաջորդ ա̄. Բարսղի. «Իբրև եհաս, ասէ, նա յԵրուսաղէմ, ազգն Փռանկաց որ իշխէին քաղաքին՝ և պատրիարգ նոցա՝ առաւել սէր հաստատեցին ընդ ազգիս մերոյ վասն նորա. զի էր նա բարի տեսլեամբ, և գիտութ̄ սուրբ գրոց զարդարեալ. զհին դաշինս սրբոյն Գրիգորի և Տրդատայ, և Կոստանդնու կայսեր և Սեղբեստրոսի՝ վերստին նորոգեցին առ սովաւ»։

Այլ թողեալ զհետևեալ ժամանակաց անցս, վերջին թագաւորք Արշակունեաց, զոր օրինակ Արշակ, և յետ նորա Պապ արքայ, որ ամենեքին անմամն էր և զուրկ 'ի ձրից առաջնորդութ̄ և կենցաղավարութ̄ եղծեալ զայն դաշն արքունի յետ մեռանելոյ մեծին Ներսէսի՝ ընդ Պարսից արար միաբանութի. «Ըրջեաց զմիտս իւր, ասէ Բուզանդ ե̄. 32. թագաւորն Պապ և խոտորեաց զսիրտ իւր 'ի թագաւորէն Յունաց, և կամեցաւ խառնել զնէր իւր և առնել միաբանութի ընդ թագաւորին Պարսից. և ըս-

1 Թուի սխալ անուանս Դաստափոնէրտ կոչեցեալ, սակս ազատ կացուցանելոյ 'ի սեպհական անդ 'ի սովորական արոց արքունի, իւր իւր երկիր կայսերական, կամ կայսեր սեփական. որպէս և են դաստակերտք իւրաքանչիւր աւարց սեփականք։ Զայս ազատ լինելն 'ի տուրց աշխարհիս Հայոց՝ դէթ առ ժամանակ մի՝ մարթ է իմաստասիրել և 'ի վերոյգրեալ վճռոյ Կոստանդիանոսի որ 'ի Թէոդոսեան մատենին։

կամաւ Թէկուձա իւր առնել զարքային Պարսից, և արձակել անդրէն հրեշտակս յաղագս միաբանութեան ... Այլ Մուշեղ և ամենայն իշխանքն շատ եղեն 'ի մեծի արքային (Պապայ), զի մի քակեսցէ զուխտ յերկրէն Թագաւորութեան Յունաց. և ոչ անսաց նոցա, և յայտնեաց զԹշնամութիւն իւր զոր ունէր ընդ Թագաւորին Յունաց ,,:

Նոյնպէս ահա էանց ընդ համաձայնեցին ժամանակ արշակունի Թագաւորաց յետ Տրդատայ; և ժամանակ իշխանացն պայազատելոց յետ բառնալոյ Թագաւորութեան Արշակունեաց: Իսկ 'ի ժամանակս Բագրատունեացն առաջին Թագաւորքն նոցա յոյժ սիրով եղեն ընդ կայսերս. զոր օրինակ գրէ Յովհաննէս կաթողիկոս վասն Ա. Աշոտոյ, և Վասիլ կայսեր. "Այլ և մեծ կայսրն Յունաց Բարսեղ ոչ փոքր ինչ պայմանս խաղաղութեան և նուաճութեան և սիրոյ հաստատէր ընդ արքային մերոյ Աշոտոյ. որպէս սիրելի զնա անուանելով, և հաղորդակից կացուցանելով յամենայն Թագաւորութիւն ,,: Նոյնպէս և Ա. Սմբատ արքայ, զորմէ գրէ Յովհաննէս կաթողիկոս, թէ "ըստ հայրենի կարգացն ուխտի, ոչ զատանէր զինքն 'ի սիրելեաց մտերմութեան կայսերն Հոռոմայեցւոց Լևոնի ... որպէս սիրելի՝ կայսր զՍըմբատ իւր անուանէր սիրալիր դաշամբք ուխտից ,,: Զկնի պատմէ զսէր և զփոխախնամել կայսերն. "Թագաւորն Հոռոմոց Լևոն ոչինչ սակաւ նախախնամէր զարքային Սմբատայ, իբրև զորդի սիրելի անքակութեամբ ընդ նմա բերելով ուխտ միաբանականն սիրոյ ... Իսկ և Սմբատ ... հաստատէր զդարձ փոխարինին առանձնապատիկ յաւելուածով իբրև վեհագունի քան զինքն և հօր հարազատի ,,: Նոյն սէր և մտերմութիւն մնաց 'ի մէջ Բ. Աշոտոյ, և 'ի մէջ Կոստանդեայն Պերփիւռածնին կայսեր, որ հրաւիրեաց զԱշոտ գալ 'ի Բիւզանդիոն, որ և "երթայ անդր, ասէ Յովհաննէս կաթողիկոս, 'ի հանդիպումն մեծի կայսերն, և անդ առ 'ի նմանէն մեծավայելուչ գահիւ պատուի առաւել քան զամենայն դահերէցս ընկալեալ զփառաց փարթամութիւն, ոչ իբրև զայլս ոմանս պատուաւորս, այլ իբրև զԹագաւորազուն բողբոջ, գրեթէ ընդ իւրով իսկ կայսր զնա հարթայարմար կացուցանէր ,,: Եւ 'ի դառնալն նորա՝ բազում պատուով և զօրօք յուղարկէր:

Զնոյն գտանեմք յիշատակեալ առ Մատթէոսի իւր. և յաւուրս Գ. Աշոտոյ ողորմածին և Զմշկիկ կայսեր 'ի խաղալն նորա յարևելս. Նախ, ասէ, հրեշտակ կայսեր եկն 'ի Հայս, և զնաց պատմեաց նմա, թէ որպէս Հայք պատ-

բերեալ էին զօրս առ յօգնութիւն նորա, այսպէս ասէ. « Գնացին և յիշխանացն Հայոց զկնի հրեշտակացն Հոռոմոց՝ իմաստասէրն Լևոն, Եւստատ իշխանն Թոռնեցի, և այլ եպիսկոպոսք և վարդապետք, և աղաչէին սէր և խաղաղութիւն ընդ Թագաւորին Հոռոմոց, և ընդ Աշոտ արքային Հայոց .... մատուցանէին առաջի նորա զԹուղթն Վահանայ Հայոց կաթողիկոսին. և Թագաւորն առեալ ընկալաւ սիրով, և յոյժ մեծարեաց զԹուղթն և զբերողսն. և հաստատեաց ուխտ սիրոյ ընդ Հայս, և խնդրեաց զօրս յԱշոտոյ »: Որչափ սիրով եղեն առաջին Թագաւորք բագրատունիք ընդ հռոմայեցիս, նոյնչափ ատելութիւն և թշնամութի յաճախեաց 'ի վերջինսն. որոյ գլխաւոր պատճառ եղև մատնութիւն Անի քաղաքին, զոր Յոհաննէս Թագաւոր Հայոց իւրով ձեռագրով ետ կայսեր. և պատճառ այսմ եղև երկպառակութի և հակառակութի իշխանաւորաց մերոց, զորմէ գրեալ եմք 'ի գլուխն Պատմութե.

## ԸՆԴ ՊԱՐՍԻԿՍ

Յառաջին ժամանակս սէր մեծ երևի լեալ 'ի մէջ մեր և Պարսից, մանաւանդ 'ի սկզբանէ հիմնելոյ միապետութե նոցա 'ի ձեռն Կիւրոսի, որում մտերիմ դաշնակից եղև արքայն մեր մեծն Տիգրան, զոր յիշէ Խորենացին Ա. 25. « Բայց էր նիւթ այսպիսւոյ խոհականութե, (այսինքն՝ պատճառ այսպիսի երկիւղի և կասկածանաց Աժդահակայ էր) Դաշնաւորութիւն մերձաւորութեան որ 'ի Կիւրոսէ առ Տիգրան »: Զնոյն կրկնէ և 'ի գլ. 26. « Էր, ասէ (Մարիբաս,) յաւուրսն յայնս ոչ սակաւ ինչ վտանգ որ 'ի Մարացն Աժդահակայ, 'ի միաբանութէ Կիւրոսի և Տիգրանայ »:

Յետ տիրելոյ Արշակայ պարթևի 'ի վերայ Պարսից՝ նոյն մտերմութի տևստեսի սակս համազգի գոլոյ երկոցունց Թագաւորացս՝ յազգէն Պարթևաց և 'ի զարմէն Պալհաւկաց: Թէ քանի ընտանութի և զօրութի ունէին Թագաւորք մեր յարքունիս Պարսից՝ յայտ առնէ երթալն Արտաշրու, և խաղաղացուցանելն զարքայորդիս Պարսից, յորժամ 'ի խռովութե էին ընդ միմեանս վասն Թագաւորելոյ. և զոր ինչ կարգ եդ Արտաշր և օրէնս 'ի վերայ Թագաւորելոյ նոցա՝ մնացին միշտ անցին իբրև իւրեանց հօր ընտանեաց, և այնպէս խաղաղացան. զորմէ տես 'ի ցեղն Կամսարականն:

Նոյն զօրութի և ընտանութի յայտ առնէ և Թա-

դաւոր կացուցանելն մերոյն ՟Ը. Արտաշէսի 'ի վերայ Պարսից. “ Յետ մեռանելոյ, ասէ Խորենացին ՟Բ. 53. վերջնոյ Արշակայ թագաւորի Պարսից՝ թագաւորեցուցանէ մեր Արտաշէս զհօմանուն իւր զԱրտաշէս որդի նորին 'ի վերայ Պարսից աշխարհին ,,: Եւ յորժամ ոչ հնազանդեցան բնակիչք լերին Պատիժահար գաւառին Պարսից, նաև կասպից երկրին, յայնժամ մեր Արտաշէս արքայ առաքեաց զՍմբատ ամենայն զօրօքն Հայոց, որ հնազանդեցոյց զամենեսին: Այլ “ մինչդեռ այսպէս յաղթութեան կեանս ապահովանայր երկիրս Հայոց, ասէ Թովմա Արծրունի ՟Ա. 13. և ոչ ուստեք դոյր վտանգ կրել, բայց նեքանք այլոց հաստուցանէին տագնապս որպէս ընթեռնուքն, յեղակարծում ժամանակի հասանէ համբաւ մահուն Արտաւանայ, և տիրել Պարսից ստահրացւոյն Արտաշրի սասանականի ,,: Որ արդարև մեծ վնաս հասոյց տէրութե մերում. զի մեծն Խոսրով թագաւոր մեր 'ի մահ եղեալ զառաջին ցեղն պալհաւիկ զիւր համազգին անդրէն 'ի գահն նստուցանել, ինքն Խոսրով սպանաւ. և յայնմհետէ բարձաւ մտերմութիւն այն որ 'ի մէջ երկուց տէրութեանցս, և փոխանակ այնր տիրեաց թշնամութի:

Այս թէպէտ ընթեռնումք առ Բուզանդայ ՟Դ. 16. ՟Ա. Շապհոյ Պարսից արքայի որ եղև յաջորդ ՟Ա. Արտաշրի՝ առ ինքն կոչել զմեր ՟Բ. Արշակ արքայ, սէր մեծ ցուցանել, և բազում մեծարանօք պահել, և զտունն երկրորդական որ էր յԱտրպատական՝ Արշակայ տալ 'ի պատիւ, ուխտ դաշանց կռել ընդ նմա, այլ “երկեաւ, ասէ, թագաւորն Պարսից Շապուհ, եթէ գուցէ ստեսցէ սիրոյն նորա Արշակ արքայ Հայոց, և լիցի միաբան ընդ կայսերն Յունաց, և կամ կողմնակ ինչ լիցի 'ի նմանէ. և ոչ հաւատայր նմա, թէ պահեսցէ առ նա զմտերմութի սիրոյն, և կացցէ յուխտին միաբանութե ընդ նմա. վասն այսորիկ երդումն պահանջէր 'ի նմանէն, մինչև կարի ստիպեալ բռնադատեաց զնա. հաւանեաց, ասէ, և երդուիր ինձ յօրէնս քո, զի մի ստեսցես ինձ ,,: Այսպ պատմէ թէ որպէս 'ի Տիզբոնէ ետուն բերել քահանայս և աւետարան. յորոյ վերայ երդուաւ Արշակ հրապարակաւ, “ զի մի այլ ևս ստեսցէ նմա. այլ կացցէ յուխտի նորա, և պահեսցէ զդաշինս նորա ,,[1]:

1 Պարտ էր յայնժամ և Արշակայ չնեղելոյ Պարսից զաշխարհս Հայոց պահանջել զերդումն 'ի Շապհոյ վասն և ոչ զնախարարս, վասն չհաւատալոյ

Այս սէր Շապհոյ առաւել ևս յաւելաւ՝ յորժամ զօրք մերոյն Արշակայ յառաջ քան զզօրսն Պարսից 'ի վերայ յարձակեալ Յունաց՝ յաղթութ̃ մեծ գործեցին 'ի կողմանէ Պարսից, զորմէ պատմէ Բուզանդ Դ. 20. և ապա ասէ. «Տայր պատասխանի Շապուհ թագաւորն Պարսից իւրոց իշխանացն, և ասէ . . . եկայք, անքակ սէր առացուք մեք ընդ Արշակայ արքային Հայոց, զի մինչև յաւիտեան անբաժելին լիցի նա 'ի մէնջ: Տացեմ զդուստր իմ 'ի կնութ̃ Արշակայ արքայի Հայոց, և տաց նմա տուն մեծ. զի յորժամ գնասցէ 'ի Հայոց դաշտ առ մեզ, այնպէս տացուք նմա տուն, զի 'ի Հայոց մինչև 'ի Տիզբոն մինչև առ մեզ՝ համակ յիւրում տան ագցի, մինչև առ մեզ եկեսցէ»: Բայց անմիտ անձնասիրութ̃ միումն 'ի մերոց իշխանաւորաց՝ և հնարիմաց նենգութ̃ նորա՝ զայս մեծ սէր ոչ միայն 'ի գերև եհան, այլ մշտնջենաւոր ատելութ̃ եւս բորբոքել. սա էր Անդովկ Սիւնեաց նահապետ. որոյ 'ի լսելն զայս՝ կարծիս 'ի մտի եդեալ, թէ յառնուլն Արշակայ 'ի կնութ̃ զդուստր թագաւորին Պարսից, յայնժամ ունի արհամարհիլ իւր դուստրն Փառանձեմ որ լեալ էր կին Արշակայ, վասն այնորիկ ումեմն 'ի նախարարաց Պարսից ետ գանձ բազում, ասել առ Արշակ չհաւատալ բանից Շապհոյ, իբր զի առ դաւելոյ և առ սպանանելոյ զքեզ խորհեալ ասէ զայս ամենայն. որում հաւատացեալ ամենայնիւ Արշակայ առանց ինչ քննելոյ՝ յանկարծ թողեալ զամենայն կարասիս իւր 'ի բանակին, իւրովք նախարարօք փախստական լինի. «Եւ ոչ դարձաւ, ասէ, այլ անդրէն յերկիրն Պարսից: Ապա յայն օրէ հետէ և անդր յուզեցաւ պատերազմ գրգռութ̃ մարտից ճակատուց 'ի մէջ թագաւորին Հայոց Արշակայ, և 'ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ ամս աւելի քան զերեսուն»: Տես վասն այսր և 'ի գլուխն Կրօնի, 'ի հալածմանն Պարսից:

## ԸՆԴ ԱԼԱՆՍ

Դաշնադրութ̃ սոցա եղև յաւուրս Բ. Արտաշիսի մերոյ. «Զխաղաղութ̃ խնդրէր արքայն Ալանաց, ասէ Խորենացին Բ. 50. տալ Արտաշիսի զինչ և խնդրեսցէ. և երդմունս և դաշինս առնէր հաստատել մշտնջենաւորս, որ-

քսուն ամաց, մանաւանդ ուրացելոց անձանց, որով յերկուց կողմանց լինելով կարէր լինել հաստատուն. բայց այսպիսի խորհուրդք կենցաղավարութն հեռի էին յոյժ 'ի մտաց վերջին արշակունի թագաւորաց:

պէս զի մի՛ եւս մանկունք Ալանաց ասպատակաւ հինից եկեսցեն յաշխարհն Հայոց»։ Այսմ հաւանեցաւ Արտաշէս առնլով յիւր կնութիւն զդուստր արքային Ալանաց զՍաթինիկ. «Ես կոչեցեալ, ասէ, զդայեակն իւր Սմբատ, յայտնեմ նմա զկամս սրտի իւրոյ, առնուլ զօրիորդն 'ի կնութիւն իւր. եւ դաշինս եւ ուխտս հաստատել ընդ ազգի քաջացն»։ Վասն որոյ եւ յորժամ բռնաւոր ոմն կամէր թագաւորել անդ յԱլանս, առաքեաց Արտաշէս իբրեւ դաշնակից զՍմբատ զօրու ծանու, որ վանեալ զբռնաւորն, կացոյց թագաւոր նոցա զեղբայր Սաթինկանն ։

## ԸՆԴ ՀՈՆՍ

Յաւուրս Վարդանանց յիշատակի դաշնադրութիւն սոցա առ Եղիշէի 134. որք «դեսպանս արձակեցին, ասէ, յաշխարհն Հոնաց, և 'ի բազում յայլ ազգս բարբարոսաց, որք համագործք էին Հոնաց աշխարհին, բանս դնել ընդ նոսա, և ուխտ հաստատել՝ միաբանութեամբ առնել զխաղաղութիւն»։ Զկնդրելն Հայոց նեղելոց զգործադրութիւն այսր դաշնադրութեան յիշէ Եղիշէ 225. «Նաև որ յԱրձախայ մայրիսն անկեալքն էին փախստականք, ոչինչ լաւեալ դադարեցին խաղաղութեամբ, այլ հանապազ յղէին յաշխարհն Հոնաց, շարժէին և յորդորէին զզաւրսն Հոնաց, և յիշեցուցանէին նոցա զուխտն զոր եդեալ էր ընդ Հայս, և անսուտ երդմամբ հաստատեալ»։

Նաև յառաջ քան զայս դաշնադրութիւն պատմագիրք մեր ցուցանեն կապակցութիւն ինչ լեալ, մանաւանդ թէ իշխողութիւն 'ի վերայ Հոնաց. զի Խորենացին Բ. 85. 'ի պատմելն զմեծ պատերազմն Տրդատայ ընդ Բասլաց, ասէ՝ թէ «Տրդատ անուն ըստ հայրենի օրինաց պատանդս առեալ դառնայ»։ Որով յայտ առնէ թէ հին օրէնք էր հայրենական պատանդս առնուլ 'ի հիւսիսական ազգաց, որք են սարմատացիք։ Բուզանդ ուրեք զՀոնս օգնականս Հայոց լինել ցուցանէ, յասելն Դ. 25. «Ապա առնոյր Վասակ (զօրավարն Բ. Արշակայ թագաւորին Հայոց) զզաւրսն Հայոց. և զՀոնսն հանդերձ Ալանօքն կոչել յօգնականութիւն»։ Եւ քանզի Ալանք ըստ հին դաշնադրութեան պարտական էին օգնել Հայոց, որպէս յիշեցաք 'ի վերոյ, մարթ է կարծել թէ նաև Հոնք 'ի վաղուց պարտական էին օգնել Հայոց. 'ի բանից աստի Բուզանդայ զայս իմաստասիրեալ, որ միօրինակ խօսի զերկոցունց ։

## ԸՆԴ ԵԳԵՐՍ

Սոքա 'ի ժամանակս անդ առաջին աշխարհակալաց մերոց էին ընդ տէրութեամբ մերով, որպէս գրեալ եմք 'ի գլուխն Պատմութե, և ունիմք գրել նաև 'ի խօսելն զխաղ-տեաց. բայց յաւուրս Բագրատունեաց վասն առաջին Թագաւորին Աշոտոյ ընթեռնումք առ Յովհաննու կաթողիկոսի՝ միաբանութի արարեալ. « Այլ և զԹագաւորն ևս եգերացւոց 'ի սէր դաշնաւորութե ընդ իւր կապակցեալ, այնպէս նմա այցելէր, մինչ զի անընդհատ յորդորութե սակի զօրով, մտերմաբար պարտաւճար միշտ նմա 'ի ծառայութի բերէր»: Իսկ յաւուրս Ա. Սմբատայ՝ Կոստանդին Թագաւոր եգերացւոց Թէպէտ նախ արար ինչ ինչ ընդդէմ նորա, այլ զկնի սէր մեծ և հնազանդութի մատուցանէր նմա, զորմէ գրեալ եմք 'ի գլուխն Պատմութե. որոյ և նուն էր դուստր արքային եգերացւոց ըստ գրելոյ նորին վիպագրի: Այս դաշն սիրոյ էր՝ զոր յիշելով ը. Աշոտ որդին Սմբատայ, գնաց և օգնութի էառ 'ի նմանէ. «Չուէ, ասէ նոյն վիպագիր, առ Թագաւորն եգերացւոց, վստահս սրտին տուեալ, աներկբայ յուսով առեալ զնախնի սիրոյն դաշինս, զի Թերևս պտուղս ախորժելիս նմա առ 'ի նմանէն հնձեսցի. Իսկ Թագաւորն եգերացւոց բազմաբաշխ ձեռաց ձըրիւք, և սիրալիր սրտիւք ընկալեալ՝ ամենայնիւ յամենայնի յարակցէր նմա 'ի բոլոր սրտէ և յանձնէ և 'ի զօրուէ. և ապա զմեծն տուեալ նմա յօգնականութի, և զօր բազում գումարեալ»:

## ԸՆԴ ՎԻՐՍ

Սնդատին 'ի վաղ ժամանակաց գտանեմք զյիշատակութի առ Խորենացւոյն ը. 11. խնամութի առնելոյ մերոց ընդ Վիրս, առաջնոյ Արտաշիսին մերոյ տալով զդուստր իւր զԱրտաշամայ 'ի կնութի Միհրդատայ, որ էր բդեշխ Վրաց. Իսկ յաւուրս Թագաւորութե Բագրատունեաց՝ զուխտ խաղաղութե պահելոյ առաջնոյն մերոյն Սմբատայ ընդ կիւրապաղատին Վրաց Ատրներսեհի՝ պատմեալ գտանեմք առ Յովհաննու կաթողիկոսի. նա զի՝ ըստ նորին գրելոյ՝ ինքն Ատրներսեհ պահէր ընդ Սմբատայ. իսկ սա փոխարէն Թագաւոր զնա կացուցանէր, և երկրորդ իւրոյ տէրութե: Յիշէ նոյն վիպագիր և զխնամանալն ընդ Վիրս, զԳուրգէն զիշխանն Վրաց կոչելով աներ Աշոտոյ եղբօր ը. Աշո-

տոյ ։ Այլ և ըստ Աղուանից միշտ ընդ ձեռամբ մերոյ թա-գաւորին լեալ յայտ առնեն պատմագիրք մեր. յորոց և զօրս ժողովէին երբ և կամէին ։

## ԸՆԴ ԱՓԽԱԶՍ

Վասն այսր գաւառի յիշատակութիւն լինի յարձանագրի մար-մարաշէն եկեղեցւոյ, որ դեռ երևի առ ափն Կարուց գե-տոյ, գրեալ. "Շնորհիւն Աստուծոյ ես Մարիամ Աղուա-նից և Հայոց թագուհի, դուստր մեծին Սենեքերիմայ, թոռն Գագկայ Հայոց արքայի ,,։ Յորմէ անկ է իմաստա-սիրել զընտանութիւն նաև զազգակցութիւն մերոց ընդ նոսա ։

Զմտերիմ ընտանութենէ մերոցն ընդ Աղուանից՝ տես անդ, ուր առանձին խօսելոց եմք զնոցանէ արտաքոյ մա-տենիս ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

### Կառավարութեան իշխանական ։

ՅԵՏ բառնալոյ թագաւորութեան Արշակունեաց 'ի սկզբան հինգերորդ դարուն՝ իշխանք սկսան կառավարել զաշխարհ մեր եղեալք 'ի կողմանէ Պարսից, և միայն սա-կաւ ոմանք 'ի կողմանէ Յունաց, մինչև ցյառնել տէրու-թեան արաբացւոց 'ի սկիզբն եօթներորդ դարու. յայնմհետէ իշխանք 'ի վերայ աշխարհիս երբեմն 'ի Յունաց և երբեմն յարաբացւոց կարգեալ լինէին ։ Ի կարգեալսն 'ի կողմանէ Պարսից մեծաւ մասամբ 'ի նոցունց անտի էին. թէպէտ և 'ի Հայոց ոչ սակաւք ։ Իսկ 'ի կարգեալսն 'ի կողմանէ արա-բացւոց՝ սակաւք 'ի մերոց, և բազումք յարաբացւոց, մինչև 'ի մէջն իններորդ դարու եղեն թագաւոր Հայոց, որ այն ինքն է թագաւորութիւն Բագրատունեաց. բայց և յայնմհետէ միշտ գլխաւոր ոմն յարաբացւոց անտի առա-քեալ լինէր յամիրապետէն 'ի Հայաստան ։ Առաքեալ և կարգեալ իշխանքն 'ի կողմանէ Պարսից, Յունաց և արա-բացւոց՝ իւրաքանչիւր իւրեանց անուամբք անուանէին. որպէս և մեր հայկազունքն հայկական անուամբք ։

Արդ զի ոճով և ըստ կարգի կամիմք խօսել զկառավարու-թեան աշխարհիս մերոյ, նախ իբր զայս ժամանակ կոչեցաք կա-ռավարութիւն իշխանական, ուրոյն յօդուածով կարգեալ առ-

տանօր, յորում խօսելոց եմք զայլ և այլ անուանց իշխանաց զորս ետուն մերքն և Յոյնք և արաբացիք, յիշատակեալ նաև զայլ իշխանական անուանս՝ զորս ետուն Յոյնք ոմանց 'ի մերոց պատուոյ աղագաւ։

## Ա. Իշխանք տեղւոյն հայանուանք և հայկազեանք։

### ԻՇԽԱՆ

Ի վերջանալ անդ Թագաւորութեան Արշակունեաց՝ սովին անուամբ կոչեն պատմագիրք մեր զգլխաւորն՝ զոր կացուցանէին լինել գլուխ ազգին, որպէս է տեսանել առ Ասողկայ Բ. 2. յաւելն. "Ներսեհ կամսարական եկաց Իշխան ամս չորս"։ Գործ սորա էր վերակացու լինել Հայաստան աշխարհիս, և ժողովել հարկս. բայց առ զանազանութե միւս հասարակ իշխանաց՝ սահեալ է 'ի գիրս գործածութե ընդ յարակցեալ անուանցս Իշխան Հայոց, կամ Իշխան աշխարհին. "Իսկ զկնի Դաւթի Սահառունւոյ, ասէ անդէն, եկաց Իշխան Հայոց Թէոդորոս Ռուշտունի ամս քսան և հինգ"։ Եւ թէ. "Գրել 'ի Հայս հրովարտակ... և առ մեծն Թէոդորոս Ռշտունեաց տէր, որ էր Իշխան աշխարհին, և զօրավար զօրացն"։ Եւ դարձեալ. "Իսկ վաղճանեալ Համազասպայ՝ հայցէ Ներսէս (կաթողիկոս աշտարակեցի) նախարարօքն հանդերձ յամիրապետէն զԳրիգոր մամիկոնեան զեղբայր Համազասպայ, որ 'ի պատանդի իսկ էր առ նմա, կացուցանել Իշխան Հայոց... 'ի ՃԼԷ. Թուին Աշոտ բագրատունի Հայոց Իշխան եղև ամս երիս... 'ի ՃԽ. Թուին Սմբատ բագրատունի բիւրապետեան Հայոց Իշխան եղև ամս քսան... Իսկ զկնի Սմբատայ եկաց Իշխան Հայոց Աշոտ բագրատունի"[1]։

1 Որպէս վերջին արշակունի թագաւորք, նոյնպէս և այս իշխանք լինէին հրամանաւ կամ կայսեր և կամ Պարսից. "Իսկ առա, ասէ Յովհաննէս կաթողիկոս, վասն զի հաստատեալ եղեալ և եկեալ էր 'ի Յունաց տապկան Վարազտիրոց, առա մեծ հայրապետն Ներսէս (որ է Ներսէս Գ.) խնդրէ հաշտութեան նմա 'ի կայսերէ, և առաքել զնա կիւրապաղատ և հրամանատար հայաստանեայցս..... առա 'Ներսէս զորդի նորա զՍմբատ 'ի պատուի հօրն խնդրէ կացուցանել. և հայցէ ևս զԹէոդորոս Ռշտունեաց տէր 'ի զօրավարութեան հաստատել"։ Ըստ այսմ զՄժէժ Հերակլ կայսր կարգեաց զօրավար. յետ նորա Դաւիթ սահառունի հրամանաւ նորին Հերակլեայ լինի իշխան, որպէս գրէ Վարդան։ Եւ զՍմբատ որդի Վարազտիրոցի հրամանաւ Կոստանդեայ կայսեր եւ կիւրապաղատ կացուցանել Գ. Ներսէս կաթողիկոս, որպէս ասէ նոյն վկայագիր։

## ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆ

*Առ զանազանութեան միւս իշխանաց առաւել յարմարագոյն անուամբ Իշխանաց իշխան կոչեցին զառաջնորդ ազգին, որ է ասել՝ իշխօղ նաև 'ի վերայ այլոց իշխանաց. "Սա (ասէ Ասողիկ Բ. 3. վասն Ամիր Մումնի Ահմատայ 'ի յԺԸ.) կացուցանէ Իշխանաց իշխան զԱշոտ որդի Սմբատայ, որ եկաց իշխանաց իշխան ամս քսան և հինգ, մինչև յԼԸ. Թուականին, և ապա Թագաւորեաց»: Զորմէ գրելով Կիրակոս, զնոյն անուն և ինքն տայ. "Իսկ զկնի խոստովանողին Սմբատայ առնու զիշխանութիւն Աշոտ որդի նորա. սա ամենայն նախնեաց մեծագոյն գտաւ. զի զկնի սպարապետութեան Իշխանաց իշխան եղև. և ապա Թագաւորեաց յերկուց Թագաւորաց յիսմայելէն և յունականէն»: Բայց Ասողիկ Գ. 43. այլ պատուանուն ևս տայ իշխանաց իշխանին յասելն. "Եւ ամենայն իշխանք և ազատք Տայոց ելին ընդդէմ նոցա, և պարտեալ 'ի նոցանէ մեռաւ մեծ Իշխանաց իշխանն, որում Պատրիկարգն[1] կոչէին»:*

*Այլ յաղագս անուանս այսորիկ գիտելի է նախ, զի անուանս Իշխանաց իշխան սահմանեալ յետ վերջանալոյ Թագաւորութեան Արշակունեաց, Թէպէտ սեպհականեալ էր այնմ միայն որ գլուխ էր ազգին և աշխարհին, բայց գտանեմք յիշատակեալ նաև յորժամ ազգն Թագաւորս ունէր, այսինքն է՝ յորժամ պայազատէին բագրատունի Թագաւորք. զի ասէ Յովհաննէս կաթողիկոս յաւուրս Ա. Սմբատայ. "Վախճան կրէր 'ի կենացս այսոցիկ և միւս ևս եղբայրն արքայի Դաւիթ, որ էր Իշխան իշխանացս Հայոց, այր համեստ, և հարթ հաւասարութե՛ 'ի բոլոր գործառնութե՛ բարեաց»: Ապա ստորև գրէ՝ թէ Յուսուփ ոստիկան զերեց որդին Սմբատայ արքայի զԱշոտ "կացուցանէ Իշխան իշխանացս Հայոց»: Եւ Ասողիկ վասն Բ. Սմբատայ ասէ հաշտեալ ընդ եղբօր իւրում Գագկայ, և կարգեալ զնա Իշխանաց իշխան: Սոյնպէս և 'ի Գ. 40. յաւուրս Գագկայ Թագաւորին յիշէ զոմն ասելով. "Եւ կալանաւոր առնեն զքակուրեան Իշխանաց իշխան»: Եւ 'ի Գ. 41. "Եւ Գագկայ (Թագաւորին Հայոց որ յԱնի) յամենայն զօրացն Հայոց հատեալ գունդս վեց հազար յընտիր ընտիր վառելոցն, գումարէ 'ի ձեռն Իշխանաց իշխանին Վահրամայ որդւոյ Գրի-*

1 Վրիպակ Թուի գրչաց, փոխանակ գրելոյ Պատրիկ:

դորոյ. և Սմբատայ մաժիստրոսի որդւոյ Վահրամայ և մարզպանին Աշոտոյ պահլաւունւոյ »:

Նայս ամենայն յայտ առնէ՝ թէ յաւուրս Բագրատունի թագաւորաց Իշխանաց իշխան կոչիւր այն՝ որ յաւուրս Արշակունի թագաւորաց կոչիւր Երկրորդ արքայի. և որպէս երկրորդն արքայի զկնի կոչիլ սկսաւ Մարզպետ, Հայրիշխան [1], որք են անուանք յիշատակեալք 'ի վերջին աւուրս Արշակունեաց, նոյնն ապա յաւուրս Բագրատունեաց կոչիլ սկսաւ Իշխանաց իշխան. որ և յիրս տեսչութե՛ աշխարհի էր երկրորդ արքայի. զի քան զայս առաւել յարմարագոյն չունիմ ասել յաղագս Իշխանաց իշխան կոչելոյ 'ի ժամանակին՝ յորժամ նստէր թագաւոր Հայոց. և զի նմանանկ էր զհարկս ժողովել, որպէս և յայտ առնէ Յովհաննէս կաթողիկոս: Զայս անուն ոչ միայն առ թագաւորս մեր՝ այլ նաև առ թագաւորս Վրաց 'ի կիր առեալ ցուցանէ Ասողիկ Գ. 41. ուրանօր յետ յիշելոյ զԳուրգէն Վրաց թագաւոր՝ յիշէ անդ և զիշխանաց իշխանն Վրաց:

Երկրորդ՝ զի պատմագիրք զայս անուն տան նաև այլոց իշխանաց. զոր օրինակ Ստեփաննոս օրպէլեան տայ Սիսականն իշխանին, զորմէ գրեցաք 'ի նախարարութե՛ Սիսնեաց, տես անդ: Ասողիկ Գ. 13. տայ վասպուրականեայց, յորժամ գոյր անդ և թագաւոր. իսկ յԱնի թագաւորէր Գ. Սմբատ. «Որոց ընդդէմ երթեալ, ասէ, Իշխանաց իշխանն Վասպուրականի ամենայն զօրօքն, որում Աբլխարիպն կոչիւր, հրամանաւ Աշոտոյ թագաւորի Վասպուրականի, հանդերձ Գրիգորիւ իշխանաւ և Տիգրանաւ մարզպանաւ»: Եւ 'ի Գ. 15. «Եւ կիւռապաղատին Դաւթի գումարեալ զզօրսն Վրաց, և զԻշխանաց իշխանն զՋոջիկ տայ զկնի թոռնիկայ պատերազմել ընդ Վարդայ բռնակալին»: Սոյնպէս և Վարդան յաւուրս Բարսղի կաթողիկոսի, զՎասիլ կոչէ Իշխանաց իշխան, որ է Գող Վասիլն: Եւ Մատթէոս Ճ՞ղդ. 'ի թուին չխթ. ասէ. «Յայսմ ժամանակիս էր զօրապետն Հոռոմոց Իշխանաց իշխանն 'ի քաղաքն Մարաշ»: Զոր նախ զօրապետ կոչէ, ապա իշխանաց իշխան, և այն 'ի կողմանէ Հոռոմոց. զանուն սորա ստորև դնէ լինել Թաթուլ: Եւ Վարդան. «Ի չԺ. թուին Իշխանաց իշխանն արքայաշուքն Ջալալն դառն չարչարանօք կցորդեցաւ մահուն Քրիստոսի»: Եւ շարունակողն Թովմայի արծրունւոյ յաւուրս Սենեքերիմայ արքայի Վասպուրականի յիշատակէ յանեն վան

[1] Տես վասն այսր 'ի նախարարութիւն Մարզպետական և Անգեղտուն:

նահատակեալ Աբդլմսեհի արծրունւոյ. « Առեալ իւր ամուսին զդուստր Գրիգորի արեւելեան դուկի, եւ զԹագն մեծաշուք եւ ոսկեզերական Իշխանաց իշխանին Աշոտի, որ էր տէր եւ իշխեցող գաւառացն Ծաղկոտան եւ Կոգովտի եւ մեծի աւանին Անձղեղանն »։

Երրորդ՝ 'ի բանից Թովմայի արծրունւոյ Գ. 13 յայտ է, թէ յորժամ գերեալ իշխանքն 'ի Բուղայէ արձակեցան յաշխարհն իւրեանց յաւուրս ա̄. Զաքարիայ կաթողիկոսի, յայնժամ որ իշխան էր իշխանաց՝ տիրէր նաեւ 'ի վերայ Վրաց եւ Աղուանից. « Բայց քանզի, ասէ, հաւատացեալ էր վերակացութիւն աշխարհիս Հայոց Աշոտի, որ (էր) Իշխանաց իշխան, ձեռն 'ի գործ արկեալ նուաճէր զիշխանս Հայոց, զՎրաց եւ զԱղուանից, որ եղեւ իսկ »։ Սա է որ զկնի թագաւորեալ կոչեցաւ Աշոտ ա̄. որոյ արդարեւ զօրաւոր գոլով, նաեւ այլ կենցաղագէտ՝ սիրելի ամենեցուն, յառաջ քան զթագաւորելն յորժամ էր իշխանաց իշխան՝ կարող եղեւ իշխել եւ 'ի վերայ Վրաց եւ Աղուանից. բայց զայս չէ մարթ ասել զամենեցունց՝ որ լինէին Իշխանաց իշխան։

## ՀՐԱՄԱՆԱՏԱՐ

Որ իշխան իշխանաց կոչիւր 'ի ժամանակի դադարման թագաւորութեան Արշակունեաց՝ սակս իշխելոյ նաեւ 'ի վերայ այլոց իշխանաց, նոյնն այլով նշանակութեամբ սակս հրամայող գոլոյ 'ի վերայ ամենեցուն՝ կոչէր Հրամանատար. վասն որոյ Յովհաննէս կաթողիկոս զերկոսին անուանս եւս 'ի կիր առնու 'ի վերայ մի եւ նոյն անձին. « Եւ վասն զի, ասէ, 'ի ժամանակին Բագարատ բագրատունի Հրամանատար եւ իշխան իշխանացն Հայոց գտանէր »։ Եւ զոր Ասողիկ Գ. 2. վասն մամիկոնեան Գրիգորի գրէ՝ իշխան Հայոց կացուցեալ, որպէս եդաք 'ի վերոյ, զնոյն Յովհաննէս կաթողիկոս կոչէ Հրամանատար. « Իսկ նորա (Մուշեղայ ամիրապետի) լուրջ երեւոջ զխնդիրսն կատարեալ՝ տայ Գրիգորի զիշխանական պատիւն, եւ առնէ զնա Հրամանատար Հայոց »։

Պատմագիրք՝ որպէս իշխանին, նոյնպէս եւ հրամանատարին ընծայեն զպաշտօն հարկահանութեան. « Յաւուրս նորա (ասէ Յովհաննէս կաթողիկոս, այսինքն Յովհաննու մանդակունւոյ) պայազատէր զհայաստանեայս Վահան մամիկոնեան որդի Հմայեկի, եղբօրորդի սրբոյն Վարդանայ,

որ ... ժողովեալ զհարկ աշխարհիս՝ շինէ այնուիկ զեկեղեցիս աւերեալս 'ի Թշնամեաց,,: Որով յայտ առնէ Թէ էր հարկ ուրոյն կարգեալ վասն իւր, և ոչ վասն Պարսից. զի յայնմ ժամանակի Վահան չև ևս էր կարգեալ մարզպան 'ի դրանէն Պարսից, և ոչ իսկ կարէր յայն գործ ծախել զժողովեալ հարկս վասն Պարսից:

## ՀԱԶԱՐԱՊԵՏ

Անունս այս և 'ի ժամանակս արշակունի Թագաւորաց կայր, զոր յիշեցաք 'ի կարգս ներքին նախարարաց. իսկ յետ վերջանալոյ Թագաւորութեան՝ որք հրամանատար և իշխանաց իշխան լինէին աշխարհիս Հայոց 'ի կողմանէ Պարսից, քանզի իբրև հազարապետ էին նոցա կամ գործակալ, զայս անուն առին նոցա պատմագիրք, որ չէ իրօք այլ իշխանութիւն 'ի նախադրելոցն: Ըստ այսմ Խորենացին Գ. 67. ասէ վասն Վահանայ. “Բայց յաղԹեաց քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք և ճոխութ մարմնաւորաւ. վասն զի 'ի ժամանակին յայնմիկ 'ի նա էր հաւատացեալ Պարսից զՀազարապետութիւն Հայոց աշխարհիս,,:

Ըստ այսմ անկ է իմանալ և զոր գրէ Կորիւն վասն նորին Վահանայ, Թէ Մեսրոպ 'ի մերձենալ վախճանի իւրոյ օրհնեաց՝ որպէս զաշակերտն իւր՝ նոյնպէս և զիշխանս. “'Ի զինուորական կողմանն՝ առաջնումն Վահան անուն յազգէն Ամատունեաց, որ էր Հազարապետ Հայոց մեծաց,,: Այսպէս և Եղիշէ Գ. 2. զոր նախ հազարապետ կոչէ՝ ապա մարզպան անուանէ. “Խորով արքայն Պարսից զՍուրէն ոմն ազգական իւր՝ որում անուն էր Ճիհրովը Վշնասպ, հանէ 'ի Հազարապետութիւն Հայոց ... ընդ որ զայրացեալ Վարդանայ բռնեշխի ... սուսերահար առնէ զՍուրէն մարզպան,,: Որպէս և զիշխանութիւն Դաւթի կոչէ անունն Հազարապետութիւն. “Իսկ յետ սուսերահարն լինելոյ Սուրենայ՝ ոչ ևս պարսիկ մարզպան առաքէ 'ի Հայս Թագաւորն Պարսից, այլ 'ի խնդրոյ նախարարացն իշխան հաստատէ Հայոց զԴաւիթ Սահառունի, որ կալաւ զՀազարապետութիւն Հայոց ամս երեսուն,,:

Բ. Իշխան դրուած ՚ի կողմանէ Պարսից։

## ՄԱՐԶՊԱՆ

Ի թագաւորութեան Պարսից նշանակէ կողմնապահ. յայս անուն կոչէին Պարսիկք զիշխանն զոր առաքէին յաշխարհ մեր երբեմն ընիկ ազգաւ պարսիկ, և երբեմն հայկազուն։ Եւ որ լինէր մարզպան՝ գլուխ լինէր ամենայն իշխանաց, և ՚ի նա յանձնեալ լինէր վերակացութիւն համօրէն աշխարհին. “Եւ արքայն Պարսից (Յազկերտ, ասէ Կիրակոս,) զՎարդան Մարզպետ (որ է կողմնապետ) արարեալ Հայոց, տայ զաշխարհս ՚ի ձեռս նորա”։ Վասն որոյ մեղադրեալ առ Եղիշէի 104. ՚ի խօսելն ընդ Վասակայ՝ ասէ. “Արդ դու որ Մարզպանդ ես աշխարհիս՝ պարտ է քեզ հոգ յանձին ունել, գրել և ցուցանել յարքունիս զմիաբանութիւն բնութեան . . . քանզի ամենայն նախարարացն աւագ դու էիր, և զբոլոր աշխարհս քեզ յանձն արարեալ էր ծառայութիւ”։ Եւ առ Ղազարայ 145. Յազկերտ ասէ առ նոյն Վասակ Սիւնեաց տէր, որ եղև մարզպան. “Քանզի դու էիր Իշխան և գլուխ աշխարհին Հայոց”։ Վասն որոյ զնոյն անձն զոր մին կոչէ Իշխան, միւսն կոչէ Մարզպան. զոր օրինակ առ Ասողկայ Բ. 2. գրի. “Ապա եկաց Իշխան Հայոց Մժէժ Գնունի”։ Իսկ առ Վարդանայ. “Մարզպան Հայոց Մժէժ Գնունի, որ կալաւ զիշխանութիւն ամս երեսուն և մի”։ Նմանապէս առ Ասողկայ Բ. 2. Դաւիթ սահառունի կոչի Իշխան և Հազարապետ. զորոյ զգանս յիշեցաք ՚ի վերոյ։ Իսկ առ Կիրակոսի. “Դաւիթ սահառունի Մարզպան լեալ ամս երեսուն”։ Առ Ասողկայ գրի անուղէն. “Զկնի Դաւթի սահառունոյ եկաց Իշխան Հայոց Թէոդորոս Ռշտունի ամս քսան և եօթն”։ Իսկ առ Կիրակոսի. “Յետ Դաւթի սահառունոյ Մարզպան Հայոց Թէոդորոս Ռշտունի ամս քսան և հինգ”։ Դարձեալ այլուր. “Եւ Ներսէհ շինակացի եկաց Իշխան ամս երիս”։ Ապա գրէ. “Իսկ մարզպանութիւն Հայոց յետ Ներսեհի առնու Աշոտ ամս երիս”։

Զայս մարզպանութիւն յառաջին թագաւորաց Հայոց և մանաւանդ ՚ի Տրդատայ ասէ կարգեալ Թովմա Արծրունի Դ. 6. յասելն՝ թէ տա. Սմբատ եր Գուրգենի եղբօր Գագկայ Արծրունւոյ “զպատիւ Մարզպանութեան գահակալութեն, հաստատեալ ըստ կարգի բարձրաբերձութեն թագաւորացն Հայոց, մանաւանդ մեծին Տրդատայ”։ Այլ

զայս առ առաւելն պարտ է իմանալ վասն գործոյ հաղա-
բաղետութե 'ի վերայ աշխարհին՝ զոր ունէր մարզպանն[1].
որ և գայր առ Նախի Թագաւորօք մերովք, բայց այլով օրի-
նակաւ և անուամբ. բայց անուն Մարզպան անլուր է առ
Ագաթանգեղոսի և Խորենացւոյ. զի որպէս յայտնի գրէ
Ղազար 45. յետ 'ի բաց արկանելոյ զԱրտաշէս վերջին
Թագաւոր Արշակունեաց՝ առաքեցաւ մարզպան 'ի Պար-
սից. "Յայնմհետէ առաքեցաւ, ասէ, նախ 'ի Վռամայ ար-
քայէն Պարսից յաշխարհս Հայոց Մարզպան պարսիկ. և
յայնմհետէ եղեն իշխան իշխանաց անկեալք ընդ լծով
ծառայութե անօրէն ազգին Պարսից»:

Այս մարզպանք, որպէս ասացաք 'ի վերայ, երբեմն 'ի
Պարսից լինէին և երբեմն 'ի հայկազանց. այլ Անդեկան
մարզպան պարսիկ՝ որ զմեր Վահան Մամիկոնեան կամէր
մարզպան կացուցանել, յորդորէ զՎաղարշ Թագաւոր Պար-
սից առ Ղազարայ 309. 310. 'ի հայկազանց կացուցանել
մարզպան տվլին պատճառօք: "Նախ, ասէ, օտարազգի մարզ-
պան զիրս աշխարհին Հայոց ոչ կարէ ճանաչել 'ի սուղ
ժամանակի: Երկրորդ՝ "Մարզպանն պարսիկ որ երթայ
յաշխարհն (Հայոց), կնաւ երթայ և որդւովք, դրամք և
ոսկեղովք, ծառայիւք և աղախնեօք. և այնք ամենեքեան
թէ Արեաց տեառն զռոճիկ ուտեն՝ չէ սակաւ ծախսն, և
թէ զաշխարհին (Հայոց) ուտեն, շատ վտանգ հասանէ
աշխարհին մարդկան. իսկ նա (Վահան՝ հայկազուն) թէ
լինի՝ զիւր տանն համբար ուտէ, և ամենայն յարքունի
գանձ համարի, և արքունի իրաց օգուտ լինի »:

Յետ միանգամ այսպէս սկսանելոյ մարզպանութեն 'ի կող-
մանէ Պարսից՝ այնուհետև նոյն անուն և պատիւ 'ի մերումս
հանապազորդեալ էանց. զի տեսանեմք մարզպան կար-
գեալ նաև յորժամ սկսաւ Թագաւորութին Բագրատու-
նեաց, և յորժամ արաբացւոց ոստիկանք իշխէին աշխար-
հիս Հայոց. և միշտ 'ի մերոց հայկազանց: Զի որպէս
գրէ Յովհաննէս կաթողիկոս ա̄. Սմբատ արքայ բագրա-
տունի զԳուրգէն զեղբայր Գագկայ իշխանին վասպու-
րականի մարզպան կացոյց: Եւ Ասողիկ գ̄. 13. յաւուրս
է̄. Սմբատայ արքայի բագրատունւոյ 'ի յիշելն զվաս-

1 Նոյն գործ լինել յայտ առնէ Ասո-
ղիկ Բ. 2. հազարապետի և մարզպա-
նի՝ ասելով մի և նոյն անձին Սա-
րենայ առայ զերկոսին եւս անուանս ա-
սելով. "Եւ առաքս խաղաղ արքայ Պար-
սից զՍուրէն ոմն ազգակական իւր՝ որում
անուն էր Ճիհր Վշնասպ՝ հանէ 'ի
Հազարապետութե Հայոց. որ եկեալ կա-
լեալ զերկիրս մեր... զՍուրէն Մարզ-
պան յերկիրս կարգաւորէր»:

պաւրականերայս՝ յիշէ և զմարզպան անելով. « Հրամանաւ Աշոտոյ Թագաւորի վասպուրականի հանդերձ Գրիգորիւ Իշխանաւ, և Տիգրանաւ Մարզպանաւ »: Նոյնպէս և Մատ-թէոս Է. յիշէ 'ի Թուին նխԸ. յորում ժամանակի Թա-գաւորէր ա̄. Գագիկ Բագրատունի. « Յայսմ ամի, ասէ, եղև վախճան Սահակայ Մարզպանին՝ Վարաժնունեաց տանն »: Յաւուրս նորին ա̄. Գագկայ եղբօր ը̄. Սմբատայ զայլ ոմն մարզպան յիշէ նաև Ասողիկ Գ. 30. « Յայնժամ Մարզպանն Դեմետր որ էր իշխան 'ի Գագ բերդի 'ի սահմանս որն յայնոսիկ »: Իսկ առ Կիրակոսի նաև յերեքտասանե-րորդ դարու յիշատակեալ գտանեմք մարզպան. յորում ժամանակի 'ի վաղուց վերջացեալ Թագաւորութե Բագ-րատունեաց ա̄. Հեթում Առաջինեան Թագաւորէր 'ի Կի-լիկիա. « Զայս (ասէ, սովորութիւս Թաթարաց) պատ-մեաց մեզ Գրիգոր իշխանն որդի Մարզպանին, եղբայր Աւա-լան պէկին Սարգսի և ամիրային՝ յազգէ մամիկոնէիցն »:

Գործ և պաշտօն մարզպանին էր լինել վերակացու և հազարապետ աշխարհիս, մանաւանդ ժողովել զհարկս, որպէս յայտ է և 'ի բանից առաջի Թովմայի արծրունւոյ յառաջին Է. 11. վասն նախարարեալ Գուրգենայ, թէ բա-րւոք տնօրինէր, « յօժարաբար դեգերել զմարզպանութե արդիւնաւորել անաւանակչութե, զոր խոյակալն Տրդատ կարգադրեալ վայելչապէս հոգաբարձուձ զպատերազմա-կանն հարկանել հարկս ընդդէմ հինից արշաւանաց »: Բայց որպէս յայտ է 'ի բանից մերոց պատմագրաց՝ ոչ սոսկ զպատերազմականն միայն ընդդէմ հինից Թշնամեաց ժո-ղովէր մարզպանն, որպէս ասա գրէ, այլ զամենայն հարկս որոշեալս վասն դրան արքունի ժողովեալ առաքէր:

Արդ թէպէտ մարզպանին էր ունել միանգամայն ըզ-մարզպանութի և զվերակացութի կամ զհազարապետութի աշխարհիս, բայց գտանեմք երբեմն նաև առ այլ և այլ անձինս բաժանեալ, որպէս առ Ղազարայ 206. « Եւ ե-կեալք 'ի գաւառն Շիրակայ 'ի դաշտն՝ ուր բնակէր Մարզ-պանն Հայոց Ատրվշնասպ յոզմանդեան, և առ նմին Հազա-րապետն Հայոց Վեհ Վեհնամ »: Որպէս և հակառակ այսմ, մարզպանութի և սպարապետութի որք յայլ և այլ ան-ձինս էին բաժանեալ, յանձն Վահանայ մամիկոնեայ միացան: Զբաժանեալ լինելն յայտ առնէ այս բան Ղազարայ 211. « Ազդ եղև առ տէրն Բագրատունեաց Սահակ, զոր Հայք և զօրավարն Հայոց Վահան 'ի ժամանակին յայնմ մարզ-պան կարգէին Հայոց: Ասպետն Սահակ զմարզպանութին, և

Վահան զտէրութիւն Մամիկոնէից, և զսպարապետութեան Հայոց, որք նախ հաստատապէս 'ի վերնոյն հրամանէ և ապա 'ի Հայոց ընկալան զգործակալութիւն,,։ Իսկ զմիանալն յայտ առնեն այն բանք նորա՝ յորս զերկոսին ևս անուանս առեալ տայ Վահանայ. որպէս և 'ի Թղթ. 11. "Տէրն Մամիկոնէից Զօրավարն Հայոց և Մարզպանն,,։

Գ. Իշխանք ոստիկանք 'ի կողմանէ Արաբացւոց։

## ՈՍՏԻԿԱՆ

Յորժամ տիրել սկսան արաբացիք, ամիրապետ նոցա առաքէր զոմն իշխել 'ի վերայ արտաքին սահմանաց, և նա կացուցանէր զոմն 'ի վերայ Հայոց աշխարհիս. "Եւ տիրեաց, ասէ Ասողիկ Բ. 4. փոխանակ Մրուանայ Աբդլայ (ամիրապետ). և առաքէ զեղբայր իւր զմիւս Աբդլայ շրջել ընդ ամենայն աշխարհս իւրոյ իշխանութեան առնուլ հարկս... (սա) թողոյր հրամանատար Հայոց զեզիտ որդի Ուսամայի. և Եզիտ կացուցանէր իշխան Հայոց զՍահակ որդի Բագարատայ Բագրատունւոյ, այր գեղեցիկ տեսլեամբ, և ծանօթ երկիւղին Աստուծոյ,,։ Այս առաքեալ հրամանատարք՝ առ պատմագիրս մեր կոչին Ոստիկան, որ է վերակացու. Առաջին ոստիկանն եկեալ 'ի Հայս՝ եղև Աբդլայ յիշատակեալ յԱսողկայ Բ. 2. "Եւ եկեալ Ոստիկան 'ի Հայս Աբդլայ անուն՝ կալաւ զիշխանսն Հայոց և խաղացոյց 'ի Դամասկոս,,։

Տեղի մեծի ոստիկանին՝ ընդ որով էին միւս փոքր ոստիկանք՝ էր Ատրպատական, որպէս ցուցանէ Յոհաննէս կաթողիկոս յասելն վասն Ափշնի ոստիկանին. "Իսկ և իսկ ապա թագաւորութե̃ն նմա (տ. Սմբատայ) եկեալ մատուցանի յիշխանէ անտի յիսմայելեանն Ափշնէ որ յԱտրպատականի 'ի հրամանէ ամիրապետին իւրեանց,,։ Անդ նստէր նաև Դևդատ որդի Ափշնի, նոյնպէս և Յուսուփ ոստիկան. "Եւ ապա յուղարկեալ Յուսուփ յարքայէ (Սմբատայ) գնայ 'ի կողմանս Ատրպատականի,,։ Անդ նստեալ իշխէր ոչ միայն 'ի վերայ Հայոց, այլ նաև 'ի վերայ այլոց շրջակայ ազգաց. որպէս ցուցանէ այս բան նորին մատենագրի. "Ոստիկանն Պարսից, Հայոց և Վրաց և Աղուանից զՅուսուփ, զոր ինքնին իսկ էր կալեալ և ածեալ ամիրապետին, հայցէր արձակել 'ի պաշարմանէ

Դ. Իշխանք պետութեան 'ի կողմանէ Յունաց։

## ԿՈՒՐԱՊԱՂԱՏ

Անուն և պաշտօն՝ ածանցեալ 'ի բարբառոյ Հռոմայեցւոց, առ որս 'ի հնումն կոչէր Քուռա փալացիի [1], որ է հոգաբարձու պալատան։ Այս անուն 'ի գիրս Յունաց սուղ ինչ այլայլեալ կոչի Կուռոպալատէս։ Յայս անուն կոչէին զնա՝ որ ունէր զհոգ պալատան կամ արքունեաց, որպէս յայտ է 'ի բանից Եւագրեայ և Թէոփիլակտեայ Սիմոքատտայ. և առ մատենագիրս մեր կոչի Հազարապետ տան արքայի [2]։ Այլ յաւուրս Կոդինոսի 'ի հնգետասաներորդ դարու բարձեալ և խափանեալ գոլով անգէտ լինել առնէ զնիշս պաշտօնի կուրապաղատին։

Բայց կուրապաղատին պատիւ մեծ էր. որոյ սակի գաւազան 'ի ձեռին կրելով առաջին էր որ գնայր առ արքայիւ. մեծ էր և իշխանութիւն նորա, վասն որոյ և եղբարք կայսեր երբեմն անուանին զայն անուն. և Յուստինոս կրտսերն կուրապաղատ յորջորջէր նախ քան զլինելն կայսր 'ի 565։ Այլ թուով առաւելուին կուրապաղատք ոչ սակաւք. յորմէ յայտ է թէ շնորհէին կայսերք զայս անուն նաև հեռաւորաց ումանց առ 'ի պատիւ՝ որոց չէր ինչ գործ խնամ տանելոյ պալատան կայսեր [3]։ Որպէս և մերոց իշխանաց իսկ՝ յորժամ 'ի նոցանէ կարգեալ լինէին։ Վասն Սմբատայ Բագրատունւոյ, որ յետ յաղթութեան 'ի կռիւն Վարդանակերտի՝ բազում ընծայս և տաճիկ ձիս յաւարէ առաքացուց եւ տանել առ կայսրն, ասէ Ղևոնդ գլ. Է. "Եւ կայսրն ընկալեալ զայն նուէրն ... տայր բերել նմա պատիւ կուրապաղատութեան ըստ օրինի թագաւորաց. և նորա ընկալեալ զպատիւն

1 Որպէս գնէ Մէուրսիոս 'ի բառարանի յունական անուանց, նաև Փաբրիկիոս 'ի բառարանի անուանց Կեդրենոսի։ Նոյն ինքն Մէուրսիոս 'ի բառն Կուրոպաղատ 'ի թղթ. 486. յէջ Ը. գրէ, թէ որ առ Յոյնս Կուրոպաղատ կոչէր, առ գաղղիացիս Հազարապետ տան (մաժօռ դօմուս) ասացաւ, այսպէս Սէնէշալքօս։

2 Նոյն գործ էր և մերոց իշխանաց Մարդպետ և Հայրիշխան անուանելոց։ Տես 'ի Նախարարութիւն Անգեղտան, և Մարդպետականք։

3 Ոմանք յորպէս Հայոց զանունն յիշատակեալ 'ի գիրս 'ի գործ առաւաւորութ պալատան կայսեր, առանց ունելոյ զանունն Կուրապաղատ. որպէս էր Սմբատ յիշատակեալ 'ի Ա. Թուղթ Մանուէլի կայսեր առ Գրիգորիս կաթողիկոս. "Թագաւորութիւն մեր աւագեաց առ ձերդ պատուականութիւն զՍպասաւոր պալատանս ըզՍմբատ"։ Որ յայտ է թէ յայլ ինչ սպասաւորութիւն պալատանն էր կարգեալ, և ոչ 'ի կուրապաղատութիւն։

'ի կայսերէն՝ առնոյր զզօրս իւր, և երթայր յաշխարհն Տայոց,,: Սոյնպէս և Յոհաննէս կաթողիկոս վասն Վարազտիրոցի. "Իսկ ապա վասն զի հաստատեալ եղեալ և եկեալ էր 'ի Յունաց ասպետն Վարազտիրոց առ մեծ հայրապետն Ներսէս, խնդրէ հաշտութիւն նմա 'ի կայսերէ, և տայ առնել զնա կիւրապաղատ և հրամանատար հայաստանեայցս,,: Ըստ այսմ գրէ և վասն Համազասպայ. "Եւ մեծին Ներսեսի (շինողի) խնդրեալ յարքայէ ('ի Կոստանդեայ կայսերէ) առնել կիւրապաղատ զՀամազասպ և հրամանատար հայաստանեայցս,,: Այպա ասէ. "Բայց Համազասպայ յետ երից ամաց առնլոյ զպատիւ կիւրապաղատութեանն... վախճանեալ զՆի ընդ հարս իւր,,: Զսոյն Համազասպ զոր աստ սա կուրապաղատ անուանէ, Ասողիկ Բ. 2. ասէ Հրամանատար կոչէ:

Օ այս անուն նաև այլոց տուեալ տեսանեմք առ պատմագիրս մեր, յորս երևելի եղև կուրապաղատն Տայոց Դաւիթ, որպէս կոչէ և Ասողիկ Գ. 11. յաւուրս Գ. Աշոտոյ, և Բ. Սմբատայ. իսկ յետ մահուան Դաւթի զպատիւ կուրապաղատութեան Վասիլ կայսրն ետ Աբխազաց թագաւորին Բագարատայ, զորմէ գրէ Ասողիկ Գ. 43. և Լաստիվերտցի ա: Յոհաննէս կաթողիկոս զայս անուն տայ նաև գլխաւորին Վրաց, "Մեծ կուրապաղատն Վրաց Ատըրներսեհ,, կոչելով: Վարդան 'ի խօսելն զՈւրհայէ՝ յետ Մէլիք շահին յիշէ զոմն Թորոս կուրապաղատ, զոր Մատթէոս նախ քաղաքապետ Ուռհայոյ անուանէ զնոյն Թորոս, ապա միշտ կուրապաղատ կոչէ: Իսկ առ Թոմայի արծրունւոյ Գ. 1. յիշատակեալ գտանեմք, "Աշոտ կուրապաղատ Հայոց իշխան,, այլ 'ի միւս Աշոտոյ՝ որ իշխան էր իշխանաց 'ի նմին ժամանակի, և զկնի եղև առաջին թագաւոր Բագրատունեաց, որում և առաւել անկ էր տալ զայս պատուոյ անուն. վասն որոյ և համարիմք ինքնօրէն ըստ կամի տուեալ զայս անուն. զի այլուր կոչէ զնա և կուրապաղատ Տարօնոյ: Որպէս և ըստ կամի գրեալ համարիմք 'ի Մատթէոսէ 'ի ՇԾԷ. յամսեան. "Ցայսմ ամի (շինէ.) զօրաժողով արար Գրիգոր կուրապաղատն յարևելք, եղբայր տեառն Բարսղի Հայոց կաթողիկոսի,,: Իսկ զոր Վարդան զայս անուն տայ իշխանաց կարգելոց յարաբացւոց, ասելով "Արձակէ Հեշմ զՄրվան զօրդի Մահմետի 'ի Հայս, որ եկեալ կացոյց զԱշոտ բագրատունի կիւրապաղատ և կամ Պատրիկ ասել,,, պարտ է իմանալ իբր մեկնութիւն. կամելով ասել՝ թէ կացոյց իշխան կամ հրամանատար,

իւր կուրապաղատ, կամ Թէ ասել իւրև պատրիկ։ Զի ընդդէմ համարիմ տալ արաբացւոց զյունական անուանս իշխանութեան՝ որոց չէր օրէն 'ի կիր առնուլ յունական անուանս։ Որպէս և անդէպ համարիմ տալն Մաթէոսի ՃԾԷ. Պարսից զայս անուն ասելով. "Յայսմ ամի (չեւէ.) գայր բազում զօրօք սպասալար Արկխարուխին Պարսից սուլտանին՝ որ ասի Կուրապաղատ, գայր խաղայր ահագին բազմութեամբ յարուցանել պատերազմ ընդ զօրսն Փռանկաց,,։

Ի կուրապաղատս պատուաւորագոյն պարտ է համարել զոր յիշատակէ շարունակող Թովմայի արծրունւոյ՝ կոչելով Գռոտո[1] կուրապաղատ. որ է ասել՝ Առաջին կուրապաղատ։ Այսպէս անուանի Աբդլմսեհ ամիր, տոհմակից արքային Սենեքերիմայ, ազգաւ արծրունի, 'ի գաւառն Ամկոյ, տեառն և վերակացու կարգեալ ամրոցաց Վասպուրականի. և քանզի Սենեքերիմ յայնմ ժամանակի յանձնեալ էր զՎասպուրական զիւր աշխարհ 'ի ձեռս Յունաց, 'ի կողմանէ Յունաց էր սա կարգեալ, և վասն այնորիկ յունական անուամբ յորջորջեալ։

## ՊԱՏՐԻԿ[2]

Անուն այս ոչ միայն 'ի կարգս պատուոյ անուանց դասեցաւ՝ որպէս էր առ նախնիս հռոմայեցիս, այլ և յիշխանութե և 'ի նախարարութե, որպէս անուն կուսակալի կամ գաւառապետի, սկզբնաւորեալ 'ի մեծէն Կոստանդիանոսէ. որպէս գրէ Նիկեփորոս Գրիգորաս։ Զայս անուն տան պատմագիրք մեր ոմանց 'ի հրամանատարաց՝ որ իշխէին յետ վերջանալոյ արշակունի թագաւորաց. զոր օրինակ Ղևոնդ գլ. Է. "Իսկ առաջ յետ մահուան Գրիգորի յաջորդէ զիշխանութիւն Աշոտ Պատրիկ, այր երևելի և նախամեծար 'ի մէջ նախարարացն Հայոց, 'ի տոհմէ բագրատունեաց, ձոխ և պերճ յիշխանութե,,։ Սոյնին անուամբ կոչէ և Ասողիկ Ը. 2. զՎարդ. "Իսկ Վահան (իշխան յաւուրս Քրիստափորի կաթողիկոսի) բարուք վճարեալ Թողու փոխանակ իւր զեղբայր իւր զՎարդ Պատրիկն ամս չորս,,։ Այլ զայս անուն Ասողիկ 'ի կիր առնու և վասն իշխանին որ 'ի կողմանէ Տաճկաց կարգեալ եղև. "Յայնժամ, ասէ, իշխանն

1 Ընթերցիր Պռօտօ։
2 Որ է ըստ Յունաց Պատրիկիոս, և ըստ հռոմայեցւոց Պատրիկիուս։

Խամայէլի Հեշմ տուաքէ 'ի վերայ ազգիս Հայոց զՄրուան որդի Մահմետի. սա զԱշոտ որդի Վասակայ բագրատունի Պատրիկ կացուցանէ 'ի վերայ ազգիս Հայոց „: Այս Աշոտ է՝ զոր Վարդան ոչ միայն պատրիկ, այլ նաև կուրոպաղատ կոչեաց, որպէս յիշեցաք 'ի վերայ. նոյնն անուանք յիշէ Ասողիկ և զայլս, որք թէպէտ էին հայկազունք, բայց ոչ գլխաւոր հրամանատարք 'ի վերայ Հայոց աշխարհիս, այլ 'ի ծառայութեան կայսեր Յունաց. ըստ այսմ Գ. 37. 'ի գրելն վասն զօրաց ամիրային եգիպտացւոց ասէ. "Զերբակալ արարեալ տանէին ընդ այլսն զԶորտուանէլ Պատրիկն, եղբօրորդի Թոռնկայ աբեղայի „: Զի զայս անուն կայսերք Յունաց և այլոց բազմաց տային 'ի պատիւ. որպէս յառաջս Վասլի կայսեր յետ տասներորդ դարուն Պատրիկ կոչեցաւ և զօրավարն Տայոց:

Այլ առաւել պատուաւոր անուն էր Պատրկաց պատրիկ կոչել. որպէս կոչեցաւ Անդովկ իշխանն Սիւնեաց ըստ գրելոյ Ստեփաննոսի օրպելեան Թ. "Այնցանէ յաշխարհն Հոռոմոց առ մեծ կայսերականն Թէոդոս ալքայն Յունաց, և 'ի նմանէ պատիւ մեծազոյն գտեալ, այսինքն Պատրկաց պատրիկ արարեալ զԱնդովկ, վախճանի անդէն յաշխարհին Հոռոմոց „. որ է իբր ասել՝ իշխանաց իշխան:

## ՄԱԳԻՍՏՐՈՍ

Անունս այս ծագեալ է 'ի հռոմայեցի բառէս Մակիստէր. բայց այլ էր մագիստրոս զօրաց, զորմէ ասս 'ի գինուորուէ, և այլ մագիստրոս տպասահարկուէ 'ի կառավարուէ. որոց պատիւ նաև իշխանուի մեծ էր 'ի պալատան կայսեր. ըստ որում էին ներքին գահերէց խորհրդակիցք արքայի. վասն որոյ ասէ Կասիոդորոս. "Մեծաշուք պատիւ ընդունի, որ առնու զանուն մագիստրոսի„: Զառաջինն էր մի միայն, ապա բազումք կոչեցան, մինչև չորեքտասանք. բայց աւագուի նոցա միշտ մեծապատիւ էր, մինչև 'ի դասս պատրկաց դասիլ նոցա. իսկ յետ ժամանակաց 'ի վերքան զպատրիկս, որպէս յայտ է 'ի բանից Կեդրենոսի. վասն որոյ և ազգականաց կայսեր դէպ լինէր սովին անուամբ փառաւորիլ:

Յայս պատիւ և ոմանք 'ի մերոց 'ի տասներորդ դարու և զկնի ամբարձան, յորոց ոմանք յիշատակին 'ի գիրս. որպէս առ Ասողկայ Գ. 33. յասելն վասն կայսեր Վասլի. "Երթեալ պաշարէ զքաղաքն Վեռիայ և առնու զնա. և

զՄագիստրոսն զԳրիգոր զորդի Իշխանին Տարօնոյ՝ զօրազն թագու. անուղէն ընդդէմ Բուլղարին ,, ։ Ի 34. գրէ. "Կոչէ զհանճն պատրիկ, որ տալն զՉորատուանելն. և զնա Մագիստրոս արարեալ՝ առաքէ 'ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարին ,, ։ Սոքա երկոքին մագիստրոսք յայտ է թէ էին 'ի զինուորական դասէ ։ Եւ 'ի 40. գրէ. "Յանձն փոխանակի մեռեալ Մագիստրոսն Բագարատ որդի Թոռնիկայ առնելոյն ,, ։ Կիրակոս և Վարդան յիշեն զՍմբատ մագիստրոս, որ զԲագրատայր վանս շինեաց 'ի Նծէ ։ Այլ քան զամենեսին հռչակաւոր և ականաւոր գոլով 'ի մեզ Գրիգոր մագիստրոսն 'ի մատենագրութեան դարուն, զորմէ Շնորհալին 'ի վէպսն իւր.

" Ցորմէ Գրիգոր որդի ծննեալ,
Որ Մագիստրոս վերապատուեալ.
Աստուածային շնորհօք լցեալ,
Իմաստութե պայծառացեալ.
Հօրն մերոյ նա հայր եղեալ,
Ըստ մայրականն միջնորդեալ.
Ի յարքայէն Յունաց պատուեալ,
Եւ նահանգաց յոգունց տիրեալ ,, ։

Այլ զայս պատիւ ետ Վասիլ կայսրն նաև ամիրային Նփրկերտոյ, որ քուէրորդին էր Բասլին. որպէս գրէ Ասողիկ Գ. 43. "Եւ արքունատուր ընծայիւք պատուեալ զնա, տայ նմա զՄագիստրոսութե պատիւն ,, [1]։

Այլ թէպէտ մեծ էր պատիւ մագիստրոսութե, որպէս ասացաք, այլ ստորին էր քան զպատիւ կիւրապաղատութե. որպէս յայտ առնէ և այս բան Ասողկայ Գ. 44. ուր պատմէ թէ նախագրեալ Վասիլ կայսրն ետ Բագարատայ թագաւորին Աբխազաց զպատիւ կիւրապաղատութե, և հօր նորա Գուրգենայ թագաւորին Վրաց զպատիւ մագիստրոսութե. " Իսկ Գուրգէն թագաւոր Վրաց, ասէ, անարգանս իւր համարեալ զմագիստրոսութե պատիւն՝ զոր ետ նմա արքայ Վասիլ... նշկահեաց զնա ,, ։

## ԴՈՒՔՍ կամ ՏՈՒԿ

Ի գիրս մեր այսպէս գրի. բայց քանզի բառ լատին է սա՝ գրի առ նոսա Տուքս, որ նշանակէ Առաջնորդ. իմա-

1 Ինձ թուի ոչ միայն երկոքին, եւ ոտոն կայսերք մերոց և այլոց արև- մտակէս եղեալք 'ի վերոյ, այլ և ամե- նեքեան, էին 'ի զինուորական կարգի. նոյն պատիւ մագիստրոսութե, զոր

նալով տոկաւ զաւաշխարհս պատերազմի, որ է զօրագլուխ. զոր Յոյնք 'ի վերջին ժամանակս կոչեցին Տուգս, այլ նոյն պահելով զնշանակութիւն ։ Սկզբնաւորութիւն անուանս եղև յաւուրս Պրոբոսի կայսեր Հռոմայ 'ի 276 . յորում ժամանակի զզօրավարս գնդից սոցին անուամբ սկսան կոչել, իսկ զկնի և զգաւառապետս, որոց 'ի վեցերորդ դարուն յանձն եղև կառավարել ոչ միայն զգաւառս, այլ և զկոմսս քաղաքաց ։ Յաւուրս մեծին Կոստանդիանոսի սկզբնաւորեցաւ կոչել անուանս Մեծ դուքս, զոր եւ նա ինքն կայսրն իշխանին Ասորիկոյ ժառանգութ ըստ գրելոյ Գրիգորեայ յեօթներորդ գիրս . բայց ապա խափանեալ՝ լոկ Դուքս կոչեցաւ ։ Յութերորդ դարուն առ գաղղիացիս Դուքս անուն եղև ժառանգութ, և 'ի զանազան կողմանս Եւրոպիոյ այլ և այլ իշխանութ կոչեցան Դուքսք, բայց առ Յոյնս եկաց միայն անուն գաւառապետութ, և անուն զօրավարութ 'ի ծովամարտի ։

Ի վերջին դարս կայսերութ 'ի մետասաներորդ դարու զայս անուն և ոմանք ունէին 'ի մերոց, որպէս էր Գրիգոր Մագիստրոսն . քանզի այսպէս կոչի 'ի մակագրի ուրեք. “ Գրիգորի մագիստրոսի գերապանծ իշխանի պաշտաւոնեայ Հայոց ... պատասխանի Թղթոյն կաթողիկոսին Ասորւոց, 'ի ժամանակին յորժամ էր Դուքս 'ի Վասպուրական և 'ի Տարօն „ ։ Զայս անուն կոչէ զնա և Վարդան . “ Զվահրամ որդի Գրիգորի մագիստրոսի և Տուկի „ ձեռնադրեցին առ է, որ կոչեցաւ Գրիգորիս ։ Զայս պատիւ դքսութ ունէր և հայրն Գրիգորի մագիստրոսի, որպէս և նա ինքն վկայէ 'ի յիշատակարանի իւրում . “ Ի չորս հարիւր և իննսուն և չորս թուականութես Հայոց, լինելով իմ Գրիգորի մագիստրոսի՝ որդի Վասակայ աստուածապահ կիտոնի և Դուկի և պաշտաւոնեայ, եղեալ իմ յաստուածապահ քաղաքին 'ի Կոստանդնուպօլիս, 'ի ժամանակս բարեպաշտ և քրիստոսապսակեալ արքային Կոստանդեայ Մոնոմախին„ ։ Նաև արտաքոյ հայաստանեայց զայս պատիւ դքսութ ետուն ոմանց 'ի մերոց հայկազանց . “ Ի չի՜. թուին, առ է Վարդան, սպանին հոռոմք զՎասակ իշխանն, զեղբայր կաթողիկոսին Վահրամայ, որ էր Դուկ Անտիոքու 'ի նմին քաղաքի „ ։

զՄամիկոնեան զԳրիգոր զորդի իշխանին Տարօնոյ՝ զօրագլուխ Թողու անդէն ընդդէմ Բուլղարին ,,։ Ի 34 . գրէ. "Կոչէ զհամամն պատրիկ, որ սպան զՉորտուանէլն . և զնա Մամիկոնեան առաքեալ՝ առաքէ՝ ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարին ,,։ Սոքա երկոքեին մագիստրոսք յայտ է թէ էին ՝ի զինուորական դասէ ։ Եւ ՝ի 40 . գրէ . "Յայնմ ժամանակի մեռաւ Մամիկոնեան Բագարատ որդի Թոռնիկայ ապեղայի ,,։ Կիրակոս և Վարդան յիշեն զԱմբատ մագիստրոս, որ զԲագնայր վանս շինեաց ՝ի Նծթ ։ Այլ քան զամենեսին հռչակաւոր և անուանաւոր գտաւ ՝ի մեզ Գրիգոր մագիստրոսն ՝ի մետասաներորդ դարու, զորմէ Շնորհալին ՝ի վէպսն իւր.

" Ցորմէ Գրիգոր որդի ծնեալ,
Որ Մագիստրոս վերապատուեալ.
Աստուածային շնորհօք լցեալ,
Իմաստութիւ պայծառացեալ.
Հօրըն մերոյ նա հայր եղեալ,
Ըստ մայրականըն միջնորդեալ.
Ի յարքայէն Յունաց պատուեալ,
Եւ նահանգաց յադունց տիրեալ ,,։

Այլ զայս պատիւ ետ Վասիլ կայսրն նաև ամիրային Նփրկերտոյ, որ քուէրորդին էր Բասլին. որպէս գրէ Ասողիկ Գ . 43 . "Եւ արքունատուր ընծայիւք պատուեալ զնա, տայ նմա զՄագիստրոսութեան պատիւն ,,[1]։

Իւ թէպէտ մեծ էր պատիւ մագիստրոսութե, որպէս ասացաք, այլ առաւելին էր քան զպատիւ կիւրապաղատութե. որպէս յայտ առնէ և այս բան Ասողկայ Գ. 44. ուր պատմէ թէ նախագրեալ Վասիլ կայսրն ետ Բագարատայ Թագաւորին Ափխազաց զպատիւ կիւրապաղատութե, և հօր նորա Գուրգենայ Թագաւորին Վրաց զպատիւ մագիստրոսութե. "Իսկ Գուրգէն Թագաւոր Վրաց, ասէ, անարգանս իւր համարեալ զմագիստրոսութեան պատիւն՝ զոր ետ նմա արքայ Վասիլ... նշկահեաց զնա ,,։

## ԴՈՒՔՍ կամ ՑՈՒԿ

Ի գիրս մեր այսպէս գրի . բայց քանզի բառ լատին սա՝ գրի առ Նոսա Տուքս, որ նշանակէ Առաջնորդ . Ի.

1 Իսկ Թուի ոչ միայն երկոքին, Առաւել կցորդք մերոյ և այլ որպէս երգաք ՝ի վերոյ, այլ և ամենեցուն, եթէ ՝ի զինուորականն, նոյն պատիւ մագիստրոսութե, [illegible]

բանտէն և 'ի կապարանէն, և 'ի նոյն յառաջին գահ նահապետութեն հաստատել ”:

Պատիւ և իշխանութիւն մեծի ոստիկանին՝ էր պատիւ կուսակալի. “Առաքէ զնա (ամիրապետն, ասէ Յովհաննէս կաթողիկոս) գումարտակիւ զինու յառաջին գահ կուսակալութեն իւրոյ ”: Որում անկ էր առաքել և յայլ անդրս փոքր ոստիկանս. “Եւ վասն զի ինքն (Յուսուփ, ասէ նոյն պատմաբան) 'ի մեծ քաղաքն դէմ եդեալ էր երթալ Ռա՝ որ 'ի Պարս անդ է, առաքէ զոմն Նսր անուն Ոստիկան 'ի Հայս, որ Սբուքն 'ի բազմաց յորջորջիւր, և ինքն կայ մնայ անդէն, մինչև Ոստիկանն և պետս և գործակալս յարդարեալ կացուցանէ 'ի կողմանս Աղուանից և Ատրպատականի ”:

Գործ ոստիկանին և պաշտօն՝ էր նման մարզպանի, վերակացու լինել աշխարհիս Հայոց և ժողովել զհարկս իբր գործակալ 'ի կողմանէ ամիրապետին, կամ 'ի կողմանէ ոստիկանին Ատրպատականի. վասն որոյ և գործակալութիւն կոչէ զայն Յովհաննէս կաթողիկոս: Տեղի նորա էր Դուին, որ մայրաքաղաք էր 'ի ժամանակս առաջին բագրատունի թագաւորաց. և երբեմն և 'ի Նախիջեւան, որպէս յայտ է և 'ի բանից աստի նորին պատմագրի. “Իսկ որ յայնժամ իսմայէլեան ոստիկանն էր յայնմ (Աղձնեաց) նահանգի Սուլիման անուն... յետ այսորիկ ապա եհաս Ոստիկանն այն պայազատել և զգործակալութիւն հայաստանեայցս. և 'ի գալ նորա 'ի Դուին քաղաք.. ”: Եւ այս գլխաւոր գործակալ ոստիկան աշխարհիս Հայոց՝ կացուցանէր նաև այլ զանազան ոստիկանս յայլ և այլ գաւառս Հայոց. յայտ է այս 'ի բանից նորին մատենագրի. “Զայսու ժամանակաւ Եզիտ ոմն Ոստիկան 'ի Հայս յամիրապետէն առաքեալ լինէր. որ իբրև եհաս 'ի Նախիջեւան քաղաք, ապա կուսակալս և գործակալս (իւր ոստիկանս) ընդ գաւառաց գաւառաց առաքէր. և վասն զի ընդ նոքօք նուաճեալ էր գաւառն Բագրեւանդայ՝ ընդ այն ապա զմի 'ի պատուաւորաց իւրոց Ոստիկան առաքէ ”: Սոքա ընդ հրամանաւ մեծի ոստիկանին Հայոց գոլով, որ նստէր 'ի Դուին, ոչ կարէին գործ ինչ մեծ առնել առանց հարցանելոյ. որպէս և սոյն ոստիկանն Բագրեւանդայ իբրև կամէր սպանանել զկրօնաւորսն, եհարց և այնպէս արար. “Հրաման ընդունի յոստիկանէն (Նախիջեւանայ) առանց հարց և փորձ ատենի կոտորել զսուրբ արսն ”:

## ԱՄԻՐԱՅ

Անուն արաբացի, որ նշանակէ հրամանատար կամ իշխան։ Յաւուրս տէրութեան արաբացւոց՝ գլխաւոր նոցա, որ նստէր 'ի Բաբիլոն կամ 'ի Դամասկոս, առ պատմագիրս մեր կոչի Ամիրապետ. իսկ հրամանատարք արտաքին սահմանաց ընդ նովաւ եղելոց՝ զորս իննքն առաքէր, կոչին Ամիրայք, որպէս է տեսանել առ Ասողկայ Բ. 2. "Ի սորա ժամանակին Մամունիկն Ամիրայ եկն 'ի Հայս ... Խալթիւնիտն Հայոց Ամիրայ եկն"։ Եւ 'ի Բ. 4. "Աչմատ որ զԱլի որդին Յահեէի՝ Հայոց Ամիրայ առաքեաց"։ Այլ տօքա ըստ գործոյ իշխանութեան ոչ զանազանին յոստիկանէն՝ զորմէ գրեցաք 'ի վերոյ. զի որպէս վասն գլխաւոր ոստիկանին ասեն նորատեալ յԱտրպատական, գնոյն և վասն գլխաւոր ամիրային ասեն. զոր օրինակ զԱպլհաճայ զորդի Բռոլաղայ կոչէ Ասողիկ Գ. 18. Ամիրայ Ատրպատականի՝ տակս անդ նստելոյն, որ և իբր գլխաւոր խնդրեաց զհարկս աշխարհին 'ի Բ. Սմբատայ նաև զանցեալ ամացն։ Եւ որպէս զԱփշին և զՅուսուփ կոչեն ոստիկանս Ատրպատականի, նոյնպէս կոչեն Ամիրայս Ատրպատականի. "Յայնմ ժամանակի, ասէ Ասողիկ Գ. 4. մեռանի Ափշին. և փոխանակ նորա եկաց Ամիրայ Պարսից և Ատրպատականի Յուսուփ եղբայր նորին"։

Այլ որպէս ոստիկանն Ատրպատականի առաքէր զայլ ոստիկանս վասն Հայոց աշխարհին, նոյնպէս և ամիրայն Ատրպատականի. վասն որոյ առ Ասողկայ Գ. 12. և 14. յիշատակին զանազան տեղեաց ամիրայք. որք են Ամիրայք Գողթան, Խլաթայ և Նփրկերտոյ. և 'ի 19. Ամիրայն Աղուհոանեաց. 'ի 30. Ամիրայն Տփխեաց և Գանձակայ. 'ի 38. Ամիրայն Աղուհոանեաց և Նփրկերտոյ Բատ անուն։ Անուանս Ամիրայ առաւել առ Ասողկայ տեսանի 'ի կիր արկեալ փոխանակ ոստիկանի, որպէս յայտ եղև 'ի նախագրելոցս. բայց 'ի Գ. 35. նաև զամիրապետն այսպէս կոչէ յասելն. "Յայսմ ժամանակի Ամիրայն եգիպտացւոց որ 'ի Բաբելոնն"։ Իսկ Կիրակոս զայս անուն տայ նաև քրիստոնէի, ազատաւորի Թամարայ Թագուհւոյն Վրաց, ասելով. "Իսկ Ամիր ազատաւորն Զաքարէ հրամանն եա"։

Դ. Իշխանք փեսայք 'ի կողմանէ Յունաց։

## ԿՈՒՐԱՊԱՂԱՏ

Անուն և պաշտօն՝ ածանցեալ 'ի բարբառոյ Հռոմայեցւոց, առ որս 'ի հնումն կոչէր Քուռա բալադիի[1], որ է Հոգ-պալատան։ Այս անուն 'ի գիրս Յունաց սուղ ինչ այլայլեալ կոչի Քուռոփալատէս։ Յայս անուն կոչէին զնա՝ որ ունէր զհոգ պալատան կամ արքունեաց, որպէս յայտ է 'ի բանից Եւագրեայ և Թէոփիլակտեայ Սիմոքատտայ. և առ մատենագիրս մեր կոչի Հազարապետ տան արքայի[2]։ Այլ յաւուրս Կոդինոսի 'ի հնգետասաներորդ դարու բարձեալ և խափանեալ գոլով անգէտ լինել ասէ զինչ պաշտօնի կուրապաղատին։

Բայց կուրապաղատին պատիւ մեծ էր. որոյ ունէր գաւազան 'ի ձեռին կերպով առաջին էր որ գնայր առ արքայիւ. մեծ էր և իշխանութիւն նորա, վասն որոյ և եղբարք կայսեր երբեմն առնուին զայն անուն. և Յուստինոս կրտսերն կուրապաղատ յորջորջէր նախ քան զլինելն կայսր 'ի 565։ Այլ թուով առաւելուին կուրապաղատք ոչ սակաւք. յորմէ յայտ է թէ շնորհէին կայսերք զայս անուն նաև հեռաւորաց ոմանց առ 'ի պատիւ՝ որոց չէր ինչ գործ խնամ տանելոյ պալատան կայսեր[3]։ Որպէս և մերոց իշխանաց իսկ՝ յորժամ 'ի նոցանէ կարգեալ լինէին։ Վասն Սմբատայ Բագրատունւոյ, որ յետ յաղթութեան 'ի կռուին Վարդանակերտի՝ բազում ընծայս և տաճիկ ձիս յաւարէ արաբացւոց ետ տանել առ կայսրն, ասէ Ղևոնդ գլ. Է. "Եւ կայսրն ընկալեալ զայն նուէրն ... տայր բերել նմա պատիւ կուրապաղատութեան ըստ օրինի թագաւորաց. և նորա ընկալեալ զպատիւն

1 Որպէս գնէ Մէուրսիոս 'ի բառարանի յունական անուանց, նաև Ֆառրիկիոս 'ի բառարանի անուանց Կեդրինոսի։ Նոյն ինքն Մէուրսիոս 'ի բառն Կուրոպալատ 'ի թղթ. 486. յեղ Ը. գրէ, թէ որ առ Յոյնս կուրապաղատ կոչէր, առ գաղղիացիս Հազարապետ տան (մայօռ դօմուս) ասացաւ, առաջ Սէնէքափօյրասու։

2 Նոյն գործ էր և մերոց իշխանաց Մարդպետ և Հայրիշխան անուանելոց։ Տես 'ի Նախարարութիւնս Անգեղտան, և Մարդպետականի։

3 Ունիմք յաղագս Հայոց զանունն յիշատակեալ 'ի գիրս 'ի գործ առաւորութէ պալատան կայսեր, առանց ունելոյ զանունն Կուրապաղատի. որպէս էր Սմբատ յիշատակեալ 'ի Ա. թղթ Մանուէլի կայսեր առ Գրիգորիս կաթողիկոս. "Թագաւորութիւն մեր առաքեաց առ ձերդ պատուականութիւն զՍպարապետ պալատանս ըզՍմբատ"։ Որ յայտ է թէ յայլ ինչ ստորադասութէ պալատանն էր կարգեալ, և ոչ 'ի կուրապաղատութէ։

'ի կայսերէն՝ առնոյր զզօրս իւր, և երթայր յաշխարհն Տայոց»: Սոյնպէս և Յովհաննէս կաթողիկոս վասն Վարազտիրոցի. «Իսկ ապա վասն զի հատուած եղեալ և եկեալ էր 'ի Յունաց ապստամբ Վարազտիրոց առ մեծ հայրապետն Ներսէս, խնդրէ հաշտութի նմա 'ի կայսերէ, և տայ առնել զնա կիւրապաղատ և հրամանատար հայաստանեայցս»: Ըստ այսմ գրէ և վասն Համազասպայ. «Եւ մեծին Ներսեհի (շինողի) խնդրեալ յարքայէ ('ի Կոստանդին կայսերէ) առնել կիւրապաղատ զՀամազասպ և հրամանատար հայաստանեայցս»: Այպս ասէ. «Բայց Համազասպայ յետ երից ամաց առնլոյ զպատիւ կիւրապաղատութեն... վախճանեալ դնի ընդ հարս իւր»: Զսոյն Համազասպ զոր աստ սա կուրապաղատ անուանէ, Ասողիկ Բ. 2. ասէ Հրամանատար կոչէ:

Ո՛չ այս անուն նաև այլոց տուեալ տեսանեմք առ պատմագիրս մեր, յորս երևելի եղև կուրապաղատն Տայոց Դաւիթ, որպէս կոչէ և Ասողիկ Գ. 11. յաւուրս Գ. Աշոտոյ, և Բ. Սմբատայ. իսկ յետ մահուան Դաւթի զպատիւ կուրապաղատութե Վասիլ կայսրն ետ Աբխազաց թագաւորին Բագարատայ, զորմէ գրէ Ասողիկ Գ. 43. և Լաստիվերտցի ա: Յովհաննէս կաթողիկոս զայս անուն տայ նաև գլխաւորին Վրաց, «Մեծ կուրապաղատն Վրաց Ատրներսեհ» կոչելով: Վարդան 'ի խօսելն զՍուրհայէ՝ յետ Մէլիք շահին յիշէ զոմն Թորոս կուրապաղատ, զոր Մատթէոս նախ քաղաքապետ Ուռհայու անուանէ զնոյն Թորոս, ապա միշտ կուրապաղատ կոչէ: Իսկ առ Թոմայի արծրունւոյ Գ. 1. յիշատակեալ գտանեմք, «Աշոտ կուրապաղատ Հայոց իշխան» այլ 'ի միւս Աշոտոյ՝ որ իշխան էր իշխանաց 'ի նմին ժամանակի, և զկնի եղև առաջին թագաւոր Բագրատունեաց, որում և առաւել անկ էր տալ զայս պատուոյ անուն. վասն որոյ և համարիմք խնքնօրէն ըստ կամի տուեալ զայս անուն. զի այլուր կոչէ զնա և կուրապաղատ Տարօնոյ: Որպէս և ըստ կամի գրեալ համարիմք 'ի Մատթէոսէ 'ի ՆՃԷ. յամսեն. «Յայսմ ամի (չինէ.) զօրաժողով արար Գրիգոր կուրապաղատն յարևելք, եղբայր տեառն Բարսղի Հայոց կաթողիկոսի»: Իսկ զոր Վարդան զայս անուն տայ իշխանաց կարգելոց յարաբացւոց, ասելով «Արձակէ Հեշմ զՄրվան զորդի Մահմէտի 'ի Հայս, որ եկեալ կացոյց զԱշոտ բագրատունի կիւրապաղատ և կամ Պատրիկ ասել», պարտ է իմանալ իբր մեկնութի. կամելով ասել՝ թէ կացոյց իշխան կամ հրամանատար,

իւր կուրապաղատ, կամ թէ աւել իւրն պատրիկ։ Զի ընդդէմ համարիմ տալ արաբացւոց զյունական անուանս իշխանութեան՝ որոց չէր օրէն 'ի կիր առնուլ յունական անուանս։ Որպէս և անդէպ համարիմ տալն Մատթէոսի ՃՃԳ. Պարսից զայս անուն ասելով. "Յայսմ ամի (չհէ.) գայր բազում զօրօք տապաստալար Արկիտարուխին Պարսից աւլատանին՝ որ ասի Կուրապաղատ, գայր խաղայր ահագին բազմութք յարուցանել պատերազմ ընդ զօրսն Փռանկաց,,։

Ի կուրապաղատս պատուատրագոյն պարտ է համարել զոր յիշատակէ շարունակող Թովմայի արծրունւոյ՝ կոչելով Պռօտօ[1] կուրապաղատ. որ է ասել՝ Առաջին կուրապաղատ։ Այսպէս անուանի Աբդլմսեհ ոմն, առհմանկից արքային Սենեքերիմայ, ազգաւ արծրունի, 'ի գաւառն Աղկոյ, տեառն և վերակացու կարգեալ ամրոցաց Վասպուրականի. և քանզի Սենեքերիմ յայնմ ժամանակի յանձնեալ էր զՎասպուրական զիւր աշխարհ 'ի ձեռս Յունաց, 'ի կողմանէ Յունաց էր սա կարգեալ, և վասն այնորիկ յունական անուանբ յորջորջեալ։

## ՊԱՏՐԻԿ[2]

Անունս այս ոչ միայն 'ի կարգս պատուոյ անուանց դասեցաւ՝ որպէս էր առ նախնիս հռոմայեցիս, այլ և յիշխանութե և 'ի նախարարութե, որպէս անուն կուսակալի կամ գաւառապետի, սկզբնաւորեալ 'ի մեծէն Կոստանդիանոսէ. որպէս գրէ Նիկեփորոս Գրիգորաս։ Զայս անուն տան պատմագիրք մեր ոմանց 'ի հրամանատարաց՝ որ իշխէին յետ վերջանալոյ արշակունի թագաւորաց. զոր օրինակ Ղեւոնդ գլ. Է. "Իսկ ապա յետ մահուան Գրիգորի յաջորդէ զիշխանութիւն Աշոտ Պատրիկ, այր երևելի և նախամեծար 'ի մէջ նախարարացն Հայոց, 'ի տոհմէ բագրատունեաց, ձոխ և պերճ յիշխանութե,,։ Սովին անուամբ կոչէ և Ասողիկ Է. 2. զՎարդ. "Իսկ Վահան (իշխան յաւուրս Քրիստափորի կաթողիկոսի) բարուք վճարեալ թողու փոխանակ իւր զեղբայր իւր զՎարդ Պատրիկն ամս չորս,,։ Այլ զայս անուն Ասողիկ 'ի կիր առնու և վասն իշխանին որ 'ի կողմանէ Տաճկաց կարգեալ եղև. "Յայնժամ, ասէ, իշխանն

1 Ընթերցիր Պռօտօ։

2 Որ է ըստ Յունաց Պատրիկիոս, և ըստ հռոմայեցւոց Պատրիկիուս։

Խամայէլի Հէշմ առաքէ 'ի վերայ աշխարհին Հայոց զՄրուան որդի Մահմետի. սա զԱշոտ որդի Վասակայ բագրատունի Պատրիկ կացուցանէ 'ի վերայ աշխարհին Հայոց „: Այս Աշոտ է՝ զոր Վարդան ոչ միայն պատրիկ, այլ նաև իշխան իշխանաց կոչեաց, որպէս յիշեցաք 'ի վերայ։ Նովին անուամբ յիշէ Ասողիկ և զայլս, որք թէպէտ էին հայկազունք, բայց ոչ գլխաւոր հրամանատարք 'ի վերայ Հայոց աշխարհին, այլ 'ի ծառայութեան կայսեր Յունաց. ըստ այսմ Գ. 37. 'ի գրելն վասն զօրաց ամիրային եգիպտացւոց ասէ. "Զերբակալ արարեալ տանէին ընդ այլսն զՋօրաւանէլ Պատրիկն, եղբօրորդի Թոռնիկայ աբեղայի „: Զի զայս անուն կայսերք Յունաց և այլոց բազմաց տային 'ի պատիւ. որպէս յաւուրս Վասլի կայսեր յետ տասներորդ դարուն Պատրիկ կոչեցաւ և զօրավարն Տայոց ։

Այլ առաւել պատուաւոր անուն էր Պատրիկաց պատրիկ կոչել. որպէս կոչեցաւ Անդովկ իշխանն Սիւնեաց ըստ գրելոյ Ստեփաննոսի օրպելեան Թ. "Անցանէ յաշխարհն Հոռոմոց առ մեծ ինքնակալն Թէոդոս արքայն Յունաց, և 'ի նմանէ պատիւ մեծագոյն գտեալ, այսինքն Պատրիկաց պատրիկ արարեալ զԱնդովկ, վախճանի անդէն յաշխարհին Հոռոմոց „. որ է իբր ասել՝ իշխանաց իշխան ։

## ՄԱԳԻՍՏՐՈՍ

Անուն այս ծագեալ է 'ի հռոմայեցի բառէս Մաճիստէր. բայց այլ էր մագիստրոս զօրաց, զորմէ ասես 'ի զինուորութեան, և այլ մագիստրոս ապարանհարկութեան 'ի կառավարութեան. որոց պատիւ նաև իշխանութեան մեծ էր 'ի պալատան կայսեր. ըստ որում էին ներքին գահերէց խորհրդակիցք արքայի. վասն որոյ ասէ Կասիոդորոս. "Մեծաշուք պատիւ ընդունի, որ առնու զանուն մագիստրոսի „: Զառաջինն էր մի միայն, ապա բազումք կոչեցան, մինչև չորեքտասանք. բայց աւագունն նոցա միշտ մեծապատիւ էր, մինչև 'ի դասս պատրկաց դասիլ նոցա. իսկ յետ ժամանակաց 'ի վեր քան զպատրիկս, որպէս յայտ է 'ի բանից Կեդրենոսի. վասն որոյ և ազգականաց կայսեր դէպ լինէր սովին անուամբ փառաւորիլ ։

Այս պատիւ և ոմանք 'ի մերոց 'ի տասներորդ դարու և զկնի ամբարձան, յորոց ոմանք յիշատակին 'ի գիրս. որպէս առ Ասողկայ Գ. 33. յասելն վասն կայսեր Վասլի. "Երթեալ պաշարէ զքաղաքն Վեռիայ և առնու զնա. և

զՄաժիստրոսն զԳրիգոր զորդի իշխանին Տարօնոյ՝ զօրացն թագու անդէն ընդդէմ Բուլղարին ,, ։ Ի 34 . գրէ . «Կոչէ զփանն պատրիկ, որ սպան զՉորտուանէլ . և զնա Մաժիստրոս արարեալ՝ առաքէ 'ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարին,,։ Սոքա երկոքին մագիստրոսք յայտ է թէ էին 'ի զինուորական դասէ ։ Եւ 'ի 40 . գրէ . «Յայնժամ փախուստ մեռաւ Մաժիստրոսն Բագարատ որդի Թոռնկայ աբեգայի,,։ Կիրակոս և Վարդան յիշեն զՍմբատ մագիստրոս, որ զԲագնայր վանս շինեաց 'ի ՆԾԹ ։ Այլ քան զամենեսին հռչակաւոր և ականաւոր գտաւ 'ի մեզ Գրիգոր մագիստրոսն 'ի մետասաներորդ դարու, զորմէ Շնորհալին 'ի վիպասն իւր.

« Յորմէ Գրիգոր որդի ծնեալ,
Որ Մագիստրոս վերապատուեալ.
Աստուածային շնորհօք լցեալ,
Իմաստութե՛ պայծառացեալ.
Հօրըն մերոյ նա հայր եղեալ,
Ըստ մայրականըն միջնորդեալ.
Ի յարքայէն Յունաց պատուեալ,
Եւ նահանգաց յոգունց տիրեալ,, ։

Այլ զայս պատիւ եռ Վասիլ կայսրն նաև ամիրային Նփրկերտոյ, որ քուէրորդին էր Բասլին . որպէս գրէ Ասողիկ Գ . 43 . «Եւ արքունատուր ընծայիւք պատուեալ զնա, տայ նմա զՄաժիստրոսութե՛ պատիւն ,, [1]։

Այլ թէպէտ մեծ էր պատիւ մագիստրոսութե՛, որպէս ասացաք, այլ ստորին էր քան զպատիւ կիւրապաղատութե՛. որպէս յայտ առնէ և այս բան Ասողկայ Գ. 44. ուր պատմէ թէ նախագրեալ Վասիլ կայսրն եռ Բագարատայ թագաւորին Աբխազաց զպատիւ կիւրապաղատութե՛, և հօր նորա Գուրգենայ թագաւորին Վրաց զպատիւ մագիստրոսութե՛. « Իսկ Գուրգէն թագաւոր Վրաց, ասէ, անարգանս իւր համարեալ զՄաժիստրոսութե՛ պատիւն՝ զոր եռ նմա արքայ Վասիլ . . . նշկահեաց զնա ,, ։

## ԴՈՒՔՍ կամ ՑՈՒԿ

Ի՛ դիւս մեր այսպէս գրի . բայց քանզի բառ լատին է սա՝ գրի առ նոսա Տուքս, որ նշանակէ Առաջնորդ . իմա-

1 Ինձ թուի ոչ միայն երկոքին, եւ սոսա կայսերք մերոց և այլոց ազգ-ս որպէս եդաք 'ի վերոյ, այլ և ամե- նեցունց, էին 'ի զինուորական կարգի ։ Նոյն պատիւ մագիստրոսութե՛, զոր

նայելով տովաւ զառաջնորդս պատերազմի, որ է զօրագլուխ. զոր Յոյնք 'ի վերջին ժամանակս կոչեցին Տուկաս, այլ նոյն պահելով զնշանակութիւն ։ Սկզբնաւորութիւն անուանս եղև յաւուրս Պրոբոսի կայսեր Հռոմայ 'ի 276. յորում ժամանակի զզօրավարս գնդից ոմանց անուամբ սկսան կոչել, իսկ զկնի և զգաւառապետս, որոց 'ի վեցերորդ դարուն յանձն եղև կառավարել ոչ միայն զգաւառս, այլ և զկողմնս քաղաքաց ։ Յաւուրս մեծին Կոստանդիանոսի սկզբնաւորեցաւ կոչել անուանս Մեծ դուքս, զոր եւս նա ինքն կայսրն իշխանին Ատտիկոյ ժառանգութեամբ ըստ գրելոյ Գրիգորասայ յեօթներորդ գիրս. բայց ապա խափանեալ՝ լոկ Դուքս կոչեցաւ ։ Յութերորդ դարուն առ գաղղիացիս Դուքս անուն եղև ժառանգութեամբ, և 'ի զանազան կողմանս Եւրոպիոյ այլ և այլ իշխանութեամբ կոչեցան Դուքսք, բայց առ Յոյնս եկաց մնաց անուն գաւառապետութեան, և անուն զօրավարութեան 'ի ծովամարտի ։

Ի վերջին դարս կայսերութեան 'ի մետասաներորդ դարու զայս անուն և ոմանք ունէին 'ի մերոց, որպէս էր Գրիգոր Մագիստրոսն. քանզի այսպէս կոչի 'ի մակագրի ուրեք. "Գրիգորի Մագիստրոսի գերապանծ իշխանի պալհաւունեայ Հայոց... պատասխանի Թղթոյն կաթողիկոսին Ասորւոց, 'ի ժամանակին յորժամ էր Դուքս 'ի Վասպուրական և 'ի Տարօն" ։ Յայս անուն կոչէ զնա և Վարդան. "Զվահրամ որդի Գրիգորի Մաժիստրոսի և Տուկի" ձեռնադրեցին աստ, որ կոչեցաւ Գրիգորիս ։ Զայս պատիւ դքսութեան ունէր և հայրն Գրիգորի Մագիստրոսի, որպէս և նա ինքն վկայէ 'ի յիշատակարանի իւրում. "Ի չորս հարիւր և հինգետասն և չորս թուականութեանս Հայոց, լինելով իմ Գրիգորի Մագիստրոսի՝ որդի Վասակայ աստուածապահ կիւռօնի և Դուքի և պալհաւունեայ, եղեալ իմ յաստուածապահ քաղաքին 'ի Կոստանդնուպօլիս, 'ի ժամանակս բարեպաշտ և քրիստոսապսակեալ արքային Կոստանդեայ Մոնոմախին" ։ Նաև արտաքոյ հայաստանեայց զայս պատիւ դքսութեան եդաւ ոմանց 'ի մերոց հայկազանց. "Ի շիէ. թուին, ասէ Վարդան, սպանին հոռոմք զՎասակ իշխանն, զեղբայր կաթողիկոսին Վահրամայ, որ էր Տուկ Անտիոքու 'ի նմին քաղաքի" ։

## ԿՈՄՍ

Ն՚աղեալ ՚ի հռոմէական բառէս փօմէս, որ նշանակէ ուղեկից կամ ընկեր, առեալ յընկերութեն զօր ՚ի սկզբան անդ առնէին իշխանաւորաց. բայց յանցանել ժամանակաց էանց ՚ի կարգ իշխանութեան զանազան պաշտօնէից ՚ի պալատան կայսեր և արքայից, տալեալ մանաւանդ գաւառապետաց և քաղաքապետաց և այլն: Վասն որոյ և ՚ի չորրորդ դարուն յորժամ բաժանեցաւ Հայաստան յերկուս տէրութիւնս ՚ի ձեռս Պարսից և Յունաց, յայնժամ Յոյնք գլխաւորի բաժնին իւրեանց զայս անուն եդուն, որպէս ասէ Խորենացին Գ. 46. "Աշխարհին իւրեանց մասինն կացուցին Յոյնք Կոմս իշխանս": Ի բազմաւորականն գրելով կամի ասել, թէ յայլ և այլ տեղիս բաժնին իւրեանց կացուցին զայլ և այլ իշխանս նոյնին անուամբ յորջորջելս. բառ որում և Թովմա Արծրունի բազում կոմսաց նշանագրէ: Եւ բաց ՚ի կոմսից նաև զայլ իշխանս եդեալ ասէ Յունաց այլով անուամբ կոչեցեալս. զի ՚ի Ե. 15. գրէ՝ թէ յետ վախճանելոյ Արշակայ Թագաւորի յեկեղեաց գաւառ, յորում ժամանակի ՚ի բաժնին Պարսից Թագաւորէր Խոսրով, յայնժամ, ասէ, "Յունաց առեալ կացուցին ՚ի բաժնին Արշակայ հիւպատոս և զօրավարս և Կոմսունս, ոչ զոք թագաւորեցուցեալ այնուհետև":

Զայս պատուանուանն և մերոց հայկազանց տուեալ գտանեմք առ Բուզանդայ Ե. 37. "Մանուէլ, ասէ, որդի Արտաշիրայ ՚ի մամիկոնեան ՚ի տոհմէն, հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ": Զնոյն կրկնէ և այլուր ՚ի նոյն գլուխ յերիս տեղիս, բայց իբր յատուկ անուն: Նոյնպէս և առ Ասողկայ Բ. 2. հայկազանն իշխանի տուեալ գտանեմք զայս անուն, յաւելն վասն Յուստինիանոսի կայսեր. "Կացոյց իշխան աշխարհացն՝ զՆերսեհ Շիրակայ տէր, Կոմս Կոպդ-տիրաց՝ Հայոց իշխան":

## ՀԻՒՊԱՏՈՍ [1]

Այս անուն մեծի իշխանութեան, երբեմն շնորհեալ ՚ի կայսերաց նաև ոմանց ՚ի մերոց հայկազանց. զոր օրինակ է յիշատակեալն առ Խորենացւոյն Գ. 21. "Բայց կայսերն

1 Յունարէն գրի Իփատօս. այն է բառ լատինացւոց քօնսուլ:

(Վաղենտինիանոսի) բարերարութն արարեալ մանկանն Գնելայ՝ յաղագս զուր 'ի նոցանէ մահուանն Տրդատայ հօր նորա, տայ նմա զպատիւ հիւպատոսութեան, և զանձս յոլովս»։ Յիշատակի և առ Ասողկայ Գ. 6. այլ յաւելեալ անուամբ. «Իսկ Թէոփիլոս (կայսրն) գնաց 'ի Խաղտիս, և ել 'ի ցամաք կամուրջ, և գերեաց զաղգաւն 'ի Հայոց հանդերձ ընտանեօք իւրեանց, և տուեալ զհիւպատոսութեան պատիւն, այսինքն Անթիւպատոս պատրիկութեան Աշոտոյ որդւոյ Շապհոյ, և թողու 'ի Սպեր գաւառի»։

## ՎԵՍՏ կամ ՎԷՍՏ

Անուն և իշխանութի 'ի յունականէն ածանցեալ, զի ոչ յիշատակի ինչ յառաջին ժամանակս յաւուրս Արշակունեաց, այլ միայն 'ի վերջին ժամանակս Բագրատունեաց 'ի մետասաներորդ դարու. յորում ժամանակի և այլ զանազան անուանս պատուոյ առնուին մեծքն 'ի Յունաց, ըստ մասին անկեալ գոլով ընդ նոքօք, և ըստ մասին խառնեալ ընդ նոսա։ Սովին պատուանուամբ կոչի որդին Գրիգորի մագիստրոսի. զի 'ի վերնագրի նորին Մագիստրոսի առի. «Նորին (Գրիգորի մագիստրոսի) առ Վէստն Վահրամ որդին իւր»։ Եւ ինքն 'ի թղթի անդ գրէ. «Սեփհական Վէստիդ Վահրամայ»։ Իսկ 'ի թղթին որ առ հայրն Սոսթենէս՝ զայս և զայլ պատուանուանս իւրոց եղբարց յիշատակէ, որք յայտ է թէ 'ի Յունաց էին ընկալեալ. «Բայց ոչ զայսոսիկ միայն, այլ և Վէստ և Պատրիկ, և Պրոտոսպաթարութեան (առաջնասպաթար), ունէի մատանի, հինգ իշխանութիւ փառս տուաքեաց եղբարցս իմ... գոհանամք զտեառնէ զի ոչ արար անօթալի զծառայս Գրիգոր յերանելեաց իմոց ծնողացդ»։ Եւ 'ի պատասխանին թղթոյն Գագկայ որդւոյն Աշոտոյ՝ եկեալ 'ի գաւառէն Տարօնոյ՝ գրէ. «Ե՛կ տէր իմ Վաստուրականի և Տարօնոյ և Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրոյ, Միջագետաց տէր, և Մոնոմախին մագիստրոս, Վէստ և Դուկ»։

Այլ առ պատմագիրս անուանի եղև վեստն Սարգիս, զորմէ Կիրակոս. «Յաւուրս սորա (Յովհաննու թագաւորին Անւոյ) մեծապատիւ Վեստն Սարգիս զմին բազում շինուածոյ բերդից և եկեղեցեաց՝ շինեաց և զփառաւոր վանքս, զխցկունս և զեկեղեցի յանուն սրբոյն Սարգսի, և զծառաքար վանքն բերդ արարեալ»։ Զսորա դաւաճանութն 'ի

## ԳԼՈՒԽ ԵՐԵՔՏԱՍՆԵՐՈՐԴ

### ԴՐՕՇՔ ՆՇԱՆՔ ԵՒ ՎԵՐՏԱՌՈՒԹԻՒՆՔ

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

Թագաւորութեան ազգիս դրօշ յառաջին ժամանակս էր արծիւ, իսկ յաւուրս Թագաւորութեան Ռուբինեանց՝ առիւծ. զյիշատակութիւն այսորիկ գտանեմք միայն առ Մխիթարայ Համթեցւոյն, որ 'ի Թղթ. 48. վասն Լեւոնի առաջին պսակաւորի գրէ. «Կայսերքն ըստ անուանն Առիւծածու (Նշան) առաքեցին սմա. զոր բարձեալ 'ի վերայ Դրօշի իւրոյ առաջի իւր ընթանայր: Եւ այս նշան դրօշի սեփհականեալ մնաց 'ի Հայս մինչեւ ցվախճան Թագաւորութեան կիլիկեցւոց: Իսկ առաջին Թագաւորքն Հայոց որ 'ի Հիւսիս՝ զԱրծիւ-նշան կրէին»:

Նշանք դրօշու բազում ուրեք յիշատակին 'ի գիրս. զոր օրինակ յասելն Խորենացւոյն Բ. 46. «Համօրէն ճակատուն Երուանդայ եկին Նշանք Արտաշիսի (երկրորդի)»: Ագաթանգեղոս ԾԹ. յիշատակէ նաեւ զիւրաքանչիւր զնդի ունել զիւր նշան սեփական որպէս օրէն էր, յասելն. «Երիվարօք զօրօք եւ Նշանօք իւրաքանչիւր գնդաւ»: Բուզանդ Ե. 1. զնշանս զօրաց Մուշեղայ սպարապետին Պապայ արքայի. «Ածէր զամենայն հանդերձ կազմեալս եւ պատրաստեալս վառեալս 'ի պատերազմ, զԴրօշս փողփողեալս եւ Նշանս արձակեալս»: Եւ 'ի Ե. 4. վասն անձին նորին Մուշեղայ ասէ. «Եկն եւ զօրավարն սպարապետն Հայոց Մուշեղ. եւ եբեր զՆշանն իւր եւ զզէնն առ Ներսէս եպիսկոպոսապետն, զի օրհնեսցէ զնա, եւ իջցէ 'ի պատերազմ»: Այլ չունիմ ասել թէ զինչ էին այս նշանք, միայն Մեսրոպ 'ի Թիւն Ե. յաւուրս Արշակայ թագաւորի երկուս նշանս յիշէ՝ արծուոյ եւ աղեղան.

« Եւ տան զգունդն Հայոց 'ի ձեռն Վասակայ (մամիկոնեայ) կալ ընդդէմ պատերազմաց սպարապետութե՛, և զերիս եղբարս նորա ընդ նմա հազարապետս կացուցանէր. և կացին զօրավարք մամիկոնք, ճակատամարտք և ռազմահարք, աղեղնաւորք, Արծուենշանք, նիզակաքաղք, սպարաքաղք, քաջասիրտք, անբեկնելք 'ի պատերազմունս, յաղթողք 'ի մարտ պատերազմաց, թարենշանք, թարեհամբաւք, Աղաւնադրօշք. 'ի մէջ պատերազմաց իբրև հուր ընդ եղէգն ընթանային տիրասէր ազգն մամիկոնեանք »: Բուզանդ Դ. 2. 'ի յիշելն զզօրավարութի Հայոց կարգաւորեալ յաւուրս Արշակայ, զայսոսիկ անուանս նշանաց յիշէ. « Նոյնպէս ստրատելատուն սպարապետութեն զօրավարութեն մարտի կռուելոյ, գործոյ ռազմիկ ճակատամուղ նիզակին, իրաւունս ազանազգիք Աղաւնադրօշ Արծուէնշանք Վարդենանշանք »: Ի թուղթն Դաշանց յիշատակին նշանք և դրօշք՝ զորս ետ մեծն Կոստանդիանոս զօրաց մերոց. « Իսկ հզօր հազարապետացն Հայոց պարգևեցաւ 'ի մերմէ թագաւորութենս նշանակս և Դրօշս դաշնադրականս և Վեհապետականս »: Եղիշէ 167. յիշատակէ դրօշս և փողահարս զօրաց Հայոց:

Պաշտօն տեղապահին կամ զօրավարին էր՝ կրել առաջի իւր խաչադրօշ. զայս ցուցանէ բան Թովմայի Արծրունւոյ Դ. 6. յասելն վասն Ամրատայ, թէ պատուելով զորդին իշխանին Վասպուրականի, « ետ բերել պարգևս և պատիւս Աշոտի ըստ իշխանական յօրինուածի. և զԳագիկ (զեղբայրն նորա, որ զկնի եղև թագաւոր Արծրունեաց,) ձգեալ 'ի պատիւ զօրավարութե Հայոց մեծաց, ըստ օրինի թագաւորացն Յունաց տալ առաջի նորա նշանակս խաչադրօշս »:

Պաշտօն իշխանաց 'ի պատերազմի՝ էր կրել 'ի սաղաւարտս իւրեանց զնշան խաչին որ կայր յանուն սրբոյն Սարգսի 'ի տեղւոջն Գագ. զոր ակնարկէ Շնորհալին 'ի բանս շարականի սրբոյն. « Սաղաւարտ յուսոյ անմահ բանին եդեալ 'ի գլուխ մերոյ իշխանին... Խաչաչարչար տուրք դիտապետ նշանագործ անուամբ 'ի խաչ և յեկեղեցի, առաւել պայծառ 'ի գլուխս Գագայ, 'ի գագաթան տեղւոյն օրհնեալ սրբոյն Մեսրոպայ [1] »: Գուցէ ընդ խաչին նաև զքանդակ սրբոյն Սարգսի կրէին 'ի սաղաւարտս, որ առաւել յաղ-

[1] Զայս բան բացայայտէ Կիրակոս յասելն վասն Վանական վարդապետի. « Աւաղեցին զնա 'ի բերդն՝ որ կոչի Գագ. և առեալ զնա. ապրեալ, եւ եւթամ անկանիմ առ սուրբ նշանին որ յանուն սրբոյն Սարգսի. Իսկ գրել նովաւ վասն քո՝ և այլ եղբարցն՝ որք կան 'ի ձեռն անօրինին, զի

մի 'ի բանից առաքի Բուզանդայ Գ. 11. "Այլա յետ այսո-
րինակ փոխեալ լինէր Քաջ արանց աշխարհաշէն Խոսրով, թա-
գաւորն Հայոց մեծաց": Կայսրն Թէոդոսեանոս զերկուս
անուանս տայ Տրդատայ՝ Աթոռակից և Նիզակակից. "Ինք-
նակալ կայսր Թէոդոսեանոս առ սիրելի եղբայր և Աթո-
ռակից մեր Տրդատ ողջոյն: Գիտութիւն լիցի եղբայրութեանդ
քում Նիզակակից մերում": Ագաթանգեղոս կձ:

Յայտ է յառաջելոցս, զի որ առ այլս 'ի թագաւորաց
տոհմացեալ յաճախ վարէին այլ և այլ մեծամեծ անուանք
վերտառութեանց, առ մերսն յոչ ինչ համարեալ էր. զի և
անունս Դիւցազուն տուեալ 'ի Կադմեայ առ Հայկ՝ "Գի-
տես ասէ, ով մեծդ Դիւցազանց", որ է բան և վկայութ
Մարիբասայ 'ի Խորենացւոյն բերեալ Ա. 11. յայս է՝ 'ի
Մարիբասայ անուն եդեալ 'ի բերան Կադմեայ. զի 'ի ժա-
մանակի աշտարակաշինութեան չև էին տակաւին գիրք և
դիցապաշտութիւն յաշխարհի մերում, որպէս ուսեալ տեսա-
նել 'ի գլուխն Կրօնի. Թող զայն, զի ոչ 'ի նամականի էր
գրեալ այս անուն, և ոչ առ թագաւորն տուեալ, զորմէ
է բանս մեր, այլ լոկ առ քաջակորով նահապետն Հայկ:
Այլ առաւել զարմանք այն է՝ զի թէպէտ Վիրք և Ա-
ղուանք էին ընդ մերովք թագաւորօք, գէթ ընդ բա-
զում ժամանակս, որպէս և ընդ ձեռամբ կաթողիկոսին,
այլ ոչ կոչէին ուրեք մերքն թագաւոր Վրաց և Աղուանից:

Իսկ ընդ հակառակն այսմ՝ յորժամ տէրութիւն Բագրա-
տունեաց 'ի վերջին ժամանակս իւր օր ըստ օրէ տկարա-
նայր, յայնժամ տեառնեամբ հնարեալ և յաճախեալ զմեծա-
պանծ անունս Շահէն շահ, կամ Շահան շահ, որ է ասել Ար-
քայից արքայ: Զայս անուն նախ էառ Ի. Աշոտ որդի Ա.
Սմբատայ. զոր Յովհաննէս կաթողիկոս 'ի Սրուք ստախկա-
նէն տուեալ ասէ, գրելով թէ Սրուք "առաւել քան ըզ-
Յուսուփ ըստ նմին սակի զնէր ուխտ միաբանական խա-
ղաղութեան ընդ Աշոտի, և Շահանշահ զնա անուանէր": Վասն
որոյ նոյն ինքն պատմաբանն տեղւոյ յայս անուն կոչէ զԱ-
շոտ. "Թիկունս յԱշոտոյ դարձուցանէր, որ Շահանշահն
անուանիւր". Եւ թէ. "Զօրաց 'ի հանդիպմանն Շահանշա-
հի": Եւ առաւել յաճախ կոչէ Շահանն կոչեցեալ Շահ: Բայց
Ասողիկ Գ. 6. ոչ բանիւ Սրուքայ՝ այլ ինքնակամ ընտրու-
թեան նորին Աշոտոյ ընծայէ զայս անուանակոչութիւն պա-
տուոյ ասելով. "Այս Աշոտ հրամանաւ Լեւոնի զաւանայ
յաշխարհս մեր, և գտանէ զծառայս հօր իւրոյ թագա-
ւորեալ. (զի 'ի նմին ժամանակի թագաւորեալ էին Գա-

գիրկ արծրունի, և Աշոտ եղբօրորդւոյն Սմբատայ,) զնոքին անուանեաց Շահան շահ. այսինքն Թագաւորաց Թագաւոր. և հալածական առնէ զիսմայելացւոց զօրսն յաշխարհէս Հայոց,,։ Այլ նոյն իսկ օտարաձայն կոչումն յայտ առնէ յայլազգեաց անուանեալ 'ի սկզբանն։ Վարդան նաև զայլ պատճառս յառաջ բերէ. զի հնազանդեցուցեալ ասէ 'ի ներքոյ իւր զԱշոտ որդի հօրեղբօր իւրոյ, և զԳագիկ Թագաւոր արծրունի, և զՄովսէս զառնացեալն յԱղուանս, "և մեծազօր գտեալ քան զնոսա, և քան զԹագաւորսն Վրաց Ներսեհ (Ատրներսեհ), կոչեցաւ 'ի վերայ նոցա Շահնշահ,,։

Զայս պատուանուն եթէ չընկալան առաջինն աշխարհակալ Թագաւորքն մեր՝ որոց առաւել վայել էր, չգիտեմ՝ զիա՞րդ վայելուչ եւս էր առնուլ սմին Բ. Աշոտոյ, որ արդեամբք հազիւ կարէր կոչիլ արքայ. բայց ըստ այն զարմացիր, զի որչափ նուազէր տէրութի՛ և սահմանք երկրին, նոյնչափ և յաճախէր անունս այս. զի Ասողիկ Գ. Ց. զայս պատիւ և Գ. Աշոտոյ ողորմածի տայ ասելով. "Զկնի Աբասայ Թագաւորեաց Աշոտ որդի նորա, որ և Շահնշահ կոչիւր,,։ Կիրակոս տայ նաև յաջորդի նորա Բ. Սմբատայ, և որ զկնի նորա Ա. Գագկայ, եւս և Թագաւորին վանանդացւոց Գագկայ, որ տիրէր 'ի վերայ միոյ 'ի գաւառացն Վանանդայ։ Վարդան տայ զայս անուն նաև միոյ 'ի Թագաւորացն Վասպուրականի, որ էր յաջորդ Աբուսահլի։ Ժողովականք զորս ժողովեաց Լևոն արքայ, զայս անուն ընծայեն նաև Զաքարիայ որ չէր Թագաւոր, կոչելով զնա "Մեծապատիւ սպասալար և Շահնշահ արևելեան կողմանց Զաքարիա,,. որպէս գրէ Կիրակոս։

Այլ յետ այսր ամենայնի մեծապատիւ անունս այս տուաւ և աննշանից ումանց. "Մնաց, ասէ Կիրակոս, որդի մի Զաքարէ մանուկ տղայ՝ Շահնշահ անուն նորա, զոր սնոյց Իւանէ ընդ որդւոյ իւրում Սարգսի, զոր Աւագն կոչէին,,։ Դարձեալ նովին անուամբ կոչէր և այլ ոմն վասն բնակելոյ նորա յԱնի յետ դադարելոյ Թագաւորութեն Բագրատունեաց. զորմէ ասէ Վարդան, թէ յետ սպանանելոյ սպարապետին Վրաց Զաքարէի, "որդւակոտուր լեալ մեծաւ հայրն Շահնշահ կոչեցեալ, իբր տէր մայրաքաղաքին Անոյ, որ երբեմն նոցա էր արքայի, որ աւագն էր Թագաւորացն Բագրատունեաց այլ և այլ աշխարհացն, զանուն տեառն Անոյ Շահնշահ կոչելով, իբր Թագաւորաց Թագաւոր,,։

Ըստ անշուք անուանակոչութեն Թագաւորին, նոյնպէս

և կին նորա կոչէր առ մերօքն՝ Տիկին անուամբ. զոր օրինակ առ Խորենացւոյն Բ. 50. «Արձան զՏիկին օրիորդն Սաթինիկ»։ Եւ առ Ագաթանգեղոսի յիշ. «Սոյնպէս և ինքեանք երկոքին Աշխէն Տիկին, և քոյր թագաւորին Խոսրովիդուխտ»։ Եւ առ Բուզանդայ Գ. 3. «Անձարկելով մեծին Հայոց Տիկնոջն», որ էր թագուհին կին փոքուն Խոսրովու թագաւորին։ Եւ Դ. 15. «Տալով յեկեղեցւոյն Ողոմպիայ Տիկնոջն ընծեալ զմահուն գործ»։ Սա էր կին Ծ. Արշակայ արքայի։ Սոյնպէս և 'ի 55. «Առաքէին զկապանս առ Տիկին աշխարհին առ Փառանձեմ»։ Իսկ Տիկնանց Տիկին կոչել՝ զՊարսից թագուհին միայն գտանեմք անուանեալ առ Բուզանդայ Ե. 2. Թերևս յորոշումն այլոց կանանց նորա ըստ օրինի բազմակնութեան։ Եւ որպէս զթագուհին՝ նոյնպէս և զիշխանութիւն թագուհւոյ կոչեն Տիկնութիւն. զոր օրինակ է տեսանել առ Ագաթանգեղոսի Հա. «Զի տարցեն զնա կնութեան Տրդատայ թագաւորին, և Տիկնութիւն Հայոց»։ Եւ առ Խորենացւոյն Ա. 29. «Ի հաստատել Աժդահակայ զՏիգրանուհի 'ի Տիկնութիւն»։ Եւ Բ. 35. գրէ վասն Հեղինեայ. «Ի վերայ թողլով նմա զՏիկնութիւն ամենայն Միջագետաց»։ Սոյնպէս և առ Բուզանդայ Ե. 37. «Զմայրն նորա զԶարմանդուխտ (կին Պապայ արքայի) 'ի մեծի չքի Տիկնութեան պահէր»։

Իսկ զկիրառութիւն Թագուհի անուանս սակաւ ուրեք է տեսանել առ մեզ. զոր օրինակ առ Խորենացւոյն Բ. 50. և 58. 'ի գրելն վասն Սաթինկայ տիկնոջ. իսկ Ա. 28. 'ի թղթին օտարազգւոյն Աժդահակայ գտանեմք 'ի խօսելն զՏիգրանուհւոյ, ուր կոչի Թագուհեաց Թագուհի։

Սոյնպէս հազիւ ուրեք է տեսանել և զանուանս Դշխոյ, տուեալ վասն մերոց թագուհեաց. որպէս առ Խորենացւոյն Գ. 35. Դշխոյ կոչեցեալ գտանեմք զՓառանձեմ։ Ի Թուղթն Դաշանց գտանի և այլ իմն անուն տուեալ Աշխէն տիկնոջն, այն է Բամբիշ[1]։

1 Բուզանդ. իբր յատուկ անուն յիշ. բայց առ Մեսրոպայ Մամիկոնեան կոչի մայր ՀԷ զԲամբիշն, որով կոչէր քոյր Տիրան մեծին Ներսեսի, 'ի հինգ ձեռագիրս օրինակ այլոցն, մայր մեծին Ներսեսի. ընթեռնու ևս այսպէս գրեալ։

# ԳԻՐՔ ՉՈՐԵՔՏԱՍՆԵՐՈՐԴ

## ԶԻՆՈՒՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

### ՅՕԴՈՒԱԾ Ա.

Կարգաւորութիւն զինուորութեան ։

ԱՌԱՋԻՆ հատուածի կարգի զինուորութե ընծայէ Խորենացին մեծին Տիգրանայ, զորոյ զայլ և այլ բարեկարգութիւնս յիշեալ՝ ածէ՝ի մէջ և վասն զօրացն ասելով. "Զհետևակամարտսն 'ի վերայ ուսոց ձիոց բարձեալք, և զպարսաւորսն առհասարակ դիպաղեղունս, և շերտաւորսն 'ի սուսեր և 'ի տէգ նիզակի վառեալք. մերկսն վահանօք և զգեստիւք երկաթոյ պատրաստեալք ։ Որոց 'ի մի վայր հաւաքելոց բաւական էր տեսիլն միայն, և որ 'ի նոցայցն պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք զթշնամիսն արտահալածել". Ա. ԻԴ ։ Եւ զերկրորդն՝ Վաղարշակայ, զորոյ զպէսպէս շինութիւնս թուեալ՝ ապա ասէ." Եւ որ կէս շուրջ զթագաւորութեամբ զօրաց, զօրապետաց, կողմանց կողմնակալաց, և որ նման այսոցիկ". Բ. Է ։

Այլ քանզի հայաստան աշխարհ արձակ է և անպատըսպար 'ի ծովէ[1] և յանմատոյց լերանց[2], իսկ սահմանակիցք իւր ազգք, մանաւանդ հիւսիսայինքն արևելեայք սարմատացիք, ալք պատերազմողք և աւազակաւորք, հարկ էր նմա բազմութե զօրաց զգեստ ունել նոցա ։ Նմին իրի

1 Զի թէպէտ հայաստան յարևելից յանգի 'ի ծովն Կասպից, բայց ընդ-տակաւ սահմանս ։

2 Զի զօրեղ կովկասայքն լերանց ոչ առ սահմանօք աշխարհին կան, այլ յայնկոյս Վրաց ։

այսմ հասու եղեալ և Նախատես աշխարհաշէնն Վաղարշակ, սկիզբն առնէր հաստատելոյ զկարգ զինուորութե՛ կարգեալ նախ չորս մեծամեծ իշխանս համողերձ չորիւք գնդովք զօրաց 'ի չորեսին կողմանս աշխարհիս Հայոց ։ Թէ քանի կարեւոր էր և օգտակար պատրաստութիւս այս՝ յայտ անտի է, զի ցորչափ տևեաց, հաստատուն չեղև այնպէս կոխան թշնամեաց, որպէս զկնի ։ Սովին յայտ արար թէ ըստ քաղաքական բարեկարգութեն գիտէր նա և զպարուեստ զինուորութե ։

Ասկս այսր պահպանութե սահմանաց ողջս չորեքին իշխանք կոչէին Սահմանակալք և Կողմնակալք. և ոսկս ունելոյ յարքայէ իշխանութի մեծ՝ կոչէին Բդեշխք. զի որպէս ցուցանեն պատմութիք՝ 'ի սահմանն յորս կային, էին իբրև փոխանորդք արքայի. վասն որոյ Ստեփաննոս օրբելեան է. զայսոսիկ չորեսին իշխանս յաւուրս Տրդատայ կոչէ "Երկրորդ Հրամանատար 'ի վերայ ամենայնին". որք և առ մեծուն իշխանութեն երբեմն ապստամբէին ։ Այլ 'ի գիրս զերկոսին միայն գտանեմք Բդեշխս անուամբ յիշատակեալս, որք են Աղձնեաց և Գուգարաց[1]. իսկ զմիւս երկուսն Խորենացին կոչէ Սպարապետ արեւելեան և արեւմտեան զօրուն ։ Եւ այսպէս դիտաւորութե Վաղարշակայ էր պահպանել զչորեսին կողմանս աշխարհիս. բայց 'ի կարգաւորելն՝ յարեւելից և յարեւմտից կրկնակի զօրութիւս կարգեաց, զորս մի առ մի յառաջ բերցուք 'ի Խորենացւոյն ։

Յարեւմտեան կողմն կարգեաց Վաղարշակ սպարապետ 'ի բագրատունի տոհմէն. "Իսկ 'ի ծայրս հայերէն խօսից Կողմնակալ իշխան բիւրուց և հազարաց յԱրեւմտից կուսէ". Բ. 3. որ թուի լինել յարեւմտից հիւսիսոյ, քանզի Սպեր երկիր Բագրատունեաց էր 'ի հիւսիսակողմն ։ Իսկ յարեւմտից հարաւոյ կարգեաց սպարապետ զԱնգեղտունն, ըստ որում ծանիք, ուր էր երկիր Անգեղտանն, էր ընդ արեւմտեան հարաւակողմն մեծին Հայոց, զորմէ ասէ 'ի Բ. 8. "Իսկ զայր խոժոռադէմ ... Տորք անուն կոչեցեալ ... հաստատէ կուսակալ արեւմտից ... կոչէ զանուն ազգին Անգեղտուն"։

Յարեւելեան կողմն զերկուս ցեղս միանգամայն կարգեաց սպարապետ. "Եւ յԱրեւելից կողմանէ զեղերբ հայկա-

[1] Տես զոր ինչ գրեցաք վասն այսր 'ի վերոյ, 'ի ճառելն զարտաքին նախարարաց.

կամ խօսից Կողոնաչոյ, զերկու ցեղից նահապետութեանցն Սիւնական եւ Կադմեայն ,,. բ. 8: Այս գունդ էր յարեւելից հարաւոյ. զի զմիւս գունդն բացայայտ դնէ անդէն յարեւելից հիւսիսոյ ասելով. “Յետ սորա մեծ եւ անուանի եւ բազմաբիւր զարեւելից հիւսիսոյ կողմանն կարգէ կողմնակալութի զայր անուանի՝ եւ յամենայն գործ մտաւորութե եւ հանճարոյ առաջին՝ զԱրամն ,, :

Ի հիւսիսակողմն եղ զդրօշն Գուգարաց. “Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ Պողոնաչոյ Հիւսիսոյ կարգէ զմեծ եւ զհզօր ազգն. եւ նահապետութիւնն անուն կարգայ Բդեշխ գուգարացւոց ,, . անդ :

Ի հարաւակողմն եղ զդրօշն Աղձնեաց. “Եւ զՇարաշան 'ի տանէ Սանասարայ հաստատէ Բդեշխ մեծ, եւ կողմնակալ յարեւմտից Հարաւոյ, յեզեր սահմանացն ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ, գաւառս պարգեւելով զԱրձն, եւ որ շուրջ զնովաւ ,, . անդ :

Նոյն կարգաւորութի չորեքկողմեան զինուորութե մնաց նաեւ յապագայս. զի եւ յաւուրս բ. Արտաշիսի յիշատակին, զորս բաժանեաց առ որդիս իւր. “Բաժանէ Արտաշէս եւ զիշխանութի զօրուն ընդ չորս. զարեւելեանն թողու 'ի վերայ Արտաւազդայ, եւ զարեւմտեանն տայ Տիրանայ, զհարաւայինն 'ի Սմբատ հաւատայ, եւ զհիւսիսայինն 'ի Զարեհ,,. բ. 53: Երեք 'ի նոցանէ որդիք նորա էին, իսկ Սմբատ՝ դայեակ իւր. եւ 'ի լինել հարկի յօգնութի հասանէին միմեանց, որպէս սորեւ ասէ, թէ առ 'ի զերծուցանել զԴարեհ 'ի ձեռաց Քարձամայ Վրաց արքայի, Արտաւազդ, Տիրան եւ Սմբատ պատերազմեցան ընդ նմա. յայտ է թէ իւրեանց գնդօք, որք կարգեալ էին յերիս կողմանս աշխարհիս մերոյ. եւ 'ի բ. 54. յայտնի անուանէ եւ զկողմանս. Ի խաղալն ասէ հռոմայեցի զօրաց 'ի վերայ բ. Արտաշիսի, “ հասեալ 'ի կողմանս Կեսարու՝ զՏիրան եւ զզօրսըն արեւմտեան առաջի եղեալ ածեն տագնապաւ մինչեւ ցքաղ ընդարձակ հովիտն Բասենոյ, յորում ընդդէմ դիպեալ Արտաւազդ արեւելեայ եւ հիւսիսային զօրօքն, համդերձ ամենայն որդւովքն արքայի, եւ պատերազմեալ սաստկապէս վտանգէին. յորոյ 'ի վերջս պատերազմին հասեալ Սմբատ հարաւային զօրօքն, ընդ մէջ անցեալ ապրեցուցանէ զորդիսն արքայի ,, :

Յաւուրս Տրդատայ վերջացեալ էր այս կարգ չորեքկողմեան գնդից եւ սպարապետութեանց, եւ մի միայն զօրավար իշխէր Արտաւազդ անուն. 'ի մեռանել նորա՝ Տրդատ

անդրէն եւ հաստատել, որպէս ասէ Խորենացի Գ. 6. զա-
րաց և զիշխանսն մի առ մի յիշէ Ստեփաննոս Օրպելեան է. յասելն վասն Տրդատայ. "Իսկ զօրացն և աշխարհին չորս միայն կացուցանէ իւրոյ թագաւորութեան երկրորդ հրամանատար 'ի վերայ ամենայնին. արեւելեան կողմանն՝ իշխանն Սիւնեաց քաջն և մի իշխանօք. հիւսիսոյն կողմանն՝ իշխանն Անգեղտան քաջն և երկու իշխանօք: Զայս այսպէս (գտաք) 'ի գահ նամակի իշխանացն Հայոց՝ զոր Ղևոնդ գրեաց,,: Ի կարգաւորութեան զինուորութեա այս ինչ է խտիր ընդ Վաղարշակ և ընդ Տրդատ. զի սա փոփոխեաց զիշխանսն՝ յանձնելով զզօրս իւրաքանչիւր կողման այլոց իշխանաց, և ոչ որոց յանձնեալ էր Վաղարշակ:

Սոյն այս կարգ չորեքկողմեան սպարապետութեան տևեաց և յաւուրս փոքուն Խոսրովու որդւոյն Տրդատայ, որպէս յայտ է 'ի Խորենացւոյն Գ. 6. "Եկեալ Անտիոքոս թագաւորեցայց զԽոսրով, և զչորեսին սպարապետսն մնացոյց 'ի նոյն իշխանութեան զօրու, զորս կացուցեալ էր Տրդատայ յիւրում կենդանութեան յետ մեռանելոյ դայեկին իւրում Արտաւազդայ Մանդակունւոյ, որ միագլխապետ էր, և ամենայն Հայոց զօրավար: Առաջին՝ Բագարատ ասպետ զօրավար արեւմտեայ գնդին: Երկրորդ՝ Միհրան առաջնորդ Վրաց և բդեշխ գուգարացւոց, սպարապետ հիւսիսային զօրուն: Երրորդ՝ Վահան նահապետ Ամատունեաց, զօրավար արևելեան գնդին: Չորրորդ՝ Մանաճիհր նահապետ Ռշտունեաց, սպարապետ հարաւային զօրուն: Եւ բաժանեաց եւ նոցա զիւրաքանչիւր զօրսն,,: Այս գունդք զօրաց են՝ որ յիշատակին առ նորին մատենագրի Գ. 9. կոչեցեալ Արևելեան և Արևմտեան զօրք Հայոց. և Հարաւային և Հիւսիսային մեր գունդք:

Տևեաց նաև յաւուրս Է. Արշակայ. զի վասն այսորիկ սահմանապահ գնդիցս պարտ է իմանալ զոր ասէ Բուզանդ Դ. 2. վասն Արշակայ. "Սոյնպէս և զամենայն ազգսն զօրացն մեծամեծացն նահապետացն, որպէս առաջին թագաւորքն նուաճեալք յիւրաքանչիւր չափու. և հնազանդէր զմեծամեծսն, զիւրաքանչիւր զօրս բաժանեալ յամենայն կողմանց, սահմանացն Հայոց սահմանապահս կացուցանէր,,: Տևեալ երևի նաև յաւուրս Պապայ արքայի, ըստ որում յիշատակի առ Խորենացւոյն Գ. 39. "Գնէլ նահապետ Անձևացեաց, և սպարապետ Պապայ Արևելեայ զօրուն,,:

Ի սատակման բռնութեան Շապհոյ Պարսից արքայի՝

Մուշեղ սպարապետ՝ որ միշտ փոյթ ունէր զշինուէ աշխարհիս, զայլ կարգաւորութիւն զօրաց կամեցաւ առնել յաշխարհիս մերում, զի ասէ Բուզանդ Ե. 34. "Խորհէր ևս ընդ իշխանսն Յունաց, և նորօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց. 'ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս ամուր պարսպաւորս զօրանիստս հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց. մինչև 'ի Գանձակ սահմանս երկիրն որ Պարսից կուսէ էր, Հայոց սահմանն էր. և զամենայն ազատսն Հայոց կայսերական թոշակօքն զինուորել. սոյնպէս (առնել) և զօրաց երկրին Հայոց, զի այսպէս ամենայն զգուշութիւն լիցի առ 'ի թշնամեաց խուժանաց 'ի զօրացն Պարսից: Եւ թագաւորն Յունաց (մեծն Թէոդոս) յանձին ունէր մեծաւ խնդութեամբ առնել զայս. զի այսու ամենայնիւ աշխարհն հաստատուն լիցի և անշարժ 'ի նմանէն, զի մի կարասցէ թագաւորն Պարսից յիւր վարել զաշխարհն Հայոց„: Քաջ էր խորհուրդ և առաջարկութիւն Մուշեղայ[1]. զի առ երկպառակութեան և այլոց անտաւոր թերութեանց իշխանաց մերոց՝ քանզի չմարթէր յանդորրու կալ աշխարհս մեր, լաւ ևս էր միշտ ընդ միով և քրիստոնեայ տէրութեան լինել, քան երբեմն ընդ նովաւ և երբեմն ընդ Պարսից. մանաւանդ զի և զերծ ևս լինէր յանողորմ պարսկական բռնաւորութենէ յաղագս քրիստոնեական կրօնից. զորոյ էառ զփորձ համաշխարհական հալածանօք յաւուրս Յազկերտի երկրորդի: Բայց այս քաջ խորհուրդ Մուշեղայ պատճառ եղև իւրոյ մահուանն[2]:

Այլ զկարգ և իցէ յետ վերջանալոյ թագաւորութեան Արշակունեաց՝ դադարեցաւ և կարգաւորութիւն այդ չորից սպարապետութեանց ընդ չորեսին կողմանս աշխարհիս. նմին իրի անուն և առ յապա չգտանի ինչ յիշատակ զնոցանէ. այլ թագաւորք Պարսից ինքեանց սեփականեցին այնուհետև զզօրս մեր. նոցին քաջութեամբ պաշտպանեցին զազգ իւրեանց ընդդէմ Հոնաց, Հեփթաղաց և Քուշանաց, որպէս յայտ է պարապելոցն 'ի պատմութիւնս. յորում ժամանակի սակաւորութիւն ինչ լեալ առ զօրս մեր պատմէ Եղիշէ թղթ. 73. "Օրէնք էին, ասէ, յառաջ ժամանակաւ յորժամ 'ի Հայոց այրուձի 'ի դուռն երթայր 'ի ձեռն պատուաւորի

[1] Զարդիւնս խորհրդոյն Մուշեղայ 'ի գլուխ տարաւ մասամբ իմն փոքրն Թէոդոս, շինելով մի միայն քաղաք զօրանիստ զԹէոդոսուպօլիս, որ է Կարնոյ քաղաք. 'ի լինել յաղթութեան զօրաց, որ է ասել քաղաք զօրանիստ:

[2] Տես 'ի գլուխն Բուզանդ զքաջութ̃ Բասայ անհաւատութեան:

զօրագլխի ուրուք, այլ ընդ առաջ յղէր (արքայն Պարսից), և հարցանէր զողջոյն և զխաղաղութիւն Հայոց աշխարհին, և երկիցս և երիցս անգամ զնոյն առնէր. և զհանդէս գնդին իւրեանց տեսանէր. և յառաջ քան 'ի գործ պատերազմին հասանել՝ զգալն իսկ առ նա մեծ շնորհակալութի համարէր. և առաջի աթոռակցացն իւրոց և ամենայն մեծամեծացն՝ ամենեցուն գովութի մատուցանէր. և յիշէր զնախնեացն զվաստակս, և զառն առն քաջութի պատմէր նոցա „ ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Կարգաւորութիւն Ճակատու, Զօրաց և Բանակի ։

ՈՃԱԿԱՑ պատերազմի յերկս առաջս բաժանել ըստ սովորական օրինի՝ նոյնպէս գտանեմք առ մեզ, որպէս առ այլ ազգս. զոր օրինակ. “ Ի դիմի հարեալ միմեանց, և հատանէին յերկս առաջս „, ասէ Թոմա արծրունի Է. 6։ Այս առաջք կոչին Թև. “Տեսանէր... զի զձախակողմն շարժեցին զՀայոց գնդին, ասէ Եղիշէ, մեծաւ ուժով յարձակէր 'ի տեղին. և զաջ Թեւն Պարսից գնդին բեկեալ արկանէր. զգազանօքն „։

Այլ սովորաբար կոչին Աջ կողմն, Ահեակ կողմն, և Միջին. ըստ այսմ կարգեալ պատմէ Ղազար 'ի Թղթ. 111. վասն երանելւոյն Վարդանայ. “Երիս յառաջս բաժանեալ տայր 'ի ձեռս իւրաքանչիւր զօրագլխի. որում աջոյ կողմանն կացուցանէր զօրագլուխ զիշխանն Արշարունեաց զԱրշաւիր.. զահեակ կողմն տայր 'ի ձեռն Խորենայ խորխոռունւոյ. ... Եւ ինքն սուրբ զօրավարն.. պատրաստէր զինքն միջոյ տեղւոյն յարձակման. և այսպէս յօրինեալ զճակատն „։ Սոյն օրինակ և յայլում նուագի կարգեալ պատմէ 'ի Թղթ. 122. “Եւ սուրբն Վարդան տէրն մամիկոնէից բաժանեալ զիւր գունդն յերիս առաջս. միջոյն գնդին կարգէր գլխաւոր զտէրն Արծրունեաց.. և կողմանն աջոյ կարգէր ասպետ զերանելին Մախազ Խորէն... և ընդ ահեկէն կողմանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն „։

Ի վերայ երից առաջիցս յաւելեալ ասէ 'ի 224. վասն Վահանայ զայլ ինչ իբր յօգնականութի. “Սկսանէր այնուհետև զօրավարն Հայոց Վահան մամիկոնեան յօրինել

ըստ պատշաճի զիւրաքանչիւր կողմն ճակատուն, ըմբռնոյ կողմն բազում այրուձիովն տայր ՚ի ձեռն լաւի առն Սահակայ մարզպանին տալեալ. և ՚ի կողմանն այլոյ Թևին կարգէր զԲաշղ վահեւունի... և յահեկէ կողմանէ.. Ներսեհիւ և Հրահատաւ. և ընդ ամն իւրաքանչիւր այրուձիով զնդացն կազմէր զմեքն „:

Իսկ ՚ի Թղթ. 215. առաւել քան զսովորական զերրեակ բաժանումն ՚ի չորս առաջս բաժանեալ պատմէ վասն նորին Վահանայ. "Եւ բաժանեալ զչորեքհարիւրսն ՚ի չորս առաջս, միջին վայրի կարգէին զօրագլուխս ՚ի ժամուն զիշխանն Սիւնեաց Բաբգէն... և ահեակ կողմանն զԳարջոյն Մաղխազ, և կողմանն այլոյ զԳնունիսն երկոսին... և ընդ մէջ երկոցունց մասանցն զքաջն և զմտիրն զիշխանն Շիրակայ զՆերսեհն կամսարական „: Բայց սովորական յիշատակութի̃ ՚ի գիրս է զերկուց Թևոց. զոր օրինակ առ Մատթէոսի ձԹ. "Ցայնժամ գոչեաց քաջն Թոռնիկ և ձայն տուեալ այլոյ Թևոյն իւրոյ, և հասանէր ՚ի վերայ ձախոյ Թևոյն այլազգեացն, և պատառէր զնոսա մեծաւ յաղԹութե̃ „: Որք առ Յոհաննու կաթողիկոսի ուրեք կոչին աջն և ահեկն:

Նմին իմն կարգաւորութի̃ ճակատու գտանեմք կազմեալ մեծին Վարդանայ առ Եղիշէի 204. Նախ՝ յերիս գունդըս բաժանել, և իւրաքանչիւրոց ուրոյն նիզակակիցս[1] սահմանել. և բաց յերեցունց ատուի նաև չորրորդիմն գունդ յաւելուլ, միանգամայն և ուրոյն նիզակակից նմին: Ցիշատակին առ Եղիշէի 137. և Առաջապահ և Վերջապահ զօրք բանակին[2] "Անդ յանձանձէր ածէր զօրավարն (Վարդան) զկաց և զմնաց զօրականին Առաջապահօք և Վերջապահօք, կողմապահօք, ողջ առողջ հասուցեալ յաւուրս երեսուն մերձ ՚ի սահմանս հայրենի աշխարհին „: Ցիշատակի և առ Ղազարայ 117. Վերջապահ Թև: Իսկ առ Զենոբայ 46. ՚ի ճակատուն որ ՚ի Տրդատայ յարդարեալ՝ և այլ համանգամայնք գտանին յիշատակեալ. "Ի վաղիւն սկսան ռազմ գործել և ճակատ յօրինել. և փողոյ Թողեալ պատերազմին դրօշս երկու, և պահապանս տեղեացն զԲագրատունեաց իշխանն կացուցանէր. իսկ զաջ Թևն զօրուն տայր ՚ի ձեռն իշխանին Սիւնեաց, և զահեակ Թևն ՚ի ձեռն իշխանին Անգեղտան. իսկ զգահերէց իշխանն

1 Առ Եւրոպականս կոչեցեալ Ադյու- տանդք:

2 Ըստ Եւրոպացւոց կոչեցեալ Վան- կուարդիա, և Ռեդրոկուարդիա:

կացոյց Բենադադս իւր. և այնպէս յօրինեցան երկոքին Ճակատքն, և պատրաստեցան 'ի խումբս ”։

## Ա. Վահանափակ ։

Վահանափակ անուն երբեմն զՃակատն յիշէ Բուզ. Ե. 5. “Նոյնպէս և Հայոց սպարապետն[1] զԹիկունս ունէր զօրացն Հայոց, Վահանօք փակեալք զմիմեանս՝ իբրև զամուր քաղաք ինչ 'ի Թիկանց լինէին ”։ Եւ ստորև. “Յայնժամ դարձեալ սակաւուկ մի ինչ յաղԹահարեցին զնոսա զօրքն Պարսից, և նոքա իբրև 'ի բերդ ամուր դիմէին 'ի լեզէն 'ի զօրսն Վահանաւորս, և նոքա բացեալ զՎահանսն՝ զնոսա 'ի մէջ առնեալ փակէին ”։ Այսպէս անուանէին և 'ի մեծի պատերազմին Ձիրաւ դաշտին, զորմէ ասէ Խորենացի Գ. 37. “Յայնժամ Պարսիկքն զմերսն շրջէին, նոքա 'ի Վահանափակն Յունաց իբր յամուր քաղաք մտանէին առ ոչինչ վնասելոյ. քանզի այնպէս արար Գորգոմոս իշխանն հետևակ զօրուն, իբրև պարսպաւ պատեաց Վահանօք զՃակատն Պարսից ”։ Յոհաննէս կաԹողիկոս վասն զօրաց Սահակայ իշխանին ասէ. “Հրամայէր հետևակամարտ գնդին Վահանափակ լինել, որ ամրուԹիւն իմն բերէր յինքն որպէս զանպարտելի պարիսպ, և 'ի Թիկանց կուռէ նոցա զհեծելազօր գունդն պատրաստէր սպառազինեալս և վառեալս 'ի զէնս և 'ի զարդս։ Եւ առաջապահքն առաջի Վահանափակ[2] սպայքն սրտավառ երիվարօք խաղացեալ յայսկոյս յայնկոյս երԹային գային ”։ Եւ Թովմա արծրունի Գ. 12. ասէ վասն Գուրգենայ, Թէ 'ի հասանելն յանկարծակի զօրացն Բուղայի, “աՃապարեալ Գուրգէն հեծեալ յերիվարն և կարգեցին Ճակատս, և առաջի բոլորեցին. և Վահանաւորքն փակեցին զառաջակողմն Ճակատուն, և կացին 'ի Թիկանց հետևակազօր նահատակացն ”[3]։ Նիզակափակ եւս անուն յիշէ Ղազար 123. գիշերային պահապանաց. Թէպէտ վասն բանակին Պարսից ասէ ։

Կարգաւորութիւն այս Ճակատու կամ բանակի, որ հա-

[1] Իմա Ասպարապետն, որպէս գնէ 'ի 6։

[2] Զայս վահանափակ լինելն այլ իմն անծանօԹ անուամբ յիշատակէ Ասողիկ Բ. 41. 'ի խօսելն զՊարսից կամ զտաճիկ զօրաց, յորժամ Ճակատէին ընդ Հայս. “Բաղմ յօրինէին ընդ երեսս լայն դաշտին Դիւլնոս Ցոյժան Վահանափակութիւն ”։ Որ մարԹ է լինել և անուն դաշտին ։

[3] Նիզակափակ տիրապէս անուանեալ Թուին նոքա՝ որք նախ առաջին վասն առնեալ արտաքս յարձակին 'ի բանակէն ընդդէմ զօրաց Թշնամեաց. Թէպէտ և ոչ զատանելոց որոշ յիշատակութիւն վասն այսր ։

տարակ է առ ամենեսին և յամենայն ժամանակի, յայլ կերպարան և 'ի ձև փոխեցաւ 'ի մերոյն Հայկայ 'ի սկզբան անդ երևելոյ իւրոյ՝ առ 'ի դիւրաւ 'ի գլուխ տանել զյաղթութիւն։ Քանզի գոլով նորա ուշիմ և խոհեմ սկայ, որպէս կոչէ զնա Մարիբաս, զուշիմութիւն և զխոհեմութիւն իւր եցոյց արդարև 'ի կարգաւորութեան անդ ճակատու զօրաց իւրոց. զոր գիտաց յայնպիսի իմն ձև մուծանել ճարտարութեամբ, մինչև կարօղ լինել սակաւուք յաղթել յախուռն բազմութեան ճակատուն Նեբրովթայ. «Կարգէ, ասէ Խորենացին ա. 11. զԱրմենակ երկու եղբարբք ընդ աջմէ, և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց իւրոց 'ի ձախմէ, զի այրք կորովիք էին յաղեղն և 'ի սուսեր. և ինքն առաջի, և զայլս հրոսակին զկնի իւր կարգեաց. եռեանկիւնի իմն կարգեաց ձևով, հանդարտ յառաջ մատուցանելով»։ Այսու յայտ յանդիման երևի, թէ քանի հմուտ էր այրն իրաց պատերազմի, ոչ երկարժամանակեայ փորձիւ կամ ուսմամբ, այլ ընդաբոյս իմաստութեամբ. զի որ յանցանել դարուց յոլովից երկրաչափական գիտութեամբ երևելի հանդիսացան այրք 'ի զօրապետաց, նա ինքնահնար ճարտարմտութեամբ 'ի գլուխ տարաւ։

Զ Մուշեղայ ևս պատմի զքաջ սպարապետէն յայլ իմն կերպարան և 'ի ձև ածեալ զճակատ բանակին 'ի հաշակաւոր մարտին որ 'ի Ձիրաւ դաշտի յաւուրս Պապայ և մեծին Ներսէսի, զորմէ ասէ Մեսրոպ Ի. «Ոչ մնացեալ զօրացն Հոռոմոց, այլ խումբ արարեալ յանդուգն յարձակմամբ, ընտիր արամբք, քաջասիրտ անդութեամբ, ինքն առաջի՝ և այլ զկնու վառելոցն զհետ նորա եռեանկիւնի իմն ձևով»։

Մեծ իմն ճարտարութիւն տեսանի և 'ի կարգաւորութեան զօրաց քաջին Թոռնկայ 'ի թուին շիա (1072). որոյ միայն հազար հեծելազօրք մնացեալ՝ յանկարծ պատահեաց զօրացն Փիլարտոսի. բայց յայնպիսի իմն կարգի եդեալ էր զսակաւաթիւ զօրս իւր, զի յորժամ պատատեալ ընդմէջ էանց թշնամին, անդէն 'ի մէջ փակեաց. «Յայնժամ կարգեաց, ասէ Մատթէոս ճլը. Թոռնիկ զճակատ պատերազմին իւրոյ դասս առ դասս, յայսկոյս և յայնկոյս և յառաջոյ, և թիկնապահ իւր եդեալ զԿապոսն զայր քաջ երեքհարիւր արամբք. բայց ակն ածէր 'ի Փռանկէն քան յայլ զօրացն. և ասէր, տեսէք զի գունդս երթիցէ ընդդէմ Փռանկին։ Եւ ահա գայր Ռըմբաղտ և զօրք իւր, և 'ի դիմի հարաւ Թոռնկայ գնդին, և պատատեաց զզօր-

սըն, և էանց ընդ մէջն. և յայնժամ ձայն տուեալ Թոռնիկ զօրաց իւրոց, և միաբան 'ի մէջ իւրեանց փակեցին զնոսա, և զամենայն իշխանս ձեռբակալս արարին. կալան և զկոմսըն նոցա և զՓիլառտոսն, և զամենայն զօրս իւր փախստական արարին, և զիշխանս նորա արարին ձեռբակալս արս հազար և հինգ հարիւր. և յաւուր յայնմիկ եղև բազում կոտորածս Փռանկաց և այլոց քրիստոնէից. և դարձաւ Թոռնիկ, և ամենայն զօրք Հայոց գնացին 'ի Սասուն բազում աւարաւ „:

## Բ. Տեղի բանակին:

Ի ժամանակի Արշակունեաց էր լեառն Շահապիվան. որպէս գրէ Բուզանդ Դ. 15. "Եւ էր բանակ Թագաւորին (Բ. Արշակայ) 'ի Շահապիվանի 'ի բուն բանակի տեղւոջն Արշակունեացն 'ի ներքոյ սիւսեացն (սօսեացն) և 'ի վերայ տապարիսացն „:

## Գ. Հանդերձանք բանակին:

Բայց 'ի դրօշուց յիշատակեն և նշանք զոր կրէին 'ի բանակի. որպէս Թովմա արծրունի 'ի պատմելն զպատերազմն Բագարատայ իշխանին Տարօնոյ ընդդէմ Մուսէի հագարացւոյ, ասէ. "Գունդ առ գունդ ընդդէմ միմեանց ճակատեալ կազմէին զուազմն, և փողքն գոչէին, և դրօշքն տարածանէին, և նշանքն փողփողէին, վահանաւորքն և նիզակաւորքն գոչէին „. Է. 6:

## Դ. Խաչ տանել:

Յայտ է 'ի բանից Յովհաննու կաթողիկոսի խաչ տանել առաջի բանակին յասելն վասն Է. Աշոտոյ. "Ապա զկեռկար քարտիսին 'ի գլուսոս խաչէն որոյ կայեալ, զոր սովորն էր առաջի իւր միշտ շրջեցուցանել „: Եւ Թովմա արծրունի վասն Գուրգենայ եղբօր Աշոտոյ վասպուրականի յորժամ ել ընդդէմ Բուղայի, ասէ. "Գուրգէն եկաց 'ի ձախոյ կողմանն ճակատուն 'ի Թիկունս լինել գնդին հետևակազօր մարտակցացն, և զաջ թեւն տուեալ լինէր 'ի ձեռն Ապուլմկդէմայ, և այլքն մի ըստ միոջէ կացին 'ի կարգի ճակատուն. և աղօթականքն արկանէին առաջի նոցա զպաղատանսն, և պաշտօնեայքն բարձրացուցանէին զօրհնութիւն. և քահանայքն բարձեալ 'ի վեր զսուրբ աւետա-

րանն, և նշանակ իւրեանց կանգնեալ զնշան խաչին, և պաշ-
տօնեայքն կատարէին զտէրունական կանոնսն, և երաժըշ-
տականքն երգս ասեալ զյաղթութիւն Փարաւոնի՝ գոչէին.
Տէր խորտակէ զպատերազմունս, տէր է անուն նորա „.
Դ. Կ: Զայն ակնարկէ և այս բան պաղատանաց բանակին
Վարդանանց առ Եղիշէի. "Վասն նորա զչար միաբանութիւն
թշնամեացն քոց առ աջի քոյոյ փրկական մեծի նշանիս„: Որով
ցուցանէ թէ 'ի բանակին կանգնեալ կայր նշան խաչին:
Սոյնպէս և բան Մագիստրոսի յասելն 'ի ներբողեան խաչին.
"Իշխանաց զէն զօրաւոր 'ի պատերազմ անըրթացեալ,
Մանկանց դաստիարակ և պահապան դու պարգևեալ„:

## Ե. Վրան պատարագի:

Վրան պատարագի ունել 'ի բանակին՝ գոյր յառաջ
ժամանակաւ, այլ ապա խափանեալ գոլով Զաքարէ սպա-
սալար Թագուհւոյն Վրաց որ 'ի սկիզբն երեքտասաներորդ
դարուն՝ անդրէն հրամայեաց 'ի գործ դնել. որոյ պատ-
մութիւն Ճոխագոյն գտանի առ Կիրակոսի այսպէս. "Ած
զմտաւ իշխանն Զաքարէ, զի տեսանէր զզօրս Վրաց որ ընդ
թագաւորին իւրում, զի իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ ու-
նէր ընդ իւր քահանայս, և յամէն տեղիս մատուցանէին
պատարագ, և ինքն ոչ ունէր եկեղեցի 'ի Ճանապարհին,
զի չէր սովորութիւն Հայոց 'ի բազում ժամանակաց՝ յորմէ-
հետէ բարձան իշխանքն Հայոց մեծամեծք 'ի Պարսից և
յիսմայելացւոց բռնութենէն: Եւ նախատէին Վիրքն զՀայս
ոչ ունել եկեղեցի 'ի Ճանապարհին, և անհաղորդ մնալ
նոցա... վասն այնորիկ կարի յոյժ ցաւէր նմա. ապա
հարցանէ զմեծ վարդապետն (Մխիթար գօշ).. և ասէր թէ
ոչ երբէք եղեալ է թագաւորաց մերոց կամ իշխանաց 'ի
պէտս Ճանապարհաց եկեղեցի պաշտաման և պատարագի:
Հարցանէր և զայլ վարդապետս, և նոքա ասացին նմա
զայն՝ որ առ մեծազօր արքային Տրդատայ և վրանն և սե-
ղանն՝ զոր շրջեցուցանէին յաքունական բանակին, և որ
առ սուրբ Վարդանանցն՝ որ զմկրտութիւն և զհաղորդութիւն կա-
տարէին 'ի մէջ բանակին... և այլ բազումս որ նմանն էին
սմին: Ապա առնէ ցնոսա մեծ զօրավարն, առաք և ինձ հրա-
մանս, զի և ես շրջեցուցից զհետ իմ քահանայս, և Վրան պա-
տարագիս. առնէ ցնա վարդապետն մեծ (Մխիթար գօշ),
մեք (ոչ կարեմք) հրաման առնել զայդ առանց կաթո-
ղիկոսի Հայոց և թագաւորին Լևոնի: Ապա գրէ թուղթ,

և առաքէ դեսպանս առ կաթողիկոս Հայոց Յոհան ա-նուն որ ... 'ի Հռոմկլայն ... գրէ և առ Թագաւորն Լևոն և ծանուցանէ նմա զխնդիրն ... Այդ արքայն Լևոն ժո-ղովեալ վարդապետս և եպիսկոպոսունս իւրոյ իշխանու-թեան՝ հարցանէր վասն խնդրոյն Զաքարեի. և նոքա յանձն առին ... և գրեն թուղթ մի յարևելս այսպէս. Մեծա-պատիւ ասպետն և շահնշահ արևելեան կողմանց Զա-քարիա 'ի խնդիր ելեալ եղծեալ և աղաւաղեալ կարգաց քրիստոնէից որ 'ի տկարութէ այլասեռից՝ ժողով արարեալ վարդապետաց, եպիսկոպոսաց, հարցն և երիցանց ... գտին զխնդիրս նորա համաձայն աստուածային գրոցն: Այսպէս ա-ռաքեցաւ առ քրիստոսապսակ արքայն Հայոց Լևոն 'ի կող-մանս արևմտից աշխարհին կիլիկեցւոց. և նորա ժողով ա-րարեալ 'ի մայրաքաղաքն Սիս ... գտին զխնդիրս նորա համաձայն ուղղափառական կանոնաց և ոչ արտաքոյ.. Գրե-ցին 'ի ժողովոյն արևմտից, և առաքեցին յարևելս առ Զա-քարիայ: Իսկ կաթողիկոսն Յոհաննէս որ 'ի Հռոմկլայ՝ վասն ընդ միսս մտանելոյ իշխանաց արևելից՝ առաքեաց Վրան զմպեթարդ եկեղեցանձև, կաղմօղս և յօրինօղս նմին. և սեղանն մարմարեայ, և այլ սպասք պատարագաց,,. որպէս զի և 'ի բանակի անդ պատարագք մատուսցին:

## Զ. Խանք Բանակին[1]:

Յիշատակին այսոքիկ առ Խորենացւոյն արտաքոյ բա-նակին. զորս այսպէս յիշէ Գ. 46. "Իսկ Երուանդ ձիովն իւրով բովանդակ սպարէզս անցեալ՝ եկանէ 'ի խանս կար-գեալս 'ի բանակէն իւրմէ 'ի քաղաքն իւր, հեծեալ 'ի նոր ձիս. հանգոյց 'ի հանգուցէ փախչել,,:

## Է. Փողոց Հնչմունք:

Ի բանակին 'ի ժամ պատերազմի յիշատակին ուրեք ուրեք. զոր օրինակ առ Խորենացւոյն Գ. 46. "Եւ Սմբատ հրամայէր ղփողն պղնձիս հնչեցուցանել, և յառաջեալ զձախկատ իւր ...,,: Զնոյն 'ի պատմէնն երկրորդ, յե-րեսս 45. ասէ վասն Տրդատայ. "Եւ տայր դարձեալ թագա-ւորն 'ի փողքր կոտորածէն, ել 'ի գլուխ Արծանին. և հարեալ

1 Թուին իշխանք ժխտականութեան, որպէս Փօստայք յարեւմուտս. տաճ-կերէն Մէնդիլխանէ:

զարդարարար փողն, մինչև ամենայն զօրքն ժողովեցան 'ի մի վայր"։ Ցիշատակին նաև փողահարք. զոր օրինակ առ Եղիշէի 167. "Քանի՛ փողահարք 'ի մէջ գնդին ձայնիցեն"։

Բայց արտաքոյ պատերազմի նաև 'ի ժամանակի խաղաղութե հնչեցուցանել, էր նշան մեծութե սպարապետի. զոր մերս Վահան Մամիկոնեան յորժամ եա հնչեցուցանել նաև յերևելի առաջի Նիխորայ պարսկի, որ բերեալ էր պատգամ խաղաղութե 'ի կողմանէ Վաղարշայ Պարսից արքայի՝ սաստ առ նա Նիխոր, թէ այն պահեալ է միայն Պարսից սպարապետի, որպէս գրէ Ղազար 286. "Տայր հրաման մամիկոնեանն Վահան հնչեցուցանել զփողս պատերազմականս, և 'ի սաստկութե փողոյն ձայնից հնչեալ երկիրն թնդէր... և Նիխոր առաքեալ ընդ առաջ նորա արս աւագս, տայր ասել զմամիկոնեանն Վահան, եթէ ոչ ըստ կարգի Արեաց առնես դու զայդ... քանզի 'ի չուի փողոյ յԱրեաց բանակ՝ սպարապետն միայն Արեաց իշխէ մտանել, և այլ ոք զայդ համարձակութի 'ի Պարսիկս ոչ ոք իշխէ առնել"։ Կոստանդնուպօլսոյ կայսր 'ի պատիւ մերոյ արքային Տրդատայ տուեալ էր զանազան գործիս նուագարանաց, որ էր հրաման տալ զնոյն զինուորական նուագարանս հարկանել՝ զոր կայսերք հարկանէին. զոր օրինակ պատմի 'ի Թուղթն Դաշանց. "Օժտեցաք զնա (զՏրդատ) ... որոտընդոստ ահագնագոչ շփորայիւք, երգեհոնօք և ղանոնօք յորդաձայնիւք"։ Ուր նաև վասն հազարապետաց գրի. "Իսկ հզօր հազարապետացս Հայոց պարգևեցաւ 'ի մերմէ թագաւորութէս... փողս և փանփուռս բարձրաբարբառս"։ Առ Եղիշէի 'ի թղթ. 208. յիշատակի և ծէծ Դալարփող. թէպէտ և վասն կողմանն Պարսից։

Ը. Կարգ տրտանի զօրաց։

Զայս՝ Վաղարշակ կարգեաց 'ի պալատան իւրում յառաջ քան զկարգաւորութի զօրաց տէրութե. զի որպէս ամենայն տէրութիք ունին զօրս 'ի պահպանութի արքունեաց իւրեանց, որք առ Եւրոպացիս կոչին Քօռֆօ տէ կօռփ. իսկ առ օսմանեանս Դափուճի ողլի, սոյնպէս և Վաղարշակ, ասէ Խորենացին Բ. 7. "Եւ դռնոց և պահապանս դրան արքունի պատրաստէ զչորս. զմի մի իւրաքանչիւր վառելովք 'ի նոյն հին զարմից թագաւորացն որ 'ի Հայկայ"։ Եւ 'ի հետևեալ գլուխն զնոյն կրկնելով ասէ. "Եւ օրէնս իմն հաստատէ 'ի տան թագաւորութե իւրոյ

վասն Աշոտոյ եղբօր Յովհաննու թագաւորին յԱնի, 'ի սկիզբն մետասաներորդ դարուն. « Իսկ Աշոտ իբրև զկայծակն 'ի ներքս անցանէր, և հարկանէր զնոսա (զՎրացն զեսպանն զայլն զօրաւոր) Պողովարուն 'ի վերայ սաղաւարտին և զերկաթապատ մարմինն պատառեաց մինչև ցոտն. և հանդերձ միջօքն յերկիր ընկենոյր »: Սոյնպէս գրէ 'ի լԹ. և վասն զօրավարին Վասակայ. « Եւ 'ի շտապս եղեալ Վասակ 'ի ներքս դիմեաց. և Պողովար թրովն 'ի վերայ սաղաւարտին դաշեաց, և յերկուս հերձեաց զխափշիկն քաջ, որ և մասունք մարմնոյն յերկիր անկանէր »: Գրէ և 'ի ձգ. « Յայնժամ Շապուհ իշխանն (արծրունի) ասէր ցԱտոմ և ցԱպուսահլ (որդին Սենեքերիմայ), կամիք զի զզօրսդ հոռոմոց ցիր և ցան ածեմ ընդ երեսս դաշտացս. և արար զբահն եօթն կրկնակի, և զարկանէր թրովն 'ի վերայ, և 'ի վայր հեղոյր մանր զերկաթն »: Տես սորև և զայլ զէնս զերկաթահատս: Սուսեր երկայրի զոր 'ի վերայ յիշեաց Խորենացին՝ գտանեմք յիշատակեալ նաև առ Ասողկայ վասն Աշոտոյ թագաւորին Անւոյ. « Արագապէս զերիվարն խնդրեալ, զզարդ զինուցն զանձամբ առեալ, զերկայրի սուսերն 'ի ձեռին ունելով ընթանայր զհետ ապստամբին. և 'ի մէջ գետոյն հասեալ հարկանէր հարուածովք ձեռին քաջի, կիսախողխող յերիվարացն 'ի վայր կործանէր ». Գ. 7: Իսկ որ ոչն ունէին զերկայրի սուսեր, վարէին զմիասայրին:

ԹՈՒՐ

Թուր այլ իմն զէն յիշատակի առ Բուզանդայ Դ. 8. զտեղի դրիցն նշանագրելով. « Սուսեր ընդ մէջ, թուր զգօտւոյ, աղեղնակապարճ զմիջովն »:

ՆԻԶԱԿ

Յաճախ էր և սորայս գործածութիւն 'ի զօրս մեր. Բուզանդ Ե. 6. գրէ վասն զօրաց Հայոց յաւուրս Պապայ արքայի, թէ 'ի Գանձակ Ատրպատականի մնացին զօրքս սահմանապահք երեսուն հազար « ընտիր ընտիրք, Նիզակաւորք կուռ վառեալք պատեղէնք (պատենազէնք) և զրահաւորք կազմ ամենայնիւ »: Որպէս և 'ի Ե. 5. « Սոյնպէս և Մուշեղ սպարապետն գումարեաց 'ի մի վայր զզօրսն ամենայն Հայոց. և էին կուռ վառեալք իննսուն հազարք

ընտիրք՝ Նիշան 'ի ձեռին. թող զպարապակիրս »: Սակայն զինու տրար և զմեծ յաղթութիւն Վահան Ամատունին 'ի Հզօր պատերազմին ընդդէմ Հիւսիսականաց որք էին տարմատացիք, որոց զօրագլուխ անպարտելի կարծիւր. այլ քաջն Վահան յերկինս կարդալով՝ « Ուղղեա և զնիշանս իմ ակամն Հզօրիս այսմիկ (ասելով), և ոչ վրիպեցաւ 'ի խնդրոյն, ընդ գաւակ ձիոյն յերկիր կործանեալ զահագին զվիշապն ». որպէս ասէ Խորենացին Բ. 9 :

Այլ որպէս վասն նմանոց սուսերաց՝ նոյնպէս և վասն նիզակաց հրաշալի իմն պատմի՝ հատանել հերձանել զերկաթ. զոր օրինակ էր նիզակ մեծին Տիգրանայ. զորմէ ասէ Խորենացին ա. 29. « Բայց զամենայն զքաջահասակն իմ և զնիզակաւորն (Տիգրան)... 'ի լինել պատերազմին՝ նիզակաւ որպէս զջուր հերձեալ զերկաթի ամուր հանդերձն, շամփրէ զԱժդահակ յընդարձակ տեղ նիզակին. և յամփոփել միւսանգամ զձեռն՝ տարաւ զկէս մասն թոքին հանդերձ զինուն 'ի դուրս ընդ իւր » :

Այլ զարմանալի իրք պատմին յաղագս արեանց զենոց մեծայ նիզակին Ա. Արշակայ արքայի. զորմէ Խորենացին Բ. 9. « Նշանակ եթող յեղեր ծակուն մեծի (Գանտոսի) զնիզակն իւր զալարատեղ, որ էր աբեամէ պնդոց փոխալ »: Իսկ ըստ Յոհաննու կաթողիկոսի՝ արեանց օձից. « Զտեղ նիզակն իւրոյ, ասէ, զոր աբեամէ օձից ասէին փոխալ, նատուցանէր հարուստ խորութեանց յարձանի միուոմ թաղեալ, նշան տեսողաց զնա իւրում քաջութեան »: Այս է որ 'ի թուղթն Դաշանց կոչի Վիշապամուխ, յասելն վասն մեծին Կոստանդիանոսի, թէ պարգևեաց մերոյ արքային Տրդատայ նիզակս Վիշապամուխս. այսինքն է մխեալս յարիւն վիշապաց :

Օձս և առ. տարագրի մատենագիրս գտանեմք յիշատակեալ. զի Ստրաբոն ժԶ. 772. 'ի խօսելն զԱրաբիոյ և զՍաբայ (Սաբէա), յիշէ քաղաք ինչ Տարամա. ուր վասն նետից նոցա գրէ, թէ յորսալն զփիղս՝ « զոմանս 'ի նոցանէ սպանանեն նետիւք՝ որ 'ի լեղի օձից մխեալ »: Եւ Յուստինոս ժԲ. 10. 'ի պատմութեան մեծին Աղեքսանդրի ասէ՝ թշնամեաց նորա ուրեք զնետս 'ի թոյն մխեալ՝ այնպէս խոցոտէին զզօրս նորա, որ լինէր կրկնակի մահ, այսինքն երկաթեաւ և թունաւ: Սոյնպէս և վասն Սօանաց պատմէ Ստրաբոն ժԱ. 499. թէ « Սօանք (ուր և Բօանք գրի) 'ի կիր ածունն զթոյնս, որով զարմանալի իմն օծանեն զսու-

ներս. և այսպիսի թունաւորեալ նետիւք խոցեալցն ժահա-հոտութիւն ծանր է յոյժ "[1]։

## ԱՂԵՂՆ · ՆԵՏ

Ի գործածութենէ զինուցս այսոցիկ երևելի հանդիսացաւ միշտ ազգս մեր. և անդստին ՚ի սկզբան անդ նախնին մեր Հայկ և իւրքն ասելին զինու կանգնեցին զայն մեծ յաղթու-թիւն ՚ի վերայ Բելայ. վասն որոյ Մովսէս կոչէ զնա "Յա-պետոսթեանն Հայկ՝ անուանի և քաջ նախարարն՝ կորովա-ձիգ և Հաստաբազուկն". Խոր. ա. 9։ Եւ զորդիս և զթոռունս նորա կոչէ ա. 11. "Արս քաջս և Աղեղնաւորս"։ Եւ յորժամ պատմէ զճակատամարտն Բելայ՝ զայս անուն տայ Հայկայ իբր մականուն ասելով. "Զայս իմացեալ Աղեղնաւորն Հայկայ՝ յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն (Բէլ), լի քարշէ պինդ զլայնալիճն (զաղեղն), դիպեցու-ցանէ զերեքթևեանն (նետ) կրծից տախտակին, և շեշտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր անկանի սլաքն"։

Այս համբաւ քաջութեան աղեղնաւորաց մերոց տե-ւեալ անուանեմք նաև յայլազգայ ժամանակս. զի Քսենոփոն որ իբր 360 ամօք յառաջ էր քան զՔրիստոս, ՚ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի վասն զարտուքեանց, որք են Կորդիք հայկազունք, ասէ. "Էին տիգաւորք քաջահմուտք, որոց Աղեղնաւոր գրեթէ երեականգնեան, նետք առաւել քան զերկ-կանգնեան. ՚ի ձգելն զնետս՝ զձիգսն ՚ի վերջին ծայրն բե-րէին, յառաջ շարժելով զահեակ ոտն. իսկ նետքն թափ-անցանէին ընդ վահանս և ընդ զրահս"։ Զնոյն համբաւ տեւեալ գտանեմք նաև յաւուրս Սոստրատոսի լա-տին քերթողի, մեռեալ յամի տեառն 96. որ ՚ի Ա. գիրս հաղներգութեան Ունաստասայ, Աղեղնաւոր կոչէ զՀայաստան ՚ի կիրառութիւն աղեղան։ Եւ յիրաւի. զի և առ Ղազարայ բազում ուրեք յիշատակին աղեղնաւորք ՚ի նետաձգութեան. զոր օրինակ Արշաւիր կամսարական ՚ի 112. և այլք մամի-կոնեանք, որք ՚ի 193. կոչին "Իննեպաշտօնեան գեղեցկաձիգք և դիպեցուցողք"։ Իսկ վասն Վահանայ ասէ 258. "Բայց Մամիկոնեանն Վահան զամենայն օր ոչ տայր դուլ առ-նուլ զօրաց իւրոց Պարսկաց ՚ի զակշիռն, այլ զգայն զամե-

1 Զայս նաև վասն այժմեան ազ-գաց ասենց աքրդրկեցւոց՝ զոր օրինակ են կալմըացիք և օգգէնդացիք՝ լսեմք ՚ի կիր առնուլ ՚ի պատերազմին իւ-րեանց նետս մանալ ՚ի թոյն ինչ զօ-րաւոր, որ է հիւթ համեմ ՚ի գինւոյ անտառի մեռ ոձի։

## ՎԱՂՐ

Բայց զէնք և նման սուսերաց հատանէր զերկաթ. «Մօտ առ նա հանեալ (ասէ Յովհաննէս կաթողիկոս, այսինքն է. Աշոտ Թագաւոր առ Մովսէս ապստամբ), և զաղուցեալ գլխանոցն երկաթի՝ Վողջէրէ [?] դիպեցուցեալ, շեշտ ընդ մէջ Ճեղքեր զամուր գլխանոցն »: Զզինեալսն սովին զինու կոչէին Վաղականոր [?]. « Եւ նախ, ասէ, զհետևակոպոսն ուրուք [?] Վաղականօրօքն կարթակոտոր առնէին, իբրև տապարօք շեշտակի շեշտեալ զծառ. և զկնի այպա [?] հատեալ և սուսերաւ զգլուխ նորա »:

## ՇԵՐՑ

Չիք 'ի գիրս աւանդին յիշատակութիւն այսր զինու, այլ միայն որք կրէին զայն, անդստին յաւուրց անուն մեծին Տիգրանայ, զորմէ Խորենացին Ա. 24. ասէ. « Շերփառորն [?] 'ի սուսեր և 'ի տէգ նիզակի վառեալք »: Եւ Բուզանդ յիշատակէ Շերփափող [?] զօրս:

## ԳԵՂԱՐԴՆ

Սրբութիւն սորա 'ի պատերազմի յիշատակի առ Մեարոպայ ն. « Իսկ քաջին Մուշեղայ առեալ զաստուածաւանդն [?] որբոյն Ներսէսի 'ի Գեղարդն իւր կապէր . . . գոչէր առածաբար, Ճեղքէր ռազմ արանց քաջաց պատերազմողաց ռամկաց, յարձակէր վարազաբար »:

## ԾԻԿՌ

Յիշատակեալ առ Մատթէոսի հն. յասելն. « Հարաւ 'ի վերայ ամիրային, և Ծիկով հարկանէր զուռովն »: Զորմէ պատմէ 'ի ԽԸ. և զերկաթ հատանել. « Յայնժամ Ամլորիկն պողովատիկ Ծիկով հարկանէր զերկաթի դուռն քաղաքին, և պատառեալ զերկաթն՝ և այն դեհն անցուցանէր. որ և անեղանելի մնաց մինչև ցայսօր ժամանակի. 'ի տեղւս պնդեցին որպէս զանձս »:

## ՍԱԿՐ կամ ՍԱԿՈՒՐ և ՆՐԱՆ

Օտանուն Սակուր, որ և գրի Սակր, Ռէլանտ համարի բառ պարսկական, և յանուանէ Պարսից առ Յոյնս ածանցեալ, առ որս գրի Սակարիս. բայց Վիսդոմնեանք՝ Թարգմանիչք Խորենացւոյն՝ 'ի հայկական անուանէս ածանցեալ ասեն. ըստ որում ուրեք ուրեք յիշատակի առ Խորենացւոյն իբր ընդիկ բառ հայկական նշանակեալ զտապար. յորմէ և լատինն Սէգուրիս, զոր և յիշէ Վալքէն 'ի վերլուծութիւն Երոդոտոսի Է. 64. Ի դէմս Սակաց սկիւթացւոց ազգաց դասէ զայս անուն Երոդոտոս. Նոյնպէս և Քսենոփոն 'ի Դ. գիրս արշաւանաց Կիւրոսի 'ի յիշելն զսակարիոն կամ զսակուրն 'ի դէմս Պարսից՝ ամազոնեաց սեփական լինել ցուցանէ, որք էին մի յազգաց սկիւթացւոց. արդ ընդ Սկիւթիա անուամբ կոչել նաև զհայս սովորութի լեալ յառաջնոց ժամանակաց անտի՝ յիշեցաք 'ի գլուխն Անուան։ Բուզանդ զգիրս տեղւոյն ուր կրէին զսակուրն և զնիզակն՝ ցուցանէ յասելն Ե. 32. Թէ հետևակ զօրք Յունաց ունէին "վահան 'ի ձեռան, սակուր զգօտւոյ"։ Եւ 'ի 35. "Բառ սահմանի . . . զնիզակն՝ զոր յիւրում ազգերն ունէր՝ հանեալ, անցոյց ընդ փողս զօրավարին"։ Յիշատակի 'ի գիրս և Մ'խոյն, որ թուի նոյն ընդ սուր միասայրի։

Այսքանիկ են զէնք զորս յիշատակեն գիրք վասն մերոց պատերազմականաց, զորոց զմիանգամայն յիշատակութիւն գտանեմք առ Բուզանդայ Դ. 15. յաւուրս Է. Արշակայ Թագաւորին. "Հատանէին բազում սպասաւորք վառեալք Սուսերաւորք, Նիզակաւորք, Վաղրաւորք, Սակրաւորք, Սունաւորք (սուինաւորք) և Սպարակիրք հետևակք"։ Որպէս և 'ի 20. վասն զօրաց նորին Արշակայ. "Նիզակաւորք, Սուսերաւորք, Աղեղնաւորք անվրէպք կորովիք, Վաղրաւորք, Սակրաւորք, որք ոչ գիտէին զերկիւղ զանգիտելոյ յարանց յախոյանց"։ Եւ առ Յոհաննու կաթողիկոսի յասելն վասն Վահանայ արծրունւոյ յաւուրս Ծ. Սմբատայ. "Զօր 'ի գաղտնիս իւր կազմէր, սրիկայս պատրաստէր, Աղեղնաւորս, Շեշտաւորս (շերտաւորս), Սուսերաւորս, Վահանավառս, կորովիս զէնս շարժեալ"։ Իսկ առ Եղիշէի 205. յիշատակի փայլիւն Սաղաւարտից, շողալ Սուսերաց, ձօձել Նիզակաց. Նոյնպէս և կափիւնք Վահանաւորաց, ձայթմունք լարից Աղեղանց. Իբրա-

նից մինչ Եղիշէի 167. երևի թէ աղեղնաւորք ոչ կրէին 'ի վե-
րայ այլ զէնս, իսկ վահանաւորք էին հետեւակ զօրք. զի յի-
մանալն Միհրներսեհի հազարապետի Պարսից՝ թէ աւելի
քան 60 հազար են զօրք Վարդանայ՝ եհարց, ասէ, թէ
«քանի՞ այն որ իցեն՝ որ Սպառազէնքն իցեն. և կամ քանի՞ այն
որ իցեն՝ որ մերկ առանց զինու Աղեղնաւորք իցեն. նոյնպէս
և վասն Վահանաւոր հետեւակացն»: Ի պատմութեան Օր-
պելեան տպեալ 'ի Մատրաս, գլ. ծ. այս զէնք յիշատակին
վասն Օրպելեան Լիպարտի. «Նստեալ 'ի տաճիկ երիվարն՝
և ընկենոյր զասկենակար Վահանն 'ի թիկունսն, և զճօճ
Նիզակին յահեակ բազուկն, և զլայն պողովատիկ Շիմ-
շիրն երկաթեայն 'ի յաջ ձեռին, և զԿապարն ահագին 'ի ներ-
քոյ բարձին իւր զուռն դարձեալ, և կամ զՍակր կոցա-
ւոր քարահատաց՝ անցեալ 'ի մէջ ռազմաւոր հանդիսին»:

Եթէ քան զոր գրեցաք աւելի ինչ գիտել ոք կամի-
ցի վասն պատերազմական զինուց, ընթերցցի զգիրս Եբրո-
դոտոսի, գիրք է. սկսեալ 'ի 61. գլխոյ մինչ 'ի 68. գլ. ուր
յիշէ զզանազան ազգաց զէնս պատերազմի. յորս հաւա-
նական թուի յիշել և զՀայոցն. բայց ծածկեալ և խառ-
նեալ ընդ այլով անուամբ: Որպէսոր թուի ինձ ընդ Սկիւ-
թիաս անուամբ բովանդակել նորա և զՀայս ըստ հին ոճոյ
աշխարհագրական անուանց, որպէս գրեցաք 'ի գլուխն
Անուան. այն զի վասն Շակաց գրէ անդէն տանել զզէնս
Սոկարէս որ է Սակուր [1], և ասէ փոխցանէ լինել սկիւթա-
ցիս: Իսկ թէ Շակք ուստի՞ ունէին զծագումն, և որպէս
խառնեալ ընդ Հայս, գրեցաք 'ի գլուխն Բնակչաց.

Բ. Զէնք 'ի հարկանել կամ 'ի պաշտպանել զէնքոց:

Թէպէտ մերքն ոչ յաշխարհ ուրուք արշաւեցին, մա-
նաւանդ յաւուրս Բագրատունեաց, և ոչ զերկրս և զքա-
ղաքս կործանեցին, 'ի պաշտպանութիւն անձանց ևեթ
փոյթ կալեալ և քաղաքաց իւրեանց, բայց քանզի 'ի պատ-
մութեան հայաստանեայց միշտ յիշատակին պաշարմունք

1 Ի բանից տասն Եբրոդոտոսի՝ ուր զՍոկարէսն կամ զՍակուրն ասէ լինել սկիւթական զէնս Սոկ+ կամ Շոկ+ ազգին, մարթ է խմաստաստել՝ թէ յանուանէ նորին ազգի անուանեցաւ և զէնք նոցա Սոկար: Եւ քանզի ծագումն այսր ժողովրդեան է 'ի Շակ կամ ըստ յունականն Ճիչմեան Սակ գաւառէ Ուտի նահանգին մեծին Հայոց, վասն որոյ պարտ է ասել թէ և այս զէնք՝ և անուն նորին 'ի հայաստանեայց ունի զիւր սկզբին ծագումն: Այլ որ 'ի գէտ գոյ և աստուածաբանութեան անուանս Սոկար, իբր Սակաց սուր:

և քանդումունք քաղաքաց մերոց 'ի զինուց թշնամեաց, 'ի դէպ վարկաք և զնոսա յիշել յայսմ վայրի առ 'ի հմտութեն ընթերցողաց ։

## ԻԲ

Այսու մեքենայիւ կործանեալ Շապուհ Պարսից արքայ զպարիսպն Տիգրանակերտի, Էստ զայն, զոր և ստորագրէ Խորենացին Գ. 28. "Եւ Յունաց մատուցեալ մեծաւ բազմութեամբ յեցուցին 'ի պարիսպն զկոչեցեալ Էշն։ Եւ է այս գործի մեքենայից անուանք, յորոց երից արանց մղելով տարեալ, և 'ի ներքուստ կացեալք և սակրօք երկաթանովք և կացաւոր մրճովք՝ փորել զհիմունսն. և նզոխար արարեալ զայն, որ 'ի հայկական Տիգրանայ հոծեալ և յարմարեալ որմունքն, քակեալ ընկեցին"։

## ՓԻԼԻԿՈՒԱՆ

Բազում ուրեք յիշատակի առ պատմագիրս մեր. զոր օրինակ առ Կիրակոսի յաւեւն վասն զօրաց Չարմաղանին. "Պաշարեալ զքաղաքն (Անի) յամենայն կողմանց, կանգնեցուցին Փիլիկուանս բազում արուեստագիտութ᾽, և մարտուցեալ ընդ քաղաքին զօրեղապէս առին զնա"։ Նոյնպէս յաւեւն վասն Բաջու Նուինի զօրավարին Թաթարաց. "Կանգնեցին Փիլիկուանս բազում, և կործանեցին զպարիսպն" Կարնոյ քաղաքին։ Սովին մեքենայիւք պաշարեցին և զՄարտիրոսաց քաղաքն զօրք Զաղատային։ Զայս մեքենայ սուղ ինչ ստորագրէ Լաստիվերտցին գլ. ԺԷ. 'ի պատմելն զպաշարումն Մանազկերտի 'ի Տուղրիլ սուլտանայ, ուր երեւի և ճարտարապետութի՛ հայկազունն երիցու միոյ. "Յետ այսորիկ մեքենայս կանգնեալ այնու պատերազմէին. իսկ երէց ոմն 'ի մերոցս հնարագոյն ունելով աւուրս, որ յոյժ տեղեակ էր արուեստին, և սա իւր կանգնեալ Փիլիկուան. և լինէր յորժամ նոքա քար եդեալ 'ի պարսատիկս մեքենային՝ և ձգէին 'ի քաղաքն, երէցն զիւր քար դէպուղիղ նոցա քարին արձակէր, որպէս զի դէպ քար երիցուն 'ի քար անօրինացն 'ի վերայ իւրեանցն ընկենոյր։ Զայս արարեալ անօրինացն եօթն անգամ՝ ոչինչ կարացին վճարել. քանզի զօրացաւ քար երիցուն 'ի վերայ քարի նոցա"։

## ԲԱԲԱՆ

Եւ զայս մեքենայ սակաւուք ստորագրէ Լաստիվերտցի գլ. ԺԴ. 'ի պատմելն զպաշարումն Մանազկերտի 'ի Տուղրիլ սուլտանէն ասելով. « Ապա այլ պատերազմական գործի պատրաստեալ, զոր ինքեանք (տուղրիլեանք) Բաբան կոչէին, որ յոյժ ահաւոր էր. զոր ասէին թէ չորեքհարիւր սպասաւորք էին նորա որք զպարանսն քարշէին. և վաթսուն լիտր քար եդեալ 'ի պարսատիկսն 'ի քաղաքն ձգէին. և առաջի նորա պարիսպ կանգնեցին 'ի բազմակի (բամբակի) բեռանց, և 'ի յայլ բազում կարասուց, զի մի քար երիցուն հասցէ 'ի նա, (տես 'ի վերոյ 'ի Փիլիկուանն) ։ Եւ խորհ զայս այսպէս յարդարեցին, յարձակեցին քար մի՝ որ դիպեալ 'ի պարիսպն ուղղակի՝ փլոյց և խոնարհաց զնա »։

Զ ահագին մեծութիւն այսր բաբանի յիշէ և Մատթէոս ԽԴ. յասելն վասն նորին Տուղրիլայ. « Յայնժամ առաքեաց 'ի Բաղէշ, և ետ բերել զԲաբանն զոր Վասիլ Թագաւորն արարեալ էր վասն Հերայ (քաղաքին պաշարմանն) . . . ահաւոր և զարմանալի. և յորժամ կանգնեցաւ անօրէն Բաբանն՝ սասկաց ամենայն քաղաքն. և զառաջինն որ եհար՝ երեք այր պահ և զկործապահն 'ի քաղաքն ձըգեաց. և յայնժամ էրէց մի յայտնեալ 'ի քաղաքն, և 'ի շտապոյ դրեալ մեքենայ մի ընդդէմ նորա, և յառաջինն քարէն հարկանէր զԲաբանն, և բեկանէր խողակն [1] ։ Եւ զաբացաւ քաղաքն, վասն զի ահիւ պաշարեցան. և յետ աւուրց ամրացուցին այլազգիքն զԲաբանն, և կազմեցին անմերձենալի ամենայն կողմանց. սկսան հարկանել զպարիսպ քաղաքին մեծամեծ քարամբք. և յայնժամ ահաբեկեալ դողայր երերալով ամենայն քաղաքն »։ Զկնի պատմէ զհրըձիգ առնելն Փռանգի ուրուք զայս ահաւոր մեքենայ ։ Ի գրելոցս աստի յայտ է թէ Փիլիկուանն և Բաբանն մի և նոյն մեքենայ է, զուցէ ըստ մասին ինչ միայն տարբերեալ, բայց 'ի զանազան ազգաց զանազան անուանս ընկալեալ.

1 Որ կամի տեղեկութիւն ինչ առնուլ վասն այսպիսի մեքենայից գործելոյ յերիցուէ աստի, ընթերցցի առ նախնիս զվերս Արքիմեդէսի, զորմէ բազում այսպիսի մեքենայս գործեալ պատմեն հրաշալի ճարտարութեան Պողիբիոս, Պղուտարքոս և Լիւիոս, 'ի պաշարմանն զՍիրակուսա ընդդէմ նաւուց հռոմայեցւոց ։

ձգելոյ ըհաւրն ։ Ըստ այսմ օրինակի և զմերումս ասէ Թոմա արծրունի 'ի կիր արկեալ զգոյն , յորժամ զօրք Բուղայի 'ի մարմնչելն ընդդէմ մերոց Արծրունեաց առ պարըսպօք բերդին՝ զգեցեալ էին զգեստս այնպիսիս , որով "աներկիւղ մնային 'ի հրոյն տոչորմանէ „ ։ Այպս յայտ է թէ բերդականքն որք էին հայկազունք արծրունիք, տուին օրինակաւ ձգելին հուր արտաքս 'ի բերդէն 'ի վերայ թշնամեաց ։ Զբանս Թոմայի տեսցես ստորև ։

## ԱՐՔ ՔԱՐԱԳՆԱՑՔ

Սոքա ունէին 'ի ձեռս գործիս ճանկաւորս , որովք ելանէին ընդ անմատոյց քարաժայռ լերինս առ 'ի ելանել և մտանել 'ի բերդս ․ զորս յայլազգեաց 'ի կիր արկեալ յիշատակէ Ստեփաննոս օրպէլեան լը․ առ 'ի առնուլ զբերդս մեր ․ զի Յուսուփ էառ , ասէ, զբերդն Երնջակ 'ի գիշերի գողութե՟ "անձաւամուտ և քարագնաց արամբք, որք երկաթի ճանկօք ընդ ժայռս դժուար վախից արուեստակեալ ընթանան„ ։ Եւ 'ի գլ․ կա․ վասն տաճիկ զօրաց Զորթմանին գրէ ․ "Մարդիկ սորամուտք և քարագնացք ելին 'ի գլուխ ապառաժուտ լերինն „ ։

## ՁԵԻ ԱՄՐԱԿԱՆ ՄԱՔԱՌՄԱՆՑ

Զայս ընդհանրապէս միայն յիշէ Թոմա արծրունի Գ․ 14․ գլուխ հնարիմացութե՟ կոչելով , զոր արար Դերանիկն արծրունի 'ի պաշտպանութե՟ Կանգուար ամրոցին ․ Յետ դարձի , ասէ , իշխանացն 'ի գերութենէ Բուղայի , " Դերանիկն գործ առնէր 'ի գլուխ հնարիմացութե՟ . . . տիրել աշխարհիս (Անձևացեաց), և 'ի քաղում յուզիցն և 'ի խնդրոցն և զօրաժողովն լինելոյ , և զձև ամբարձից ճարտարանացն յարդարելոյ, և բանալոր ուժեղագոյն մեքենայից բախմանց քարաձգութեցն , ( զբաքանն կամի նշանակել ) զոր և ընդունայն աշխատութե՟ վարանեալ ( թշնամին , զի ) անտանանելի մնալով ամրոցին (Կանգուարու), դառնայ յիւր իշխանութիւն „ ։ Իսկ զձև պաշտպանութե՟ բանակի պաշարողաց ամրոցին յիշէ Յոհաննէս կաթողիկոս յասելն վասն պաշարմանն ամրոցին Բիւրականու յայլազգեաց . "Այսպարափակ եղեալ շուրջանակի լեռնէն հետևակ զօրուն , և թիկնապահ նոցա լեալ հեծելազօր վա-

ռելոյ գնդին 'ի մէջ անցելոյ, այնուհետեւ շահատակէին գաւազանաբար 'ի վերայ արձակեալ,, ամբողջին Բիւրականաւ։

## ՅՕԴՈՒԱԾ Դ

### Զինուորական դէմքեր ։

ԵՐՈԴՈՏՈՍ, որպէս յիշեցաք 'ի վերոյ, յեօթներորդ գիրսն, սկսեալ 'ի 61. գլխոյ յիշէ զամենայն գունդս Քսերքսեսի ժողովեալ 'ի զանազան ազգաց եւ 'ի ժողովրդոց. եւ 'ի նշանագրելն զտարազ զինուորական զգեստուց նոցա եւ գլխարկաց, վասն գնդին Հայոց միայն այսչափ ինչ յիշէ 'ի գլուխ 73. « Հայք ըստ տարազու փռիւգացւոց էին զինեալք, գոլով արդարեւ նոցին գաղթականք »։ Այլ կատարեալ տեղեկութիւն իրացս կամիմ սուղ ինչ ծանօթս տալ զընդհանուր ոճոյ Երոդոտոսի որ վասն աշխարհիս մերոյ, որչափ ինչ ծանօթութիւն ընկալայ յընթեռնուլն զքանիս նորա. քանզի նա զմեծ մասն աշխարհին մեծին Հայոց յանուն մերձակայ ազգաց անուանէ բազում ուրեք. զոր օրինակ են Մարք, Ատրպատականք, Պարսք եւ այլք. կոչէ նաեւ յանուն գաւառաց ինչ հայաստանեայց, որք յայտ է, թէ անուանիք էին այն գաւառքն 'ի ժամանակին, եւ ընդարձակ ձգեալք, յորոց զոմանս յիշեցաք յառաջագոյն. որպէս է Սպեր, զոր նա Սաբիր կոչէ։ Իսկ Հայք եւ Հայաստան զարեւմտեան մասն ինչ մեծին Հայոց եւեթ անուանէ, եւ յաւէտ զմասն ինչ փոքուն Հայոց. վասն որոյ ոչ 'ի գործածի 'ի գիրս նորա անունս Փոքր Հայք, որոյ բնակիչք խառն էին 'ի Յունաց։ Զայս այսպէս եդեալ, համարիմք թէ 'ի բազմապատիկ գունդս Քսերքսի՝ նախ ընդ այլով անուամբ յիշէ զգունդն բնիկ մեծին Հայոց, որպէս յիշեցաք 'ի վերոյ. իսկ աստանօր 'ի գիրս Է. 73. յիշատակեալ գունդն ընդ անուամբ Հայոց՝ էր գունդն փոքուն Հայոց, խառնեալ գուցէ նաեւ 'ի Յունաց անդանօր բնակելոց. որով մարթի ստուգիլ ասելն նորա՝ թէ էին գաղթականք փռիւգացւոց. զի մասն ինչ Յունաց 'ի փոքր Հայս բնակելոց՝ գուցէ եկեալ էին 'ի փռիւգացւոց։ Այսչափ ինչ ծանօթս տուեալ զքանիցն Երոդոտոսի, յիշեսցուք զզինուորական զգեստս որք յիշատակին 'ի գիրս մեր ։

### ՁՐԱՀՔ

Սոյս և այլ երկաթի զգեստք յիշատակին յայս բան Յո-
հաննու կաթողիկոսի, զորս ետ Թագաւորին Եգերացւոց Ա-
շոտոյ արքայի յօգնութին նմա. «Զօր բազում գումարեալ
գրեթէ իբրև օգապարիկ իմն երիվարօք, և երկաթակուռ
Զրահիւք, և զարհուրեցուցիչ սաղաւարտօք, և լանջապա-
նակ երկաթագամ տախտակօք կրծից, և վահանօք ամրօք,
'ի զէնս և 'ի զարդս և 'ի տէգս նիզակաց վառեցելօք, տայ
զայն ամենայն 'ի ձեռս նորա, զի նոքօք համօրէն վրէժս 'ի
Թշնամեաց առցէ»:

### ԳԱՅԵՆԱՁԻՆՔ

Մի 'ի զինուց յիշատակելոց 'ի Թուղթն Դաշանց, զոր
ետ Մեծն Կոստանդիանոս զօրացն մերոց որք ընդ Տրդա-
տայ գնացեալ էին 'ի Հռոմ. «Եւ զէնս և զարդս պատե-
րազմականս արի արանց ... և սրահանք Պաւէնակէնք ան-
գծելի երկաթոյ»: Յիշատակի և առ Բուզանդայ դ. 20.
յասելն վասն զօրաց Ե. Արշակայ. «Համակ հեծելազօրք
զրահաւոր Պաւէնակէնք, սաղաւարտաւորք, դրօշաւորք,
կազմ նշանաւորք բազմաձայն փողարօքն»:

### ՍԱՂԱՒԱՐՏՔ

Երկաթի կամ պղնձի սաղաւարտս վարել մերոցն յայտ է,
զի յիշատակի փայլիւ սաղաւարտաց. իսկ զձևոյն գտանեմք
յիշատակութ առ Վարդանայ, յասելն վասն Վախտանգայ
հին Թագաւորի Վրաց. «Որ և Գուրգասլան (կամ Գուրգ-
ասար) կոչեցաւ, որ է Գայլառիւծ (կամ Գայլագլուխ) 'ի
Պարսից բառն. զի ունէր 'ի վերայ սաղաւարտին պատկեր
գայլոյ յառաջին կողմն, և յետին կողմն առիւծու»: Որ գուցէ
գոյր և 'ի մերսն: Եւ վասն Բաբկայ սիւնոյ յորժամ ել
մենամարտիլ ընդ Համանգաւր հսկային՝ գրէ Ստեփաննոս
օրպէլեան Ժ. Թէ դնէ 'ի գլուխ զՎոփրակերպեան սաղաւարտ
Շապհոյ Պարսից արքայի: Վասն վիշապաձև սաղաւարտացն
Թուի ասել և Խորենացւոյն Գ. 37. 'ի գրելն վասն զօրաց
Յունաց՝ զորս Թէոդոս կայսրն առաքեալ էր յօգնութիւն
Պապայ արքայի 'ի մեծի պատերազմին որ 'ի Ձիրաւ դաշ-
տի. «Բայց զվիշապացն մանուածս ահագին երամաբա-
ցութիւ ուռուցեալ 'ի փչմանէ օդոյն, ոչինչ ուրեք կարեմ

նմանեցուցանել, այլ միայն իբրև զերաման ինչ ադաման-
դեայ խոնարհիլ 'ի ծով՝ զբովանդակ Ճակատն Ցունաց 'ի
պարսկական զօրուն»: Ընդ յիշէ և զզինուորական զգեստ
նոցա ասելով. «Զօրքն Ցունաց վառեալ էին 'ի զէնս ոս-
կւոյ և արծաթոյ, և երիվարք նոցա նոյնպէս զարդու. և
էր տեսանել իբրև զպարիսպ ինչ, յորոց յոլովք 'ի ձիեայ
և 'ի կաշեայ պահպանակաց Զգեստուն զկարծրութե մի-
մաց բերէին երևոյթս, և 'ի վերայ նոցա անխալամ գէսք
նշանք արձակեալք իբր զսաղարթ ինչ հովանաւոր ծա-
ռոց»:

Իսկ Թոմա արծրունի Գ. Ձ. յիշէ զանազան զգեստ
պատերազմականս զօրացն Բուղայի, 'ի խաղալն նոցա 'ի
վերայ Արծրունեաց, այսպէս ասելով. «Որք մերձ առ-
պարսպօքն զՃակատն վառէին և զմարտն գրգռէին, զըդ-
գեստն լինքեանց յասուեից կազմեալ, զոր 'ի զօրութիւն
թիկանց ուժոյ բազկաց ձնշեալ և մածուցեալ ընդ մի-
մեանս՝ զնրբութիւն մազոյն թաղ կոչէցին, զոր 'ի ջուր ե-
դեալ ծծէ իբրև զսպունգ. զայն զինեալ 'ի վերայ անձանց
սաստկացուցանէին զպատերազմն աներկիւղ մնալով 'ի հրոյն
տաջորմանէ. և զերիվարսն և զհեծեալս նոցա զինեալ
սպառազինութք, շանթապահս ձիոցն և տաշտս գաւակացն
և զանգապանս 'ի չորս կողմանս ձգեալ, և լանջացն զէն,
և բարձրավիզ խոյախտածնացն զրահս, և ռանաստորոփ փոնկա-
լոյն մանեակս զանգակեալս, և մահիկս լուսնաձևս 'ի մէջ
Ճակատուն կապեալ, և զնիւս երիվարացն երկաթապատ
ընդելեալ. այլ և ասուի և անաւի երիվարի փորոյն տախտակա-
գործ գոդեալ ըստ փորոյն չափու՝ մածուցեալ 'ի ձև վա-
հանի՝ զգործ արուեստի զինուն ցուցանէին: Եւ ինքեանք
արկեալ Զրահ զանձամբ, և Սաղաւարտ 'ի գլուխ եդեալ,
Բազպանս 'ի ձեռս արկեալ, Զանգապանս 'ի վերայ բարձիցն
ընդելեալ, Օդ ոտիցն կօշկաձև արուեստաւորեալ, Վահան
'ի թիկունս եդեալ, Սուսեր ընդ մէջ ածեալ, Նիզակ 'ի ձե-
ռին ունելով, Կապարճս և Աղեղունս պատրաստականս զա-
ռաջեաւ 'ի նիւսն ունելով, և Զարդս ոսկեզարդս և ար-
ծաթագործս, և Կամարս ընդ մէջ ածեալ, դրօշ և վեր-
ջաւորս փողփողեալս՝ սաւանանաձայն հնչմամբ զերամն դըն-
դեցուցանէին. Նշանս կանգնեալ, և փողք և քնարք հըն-
չէին, և թմբուկքն դափէին»: Ոչինչ յերկուանսամբ, թէ
նաև մերքն բազում անգամ 'ի Ճակատսն՝ այսպէս կամ
նման սմին զգեստուք զինեալ լինէին:

## ՄԻԱԳՈՅՆ ԶԳԵՍՏ

Նոյնպէս ազանիլ զօրաց յիշատակի առ Ասողկայ Գ̃. 28. "Եւ մնացեալն Աբաս Թագաւորն Կարուց՝ կարմրա֊ [illegible] զգեցուցանէր իւր ունելով":

## ՅՕԴՈՒԱԾ Ե

### Թիւ զօրաց:

Ուր ուրեք յիշատակեն 'ի գիրս մեր Թիւ զօրաց, չեն իսկ բաւական. որպէս 'ի մեծի պատերազմին, զոր մղեաց մերս Արամ ընդդէմ Հզօր Հսկայից, զորմէ ասէ Խորենացին Ա̃. 13. ածեալ 'ի Մարիբասայ. "Ժողովէ զբազմութիւն ընտանի արանց քաջաց և աղեղնաւորաց, և որ 'ի տէգ նիզակի կամակարօղք, նորատիք և հարուստք յոյժ և յաջողաձեռնութիւն իսկ և երեւելիք, որ 'ի սիրտ և 'ի պատրաստութիւն իբր թէ բիւրս հինգ". որ է 50 հազար: Եւ 'ի պատմելն զարեւմտեան նահատակութէ նորա Ա̃. 14. ասէ. "Արդ յարեւմտս շարժեալ 'ի վերայ առաջնոյն չորս բիւրու հեծելական զօրու, և երկու հազար հեծելովք հասանէ 'ի կողմանս կապադովկացւոց". ընդ ամենայն 42 հազար:

Ո՛չ միայն բազմութիւն զօրաց յիշատակեալ յաւուրս Արշակունեաց՝ են զօրք Ա̃. Արտաշէսի, զորմէ ասէ նոյն մատենագիր Բ̃. 12. "Հրամանի տայ Արտաշէս զօր յարուցանել յարեւելից և 'ի հիւսիսոյ բազում յոյժ, մինչև ոչ գիտել նմա զհամարն. այլ յանցս և յիջեանս քար ըստ մարդաթուի կարգեալ նշան բազմութեն թողուլ": Եւ 'ի 13. յԵւագարայ պատմագրէ ընթեռլով, որ ասէ. "Փոքր (է) Աղեքսանդրի և Դարեհի պատերազմ առ Արտաշիսին բաղդատեալ. քանզի նոցայն ոչ ('ի) փոշւոյն մաքուր երեւէր լոյս առընթեռանն, այլ առ ծածկեաց նետաձգութեն և սուսերացոյց զարեգակն, ձեռագործ գիշեր զմիջօրէին արարեալ.. Վասն սորա և ոչ ուղղեք զգեցեան սատարացուցին՝ արքմածեն 'ի ձմեռնայէն նուագուն իջուցանելով [1].

[1] Քանզի գտաք 'ի ձեռագրին նուա֊ [illegible] յա [illegible] ակն, իսկ 'ի գարեան [illegible] [illegible], որք գոր֊

վասն զի և զԹուոցն եցոյց առկար բազմութիւն զօրացն, մինչ զի չափոյ պէտք եղեն առաւել քան զՀռոմայոց »:

Յետ այսորիկ առ Բուզանդայ գտանեմք բազմութիւն զօրաց յիշատակեալ. զի Դ. 11. վասն Վասակայ զօրավարին Դ. Արշակայ արքային մերոյ գրէ 260 հազարօք արշաւեալ 'ի սահմանս Յունաց, և աւերեալ զամս վեց. իսկ յորժամ 'ի վերայ Շապհոյ Պարսից արքայի խաղացին Յոյնք, մերս Արշակ օգնական եղև Շապհոյ. և Վասակ զօրավար Արշակայ՝ տարաւ ասէ զզօրս Հայոց 'ի Միջագետս. զորոց զԹիւ Դ. 20. դնէ "Չորեքհարիւր հազար զօր կուռ վառեալք, որ ընտիրք և պատերազմօղք էին, ըստ արութեան արուեստաց նահատակութեն »: Իսկ 'ի Դ. 21. գրէ. "Համդէս առնէր Վասակ սպարապետն ամենայն զօրաց Հայոց. և գտան հեծելազօր սպառազէնք կուռ վառեալք նիզակաւորք համակ [illegible] բիւր, միախորհուրդք միաբան միամիտք »: Այլ մեզ Թուի այս ամենայն բարդաբանուԹն Բուզանդայ, կամ զԹիւն բիւր՝ նա այլազգ իմանայ 'ի գիրս իւր. զի մարԹ է առել Թէ 'ի ժամանակս իւր ոչ փոխանակ տասն հազարի վարէր, որպէս վարի այժմ: Նոյն իմաստ և 'ի գլուխ 25. գրէ [illegible] բիւրաւոր անկեալ Վասակայ 'ի վերայ բանակին Պարսից. իսկ 'ի գլուխ 22. ասէ վասն Հայոց. "Այսու և ոքա բազում զօր յաշխարհէ ժողովեցին, զի ոչ գոյր համար բազմուԹեն »:

Իսկ յետ բառնալոյ Թագաւորուն Արշակունեաց չյիշատակի այնքան բազմուԹի զօրաց. զի զօրք Վարդանանց յիշատակեալ առ Եղիշէի 'ի Թղթ. 174. չափաւոր էին է. "Եւ լինէր, ասէ, համադէս համարուն վաթսուն և վեց հազար այր ընդ հեծեալ և ընդ հետևակ »: Յաւուրս Բագրատունեաց իբրև մեծ էին պատմի առ Թովմայի արծրունւոյ Դ. 5. Թէ ա. Սմբատ արքայ 'ի խաղալն ընդդէմ Ահմատայ բռնաւորին, "որպէս ասեն, ասէ, եղև Թիւ զօրուն գումարելոյ իբրև հարիւր հազարաց »: Նոյնպէս և առ Մատթէոսի ԼԷ. յաւուրս Դ. Աշոտոյ ողորմածին. "Եւ յայնմ աւուր լինէր համադէս զօրաց նորա հարիւր հազարաց վառելոց, ընտիր ընտիր արանց 'ի մարտ պատերազ-

ծելով ուղեւս 'ի գետս Կզանեն, և առատութե իւրեանց զգեստն տաւարացուցանեն: Զայս 'ի գէտ առնու պատմագիրն ծանուցանել զանլուր բազմուն զօրաց Արտաշիսի ձևով չափազանցուԹն, Թէ այնչափ անհամար էր Թիւ զօրաց նորա, մինչև 'ի ճանապարհորդելն բանակի նոցա՝ ուր և հասանէին, ըմպելովն միայն իւրեանց 'ի գետոց՝ այնպէս նուազեցուցանէին զգետս, որպէս սովոր էն նուաղել 'ի ձմերան ժամանակի:

մի անուանեայ և քաջ կորովեաց,,: Կամ և այլ յիշատակութիւնք բազմութեան զօրաց առ մատենագիրս մեր. զոր օրինակ յաւուրս Զմշկիկ կայսեր, յորժամ ամենայն Թագաւորք Հայոց զօրս ժողովեցին առաքել յօգնութիւն նմա. « Բանակ հարեալ, ասէ Մատթէոս խն. 'ի Հարքայ գաւառին արք իբրև ութսուն հազար,,: Նոյնպէս և առ ընդարձակողին Սամուէլի 'ի նիճ. 'ի գրեն վասն Զմշկիկ կայսեր՝ թէ հարկատու արար երեք հարիւր քաղաք, էառ քառասուն հազար ձի և ջորի, "Ցղեաց երկու հազար ծառայ և տասն հազար ձի Հայոց արքային Աշոտոյ. զի Աշոտ տուեալ էր յօգնականութիւն նմա ութսուն հազար ձիաւորս, և այլ բազում հետևակս,,:

Նոյլ 'ի բառնալ Թագաւորութեան Բագրատունեաց՝ ողբայ Լաստիվերտցին ժէ. ասելով. Ո՞ւր զօրացն բազմութիւն, որ իբրև զամպ խտացեալ առաջի նոցա զօրէն դարնանաբոյս ծաղկանց գունակ գունակ համագերձիւքն փայլէին, ահա ոչ են, և ոչ եւս երևին,,: Բայց քան զբազմութիւն թուոյ զօրացն առաւել ողբալի է թուլութիւն մանծեալ 'ի վերջին ժամանակս Բագրատունեաց, զորմէ ողբայ Մատթէոս ձա. ասելով. "Ցոյժ երկնչէր Յոհաննէս (Թագաւոր) 'ի յԱշոտոյ (եղբօրէ իւրմէ), զի էր այր քաջ և հզօր. և եղև զկնի մահուանն Աշոտոյ՝ թուլամորթեցան զօրքն Հայոց, և առեցին զարուեստս պատերազմի. մոռան ընդլծոյն 'ի ծառայութեան ազգին Հոռոմոց, նստան 'ի գինարբուս, սիրեցին զքաղցրուս և զերգս գուսանաց, հեռացան 'ի միաբանութենէ միմեանց, և յօգնութիւն իրերաց ոչ հասանէին,,:

Նոյլ թէպէտ զթիւ զօրաց տէրութեան Բագրատունեաց այսպէս նուազ գտանեմք, բայց զթիւ զօրաց առանձին իշխանի ուրուք երբեմն յոլովագոյն գտանեմք՝ հայելով 'ի փոքրիկ սահման նորին. զոր օրինակ էր զօրք իշխանին Սասնոյ, զորմէ գրէ Մատթէոս Ճլդ. թէ քաջն Թոռնիկ տէրն Սասնոյ իբրև լուաւ զգալուստ Փիլարտոսի բազմութե զօրաց 'ի վերայ իւր իբր 'ի չի Թուին. 1072. "արար ժողով զամենայն Սասուն չխատն հազար հետևակաց, և վեց հազար ձիաւորաց. և գայր 'ի Ճապղջուր,,:

## ՅՕԴՈՒԱԾ Զ

### Գունդք զօրաց ։

ԲԱՆԱԿԻ զանազան անուանքը գունդք յիշատակին 'ի գիրս մեր, առանձինն և միասին նշանակելոցունք աստանօր, որոց և իւրաքանչիւրոցն ուրոյն նշան ունել յայտ է 'ի պատմութեանց, նաև 'ի բանից աստի Ագաթանգեղոսի յծԹ. « Երիվարօք, զօրօք և նշանօք, իւրաքանչիւր գնդաւ »։

### ԱԶԱՏԱԳՈՒՆԴ ՎԱՇՏ

Այսպէս կոչի առ Թովմայի արծրունւոյ է. 15. գունդն զօրաց Աշոտոյ արծրունւոյ. զի ժողովեալ էին նոքա միայն յորդւոց նախարարաց, նմին իրի և Ազատ կոչի ։

### ԱՅՐԱՐԱՏԵԱՆ ԳՈՒՆԴ

Յիշատակեալ առ Բուզանդայ է. 20. « Վռամկ (զօրավար Արշակայ Հայոց արքայի) հանդերձ ամենայն պատերազմօղ զօրօքն Այրարատեան գնդաւն եկանէր անկանէր 'ի վերայ բանակին »։ ուր մարթ է իմանալ և փոխանակ համօրէն այրարատեան նահանգին զօրաց ։

### ՄԱՏԵՆԻԿ ԳՈՒՆԴ

Նոյնպէս առ Բուզանդայ է. 8. « Այսու հրամանաւ եւս արքայ Խոսրով Դատաբայ նահապետաւ Բզնունեաց, զաւագ հանել յաշխարհէ աւելի քան զչափն. և զհամար զօրացն Մատենիկ գնդաւն ... »։ Գուցէ ունէր այս խումբ զնմանութիւն ինչ հռչակաւոր զօրու Պարսից Գունդ Մատենեան կոչեցելոյ, իբր անմահ մրցող ընդդէմ մահու ։

### ՄԱՐԴՊԵՏԱԿԱՆ ԳՈՒՆԴ

Յիշատակեալ առ Ղազարայ 108. « Եւ այլ գունդք 'ի զօրացն Մարդպետական այրուձիոյ. փոյթք 'ի գործ պատերազմին առաքինութեան »։ Եւ 'ի 282 գրէ. « Առաքեաց և

մամիկոնեանն Վահան .. զԳաձակ 'ի Մարզպետական գնդէն ,,։ Այս գունդ յայտ է թէ էր 'ի զօրաց Մարզպետա իշխանին։

## ՄԱՐԶՊԵՏԱԿԱՆ ԳՈՒՆԴ

Ուռ. Մատթէոսի լբ. «Յայսմ ամի (ՆԺ) զօրաժողով արար զօրավարն Հայոց զՄարզպետական գունդն քառասուն և հինգ հազար արանց քաջաց զարդ 'ի յարքունական գնդէն. և ժողովեցան ամենայն իշխանքն աշխարհաց տանն Հայոց առ սուրբ հայրապետն Անանիա ,,։ Այլ թիւ զօրացս թուի անցանել քան զչափ, եթէ 'ի մարզպետութեան ցեղէ և եթ, որպէս առի, էր խմբեալ։

## ՍԱՂԱՐ ԳՈՒՆԴ

Յիշատակեալ առ Թովմայի արծրունւոյ Դ. 6. և Դ. 4. «Եւ Դաւիթ գունդ Սաղար ,,. որ եկն յօգնութիւն Բագարատայ իշխանին Տարօնոյ պատերազմել ընդդէմ Մուսայի հագարացւոյ. Իսկ առ Ասողկայ Դ. 8. այս գունդ զօրաց Հայոց յիշատակի 'ի բանակին Յոհաննու Չմշկիկ կայսեր Յունաց՝ Կիւռժան կոչեցելոյ, յորժամ գնացեալ էր կռուել ընդդէմ Բուլղարաց. «Իսկ թագաւորն, ասէ, ամենայն հետևակ զօրուն հայաստանեայքն անշարժ մնացեալ 'ի միջոցի ճակատուն, ուր քաջապէս նահատակեալ գունդ հետևակացն որ Սաղարքն ասէին, առաջի թագաւորին, պատառեալ զվահանափակս որ ընդդէմ նոցա, ընդ թագաւորին ամենայն հեծելազաւրդ զօրօքն մտեալ.. 'ի հնազանդութիւն նուաճեաց զազգն Բուլղարաց ,,։ Այլ աղէ դիր այս անուն առ Նմա 'ի Դ. 22. «Չի էին նոքա երկու եղբարք որք Կոմսաձագքն կոչէին. անուն երիցուն Սամուէլ յազգէս Հայոց 'ի գաւառէն Դերջանայ, զոր ընդ գունդս Սաղարեանցն տարեալ էր զնա թագաւորն Վասիլ 'ի Մակեդոն պատերազմել ընդ Բուլղարացն ,,։

Յայտ է 'ի նախագրեալ բանից Ասողկայ՝ թէ Սաղար էր գունդ հետևակ զօրաց. գուցէ որպէս թիկնապահ սալարի՝ այսինքն զօրավարի, որ և սպասալար կոչի. որ թէ 'ի զօրս մեր և թէ յայլոց՝ սովին անուամբ յիշատակի. զի առ Ղազարայ 223. յիշատակի 'ի զօրս Պարսից. «Սուրէն պահլաւ և Ատրներսեհ փուշտիպանացն Սալար... այլ հրամանատարն և աւագ զօրուն փուշտիպանն Սալար էր ,,։ Իսկ առ Թովմայի արծրունւոյ Դ. 1. 'ի զօրս Բուղայի սալա-

բացուոյ յիշատակին "Սողարբ միայնամարտիկք,,։ Բայց զՀնչուածն անուանս Մեսրոպ ժԹ. Պարսից ընծայէ ասելով. "Որ ըստ անուանց նոցա Սողարս և Հեջլապր անուանեն,,։ Ըստ այսմ վասն հետևակ զօրաց կամ զօրավարի նոցա առացեալ խմանամ, զոր առ Եղիշէի 167. Միհրներսեհ Պարսից հազարապետ հարցանէ վասն գնդին Վարդանայ. "Ո՞ր ոք ՚ի նոցանէ Սողարբ լինիցին, և որ զօրագլուխ յորմէ կողմանէ յառաջ մատանիցէ,,։ Եւ առ Թովմայի արծրունւոյ Ժ. 2. "Երկու ոմանք ՚ի Սողարաց սուրհանդակաց եղբարք միմեանց հասեալ ՚ի կիրճս ձորոյն.. մատնեն զայլազգիսն՝ բազում վէրս ՚ի վերայ եդեալ,,։ Ցայտնի են Գրիգոր երէց շարունակող Մատթէի ՚ի Թ.ւին մջ̃. զհետևակ լինելն նոցին ցուցանէ յասելն վասն զօրաց Թուրքաց. "Եւ բազումք Սողարանք հետևոտս ընթանային,,։

## ՏԱՆՈՒՏԻՐԱԿԱՆ ԳՈՒՆԴ

Յիշատակեալ առ Յոհաննու կաթողիկոսի. "Խնդրէ Մաւրիկ ՚ի Խոսրովայ զՄիջագետս Դարայիւ և Մծբնաւ համագերձ, և ՚ի Հայոց զայն աշխարհ՝ որ Տանուտէրական գունդն անուանէր,,։ Իսկ թէ ընդէր Տանուտէր կոչէին զոմանս ՚ի նախարարաց, գրեցաք յերրորդ ընդհանուր գլուխն որ յաղագս նախարարաց. այժմ մնայ մեզ քննել վասն գնդին՝ թէ ընդէր կոչի տանուտիրական։ Ինձ թուի այսպէս կոչել զայն գունդ զօրաց՝ զոր տանուտէրն կամ գլխաւորն իւրաքանչիւր տոհմին նախարարաց էր ժողովեալ. այլ քանզի աստանօր Յոհաննէս կաթողիկոս աշխարհի սեփականէ զայս անուն, ծանուցանելով թէ յաշխարհիս Հայոց էր տեղի ինչ որոշ՝ որ տանուտիրական գունդ անուանէր, նորին աղագաւ թուի առանձին իմն գունդ այսպէս յորջորջեալ, և ՚ի նորին անուն նաև տեղին անուանեալ։ Այսմ ՚ի դէպ գտանեմք զտեղին կամ զաշխարհն Ոստանկաց, և արքայորդւոց. որոց սեփական տեղի, որպէս գրեցաք յառաջագոյն, էր Ծոփք գաւառ չորրորդ Հայոց և Հաշտեանք և Աղբերանի. և զի բնակիչք ամենեցուն սոցա գոլով արքայազունք՝ էին տանուտեարք երկրին, և զի գոլով նաև կարգեալք ՚ի զինուորութիւն արքունի պահպանութեան՝ կոչէին Գունդ արքունական կամ Ոստանիկ. վասն այսորիկ ՚ի հարկէ և ՚ի բերանս ոմանց կոչեցան և Տանուտիրական գունդ. և յանուն գնդին նաև աշխարհ կամ երկիր բնակութե՛ նոցա անուանեցաւ այսպէս

ոչ միայն առ Յօհաննու կաթողիկոսի, այլ նաև ուրեք առ Թովմայի արծրունւոյ Գ․ որ չէ այլ երկիր 'ի գաւառաց աշխարհիս Հայոց ։ Այսմ յարմարի և դիրքն զոր ցուցանէ բանն Յօհաննու կաթողիկոսի․ զի աշխարհ այսր գնդին որ էր 'ի չորրորդ Հայս, միանայ ընդ Միջագետաց․ վասն որոյ 'ի դէպ էր Մօրկայ խնդրել զայն 'ի Խոսրովայ, առ 'ի կացուցանել զայն իւր երկիր միաստանի կցեալ 'ի Միջագետաց մինչև ցփոքր Հայս, որ իւրն էր ։

## ԱՏՐԹԻՉԻ

Թիկնապետ դունին անուամբ ոչ յիշատակի, բայց գիտեմք այսպէս անուանեալ 'ի մերոց զգունդն հեծելազօրաց․ զոր օրինակ բացատրելով յիշատակի յայս բանն Թովմայի արծրունւոյ 'ի գրեմն վասն Աշոտոյ վասպուրականի յաւուրս իշխանին Բագարատայ․ "Եհաս 'ի վերայ նորա վառեալ զինու սպառազէն երիվարաց, ընտիր հեծելովք Այրուձիոյ„ ։ Այս զօրք բազում ուրեք յիշատակին առ Եղիշէի և առ Ղազարայ․ յորում երևելի էին մերքն, և ընդ ձեռամբ մերոց իշխանաց էր նաև 'ի ժամանակին՝ յորժամ անկեալ կային ընդ ծառայութեամբ Պարսից․ "Թիկնապետ և գանձն յարքունիս Պարսկաց երթայր, սակայն Այրուձին Հայոց բովանդակ 'ի ձեռս նախարարացն առաջնորդէր 'ի պատերազմի„․ որպէս ասէ Եղիշէ 'ի Թղթահամարն 12 ։

# ՅՕԴՈՒԱԾ Է

Պաշտօնեայք ընտանութեան ։

## ՍՊԱՐԱՊԵՏ

ՐՃԱՆՑԵԱԼ 'ի Սեփահէ բառէն Պարսից, նշանակէ առ մեզ Զօրապետ, Զօրավար, խառն 'ի գործ ածեալ 'ի մերոց ոչ միայն վասն հեծելազօրաց, այլ նաև հետևակաց․ "Եւ Մուշեղ, ասէ Բուզանդ Ե․ 1․ լինէր զօրավար Սպարապետ Հայոց փոխանակ Վասակայ հօր իւրոյ„ ։ Եւ Ե․ 37․ "Ապա կացոյց թագաւորն Վարազդատ 'ի գործ զօրավարութեն սպարապետութեն զԲատ նահապետն Սահառունեաց տոհմին . . . և էր նա Սպարապետ փոխանակ նորա զօրավար

ամենայն Հայոց,, ։ Իշխելն սպարապետին 'ի վերայ ամենայն զօրաց Հայոց՝ յայտ է 'ի բանէ առաքի Ագաթանգեղոսի յճզ. " Արտաշիրոյն անուն Արտաւազդ որ Սպարապետ էր ամենայն զօրացն Հայոց մեծաց ,, ։

Բայց այս անուն չէր անփոփոխանեալ գլխաւոր զօրավարին, այլ նաև երկրորդականաց. վասն որոյ առ Խորենացւոյն գտանեմք յիշատակեալ՝ Սպարապետ արևելեան և արևմտեան զօրուն, հարաւային և հիւսիսային զօրուն ուրոյն ուրոյն ։ Այս զանազանութիւն՝ Խորենացին ուրեք Գ. 6. նոր անուն 'ի կիր առնու Մեծփլխարթ կոչելով. որ էր ամենայն Հայոց զօրավար. և Թոմա արծրունի ա. Գ. գլխաւորան արծրունի կոչէ " Գլխաւոր զօրավար զօրու, և միահեծան Թագաւորութե Հայոց մեծաց ,, ։ Իշխանութ նորա էր մեծ, մինչև յաւուրս յորս ոչ գոյր Թագաւոր, սպարապետք կամ զօրավարք երբեմն կառավարէին զաշխարհն իբր գլուխ ոչ միայն զօրաց՝ այլ և աշխարհին. զոր օրինակ է տեսանել 'ի աւուրսն Վարդանայ, 'ի մեծն Վահան Մամիկոնեան նախ քան զլինելն իւր մարզպան, 'ի Մժէժ Գնունի, 'ի Թէոդորոս Ռշտունի և յայլս ։ Յայն աւուրս ոչ լինէր սպարապետ առանց հրամանի Պարսից արքային, զոր մէ տես 'ի Խորենացին Գ. 51. և կամ առանց հրամանի կայսեր, այլ հրամանաւ նորին, որպէս եղև և Թէոդորոս. " Բայց հայրապետն մեծն Ներսէս (ասէ Յովհաննէս կաթողիկոս, որ է Գ. Ներսէս), հրամանաւ հայցեալ 'ի կայսերէն Կոստանդեայ, կացուցանէ զօրավար Հայոց զԹէոդորոս Ռշտունեաց տէր ,, ։ Սպարապետութե գործ՝ էր իբր անփոխանեալ ցեղին Մամիկոնէից. բայց և բազում անգամ 'ի Բագրատունեաց ցեղէն կացին, որպէս գրեցաք 'ի պատմութե այնր ցեղի. և երբեմն 'ի Ռշտունեաց ։

## ՍՊԱՍԱԼԱՐ

Նշեալ 'ի Սալար կամ որ նոյն է Սաղար բառէս. նշանակէ պետ Սալարաց, զօրաց տէր 'ի վերայ. այլ պատմագիրք մեր Սպասալար կոչեցին զհռչակաւորն Զաքարէ, որ էր սպարապետ զօրաց Թագաւորին Վրաց Թամարայ դստեր Գէորգայ ։

## ՍՏՐԱՏԵԼԱՏ

Յունական անուն զօրավարի [1], որով կոչեցաւ Թէոդոս կայսր և զՄերին Վարդան կացուցանելով զնա սպարապետ. «Վասն զի (ասէ նա ինքն՝ գրելով առ սուրբն Սահակ, առ Խորենացւոյն Գ. 57.) արարաք Ստրատելատ զՎարդան զորդի որդիացելոյ քո»: Վասն որոյ և ՚ի հետևեալ գլուխն և ՚ի 67. նոյն անուամբ կոչէ զՎարդան: Սոյնպէս և Գազաւոն որդի Սպանդարատայ, քանզի ՚ի բաժնելն Յունաց եղև զօրավար յաւուրս Գ. Խոսրովայ, Ստրատելատ կոչէ զինքն ՚ի Թուղթն իւր որ առ Խոսրով և Խոսրով զնա. առ Խորենացւոյն Գ. 48: Առ Բուզանդայ Ե. 2. նոյն անուամբ կոչեցեալ գտանեմք և զՄուշեղ. «Ապա Մուշեղ որդի Վասակայ Ստրատելատ Հայոց մեծաց՝ ընտրեաց իւր արս ընտիրս»: Թէպէտ և այլուր բազում անգամ կոչէ զօրավար և սպարապետ Պապայ արքայի:

## ՀԱԶԱՐԱՊԵՏ

Այս անուն Թէպէտ ՚ի զինուորական դասէն է առեալ, որպէս յայտ է ՚ի կազմութենէ բառին, որ է ասել՝ պետ հազարաց, այլ ընդհանուր աւանդմամբ նշանակէ զնա որ կարգեալ է ՚ի վերայ իրաց առաւել քաղաքականի՝ քան թէ զինուորականի:

## ՀԱՐԻՒՐԱՊԵՏ

Նոյն ՚ի գործ ածեալ ՚ի զինուորութիւն հռոմայեցւոց և այլոց, և ոչ ուրեք յիշատակեալ ՚ի զինուորութեան ազգիս:

## ԿՈՂՄՆԱԿԱԼՔ. ՍԱՀՄԱՆԱԿԱԼՔ

Զայսցանէ ասէ ՚ի գլուխն Կառավարութեան ուր բանք եղեն զարտաքին նախարարաց. զի յորջորջումն անուանցս առաւել այսպէս նոցա ընծային, որք պաշտօնեայք են իրաց տեսչութեան աշխարհի:

1 Զոր Յոյնք Ստրատիլատիս կոչեն, և Լատինք Թարգմանեն Մագիստրոս զօրաց, որ ՚ի մեծէն Կոստանդիանոսէ սահմանեալ եղև, մին՝ մագիստրոս (լատիներէն Մագիստր) հետևակ զօրաց, և միւսն հեծելազօրաց՝ բատ առելոյ Զոսիմոսի գիրք Բ. զորոց զՕիրոգիս նորա բազմացուցին. մինչև Թէոդոսի սահմանել հինգ և այլ ևս մագիստրոսս զօրաց:

# ԳԻՐՔ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

## ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

## ՅՕԴՈՒԱԾ Ա

Սովորութիւն 'ի պէտս և 'ի հանդէս թագաւորի :

### Ա. Թագն :

Թագաւորական թագն պահեալ լինէր 'ի գանձարանին, յիշատակեալ առ Խորենացւոյն Բ. 47. "Մըտեալ Սմբատայ Բագրատունւոյն յաւգէր ըգանձն. և գտեալ ըթագն Սանատրկոյ արքայի՝ դնէ 'ի գլուխն Արտաշիսի ,,: Այլ Բուզանդ Ե. 6. յիշէ զորոշեալ տեղի ինչ վասն թագի, կամ 'ի գանձարանին և կամ արտաքոյ, յասելն. "Մուծին զնա 'ի ներքս 'ի տունն Գաղմաձաւեայն ... այնուքն ուր թագ արքունի դնէին ,,: 'Ի վերջին ժամանակս այս Թագ թագաւորական, զոր յանուն մեծին Խոսրովու կոչէ Կիրակոս, առ ապահովութե՛ 'ի Վիրս պահեալ լինէր մինչև յաւուրս Ռուզուդանայ տիկնոջ՝ որ յերեքտասաներորդ դարու թագաւորէր 'ի Վիրս. իսկ 'ի մեռանել նորա յաջորդ նորուն՝ զոր մուղալ թաթարք նստուցին, 'ի հրամայելոյ նոցա առաքեաց առ զանն թաթարաց. "Եւ զգանձս թագաւորութե՛ն, ասէ, յերկիւ բաժանեալ, ըզթախտն պատուական և զանգին, և ըթագն հրաշալի զոր ոչ ունէին այլ թագաւորքն, զոր Խոսրովու լեալ մեծի հօրն Տրդատայ արքային Հայոց. և անդ մնացեալ գաղտակա-

նութե՛ք վասն ամրութեան տեղւոյն, և 'ի թագաւորմն Վրաց անկեալ և մնացեալ մինչև ցայսօր։ Զայն և զայլ պատուականս և 'ի գանձուցն առաքել զանեն (թաթարաց սահմանեաց), և զայլս բաժանել 'ի վերայ ինքեանց, զոր եկեալ արար այնպէս (Դաւիթ որդի Լաշային յաջորդ Ռուզուդանայ) միջնորդութեամբ Աւագին որդւոյն Իւանէի,,։ Ի ժամանակս քրիստոնէութեան 'ի գլուխ թագին խաչ լեալ ցուցանէ այս բան Գրիգորի մագիստրոսի յատանաւոր նեղբողեան խաչին.

"Արքային մեր առաջին՝ որ զՀակառակմն անդրադարձեալ,
Պսակ արքայական՝ թագաւորաց 'ի գլուխ եդեալ,,։

Բ. Խոյրն Թագաւորական։

Յիշատակի այս առ Խորենացւոյն Գ. 34. "Ցղեաց առ Ազդէ, զի արասցէ նմա խոյր բեհեզեայ անկուածով ոսկւոյ, որպէս յառաջագոյն առնէր հօրն նորա,,։ Ա՛յլ է սա 'ի թագէ, և թուի լինել վասն դնելոյ 'ի տան։

Գ. Հանդէս Թագադրութեան։

Զհանդէս թագադրութեան միայն զերրորդի Աշոտոյ ողորմածին գտանեմք յիշատակեալ սակաւուք առ Մատթէոսի, որ 'ի Լ̃Գ. ամէ. "Հարկաւորեալ կոչեցին զամենագովելին զտէր Յոհաննէս կաթողիկոսն Աղուանից, և քառասուն եպիսկոպոսունք ընդ նմա. և մեծաշուք իշխանութե՛ք կոչեցին զՓիլիպպոս թագաւորն Աղուանից... և յայնմ աւուր եղև ժողով ահագին մեծ 'ի քաղաքն Անի, որ եղև այժմու ժամանակիս թագաւորանիստ քաղաք Հայոց. և յայսմ ամի օծաւ արքայ Աշոտ 'ի յօծումն հարց իւրոց, և նստաւ 'ի գահոյս առաջին թագաւորացն Հայոց ազգին... Եւ լուեալ զայս ամենայն շրջակայք ամենայն թագաւորք ազգաց՝ Ափխազաց և Յունաց, բաբելացւոց և Պարսից, տուրս և սէրս հանդերձ պատուական ընծայիւք յուղարկէին 'ի փառաւորութի Հայոց թագաւորութեն,,։ Բայց ուրեք ուրեք ընթեռնումք յաւուրս Բագրատունեաց 'ի Յունաց կայսերաց առաքեալ թագ արքայական առ 'ի թագաւորեցուցանել զմեր թագաւորն, և երբեմն յամիրապետաց և յամիրայից արաբացւոց։ Իսկ Բուզանդ յիշատակէ և Պարսից, 'ի գրեան Դ. 16. վասն Ե. Արշակայ

մերոյ արքային, թէ կոչեալ 'ի Շապհոյ Պարսից արքայէ՝ «մեծարեցաւ 'ի նմանէ բազում պատուով և մեծաւ փառօք, բազում գանձու ոսկով և արծաթով ամենայն մեծութ թագաւորութեան. և իբրև զերդայր ոսկեա զօտի գրգեալ եդև 'ի նմանէ . . . և 'ի միասին 'ի միում տախտի գահուն 'ի ժամ ուրախութեան բազմէին, զմիապղին զմիանշան զհամահանդերձ զարդու. և զմիօրինակ զթագն օրըստօրէ ինքեան և նմա թագաւորին Պարսից զարդ պատրաստէր. զայգ երկոքին 'ի միասին որպէս զեղբարս հարազատս անբաժինս յղփացեալք էին 'ի միում ուրախութեան»։

## Դ. Օծումն թագաւորի։

Ի հանդիսի թագադրութեան լինէր և օծումն վասն բագրատունի թագաւորաց յայսմի իմանամք 'ի նախագրեալ բանից Մատթէոսի. բայց վասն արշակունի թագաւորաց այս բան Մեսրոպայ միայն ակնարկէ, որ 'ի թիւն իէ. ասէ թէ Մանուէլ մամիկոնեան զօրավար կարէր սպանանել 'ի պատերազմի զՎարազդատ թագաւոր, այլ «ոչ սպանանէր, զի օծումն թագաւորի ունէր»։ Իսկ վասն առաջին թագաւորին Բագրատունեաց Ա. Աշոտոյ այսպէս ինչ գրէ Յոհաննէս կաթողիկոս. «Կոչեցաւ առա և անդ մեծ հայրապետն Գէորգ, և զհոգևոր օրհնութեանն զօրութիւն աստուածայինս 'ի վերայ կատարեալ, փոխանակ օծման սրուակի իւղոյն՝ պսակէ զնա թագաւոր 'ի վերայ ազգանապետն ազին»։ Յայտնի ևս գրէ Վարդան վասն Ա. Սմբատայ. «Իսկ Սմբատ առեալ զպատիւն (թագաւորութեան) շինէ զսուրբ Փրկիչն յԵրազգաւորսն՝ որ է Շիրակաւանն, ուր և օծումն իւր»։ Գտանի յիշատակ ինչ օծման և վասն թագաւորաց Ռուբինեանց, զորմէ այլուր։

## Ե. Երդումն հաւատարմութեան։

Զերդումն հաւատարմութէ երդնուլ 'ի հանդիսի թագադրութե՛ յիշատակի յայս բան Կիրակոսի, զոր գրէ վասն վերջին Գագկայ թագաւորի. «Արդ յետ մահուան Յովհաննէսի՝ որ և Սմբատ՝ միաբանեալ իշխանաց և զօրացն, յաւէտ և պատրիարգն Պետրոս, ժողովեցան առ դրունս մեծափառ կաթուղիկէին Անւոյ. և կացուցանէին զԳագիկ թագաւոր զեղբօրորդին Յովհաննէսի. և յերդմնաւս արարեալ ուխտից միաբանութ͞ծ ծառայել նմա»։

### Զ. Կենդանագիր Թագաւորի ։

Օ կենդանագիր Թագաւորի նկարելոյ սովորութիւն ցուցանէ այս բան Յովհաննու կաթողիկոսի 'ի պատմութեան Թագաւորութեան Ա. Աշոտոյ արքայի. "Դառնամ յեկեղեցին սուրբ, և հայրապետին Գէորգ ընդ նմա. և անդ աւետարանեալ 'ի վերայ փառաւորական աղօթման, և ածեալ 'ի գիծս և 'ի գիրս և 'ի նկարս ստուարական զօսկեճամուկ զգեցուածս և եդեալ 'ի գլուխ զթագ թագաւորութեան նորա"։ Զի թէ սովորութիւն էր նկարել զկենդանագիր կաթողիկոսի, ապա ևս առաւել զկենդանագիր թագաւորի ։

### Է. Թուղթ Թագաւորի ։

Հաւհալունի անուանեալ Թուղթն Տրդատայ արքայի՝ պարգևեալ 'ի մեծէն Կոստանդիանոսէ, յիշատակեալ 'ի Թղթին Դաշանց, և պահեալ 'ի լեառն Սեպուհոյ, յիշատակի 'ի Շարակնոցի և առ Վարդանայ աշխարհագրի, զոր մէ տես 'ի մեծ Հայս 'ի Թղթ. 5 ։

### Ը. Սարաւոյթ ։

Սարաւոյթ արքային Տրդատայ յիշատակի առ Կիրակոսի յասելն. "Ի գիւղաքաղաքն Գառնոյ, ուր զարմանալի Սարաւոյթն է Տրդատայ"։ Որով գուցէ իմանայ զթաղոն նորա զոր յիշէ անդէն ։

### Թ. Զգեստք և այլ հանդերձանք ։

Այսոքիկ էին զոր ետ կայսրն Կոստանդիանոս մերոյս Տրդատայ, յիշատակեալ 'ի Թուղթն Դաշանց յասելն. "Օժտեցաք զսա (զՏրդատ) կայսերական զարդուք և զինուք մերովք, արքունադրոշմ նշանաւոր կառօք, ծովային օդաթափիչ երիվարօք ոսկեսարօք, սուսերօք հաւհալենօք, և նիզակօք վիշապաձևօք"։ Ի Թուղթն Լամբրոնացւոյն առ Լևոն Թագաւոր՝ 'ի զգեստուց նախնի Թագաւորացն այսոքիկ անուանք յիշատակին, Թէպէտ և անծանօթ անուանք են. "Դիք Շարֆոր որպէս զձեր նախնիքն. անձեցուցէք զհերս և զմօրուս զինչ ձեր հարքն. զգեցիք Դուռաղայն և Թաւ... հեծէք 'ի Սափարեալ երիվարս Ճոռղանով"։

Առ Լուսոնիվէրոսցոյն Ժ. յիշատակին շուք և հանդերձանք առ հասարակ թագաւորացն Բագրատունեաց այսպէս. « Իսկ թագաւորին յառաւօտինսն յորժամ 'ի քաղաքէն ելանէր՝ զօրէն փեսայի որ ելանէ յառագաստէ իւրմէ, կամ որպէս տունջեանյին արուսեակն որ 'ի գլխոյն առարածոց բարձրանալովն զամենայն տեսանելիս յինքն ձգէ, այնպէս և նա պաղպաջէր փառփուն հանդերձիւ, և մարգարտախուռն թագիւն զամենայն մարդ 'ի տեսութիւն և 'ի զարմանս յուցանէր. որ և այխատակամաղ նժոյգ ոսկեզօծ զարդիւք առաջի ընթանալով 'ի ճառագայթից արեգականն որ փոխէր հարկանիւր՝ շլացուցանէր զանտզայն տեսանելիս։ Իսկ զօրացն բազմութիւն խուռն առաջի ընթանալով զօրէն ծովային ալեացն զմիմեանս կուտակելով »։

Յորժամ Մանուէլ զօրավար եբր թագաւորահայր լեալ որդւոց Պապայ արքային՝ եանց 'ի հպատակութիւն Շապհոյ Պարսից արքայի, և ոորա պատուեալ փառ, առէ Բուզանդ Ե. 38. առաքեաց որդւոց և Մանուէլի թագ. « Այնպէս եւս տանել զթագաւորական պատմուճանն, տամոյր մի և զգլխոյ պատիւ զարգմանակ ոսկի արծաթ, ու 'ի պատիւ գլխոյ 'ի վերայ գագաթանն 'ի թիկանց առծուոյն՝ հանգոյցք թագի կապեալ աշխարաւանդ հանգոյց, և լանջաց պատիւ՝ ապիզակ, որպէս օրէնք են ունել թագաւորաց. և շիկակարմիր խորան, և 'ի վերայ խորանին արծուենշան և որահակս մեծամեծս և կապուտակ երկնագոյն հովանոցս։ Եւ ոսկի սպաս սպասաւորին առաքէր սպարապետին Մանուէլի. և տայր նմա յիւրմէ ձեռանէ իշխանութիւն մեծ 'ի վերայ աշխարհին Հայոց »։ Յովհաննէս կաթողիկոս յիշէ զորս առաքեաց ամիրապետն առ արքայն Ա. Սմբատ. « Երևելի զգեստ արքունական, և թագ արքայական, և կամար ականակապ 'ի համակ ոսկւոյ, և սուսեր պատուական, և երիվարս իբրև օդագնացս ինն կազմուածով զինուց և զարդուց »։ Այս յիշէ և զառաքեալսն յոստիկանէն Յուսփայ. « Բազում երիվարս ոսս և ահապարանոցս պատրաստեալ, բազմազան պճնայարմար զարդուք և զինուք, ոսկեսանձ ոսկենկար պաճուճանօք, այլ և թագ եւս յոսկւոյ սափիրա կազմեալ, և 'ի նմա յեղուզեալ յեռեալ վարսակալ մարգարտաոզ ապազարդութիւս, և այլ եւս ականս պատուականս, և բազում երևելի զգեստս արքունականս ոսկեճամուկս, և շղաշատեռն հրաշանկարս միանգամայն առաքէ 'ի պատիւ մեծարանաց արքային Սմբատայ »։

Ժ. Նշան թագուհեան :

Նշան իմն քաջութեան կրել զանձամբ յիշատակէ Ասողիկ Գ. 43. վասն Թագաւորին Վանանդայ ասելով. «Թագաւորին Վանանդայ մանուկն Աբաս 'ի ձիավարելն ունելով զնշան թագուհւոյն արիականաւ զարդարեալ գեղով» :

ԺԱ. Թագաւորական հանդէս :

Նոյն այն սովորութիւն է զոր առնէին թագաւորք և կաթողիկոսք ժողովեալ յեկեղեցին Աշտիշատու յամին եօթնիցս հանդերձ ամենայն աշխարհախումբ բազմութեամբ նախարարաց և եկեղեցականաց, որպէս գրէ Բուզանդ Գ. 3. «Հաստանէր եպիսկոպոսապետն Վրթանէս 'ի մեծն յառաջին 'ի մայրն եկեղեցեացն Հայոց, որ էր յերկրին Տարօնոյ... Սա երթեալ կատարէր անդ ըստ հանապազ սովորութեանն զտօնանն... զպատարագն գոհութեան... քանզի այնպէս իսկ սովոր էին եպիսկոպոսապետքն Հայոց հանդերձ թագաւորօքն և մեծամեծօքն, նախարարօքն և աշխարհախումբ բազմութեամբ պատուել զնոյն տեղիս, որ յառաջ էին տեղիք պատկերաց կռոցն... մանաւանդ յայն 'ի գլխաւոր տեղին եկեղեցին ժողովել 'ի յիշատակ սրբոցն որ էին անդ, կատարել անդ ամի ամի եօթն անգամ. որք զնոյն ունէին սովորութիւն առաւել ևս 'ի մեծի մարգարէարան մատրանն[1] Յովհաննու : Սոյնպէս և յառաքելարանս տեառնաշակերտացն, սոյնպէս և 'ի վկայարանս մարտիրոսացն ամի ամի ժողովեալք, զօր տօնին յիշատակի նոցա վարուց գործոց կենաց քաջութեան խմբեալ՝ ցըն-

1 Իւ քանզի յառաջնում կիւրակէի որ զկնի Նոր կիւրակէին, 'ի վաղուց անտի ունէաք զտօն աշխարհամատրան կիւրակէի, Թուի թէ յայնմ աւուր կատարէին զնաւակատիս այսր մատրան. զոյգ 'ի դէպ իսկ խորհրդածութը լինի զնաւակատիս առաջին եկեղեցւոյ կամ մատրան աշխարհիս Հայոց կատարել 'ի կիւրակէի՝ որ առաջին է զկնի Նոր կիւրակէին. յորում աւուր զոյգ և կիւրակէ՝ դիւրին էր և ամենայն ժողովրդեան համախմբել 'ի շնորհակալութիւն Աստուծոյ վասն շինուեան առաջին մատրան 'ի համօրէն աշխարհիս Հայոց, և վասն կանգնելոյ զառաջին անդրան յորում Քրիստոս պատարագեցաւ 'ի ձեռն սրբոյն Գրիգորի առաջին քահանայապետին, յորմէ և կոչեցաւ Աշխարհամատրան կիւրակէ, այսինքն կիւրակէ՝ յորում տօն կատարի վասն Նաւակատեաց շինութեան մատրանն՝ որ յաշխարհիս Հայոց մի միայն էր և առաջին, և յորում աշխարհախումբ բանակն ժողովէր : Յայսմ կերպի աստ Թուի տօն կարգել ամի ամի կատարելոյ զյիշատակ Նաւակատեաց նորին ուրոյն երգովք շարականաց :

նացին յետ առելոյ Ճ․ 47․ Թէ Արտաշէս ետ Արգամայ երկրորդի արքային ագանել զայն ամենայն, զոր 'ի վերայ յիշեցաք, յաւելու․ "Եւ ոչինչ ընդհատ յայսց պատուոց տայ դայեկին իւրոյ Սմբատայ, բայց միայն յերկուց դըն-դաց, և 'ի կարմիր կօշկէ»: Ուր կամի ասել, թէ Վաղար-շակայ շնորհեալն առ Բագարատ 'ի սկզբան անդ էր ա-ռանց ոսկւոյ և ականց կապել զվարսականն, որ է պսակ․ այլ այժմ, ասէ, Ճ․ Արտաշէս յաւել և զայլ զարդս նման ամենեւին երկրորդի արքայի, բաց 'ի յերկուց գնդաց և 'ի կարմիր կօշկէ․ Մարթ է և վասն յարգութեան շնորհեալ զարդու իմանալ զայն արքունական զարդն, զոր յիշէ նոյն մատենագիր 'ի Գ․ 43․ յասելն վասն Սահակայ ասպե-տի բագրատունւոյ, թէ խեթիւ սկսաւ հայել ընդ նա Գ․ Արշակ Թագաւոր, "համապազ հրապուրեալ 'ի կնոջէն իւրմէ, որպէս թէ զարդ արքունական ունել նմա 'ի փե-տայէն իւրմէ ձօնացեալ»: Զի կինն իւր գաղտ առեալ ծա-նուցանէր Արշակայ:

### ՄԱՐԴՊԵՏԻՆ

Վասն ձեռոյ և անուանց զգեստուց Մարդպետ իշ-խանին՝ յիշատակին յայս բան Բուզանդայ Ե․ 6․ "Հրա-ման ետ արքայն Պապ, տանել Պարմուժան ագուցանել Մարդպետին Դղակայ․ և ագուցին նմա Դրաւս և Վար-տիս․ և էր համադերձն անհեդեդ մեծութն․ զի խորշ զխոր-շիւ իջանէր, մինչ զի ոչ կարէր համադերձել զանձն իւր... Եւ ագուցեալ զպատմուճանն մեծ, եած զգօտին ընդ մէջ իւր, զորմէ Թուրն կախէր․ և Սուսեր ընդ մէջ ածեալ, և խորշ 'ի գօտւոյ դրատիցն իջեալ, զթուրն և զսուսերն ծած-կէր։ Իսկ զվարտիսն զգեցեալ, և Մոյկս ագուցեալ, և ըղ-նրանն յազգեր կապեալ, և 'ի վերայ նրանին խորշն 'ի վար-տեացն իջեալ անկեալ 'ի վերայ նրանին՝ ծածկեալ մինչև 'ի սրունսն»:

### ԱՅԼՈՑ ԻՇԽԱՆԱՑ

Այլոց իշխանաց եւս ունել զգեստ այլատեսակ 'ի ժողո-վրդենէ ցուցանեն բանք Եղիշէի․ որ 'ի Թղթահամարն 241․ զզգեստսն Վասակայ իշխանին Սիւնեաց այս-պէս ստորագրէ․ "Եւ նա ըստ առաջին կարգի օրինացն արքունի արկանէր զպատուական հանդերձն զոր ունէր 'ի թագաւորէն․ կապէր և զՊարուանակարն, և զխոյրն ոսկե-ղէն դնէր 'ի վերայ, և զկամանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդ-

ելուզեալ մարգարտով և ականմբք պատուականօք ընդ մէջ իւր ածէր, և զԳրենդոն յականջմն, և զԳոամարդանն 'ի պարանոցին, զՍամոյրն զԹիկամբն "[1]։

## ՀՆԳԻՑ ՆԱԽԱՐԱՐԱՑ ՓՈՔՈՒՆ ՀԱՅՈՑ

Մ'այլ քան զամենեսին զսոսա փառաւազարդ էին հանդերձանք ըզգեստուց՝ զորս Պրոկոպիոս[2] պատմէ ըզհնգից նախարարաց՝ որք իշխէին 'ի բաժնին աշխարհին Հայոց՝ որ էր ընդ տէրութեամբ մեծին Յուստինիանոսի կայսեր. ասէ. " Իսկ միւս (փոքուն) Հայոց, որ գետոյն Եփրատայ պատեալ ձգի մինչև ցքաղաքն Ամիդ[3], սատրապք հինգ հայկազունք 'ի վերայ կային, որք էին նախարարութիւնք մինչև ցմահ ժառանգութեամբ կալեալք, 'ի հռովմայեցւոց կայսերաց միայն նշան ընկալեալ փոխանն պատուոյն, զորս 'ի դէպ համարիմ առաւել բանիւ ստորագրել, իբր ոչ ուրուք երբեք զայն տեսեալ։ Քղամիդն էր նոցա ասրեայ՝ ոչ յօդեաց անտի հաւաքեալ, այլ 'ի բաւականցն 'ի ժժմակս ծովային Պինոս անուանեալս։ Ծիրանափայլ գծեալք նոցա ոսկեպաշՃոյՃ, որոյ և մասն ինչ քաղեալ և ագուցեալ։ Ի ծայր քղամիդին Ճարմանդ ոսկեգործ բոլորեալ զականմբ պատուականաւ, ուստի կախեալ կային ՅակինԹոս երրեակք ոսկեշար դիւրաթեք շղթայիւք յարմարեալք։ Հանդերձ ծիրանեգոյն ասր և ոսկ գեղեցիկ ագուցեալք ոսկեպղինձ և փետրազարդ բևեռօք։ Սանդալինք կարմրերանգք մինչև 'ի ծունկս համեալք, զորս ոչ ումեք օրէն էր ըզգենուլ բաց 'ի կայսերէն հռովմայեցւոց, և 'ի Թագաւորէն Պարսից "։

Ի դասատուանագիրս Մխիթարայ գօշի, 'ի գլուխն՝ ուր դնէ օրէնս վասն Թագաւորի և վասն իշխանաց, յիշա-

1 Սահմանք աղանդից յիշատակի և առ Բուզանդայ Գ. 15. վասն Բ. Արշակայ Թագաւորի. "Յայնժամ Թագաւորն զիւր սամոյրն ըզլեռնեան ածեալ, 'ի վզոյթ կնճռոյն մտեալ, զիւր գեղմն երեսացն ծածկէր, քնոյ պատՃառանեցեալ՝ զի զնոցա բանսն մի լուիցէ "։

2 Պրոկոպիոս շին. Յուստինիանոսի. գիրք երրորդ. գլ. 1։

3 Այս մասն աշխարհին Հայոց զոր Պրոկոպիոս փոքր Հայք կոչէ, ունէր յայնժամ և ինչ ինչ 'ի Հայոց մեծաց, մինչև ձգիլ յԱմիդ, որ էր քաղաք 'ի մեծ Հայս։ Յայնժամ մասին պարունակեալ կարծեմ և զԾոփս կամ զչորրորդ Հայս, և զհնգեանն իշխանս կարգեալ համարիմ 'ի նոյն իսկ յԱսորկաց յառաջայագոյնս 'ի Ծոփս բնակեալ և վասն այնորիկ իբր առաջացեալ յայս գահ բարձրութե անկարձեալ 'ի կայսերէն, և յայս շուք հանդերձանաց ըզգեստաւորեալ. յորս ինչ ինչ մանաւանդ զաւակաւորեալ շարժեալ զպՃնեղութեան նման առանձնեալ մեծաշուք պաշտօնէից փէյիք առասնելոց, զորս բարեալ անդամ անեալ է իմ գնել 'ի հանդէսի առաջԹեր ասանձնեան Թագաւորի։

տակին մինչ մինչ զօրս յառաջ բերցուք ․ Թագաւոր , ասէ , «եթէ շինիցէ քաղաք և կամ դղեակ, և աշխարհագիր եթէ առնիցէ ․․․ իշխանութին կալցի ըստ իրաւանց դատաստանին ․․ Նոյնպէս շինել քաղաքս և բերդս , և կամուրջս շինել մեծամեծ գետոց՝ թագաւորաց լիցի (և մի իշխանեաց ․) և պանդոկի , և իջևանաց տունս , և այնոցիկ հրամանաւ նոցա լիցին ։ Իշխանք զթագաւորաց մի զգեցցին զըզգեստ, մինչև նոքա հրամայեսցեն, և կամ տայցեն պատիւ ․ առաջի արքայի մեծամեծ իշխանք մի նստցին , բայց եթէ հրամայիցէ ։ Ի սեղան արքայի բայց 'ի հայրապետէ մի ընկերիցէ , և յորժամ նա կամեսցի ․ այլ յարքունիս մինչ իշխան լիցի հայրապետն նստել , այլ ոչ արքայ 'ի տուն հայրապետի » ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

### Սովորութիւնք 'ի գիւղս հասարակ ժողովրդեան ։

Ի ԳԻՐՍ մեր առ մեծն Տիգրանաւ գտանեմք առաջին յիշատակութին յայսպիսիս , որ բազմացոյց զփարթամութի 'ի գեղս ․ զի ասէ վասն նորա Խորենացին Ա․ 24 ․ «Մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէսպէս գունոց և անգուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց ․ որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք , և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազնացեալք » ։ Իսկ առ մատենագիրս օտար ազգաց՝ վասն զգեստուց Մարաց և Պարսից և ասորեստանեայց գտանի յիշատակութի ․ բայց որպէս ազդ արարեալ է մեր և այլուր , նախնի մատենագիրք յորժամ զՀայս նմանս տեսանեն յիրս մինչ մերձակայ ազգացս այսոցիկ՝ ոչ խօսին ուրոյն զՀայոց ․ քանզի Մարք և Պարսիկք և ասորեստանեայք , որպէս և Պարթևք , եղեն հզօր տէրութիք յոյժ քան զմեզ , մինչև զմեզ ընդ իւրեանց տէրութիք գրաւեալ ունէին ժամանակս բազումս ․ վասն որոյ և 'ի պատմելն զսոցանէ՝ պատմեալ համարէին և զՀայոց ։ Զորոյ զօրինակն ցուցեալ է մեր 'ի բերս աշխարհիս Հայոց ․ զի յոր մինչ իրս նմանի աշխարհ մեր Մարաց կամ Պարսից աշխարհին՝ Ստրաբոն զՄարացն յիշելով և զՎրկան աշխարհին Պարսից՝ 'ի Հայաստան միայն զնման լինելն նոցին յիշատակէ բազում ուրեք ։ Այամ ծա-

## Դ. Երեւելի արանց:

Ըստ մասին փարթամութեան գոհարաց՝ 'ի պատմութեան Օրբէլեանին 'ի գլուխն Է. գտանեմք յիշատակեալ Յակինթ քար պատուական դժուարագիւտ ըստ մեծութեան և ըստ ազնուութեան. յաւելու վասն Դաւթի՝ զոր փոքր Թագաւոր կոչէ Սիւնեաց. "Ունէր առ ինքն զԴրօշակ մի պատուական յոյժ լուսաւոր, և անուն նորա կարմիր, յորմէ հատանէին նշոյլք խոր 'ի հրոյ. և 'ի գիշերի լուսաւորէր զտունն որպէս զջահ"[1]: Այլ այս ական անգիւտ ոչ մնաց 'ի Հայս. զի տարեալ Սմբատայ տարաւ նովաւ առ Բաչու Նոյինն, որպէս գրէ անդէն. "Եւ ցուցեալ նմա զլուսաւոր զոհարն՝ ասէ. կամ առ զսա, և պարգեւեա ինձ զոր խնդրեմս, և կամ յուղարկեա զիս առ մեծ ղանն, զի տարայց նմա զայս. Իսկ և տեսեալ նորա զայն՝ զարմացեալ ասէ. այդ անգին և անգիւտ ջոհար է. ես ոչ իշխեմ առնուլ զայդ. այլ յուղարկեմ զքեզ առ մեծ աշխարհակալ ղանն": Սմբատ զայս յակինթ տանելով առ Մանկու ղանն Թաթարաց՝ փոխանակ այսր ընծայի եհաս 'ի նմանէ զամենայն ազատութեան վասն երկրին Սիւնեաց և վանորէից:

Նոյնպէս պատուական ականք յիշատակին և առ Ջենոբայ 'ի Թղթ. 24. այլ յեկեղեցական զարդս, յաւելու վասն Ղեւոնդիէ հայրապետին Կեսարու. "Տայր և որդոյն Գրիգորի երկու լուսաւոր ականս, զոր էր տուեալ նմա Հռոմայ հայրապետն": Զայսոսիկ եդ աւուրն Գրիգոր յերկուս տեղիս 'ի տապան նշխարաց որդոյն Յոհաննու. զի ըստ գրելոյ 'ի Թղթ. 33. "Զմի ակն լուսոյ՝ զոր եբեր 'ի Կեսարիոյ՝ անուանէ Լիգրոն", եդ յՄնամականեան տեղւոջ: Եւ ըստ գրելոյ 'ի Թղթ. 38. "Զմիւս եւս զականն լուսաւոր դնէր 'ի նորին տապանին, յաղագս միշտ լուսոյն զոր ունէր", յԱշտիշատ վայրի: Առ տարապայլի մատենագրին կոչեցեալ Բրուեննիոս Կեսար՝ ականատես վկայի՝ զատա-

1 Այսպիսի լուեալ է մեր և վասն երկուց մեծամեծ յակնթից քարանց Թագաւորին Բէկու աշխարհին՝ որք միայն եղանէ յակինթ քարին. որոյ 'ի մթան գիշերոյ ճրագ վառեալ լինէր երկոցունց նոցա, զամենայն տեղեկանն կարմրագունով լուսով լուսաւորէր 'ի զուարճութիւն իւր: Զոր և տեսեալ ասենց 'ի նախնի հայկազեան բնակչաց՝ որք բնակեալ կային անդանօր նախ քան զմուտ Փորթուգալաց 'ի Բէկու, ստանձնեալ ունէին առ յետագայս: Վասն բնակչաց հայկազանց 'ի Բէկու կամ 'ի Հոտէս, կարես տեսանել յաշխարհագրութեան 'ի Է. հատոր Ասիոյ. Թղթ. 152:

Նոյնք յիշատակութիւն վասն շքեղակուռնոյ Պետրոս Խաչատրոյ իշխանին 'ի մետասաներորդ դարու՝ ունել անքն ինչ մեծ և գեղափայլ քան զամենայն ակունս ։

## ՅՕԴՈՒԱԾ Զ

### Սովորութիւնք 'ի հարսանիս, և օրէնք ամուսնութեան ։

### Ա. Դրամն ճաշակել, և Թագ կապել։

Ի ՍՈՎՈՐՈՒԹԵԱՆՑ հարսանեաց զմին միայն յիշէ Խորենացին Բ. 50. 'ի պատմելն զհարսանիս Բ. Արտաշէսի արքային ընդ Սաթինկան դստեր Ալանաց արքային. «Սովորութիւն իսկ էր, ասէ, թագաւորացն մերոց փեսայութեան 'ի դուռն առագաստին հասանել, դահեկանս ճապաղել իբրև զհիւպատոսանն հռոմայեցւոց. որպէս և թագուհեացն յառագաստին՝ մարգարիտ»։ Զայս բերէ 'ի մեկնութեան բանից Գողթան երգոցն՝ զոր երգէին. «Տեղ ոսկի տեղայր 'ի փեսայութեան Արտաշիսի. տեղայր մարգարիտ 'ի հարսնութեան Սաթինկանն»։

Սովորութիւն էր 'ի հարսնութեան թագ 'ի գլուխ դնել թագուհւոյն, և ծիրանիս զգեցուցանել. որպէս վկայէ նոյն Մատենագիրն Բ. 83. «Եկեալ Տրդատայ յաշխարհս՝ առաքէ զՍմբատ ասպետ զհայր Բագարատայ ածել զկոյսն Աշխէն դուստր Աշխադարայ իւր 'ի կնութիւն. որ ոչինչ նուազ էր կայսն արքային հասակի ։ Եւ հրամայէ գրել զնա արշակունի, և զգեցուցանել ծիրանիս, և թագ կապել զի հարսանացն արքայի»։

### Բ. Բազմակնութիւն ։

Բազմակնութեան սովորութիւն լինել և 'ի մերումս 'ի ժամանակս հեթանոսութեան յայտ առնէ Խորենացին Բ. 35. յասելն. «Սոյնպէս և զգլուխ կանանցն Աբգարու՝ որում անուն էր Հեղինէ, առաքեաց յիւրայինս քաղաքն»։ Եւ Բ. 50. յասելն վասն Սաթինկայ տիկնոջ. «Սա առաջին եղեալ 'ի կանանցն Արտաշիսի՝ ծնանի նմա զԱրտաւազդ»։

### Գ. Խնամութեան.

Խնամութիւն մերոց թագաւորացն էր ընդ մերձակայ թագաւորս կամ իշխանս. զոր օրինակ ընդ Վիրս. զի գրէ Խոր. Բ. 11. թէ ա. Արտաշէս մեր «զդուստր իւր զԱրտաշամայ տայ կին Միհրդատայ ումեմն Վրաց բդեշխի մեծի, որ էր 'ի զաւակէ Միհրդատայ՝ Դարեհի նախարարի, զոր կացուցեալ էր Աղեքսանդր 'ի վերայ գերութեան վերիացւոց»: Արտաշէս Բ. էառ 'ի կնութիւն զՍաթենիկ դուստր արքային Ալանաց. Ջնու ա. Սմբատայ արքայի Յովհաննէս կաթողիկոս ասէ լինել դուստր արքային Եգերացւոց. Աշոտ եղբայր Բ. Աշոտոյ առեալ էր յիւր կնութիւն զդուստր Գուրգենայ մեծի իշխանին Աբխազաց, որ էր քեռորդի Ատրներսեհի Վրաց արքայի. Եղև խնամութիւն և ընդ կայսերական յաւուրս Արշակունեաց.

## ՅՕԴՈՒԱԾ Է

### Սովորութիւնք 'ի յուղարկաւորութեան և 'ի թաղման.

Ի ԺԱՄԱՆԱԿՍ հեթանոսութեան թէ զիարդ լինէր յուղարկաւորութիւն և թաղումն թագաւորաց, գտանեմք առ Խորենացւոյն 'ի պատմութեան մահուանն Բ. Արտաշիսի. «Գրէ (ասէ, Արիստոն Փեղղացի,) եթէ որչափ ամբոխութիւնք մեռան 'ի մահուանն Արտաշիսի, սիրելի կանայք և հարճք և մտերիմ ծառայք, և որպիսի շուք բազմադիմիս արարին առ 'ի պատիւ դիոյն քաղաքական կարգօք, և ոչ որպէս զբարբարոսս. Դագաղքն էին ոսկեղէնք, դահոյքն և անկողինքն բեհեզեայ, և պատմուճանն որ զմարմնովն՝ ոսկեթել, թագ կապեալ 'ի գլուխն, և զէնն ոսկւով առաջի եդեալ, և զգահոյիւքն շուրջ որդիքն և բազմութիւն ազգականացն. և առ այսոքիւք պաշտօնէիցն զինուորութիւնք, և նահապետքն և նախարարութեանցն գունդք, և միաձայն զօրականացն վաշտք. ամենեքին կազմեալ զինու հանդերձ, իբր թէ 'ի պատերազմ ճակատիցին: Եւ առաջի՝ պղնձիս հարկանելով փողս, և զկնի նոցա՝ ձայնարկու կուսանք սևազգեստք և աշխարհոզ կանայք.

խանի յաւուրս Բուղայ. « Իսկ մեծ սեպուհն իշխանն սիւնի Վասակ Գաբուռն որդայ հաստակաւ յերիտասար-դութեն սիս վախճանի ... այսպ ատեալ երանելի սրբ-նոյն Մարիամայ զգլխն նորա՝ զարդարեալ թագաւորական զարդուք, անհուն ամբոխիւ և անչափ աղաղակաւ, և ողբերգական պարուք փողոց և քնարահարաց, հանդերձ կաթողիկոսաւ Զաքարիայիւ տարեալ հանգուցանէին ՚ի քնարանի ընդ հարս իւրեանց »:

Նոյնպէս և վասն Աշոտոյ իշխանին Սիւնեաց որ յա-ւուրս Յովսեփայ ոստիկանին ՚ի գլ. ԼԸ. « Մեծ նախարարն սիւնի և գահերէց իշխանն Աշոտ յետ բազում քաջութեց մեծամեծ երեւելի գործոցն՝ անչափ շինութեց աշխարհի՝ եկեղեցեաց և վանօրէից՝ փոխի յաստեացս. իսկ բարե-պաշտուհի և անհամեմատն ՚ի կանայս Շուշան կին նորա զարդարեալ զդի նորա արքունական ձեւով, աշխարհա-ժողով ամբոխիւ, դամբանական փողովք և ողբերական քնարահարիւք տարեալ հանգուցին »:

Ի յուղարկաւորութեան եկեղեցականաց յիշատակին և կանթեղք և մոմեղէնք. զոր օրինակ է տեսանել առ Բուզանդայ Դ. 11. ՚ի թաղման մեծին Ներսէսի. « Եւ յետ սորա փոխեցաւ եւ յաշխարհէ մեծ քահանայապետն Ներսէս. և ժողովեցան ամենայն աշխարհն Հայոց, և մեծաւ պաշտամամբ, սաղմոսիւք և երգովք հոգեւորօք, կանթեղօք և մոմեղինօք և խնկածու հոտովք, արքունա-կան կառօք զսուրբն Ներսէս ... մեծաւ լալեաց ողբա-մութք մինչեւ ՚ի գիւղն Թորդան ՚ի Դարանաղեաց գա-ւառն յուղարկէին »: Որպէս և ՚ի թաղման սրբոյն Մես-րոպայ յիշատակէ Կորիւն, թէ Վահան ամատունի թա-ղեաց « աշխարհական ամբոխիւ ... հոգեւոր ցնծութիւք, կանթեղօք վառեալովք, և ջահիւք բորբոքելովք, և ամե-նայն լուսաճաճանչ զնդիւն »:

Իսկ խնկել կամ զմռսել զմարմինս ննջեցելոց յիշատա-կեալ առ Ստեփաննոսի ԼԸ. և այն սակս տանելոյ յեր-կիր հեռաւոր. զի պատմէ թէ յաւուրս Յովսեփայ ոստի-կանին « ՚ի թափառական պանդխտութեան հասանէր վախ-ճան երանելի տիկնոջն Մարիամայ մօրն իւրեանց, զոր խնկեալ և զմռսեալ եդին ՚ի փայտեայ տապանի, և պա-հեցին մինչեւ յօրն այցելութեան ... ապա ՚ի ժամ դարձին բերեալ շքեղազարդ պատուով զմայրն իւրեանց, և աշխար-հաժողով հանդիսիւ եդին ՚ի հանգստի մերձ առ ձեռա-կերտ եկեղեցւոյն իւր որ ՚ի Շողուակաւ »: Ըստ այսմ եղե

ցեալ շփեալս 'ի զգեստուց, և պատրաստեալ գլխոյ խորում
արկանելիս Ռիշունեացս, և յառաջ կոչեալ զզատեալս սորա՝
որոց յօրինեալ կարգս. կարգեալ կացուցանէ զաւս զաւս պա-
րաւորս երբեմնեցին, և զԹագաւորացն Խորայելի նորոգել
սորա զողբս „: Ի շարժմանս անդ Դուլին քաղաքի որ եղև
յաւուրս ճ. Սմբատայ, քանզի բազմուԹի մարդկան մե-
ռանէ, զաղջկանանց նոցա 'ի Թուխ համանկել զրէ Յովհան-
նէս կաԹողիկոս. « Թողում ասել զաղջկանցն . . . (որոց)
աղխաղարմ ձայնք երդեցին կուսանաց, և սուգանոց կա-
նանց և արանց միշտ ահար հեծուԹեամբ ողբայելոց մինչև
յերկինս բարձրացեալ հասանէր „:

### Գ. ԿՈԾԻՆ ՂԱՆՁԻ :

Ի կոծս որպէս լինէին կանոնաւոր մահուանք 'ի ժամանակս կռապաշտուԹեն, զորմէ յիշեցաք 'ի վերոյ, նոյնպէս և սովորուԹի էր զհերսն լողել, զձակատ հարկանել, և զերեսս պատառել, որք յիշատակին 'ի նզովս ժողովոց, նզովիւք արգելլով քրիստոնէից. զորս մեծն Ներսէս բարձեալ էր զամենայն. բայց յետ մահու նորա անդրէն սկսան, որպէս ասէ Բուզանդ Ե. 31. « ԵԹէ յանկարծ մեռանէր ոք, ոչ ոք խլէր (յաւուրս մեծին Ներսէսի) անյուսուԹի արտաքոյ կարգի կանոնի եկեղեցւոյ լալ զմեռեալն. և ոչ կոծ ոք դնէր կամ աշխարանս մեռելոյն[1], և ոչ ձայնս ոք արկանէր 'ի վերայ մեռելոյն յաւուրսն Ներսիսի, այլ լոկ արտասուօք և ըստ արժանի սաղմոսիւք և օրհնուԹբ, կանԹեղօք և մոմեղինօք լուցելովք զմեռեալսն յուղարկէին... Այլա յետ մահուանն Ներսիսի յորժամ զմեռեալսն լային, փողովք և փանդռօք և ճնօք դկոծանս պարուցն կաքաւելով, զուրդսն հատեալս, զերեսս պատառեալս, արք և կանայք պղծուԹբ ձիւաղուԹբ պարուք դէմ ընդ դէմ հարկանելով, և կամ ափս հարկանելով, զմեռեալսն յուղարկէին „: Եւ այնպէս զայն սովորուԹի՝ որ 'ի կռապաշտուԹէ մնացեալ էր ննջեցեալ, վասն դարձեալ նորոգեցին :

1 « Ձերկուս զայրսակն (ասէ Խորենացին Գ. 20. վասն մեծին Ներսէսի) յարզգաց նախարարացն բառնայ, զմերձաւորաց խնամակալ, որք վասն աղանձելոյ անփոխանակ աղքատուԹեն անձանց, և միւսն՝ որ 'ի վերայ մեռելոցն զարժէին ոճիրս ըստ հեԹանոսական սովորուԹեն „:

### Դ. Սուգ առնուլ։

Սուգ մեռելոց ոչ միօրինակ ունէր առ մեզ. քանզի Թովմա արծրունին Ե. 3. վասն Գուրգենայ եղբօր Թագաւորին Գագկայ արծրունւոյ ասէ. «Եղև որ վախճանի նա, բաց սուգ մեծ ամենայն հայաստան աշխարհին. և եղաց զնա արքայ (Գագիկ) լալիւն մեծ [illegible] [illegible]»։ Իսկ յորժամ մեռաւ Թագաւորն ա. Հեթում, վասն սգոյ որդւոյ նորա Լևոնի՝ որ [illegible] Պարոն Հայոց էր անուանեալ, այսպէս գրէ Վահրամ չճ.

«Բայց պարոնն այնքան սուգ առեալ,
Մինչ մահուչափ հիւանդացեալ.
Որ յամենից աղաչեցեալ
Փութով լինել Թագաւորեալ.
Եւ առժամայն ոչ հաւանեալ
Եւ յումեքէ ոչ սփոփեալ,
Զերկու ամս սուգ արարեալ
Տրկար անձամբ, և վշտացեալ»։

Առաւել քան զայս պատմի առ Թովմայի արծրունւոյ Դ. 2. վասն մահուան Դերանիկն Գրիգորի իշխանին Վասպուրականի, որ յաւուրս Գէորգեայ կաթողիկոսի, և ա. Աշոտոյ Թագաւորի. «Եւ ժողովեալ աշխարհն վասպուրականի՝ [illegible] տան արարին կոծ մեծ 'ի վերայ նորա»։

### Ե. Օձիս պատառել։

Օձիս պատառել 'ի նշան տրտմութեան ըստ օրինակի Հրէից՝ գտանեմք ուրեք յիշատակեալ առ Ագաթանգեղոսի զԹ. «Եւ իբրև խօսեցաւ երանելին Գրիգորիոս զայս ամենայն, առ հասարակ ձեռն օձիս արկեալ՝ զպատմուճանս պատառէին Թագաւորքն և նախարարքն և այլ բազմութիւն մարդկանն»։ Եւ առ Եղիշէի 135. «Գուժկան հասանէր յաշխարհէն Հայոց, զճակատ հարեալ և օձիս պատառեալ վասն ապստամբելոյն Վասակայ»։

### Ջ. Մահարձանս կանգնել։

Մահարձանս կանգնել 'ի վերայ գերեզմանին՝ սովորուԹ լինել ցուցանէ վասն Արշակունեաց այս բան Խորենացւոյն յասելն վասն Երուանդայ Թագաւորի՝ որ արշակունի էր 'ի մօրէ. "Բայց Արտաշիսի (արքայի) յիշեալ Թէ խառնուած արշակունւոյ է Երուանդ, հրամայէ զդի նորա Թաղել Մահարձանօք„. Գ. 46.

### Ե. Շիրիմ կանգնել։

Շիրիմ կանգնել միայն վասն Հեղինեայ տիկնոջ Աբգարու Թագաւորին գտանեմք յիշատակեալ առ Խորենացւոյն, և այն յօտար երկրի, որ և կանգուն կայր մինչև յաւուրս նորին մատենագրի. "Այս Հեղինէ, ասէ, զայր դարձեալ հաւատովք որպէս և այր իւր զԱբգար, ոչ հանգուրժեաց բնակել 'ի մէջ կռապաշտից, այլ չոգաւ յԵրուսաղէմ... որոյ և Շիրիմ նշանաւոր կայ առաջի դրանն յԵրուսաղէմ մինչև ցայսօր ժամանակի„. Բ. 35. Բայց զստորագրուԹի այսր շիրմի առ օտար մատենագրի ուրուք գտանեմք, որ նա ինքն է Պաւսանիաս յոյն յԱրկադեան գիրս իւր, կամ գիրք Ը. ուր նախ ասէ. "Եւ քանզի բազում Ճանաչեմ Շիրիմս զարմանալոյ արժանիս, զերկուս միայն յիշատակեցից յայսմ վայրի, զմին յԱղիկառնաս, իսկ զմիւսն 'ի Հրէաստան„։ Յետ ասելոյ նորա Թէ յԱղիկառնաս կանգնեալ շիրիմն վասն Մաւսոլէոսի Թագաւորին՝ այնչափ մեծապարծ էր և փառաւորագ, մինչև հռոմայեցւոց զամենայն մեծապարծ շիրիմս կոչել Մաւսոլէոս, ապա զՀեղինեայն յիշէ. որով իսկ նորա յետ Մաւսոլէոսին՝ շիրիմ մեծակառոյց Հեղինեայն է դասեալ. այլ սակաւուք ստորագրելով ասէ այսպէս. "Բայց առ Եբրայեցիս 'ի քաղաքին սողիմացւոց (կամ շաղիմացւոց, որ է երուսաղէմացւոց), զոր կայսրն Հռոմայեցւոց 'ի հիմանց քանդեաց, գտանի Հեղինեայ տիկնոջ բնակչի Շիրիմ հրաշակերտ. զի դուռն է գործեալ 'ի նմա մարմարիոնեայ, որպէս են և այլ կողմանք շիրմին. այս դուռն 'ի պայմանեալ աւուր տարւոյն և 'ի ժամու՝ գաղտնի ինչ շարժմամբ մեքենայի բանի, ապա յետ սակաւուց փակի. զոր Թէ յայլում ժամանակի դուռն գործեսցես բանալ, յաւէտ խորտակել կարասցես քան Թէ փակել„. Յովսեպոս և ս

տեղեագրաց յիշատակելոյն Թէպէտ և օտար համարեսցուք 'ի մերոցն, սակայն որ ինչ վասն սովորութեան ազգիս քանզի են առ նոսա 'ի դաշնադրութեան, չէին մերժելի, զի գուցէ և առ մերսն վարէր 'ի հնումն այդ սովորութիւն. և զոր վասն Մարաց և լիւդացւոց տեսանեմք պատմեալ, նոյնպէս և վասն հռոմայեցւոյն Կատիլինայի պատմէ Սալուստիոս. որպէս և Տերտուղիանոս վասն այլոց ընդհանրապէս. Թէպէտ և զանազան ազգք զանազան օրինակաւ հանէին զարիւն 'ի դաշնադրութիւն. յորոց և ոմանք ընդ գինի խառնեալ ըմպէին զարիւն միմեանց։



# ԳԼՈՒԽ ՎԵՑՏԱՍՆԵՐՈՐԴ

## ՕՐԷՆՔ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

ՅԱՌԱՋԻՆ առհմնադրութիւն օրինաց 'ի Վաղարշակայ հաստատեալ յաղագս մերում՝ յայտ առնէ Խորենացին. զի կարգ ըստ կարգէ ածէ 'ի մէջ որ ինչ բարեկարգութիւք եղեն առ 'ի նմանէ յարքունիս և 'ի քաղաքականն ընկերութիւն, ասելով. «Եւ օրէնս իմն հաստատէ 'ի տան թագաւորութեան իւրոյ. և ժամս որոշէ ելևմտից և խորհրդոց և խրախճանութեանց և զբօսանաց... Հրաման տայ քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել քան զգեղջկաց, և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս. և քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարել վասն բարեկարգութեան և աննախանձ կենաց, որ է շինութեան և խաղաղութեան և կենաց պատճառք, և որ ինչ նման այսոցիկ». Բ. 8: Ի բանից աստի յայտնի երևի թէ Վաղարշակ մատեան ինչ օրինաց աւանդեալ էր ազգին. զի բերանացի եւեթ աւանդել զայդքան օրինադրութիւնս ոչ ապաքէն անդէպ էր այնպիսւոյ բարեկարգեալ տէրութեան Վաղարշակայ: Այլ յայնչափ օրինաց առհմնադրելոյ 'ի նմանէ, մի միայն է որ ուրոյն և յատկապէս յիշատակի հեղհեղեալ առ նորին մատենագրի, զոր յառաջ բերցուք առ անդրանս:

# ՅՕԴՈՒԱԾ Ա

Օրէնք յաւագոյս Արշակունեաց, զոր կարգեաց նախ Վաղարշակ պարթև, և յետ նորա այլք։

## Ա. Վասն յաջորդութեան և վասն արքայորդւոց։

Ի ՆՈՅՆ նախադրեալ գլուխ գրէ Խորենացին վասն Վաղարշակայ. «Եւ քանզի բազում ունէր ուստերս, պատշաճ վարկաւ ոչ ամենեցուն առ իւր կալ ՚ի Մծբին, (ուր բնակէր յայնժամ ինքն Վաղարշակ.) վասն որոյ առաքէ զնոսա բնակել ՚ի գաւառն Հաշտենից, և ՚ի ձորն նորին սահմանակալ, որ է արտաքոյ Տարօնոյ. ՚ի նոսա թողով զչէնս ամենայն հանդերձ յաւելուածով մտից առանձինն, և ռոճկաց կարգելոց յարքունուստ, և միայն զառաջինն որդին որ կոչէր Արշակ՝ պահէ առ իւր ՚ի համար թագաւորութեան։ Եւ եղև այս յայնմհետէ և առաջակայ օրէնք ՚ի մէջ Արշակունեաց, միոյ որդւոյ բնակել ընդ արքայի, փոխանորդ լինել թագաւորութեան. և այլ ուստերաց և դստերաց գնալ ՚ի կողմանս Հաշտենից՝ յազգին ժառանգութիւն»։ Արտաւազդ ա̄. արքայ յաւել առ արքայորդւոց ՚ի ժառանգութիւն և զգաւառն Աղիովիտ և Առբերանի. «Սա ժառանգեցուցանէ զեղբարս իւր և զքորս ՚ի գաւառն Աղիովիտ և Առբերանոյ, թողով ՚ի նոսա զմասն արքունի՝ որ ՚ի չէնս այնմ գաւառաց, հանդերձ առանձինն մտից և ռոճկաց, ըստ օրինակի ազգականացն՝ որ ՚ի կողմանս Հաշտենից. որպէս զի լինել նոցա պատուականագոյն և առաւել թագաւորականն քան զայնս արշակունիս. միայն օրինադրէ ոչ կեալ յԱյրարատ ՚ի բնակութիւն արքայի». բ̄. 22։ Սանատրուկ յաւել և զդստերս Աբգարու անդր առաքել. զորմէ ասէ բ̄. 35. «Զամենայն զաւակ տանն Աբգարու մաշեաց սրով բաց յաղջկանց, զորս եհան ՚ի քաղաքէն (Եդեսիոյ) բնակել ՚ի կողմանս Հաշտենից»։ Արտաւազդ բ̄. զայլ ևս արքայորդիս առաքեաց յայն գաւառս. «Հալածէ, ասէ, յԱյրարատոյ զամենայն եղբարս իւր ՚ի գաւառն Աղիովտոյ և Առբերանոյ, զի մի բնակեսցեն յԱյրարատ ՚ի կալուածս արքայի, բայց միայն զՏիրան (զեղբայր իւր) պահէ փոխանորդ իւր. զի որդի ոչ գոյր նորա». բ̄. 61։

## ՅՕԴՈՒԱԾ Բ

### Օրէնք յաղագս Բագրատունեաց :

ՅԱՂԱԳՍ օրինաց Բագրատունեաց ժամանակին թէ-պէտ 'ի պատմագրաց մերոց չունիմք ինչ ծանօթութիւն, բայց 'ի գրեանց դատելոց յԼվով քաղաք Լեհաստանի՝ իմանամք թէ հայկազունք գաղթեալք յԱնի քաղաքէ և յայլոց կողմանց Հայաստանեայց 'ի Լեհաստան, ընդ իւրեանս տարեալ ունէին մատեան օրինաց, որով վարէին յայն-ժամ 'ի Հայաստան : Զայս մատեան Սիգիզմունդոս Ա. Թագաւոր Լեհաց որ 'ի 1548. ետ թարգմանել 'ի լատին բարբառ, որ գտանի առ մեզ. և 'ի յառաջաբանութեան այնր մատենին օրինաց այսպէս խօսի Սիգիզմունդոս.

* Թէպէտ զհայկազունս ընդունեցաք, կամ որ նոյն է ինկալցեալ զհպատակեալս մեր, մինչև ցայժմ պահեալ ունէաք իւրեանց հայկական արտօնութիւնք և օրէնք, որովք նախորդք մեր ընկալեալ և հաստատեալ ունէին, այլ 'ի ծագել հակառակութեան իրիք 'ի մէջ նոցա և քա-ղաքի, կարեւոր թուեցաւ զայն գիր օրինաց իւրեանց՝ որ գրեալ էր 'ի բարբառ հայկական, որով և ինքեանց միայն էր ծանօթ, թարգմանել տալ նոցա 'ի լատին բարբառ, և այնպէս մեզ աւանդել առ 'ի չտալ տեղի ինչ տարակուա-նաց կամ նենգելոյ. որպէս զի և մեք ընդ խորհրդակա-նօք մեր ողջախոհ խորհրդով քննեալ և ինչ ինչ փոփո-խեալ, վերստին հաստատեսցուք,, : Յետ զայս գրելոյ՝ ապա յանուանէ յիշելով զՅոհաննէս Թագաւոր Բագրա-տունեաց, բերէ զպատուէր նորա այսպէս. "Յոհաննէս շնորհօքն Աստուծոյ Թագաւոր Հայոց, 'ի ժամանակս բարեշնորհ տէրութեան իւրոյ սահմանեաց,, յաւուրս կիւրա-կէից ոչ բանալ դատաստան, ոչ առնուլ տուրս, ոչ պահան-ջել դրամ 'ի պարտապանէ, և այլ պահպանութիւն վասն կիւրակէից : Յետ այնորիկ ասէ. "Բարեյիշատակ և բա-րեացապարտ Թէոդի (գուցէ Աշոտի) Թագաւորի Հայոց, և այլոց Թագաւորաց և իշխանաց ուղղափառաց Հայոց,, հրամանն է առնել արդարութիւն և իրաւունս ամենեցուն, քաղաքաց, աւանաց, գիւղից. և այլն : Այսչափ յիշատա-կութիւնք յայտ առնեն, թէ և Բագրատունիք ունէին օրէնս և մատեան օրինաց :

## Ա. Վասն յաջորդութեան Թագաւորաց։

Թէպէտ յետ բառնալոյ թագաւորութեան Բագրատունեաց գտանեմք զայս օրէնս 'ի սկիզբն դատաստանագրոց Մխիթարայ Գօշի, բայց յայտ է թէ էր օրէնք 'ի կիր արկեալ յաւուրս Բագրատունեաց. ուր և տեսանեմք խուչ խուչ տարբերութի. զի յաւուրս Արշակունեաց թագաւորք յորդւոց յորդիս պայազատէին, բայց այս օրէնք Բագրատունեաց զեղբարս գնէ պայազատել։ Գտանին և այլ կարգադրութիւնք խուչ, զորս արժան համարիմ յառաջ բերել. "Թէպէտ և, ասէ, զանդրանիկն 'ի դէպ է թագաւորեցուցանել, այլ զյառաջադէմն յաթոռ նստուսցէ արքայութեան. և որքան (ցորչափ ժամանակս) եղբարք իցեն նորա՝ որդւոց նորա (թագաւորի) ոչ է իրաւացի առնուլ թագաւորութի, և 'ի հատանել ('ի սպառել) եղբարցն՝ ապա նախին որդիքն։ Եւ եթէ դուստր իցէ նորա՝ նահապետութեան կարգեսցէ, հանդերձ արամբն կէս եղբօր մասն առցէ։ Եւ եթէ մահուամբ բարձցին թագաւորք, և որդւոյ իցէ որդի և դստեր, որդւոյ որդին առցէ զաթոռն և ոչ դստերն. և որքան յորդւոցն իցէ 'ի ծննդոց՝ դստերն մի առցէ. ապա եթէ առցէ՝ յօտարս համարեսցի։ Զի այսպէս մերն արքայ Աբգարիոս կարգեաց զտուն թագաւորութե Պարսից, և նահապետն Նոյ ընդ որդիսն և դստերսն ետ մասն վիճակի զկողմն հարաւոյ. ըստ որում և կանոնք թագաւորին կողմանցն"։ Այսպէս գնէ օրէնս թէ որպէս պարտ է կարգել զյաջորդութիւն [1], յորժամ միայն դուստր իցէ թագաւորի և ոչ ուստր. կամ յորժամ ոչ զոք ունիցի ժառանգ՝ յայնժամ, ասէ, առ մերձաւորս անցանէ պայազատութիւն. բայց զմին միայն 'ի մերձաւորաց առ ինքն կալցի. իսկ զայլսն, ասէ, "հեռի ընակեցուսցէ. որպէս և զայս սովորութի կալան առաջինքն թագաւորք"։ Զայս ամենայն խօսի Մխիթար 'ի Ի. գլուխ սկզբան դատաստանագրոց։ Որով բանիւ յուշ առնել կամի զայն սովորութի արշակունի թագաւորաց՝ զոր եդաք 'ի վերոյ։

[1] Օրէնք յաջորդութե ոչ անխախտ պահեցան յաւուրս Բագրատունեաց. այլ եղեն 'ի նոսա որք խառնակութեամբ յարուցին վասն յաջորդութեան. յորս երևելի դատն Աշոտ ընդ եղբօր իւրում Յովհաննու։ Այլ յաւուրս Արշակունեաց բաց 'ի Սանատրկոյ այլքն հպատակեցին օրինաց։

### Բ. Այլ ինչ ինչ յօրինաց Բագրատունեաց։

Վասն Հարկաց գրի 'ի դատաստանագիրս նորին Մխիթարայ 'ի նախագրեալ գլուխն Դ. ուր ասի. Ցաղագս Թագաւորաց դատաստանի, և որք ձեռամբ նոցա. "Իսկ հարկս գաւառաց և ազգաց՝ Թագաւորք և իշխանք արդարութեամբ առցեն, մի ինչ աւելի քան զառաջինսն սովորութիս կալցեն, զի ըստ ամենայնի համարս ունին տալ. զի յԱստուծոյ կարգեցան 'ի պահպանութիւն և 'ի փրկութիւն աշխարհի՝ և ոչ 'ի կործանումն։ Եւ արդ այսպէս լիցի. զանդաստանացն զհինգերորդ մասն առցեն... զի արծաթագին անդաստան և այգեստան և բուրաստան մի լիցի ըստ հարկաւ հնգեկի. նմանապէս ջրաղաց և տուն։ Այլ թէ բնակիչքն ըստ արուեստի և կամ ըստ վաճառի հարկիցին. զի ոչ է հարկ գլխոյ քրիստոնէից, բայց այլազգեաց յորժամ բռնի ըստ հարկաւ արասցեն։ Բայց անդաստանք ջրարբի լիցին ըստ հնգեկեաւ, այլ ստինք տասանորդեսցին. զի հող միայն է իշխանի և Թագաւորի, և ոչ ջուր. նոյնպէս ոստինք, այգիք և ծառաստանք։ Այսպէս և յաւուրս շաբաթի՝ յեօթնէն մին գործիցէ իշխանի և տէրունի. այլ աւելի աշխատել զձեռամբ անկեալն՝ անիրաւութիւն մեծ է։ Եզին առանձին այլ հարկ մի լիցի, զի այն իսկ է զոր աշխատեալ հնգեկի. կովու ըստորեղն միայն լիցի. արօտի հարկ այլ մի լիցի, զի այն իսկ են արօտականք որ հարկին։ Ոչխարք 'ի գառինսն տասանորդեսցին. թէ հաճոյ իցէ տէրանցն՝ ըստ ոչխարի փոխանակիցէ ըստ արժանւոյն։ Ձիոյ և ջորոյ և իշոյ մի լիցի հարկ. զի նոքօք բազում անգամ ծառայեն ըզտէրունին"։

Ի նոյն գլխոյ դատաստանագրոց Մխիթարայ Գօշի 'ի մէջ բերցուք և զորս յայտ առնեն զկառավարութիւն և զկարգաւորութիւնս նախնեաց. "Անդատաստան է իշխանաց հարկել զհաւատացեալս զոր հարկեն այլազգիք. զի յայլազգեաց հարկ արժան է առնուլ, և ոչ 'ի նոցունց. որպէս առնեն Վիրք ըստ ձեռամբ անկելոցն։ Թագաւոր իշխանի տուեալ գաւառ, եթէ շինէ ըստ հրամանի նորա բերդ, և կամ աւան վաճառի, և կամ աւերակս 'ի նոյն սահմանսն, 'ի ժառանգութիւն համարեսցի նմա. մի լիցի փոխել զնա առանց մեծի և իրաւացի յանցանաց. և զկնի մահու նորա՝ որդւոց նոցա լիցի հրամանաւ արքայի։ Նոյն

պէս ըստ ձեւամբ իշխանաց ազատք լինին (այսինքն ազնուատոհմք), և ըստ ազատաց (ազնուականաց) ձեւամբ՝ շինականք (լինին)։ Յորժամ աւերս շինեսցեն և հողս հատանիցեն 'ի մայրեաց՝ տատացուած լինի անփոփոխ, և որդւոց նոցա յետ մահու . . . Ի շինուածս քաղաքի և բերդի՝ թէ պակասիցի գանձ արքայի, ամենեքեան հասարակ նպաստ լինին։ Այլք քաղաքացիք առաւել քան զգեղջկունս պատուեսցին, և գեղջկաց նմանապէս առաւել պատիւ լինի քան բնակչաց ագարակի. նոյնպէս լինի բերդի բնակչացն և աւանաց. զի և կարգ առաջնոցն է մերոց Թագաւորացն այդորիկ"։ Որով կամի յիշել զկարգաւորութիւն Վաղարշակայ, զոր 'ի վեր անդր յառաջ բերաք։

## ՅՕԴՈՒԱԾ Գ

### Դատաստանարանք, և Դատաստանագիրք։

Յաւուրս Արշակունեաց 'ի Վաղարշակայ գտանեմք կարգեալ սահմանեալ դատաստանարանս. զի զայս յայտ առնէ առեղն Խորենացւոյն Բ. 8. վասն նորա՝ թէ հաստատէ "Իրաւարարս 'ի տան արքունի, Իրաւարարս 'ի քաղաքս և յաւանս"։ Իսկ ուր են իրաւարարք, անդ հարկ է լինել և դատաստանարանաց. ուրանօր իրաւարարք կամ դատաւորք լսեն դատս և առնեն իրաւունս, ունելով իւրեանց նաև պաշտօնեայս, առանց որոց չէ մարթ լինել։ Իսկ թէ կային դատաստանարանք, ցուցանէ և այն բան նորին մատենագրի. "Գիւղից և գաւառաց, եւս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, և հանուրց հասարակութեանց և դաշանց, այժմ առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք, մանաւանդ որ 'ի սեփհական ազատութեան (նախարարութեան) պայազատութիւն". Բ. 3։ Զի յայտ է թէ այսպիսի գրուածք և մատեանք՝ յորոց վերայ անցմամբ ժամանակաց մարթ էր վէճ ծագիլ 'ի մէջ ժառանգակցաց, 'ի դատաստանարանս պահեալ լինէին. որպէս և առ այլ ամենայն ազգս է սովորութիւն։

Իսկ վասն ժամանակի Բագրատունեաց՝ 'ի նմին իսկ 'ի նախագրեալ մատենի 'ի լատին բարբառ գտանեմք զդատաստանագիրս նոցա, ուրանօր զկնակարգաւն դնէ այսպէս. "Թագաւորք Հայոց զայս օրինակ իրաւանց առաջի

տանեն դատաւորաց,,: Այսպ գնէ յուրոյն ուրոյն գլուխս զդատաստանս վասն իրաւանց կտակի, վասն իրաւանց ամուսնացելոց, և վասն զանազան յանցանաց. և այլն:

Զայսոսիկ ամենայն զարմանամք յընթեռնուլն զնախադրութիւն դատաստանագրոց Մխիթարայ Գօշի. ուր բազում ուրեք գրէ, թէ յառաջնոց ոչ գոլով գրով աւանդեալ, վասն որոյ հարկեցայ ես 'ի դիր արձանացուցանել. զորոյ զբանս արժան համարիմ քաղելով 'ի մէջ բերել: Ցերկրորդ գլուխն, որոյ վերնագիր է. “Յաղագս թէ ընդէ՞ր այժմ կամեցայք գրել, կամ յումմէ՞ շարժեալ յայսոսիկ եկայք 'ի միտս,, այսպէս գնէ զպատճառսն. “Զի բազում անգամ լուայք պարսաւանս ոչ յայլասեռից միայն, այլ և 'ի քրիստոնէից, եթէ բնաւին ըստ աւետարանին դատաստան ոչ է... Զի մի 'ի պատճառս ոչ լինելոյ գրով դատաստանի՝ դիմեալ երթիցեն յայլասեռսն... Զի բազումք... բազում անգամ և ագխտութեն թիւրեն զուղիղ դատաստանն. սակս որոյ յուղղութի և յանդիմանութի սակաւուք այնոցիկ զգիրս գրեցաք դատաստանի... Այլ զի մի այս լիցի, զգիրս եդաք դատաստանի 'ի պատճառս յիշման. զի զոր յայնմ ժամու (անգիր լինելով) ոչ կարեմք յիշել, 'ի ձեռն առեալ (զգրեալն) վերստին յիշեմք, և օտարաց ցուցանեմք ազգաց՝ զորոց վարիլ դատաստանաւ. որով ընթերցանեալք մի լիցին յանդիմանիչք մեզ... Իսկ եթէ յումմէ յորդորեալ եկայք 'ի գրել, 'ի բազում ժամանակաց հետէ տարակուսեալ յաղագս սորին լինէի խոցոտելով 'ի նախատանէն զմեզ մերոց և օտարաց ազգաց... և զարմացեալ յաղագս այսորիկ լինէի, թէ զիարդ յառաջնոց հարանցն մերոց ոչ կարգեցաւ,,:

Զայսոսիկ գրէր Մխիթար Գօշ յելս երկոտասաներորդ դարուն, յորում եկաց ինքն. այլ քանզի առաջին դաղթականք Հայոց, որք խաղացին 'ի Լեհաստան, էին 'ի մէջն անդ մետասաներորդ դարու, նմին իրի 'ի ձահ թուի ասել, թէ նոյն դաղթականք ընդ իւրեանս առեալ տարան զձեռագիր դատաստանագիրս իւրեանց, յորմէ անմարթ եղև Մխիթարայ գտանել զնոյն 'ի Հայաստան. իսկ 'ի Լեհաստան 'ի ձեռին ունելով նոքա վարէին, որպէս յայտնի ցուցաք 'ի վերոյ: Թէպէտ և հայելով յայն օրէնս՝ զորս բերէ վասն պայազատութեան թագաւորաց և վասն այլոց՝ զորս բերաք 'ի վերոյ, պարտ է ասել թէ Մխիթար ունէր 'ի ձեռին գէթ հատուկտիր գրուածս օրինաց նախնի բագրատունի ևս և արշակունի թագաւորաց. ապա

թէ ոչ՝ հարկ էր առել յիւրմէ յօրինեալ զայն, որ այլուստ անդէպ երեւի. մանաւանդ յորժամ ընթեռնումք 'ի Ռ. գլ. ակզբան դատաստանագրոյ նորա, ուր ասէ. «Ցանգը ամենայն օրինակաւ զօրէնս իրաւանցս արասցեն որք ընթերցմանն սորա պատահին, նմանս զմեզ առնանելով այնոցիկ որ յանուրջս երեւութական թագաւորութիւն և բազում ինչ ախորժելիս, և զարթուցեալ՝ դատարկ և ունայնս յամենայնէ լիցին: Բայց գիտասցեն, զի ոչ անգիտանամ՝ եթէ ամենայն թագաւորութիւն երկրաւոր անցաւոր և փոփոխելի է. այլ առաւել մերս եղև արքայութիւն, զի անցեալն ոչ է 'ի միջի, և ներկայս չիք, և ապագային ոչ պատահիմ. բայց զփափագս ձեռնարկելով լնում, և զյարմարութիւն առաջարկութեան ամբողջ պահել փութամ. յաղագս որոյ թողութիւն մեզ լիցի 'ի հաւատարի տեսողաց. զի պատրաստեմ յանխուզ պարսաւողաց զբամբասանս ժողովել. և 'ի նոցունց եւս թէ 'ի դէպ իցէ և ոչ կամիցին թողուլ ազատս»: Այս բան յայտ առնէ, թէ ոչ յանձնէ ինչ յօրինեալ են օրէնքն այնորիկ, այլ յառաջնոց անտի:



# ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՏԱՍՆԵՐՈՐԴ

## ԲԱՐՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

### ՅՕԴՈՒԱԾ Ա

*Ա. Բարք առաջնոյ ժամանակի և Նախնի բնակչաց:*

ԿԱՄԵՑԵԱԼ մեր զիւրաքանչիւր դարուց տալ տեղեկութիւն, հարկ է նախ զբարուց Նախնի բնակչաց աշխարհիս տալ՝ սկսեալ 'ի բնակութենէ Նոյի 'ի Հայաստան՝ մինչ 'ի ցրուել մարդկան արտաքոյ աշխարհիս մերոյ: Արդ 'ի բնակութենէ Նոյի մինչև 'ի Փաղէկ, յորոյ ժամանակս եղև ցրումն, անցին ամք հարիւր: այս դար 'ի Նախնի քերթողաց կոչեցաւ Ոսկի դար, սակս անմեղութեան վարուց մարդկան: զի Սատուրնոս էր որ կառավարէր զնոսա: յոր անուն կոչեն նոքա զՆոյ: վասն որոյ գրէ Վարրոն 'ի գիրս Մշակութեան: "Այն առաջին մահկանացուք աստուածամերձք, բարեբարոյք և բարեկեցիկք, յորմէ և ոսկի անուանեալ դար": Եւ յիրաւի: զի քան զարարածոյն Աստուծոյ և զտեսչութենէ նորա 'ի բանական ստեղծուածս՝ չգոյր առ նոսա այլ բան կամ խորհուրդ: զնոցունց խօսէին, նոքօք քաղցրանային: որպէս և զանցից անցելոց յառաջ և զկնի ջրհեղեղին: ախտ փառասիրութեան հեռի էր 'ի նոցանէ, որով և գրգիռ կռուելոյ:

Ընդ պատմութեան անցիցն ուսուցանէին և որդւոց և թոռանց իւրեանց զօրս գիտէին և ուսեալ էին զԱստուծոյ և զերկնային մարմնոց և զերկրայնոց և զբժշկական բուսոց, հեռացեալք բնաւին 'ի հակառակութեանց և 'ի գժտութեանց առ 'ի չգոյէ աւթից և պատճառաց յայնպիսիս մտաբերելոյ: Ոգի կառավարութեան կամ իշխողութեան յայնժամ՝ էր ոգին բնական գթութեան զոր ամենայն հայր

ունէին առ որդիս իւրեանց . զի ամենայն հրամանօք էին հարք , որք էին անտարք որդւոց և թոռանց , որոց ընտանեան էր քաղցրութիւն հրամայել . Նախնիքս և հնազանդելոց քաղցրութիւն և սիրով լսել . զի հնազանդէին հօր և յաւիտենին՝ զոր և ինքեանք խրատեցին ճանաչէին : Ամենեքին հաւասար եղբարք իւրեանց , հետևի յամենայն ամբարհաւաճութենէ . զի ոչ գոյր առ նոսա ազատ և ծառայք , քաղաքացի և շինական . միութիւն և միաբանութիւն յամենայնի՝ մինչև 'ի լեզուս իսկ նոցա՝ սիրով կապեալ էր զնոսա յամենայնի . ամենայն ինչ հասարակաց . անկեալ էր առ նոսա իմ և քո . անկեալ և յափշտակութիւն և ամենայն ագահութիւն : Ոչ գոյր առ նոսա չքաւորութիւն և աղքատութիւն , շատացեալք յամենայնի որ ինչ պէտք էին 'ի գարման կենաց մարդոյ . ոչ գոյր և փարթամութիւն կամ ընչաքաղցութիւն , որ ծիւրէ զսիրտ այժմեան ժողովրդոց . խաղաղութիւն անդորրաւէտ թագաւորէր 'ի նոսա , անմեղութիւն կենաց ցոյց : Այսպէս ահա ստորագրեն նախնիք զբարս բնակչաց աշխարհիս ոսկի դարուն , և զնոյն անդրկեն նաև պատմութիւնք սուրբ գրոց վասն այնր ժամանակի : " Սատուրնոս նախկին բնակչաց թագաւոր , առէ Յուստինոս գիրք խդ . այնչափ արդարադատ պատմի լեալ մինչև ոչ ուրուք երբէք ծառայեալ ընդ նովաւ , ոչ ուրուք առանձին ինչ ստացեալ , այլ ամենայն ինչ հասարակաց և ամենեցուն բաշխեալ , որպէս թէ ամենեցուն լինել մի միայն թոշակ կարգեալ " : Եւ Վիրգիլիոս 'ի ա . գիրս Մըշակականին . " Ոչ նշանս կանգնել , և ոչ սահմանաւ զանդաստանս որոշել օրէն էր " յայնժամ : Եւ 'ի Է . գիրս Ենէականին կոչէ Ոսկի դար սակս քաղցր կառավարութե :

Այլ զի այս ամենայն բնակիչք հարիւրեմեան ոսկի դարուն՝ էին հաւատարաւ բնակիչք մերոյ աշխարհիս , որպէս և ամենայն աշխարհախորհուրդ հնագէտք ընդունին , արժան էր ուրեք 'ի բանաստեղծաց ազգիս փոյթ կալեալ խմբագրել զսա 'ի Յունաց և հռոմայեցւոց խօսեցեալսն յաղագս որ ինչ ոսկի դարուն են նկարագիրք , գլխաւորագրեալ զնոսին մի առ մի ըստ այլ և այլ առաքինութեանց ժամանակին , և զնոյն իբրև օրինակ և հայելի անարատ քաղաքավարութե մատուցանել այժմեան բնակչաց աշխարհիս մերում . զի յանդիմանս տեսեալ զնախնեացն վարս անմեղութե և զյետնոցին խեղաթիւր գնացս , երկոցուն ևս բնակք մերոյ աշխարհի , 'ի սոցանէ 'ի բաց կացեալ՝ նոցին նախանձաւորք լինէին : Եւ միանգամայն յերևան հանել զկեղծիս հին

տուաւել Ճոխագոյն բանիւ և ընդարձակ ստորագրութ էր պատմեալ զվարս և զպարս ընիկ նահապետացն մերոց ։

### Գ. Բարք հայկազանց յետ Արամայ ։

Յորչափ չէին յարձակեալ յաշխարհս մեր օտար թըշնամիք, 'ի խորին խաղաղութե վայելէին առաջին նահապետք մեր՝ շինութեանց զհետ երթեալք, որպէս 'ի վէր անդր տեսաք. բայց 'ի կարի ինն խաղաղանէր բարուց նոցա թուի զհետ եկեալ մոռանալ զկրթութի քաջագործու նախնոյն իւրեանց Հայկայ. յորմէ և սահմանակից թշնամեաց 'ի նեղըքս արշաւել և հարստահարել զնոսա ։ Զայսպիսի տեսեալ Արամայ՝ վառեցաւ ոգւով հայրենի քաջութ, և վանեաց յամենայն կողմանց զթշնամիս. զորմէ կարես տեսանել 'ի գլուխն Պատմութե ։ Եւ յայնմհետէ կերպարանափոխ եղև ազգն այն անմեղութե և խաղաղութե առաջնոյ դարուն, որպէս յայտ առնէ պատմութի ազգին. պատկանեցին որ ըստ օրէ աղք աշխարհաշէնք. և բարեկարգութի աշխարհին երթայր և նուազէր ։ Թէպէտ և յարեաւ մեծն Տիգրան և վախճանեցան իւրոց զգեցեալ զոգի՝ կենդանացոյց զկործանեալ բարեկարգութիւն և շքեղ ևս հանդիսացոյց, զորս պատմէ Խորենացի ածեալ 'ի Մարիբասայ, բայց յետ նորա առ սակաւ սակաւ անդրէն նուազեաց. և հաս ժամանակ զի բոլորովին բարձաւ յազգէս ոգի շինութե և բարեկարգութե, և փոխանակ այնր տիրեաց ոգի անձնասիրութե և ամբարհաւաճութե, մինչև այր զաւրամբ եղանել առ 'ի տիրել, և մինչև զօտարազգին մոծանել զպարթևն, առնէ պատմագիրն. բայց մեռ նորա ոչ միաբանակար, այլ մնաստանը օգնակար. զի արդարև պարթևն Վաղարշակ համանման դասու մեծին Տիգրանայ անդրէն նորոգեալ 'ի մեզ զբարեկարգութիւն ։

Յետ զերբեակ երևելի փոփոխութիս բարուց նկարագրելոյ, քանզի չիք այլ փոփոխութի յետ Վաղարշակայ

յորդորեալ զնա 'ի խաղաղութի, յետէ զճոխեան շինութե բարս բարոյականին զնախնեաց, առ 'ի դարդարեցուցանել զնա 'ի կռուոյ՝ որ միայն եղծանէր զաշխարհ իւրեանց. "Հրովարտակ յառաջընթաց անոր առաքէր առ միւս ևս Աշոտ, որ Թագաւորեալն էր, որ զի հօրեղբօր նորուն. զի նախնական իւրեանց բնական շարժմամբ բարոյականին առ 'ի յօգտակար վայելոն ձեռքոցին, զայլ հանդիպել միմեանց տիրոյ և խաղաղութե արդարակ. և տիրական կեանք նոցա համարակաց մի՝ անխռովեցին, և աշխարհ նոցա մի՝ եղերց խաղաղացեալ պտղաւորութ. փշաբեր և մացառախառ, և լինել 'ի զադագաց եղեւզակաց ". Յոհաննէս կաթողիկոս ։

առաջնոցն Նմանն, մինչ այսաւհետեւ խօսել զնմանական ձրից, զբարոյական առաքինութեանց եւ զայլ եւ այլ ախտից եւ Թերութեանց ազգին :

## ՑՕԴՈՒԱԾ Բ

Բնական ձիրք նախարարութեանց ազգին :

Ա. Վայելչութիւն հերոսականաց :

ԴԻՄԱԳՐՈՒԹԻՒՆ գեղատեսիլ հերոսականաց, աչաց եւ հասակի վասն բազմաց գտանեմք յիշատակեալ ՚ի պատմութիւնս, Թէպէտ եւ սակաւուք, զորս կարգաւ յառաջ ածցուք :

### ՀԱՅԿ

Մարիբաս առ Խորենացւոյն ա. 10. կոչէ զնա «Գեղապատշաճ եւ անձնեայ, քաջագանգուր, խայտաակն» :

### ԳԵՂԱՄ

Որդի Ամասիայ. անունն իւր ցուցանէ զիւր գեղ. եւ ՚ի գեղեցկութեան Թուի կոչեցեալ այսպէս : Որոյ եւ եղբարքն իւր այլ եւ այլ մականուամբք կոչին առ Խորենացւոյն, որ ասէ վասն Ամասիայ. « Եւ ծնեալ ՚ի ժառանգութեան երկուց որդւոց իւրոց, արիւոյն Փառոխի, եւ կայտառին Ցոլակայ». ա. 12 :

### ՍԻՍԱԿ

Որդի Գեղամայ. զոր Խորենացին կոչէ անդէն «Այր ուժեղ եւ անձնեայ, բարեգեղ, կորովաբան եւ գեղեցկադէմ» :

### ԱՐԱՅ

Որդի Արամայ. ընկալեալ մականուանն Գեղեցիկ. որոյ եւ համբաւ գեղեցկութեանն զրգռեաց զՇամիրամ ՚ի պատերազմ. եւ ՚ի պատճառս գեղեցկութեան իւրոյ զրկեցաւ ՚ի կենաց : Խորենացին ա. 15 :

## ԱՆՈՒՇԱՒԱՆ

Թոռան գեղեցկին Արայի, որոյ անուանն յայտ առնէ ըզքաղցրութիւն դիմացն. և Սօս մականուանն զոր եդանն նմա՝ ցուցանէ զպաշտօնարարական կերպարան նորա, զոր և վասն այնորիկ ձօնեալ կարծեմ՝ ի Սօսեաց անտառն Արմաւենեայ, որպէս և Համառօտն Գրիգոր մագիստրոս. զորմէ տես 'ի Խորենացւոյն ա. 20:

## ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆ

Բազում առաքինութիւնս յիշատակէ զնա Խորենացին. «Զայս՝ և որ այլ այսպիսիք բազումք՝ եբեր մերոյ աշխարհիս խաղաղութիւն այս և աղէբէկ ծաղկիւ. Հերուաց Երուանդեան Տիգրան. երեսօք գունեան և մեղուական, անձնեայք և թիկնաւէտ, արագոտն և գեղեցկասրուն». ա. 24: Դարձեալ. «Բայց գովեմ զքաջ նահատակն զիմ, և զխոհականութիւն, և զամենեւին բոլոր անձամբք հաւասարեալ, 'ի գեղեցկութիւն անպարտել հասակի. քանզի առոյգ ամենայնիւ ըստ իւրաքանչիւր պատշաճեալ». 29:

## ՍՄԲԱՏ

Սա էր դայեակ Տ. Արտաշիսի և դաստիարակ նորա. զորմէ Խորենացին. «Միրեալ է ինձ առել և վասն առանց քաջին Սմբատայ. քանզի տեսանելի ըստ առասպելին (այսինքն ըստ Գողթան երգոցն) ոչինչ կարի հեռի 'ի ճշմարտութենէ. որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեան և առաքինութեան ողջոյն սրտաւոր, և գեղեցկութեան աղէտք վայելչացեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն, որպէս զհրակայծականն 'ի վերայ ոսկւոյ և 'ի մէջ մարգարտոյ ծագէր». բ. 52:

## ՅՈՒՍԻԿ

Սանն տորա ասէ Բուզանդ գ. 12. «Տիօք առոյգ և բարձր հասակաւ. գեղով երեսաց պճնեալ և չքնաղ, զի այլ ոչ գտանէր ուրեք նման նմա 'ի վերայ երկրի»:

## ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

Նոյն ինքն Բուզանդ ասէ զնմանէ 'ի դ. 3. «Այր էր

սա մեծ և բարձր ցանկալի հասակաւ, և վայելուչ գեղով․ զի ոչ գտանէր ուրեք նման նմա գեղեցկութեամբ 'ի վերայ երեսաց երկրի, անընչալի ցանկալի և զարմանալի և ահագին անձնային նայեցող տեսողաց, և նախանձելի յարուեմն 'ի զինուորական կրթութեան .... ցանկալի գեղով իւրով երկայն հասակաւ, և չքնաղատես հերօք վարսից իւրոց կայր 'ի տեսատու թագաւորին»։ Եւ ասորև գրէ, թէ Արշակ թագաւոր «զհերան գանգրագեղս (նորա) զվայելուչ թագագանգուր վարսիցն զի ուրեք երբեք նման նմա ոչ գտանէր, զայն 'ի բաց խզեալ հրամայէր»։ Մեսրոպ 'ի Թուղթ Դ․ այսչափ ինչ գրէ զնմանէ․ «Մեծահասակ և վայելուչ երեսօք ահագին տեսողացն ... ոչ գոյր նման նմա 'ի մարդկ ... (զորոյ) զհերս գանգուրս թագանմանս վարսիցն 'ի բաց խուզեալ»։

## ՍԱՀԱԿ

Իշխանն սիւնի․ զորոյ 'ի պատմելն զպայծառութիւն 'ի պատերազմի 'ի Հօլ ասորիկանեան որ 'ի սկիզբն իններորդ դարու, Գեղեցկադիտակ կոչէ Ստեփաննոս լէ․ առ որում կարեա տեսանել և վասն այլոց իշխանաց Սիւնեաց։

## ԱՊՈՒՍԱՀԱԿ

Յորժամ ասորիկանն Բուղայ 'ի մէջն անդ իններորդ դարուն յարձակէր 'ի հայաստան՝ արձակեաց զոմն 'ի զօրավարաց իւրոց ձիրաք անուն 'ի գաւառն Ռշտունեաց․ յորում, ասէ Թովմա արծրունի Գ․ 2․ «ըմբռնեալ լինէր յայնժամ մի ոմն 'ի Հայոց ազատանոյն տոհմից Վահեւունեաց Ապուսահակ ոմն, եղբայր Սահակայ եպիսկոպոսի տասաննին Նախճաւանու և Մարդպետական․ և էր այնոր բատ մարմնոյ ... սա ածեալ լինէր առաջի զօրավարին ձիրաքայ․ որոյ տեսեալ զբարձրաբերձ վայելչութիւն հասակին և զպատշաճ գեղ երեսացն, զփաղփեալ գոյնն 'ի տեսիլ աչաւսեկի 'ի մէջ ամփոփակաթայլ այեացն պատուաբերի, և հաճոյ թուեցաւ յաչս զօրավարին»։ Զօր և վասն այսպիսի գեղեցկութեանն բռնադատել սկսաւ դարձուցանել 'ի կրօնս իւրեանց․ և յընդդիմանալն նորա 'վարդապետութեան նոցա, որում քաջ տեղեակ էր, նահատակեցաւ 'ի Բուղայէ յառաջ քան զայլսն։

Յայնմ ժամանակի բազմութիւնք յիշատակին այսպիսեաց

տեսլեամբ ընտիրք և գեղատեսիլք, զորս որոշեալ յայլոց 'ի կրօնս իւրեանց դարձուցանէին հագարացիք. զոր օրինակ յիշէ Յովհաննէս կաթողիկոս նախ զորս 'ի գաւառին Տարօնոյ. « Իսկ զանձնագեղս և զերեսաւորս և զգունեղս արտաքոյ այլոցն որոշեալ.. յօրէնս իւրեանց դարձուցանելոյ »։ Ապա յիշէ զորս 'ի Վասպուրականի. «Եւ ըստ օրինակի կողմանցն այնոցիկ Տարօնոյ, և անդ ևս նոյնպիսաբար արարեալ, և որոշեալ զբարեհասակաչափսն և զյաջողաձեռնականսն 'ի պէտս իւրեանց պաշտամանցն բերել, և զայլսն կերակուր սրոյ տային »։ Յետ այնորիկ և զԴունայ. «Անդ ապա կրկնակի ընդ ընտիրս զամենեսեան հանեալ... և զայժմու ևս ըմբռնեալսն զդիտակավայելչութիւնսն որոշեալ 'ի բաց, և 'ի բանտս արգելեալ »։ Յորս գտանէին ասէ արք եօթն, որք « զուարթադէմ երեսօք էին, և գեղեցկադիտակք, և յաջողակք 'ի զէն շարժել »։ Սոքա ամենեքին զորս յիշեցաք, ըստ մասին նահատակեցան, և ըստ մեծի մասին ընկալեալ զկրօնս Տաճկաց, խառնեցան յազգ նոցա [1]։

## ԱՇՈՏ

Որ է առաջին Թագաւոր բագրատունի յետ անդ իններորդ դարուն, զորմէ Յովհաննէս կաթողիկոս. «Ի սոյն հասեալ միջակութեան՝ քաջահասակ էր նա և անձնեայ և Թիկնաւէտ և զուարթերես և մրայօն, նկարէն իմն և նիշ արեան յաչս ունելով որպէս զակնոդ կարմիր 'ի մէջ մարգարտի ծագեալ. և վայելչացեալ գեղեցկութեն ալեօք, մեծիմաստ և քաջբարբան »։

## ԱՇՈՏ

Որդի Շապհոյ եղբօր ն̃. Սմբատայ արքայի 'ի սկիզբն անդ տասներորդ դարու, զորմէ Յովհաննէս կաթողիկոս. « Եւ ապա կացուցանէր արքայ Սմբատ զանձնագեղն և

1 Եւ առ պատմագիրս Յունաց գաւառին յիշատակեալ արք գեղեցկատեսիլք 'ի մերոց հայկազանց, զորովք զանց առնելք տատանօր 'ի մէջ բերել. զոր օրինակ էր Մժէժ գնունի՝ կոչեցեալ 'ի նոցանէ Միզիզինոս, զոր Յոյնք զէնի կայսեր Կոստանդեայ Թոռին Հերակլեայ՝ կայսր նստուցին. յիշատակեալ առ Թէոփանէսի, Անաստասայ, Ջոնարասայ ևն։ Մուշեղ 'ի Տարօնոյ 'ի սկիզբն իններորդ դարու յաւուրս կայսեր Թէոփիլեայ, և փեսայացեալ նմա. զորոյ գեղեցկութէ ոսպէս և զկորովութէ և զքաջութէ բազում ինչ պատմեն պատմագիրք Յունաց։

զվայելուչ երիտասարդն զԱշոտ որդի Շապհոյ՝ սպարապետ Հայոց »:

## ԳԱԳԻԿ ԱՐԾՐՈՒՆԻ

Առաջին Թագաւոր Վասպուրականի 'ի սկիզբն տասներորդ դարուն, այր բազում ձիրիւք ճոխացեալ. որոյ գեղեցկութիւն դիմաց այնչափ էր՝ մինչև 'ի գնալն նորա առ Յուսուփ ոստիկան, « յոյժ զարմացեալ մնաց Յուսուփ ընդ գեղ երեսաց նորա » ասէ Թովմա արծրունի Ե. 3: Այլ զայսպիսեաց որ 'ի տանէն արծրունեաց, կարես տեսանել առ սորին մատենագրի:

## ՎԱՀՐԱՄ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

Հօրեղբայր Գրիգորի մագիստրոսի 'ի սկիզբն մետասաներորդ դարուն. զոր նա ինքն Մագիստրոս 'ի պատասխանին Յոհաննու Սիւնեաց արքեպիսկոպոսի՝ նմանեցուցեալ Արշակայ և Անուշաւանայ՝ կոչէ « Արշակ, որ և Նորայն նմանապէս գեղոյն և անձնայարմար հասակաւ, գեղեցկապարանոց և չքնաղադէմ տեսլեամբ որպէս Արայն մեր և Անուշաւանն սօսանուէրն արայեան »: Ստորև կոչէ զնա « Բարձրահասակդ և մանկաւասարդ քաջաց »:

## ԱԲԴԼՄՍԵՀ ԱՐԾՐՈՒՆԻ

Անուանեալ Պատու կուրապաղատ. որդի մեծի իշխանին և մագիստրոսին Թոռնկայ 'ի մետասաներորդ դարու. զորմէ գրէ շարունակօղ Թովմայի արծրունւոյ Ե. 12. « Էր և անձամբ վայելուչ, մեծաշուք և բարձրահասակ, զանգրահեր և գեղեցկատեսիլ, քաղցրախօս և անուշաբարբառ իբրև զտատրակ »:

## ՀԱՐՊԻԿ

Ի մէջն անդ մետասաներորդ դարու. սա և եղբարք իւր որչափ քաջութեա՜ն երևելիք՝ նոյնչափ և տեսլեամբ ահաւորք և գեղեցիկք. յորոց զգլուխ Հարպիկանն նենգաւ կալեալ Յունաց հատին, և զմիւս եղբարս նորա « զորդիս Հաբելի տարաւ (ասէ Մատթէոս Ճէ. Պիւռոս զօրավար Յունաց) 'ի Կոստանդնուպօլիս առ Թագաւորն Մոնոմախ. և տեսեալ զնոսա Թագաւորն և ամենայն

տուն Յունաց՝ հիմնային ընդ տակաւ անուն կերպա-
րանաց նոցա. վասն զի ահաւոր էին անուանմք, և թե-
կամբք համագեղձ բարձր էին քան զամենայն տունն Յու-
նաց. և յաղագս գեղեցիկ անուանն և ոչինչ արարին
խորան նոցա. այլ հրամայեաց անցուցանել զնոսա 'ի կղզին,
զԴուլիթ և զԼևոն և զԿոստանդին, զայր քաջք և հզօրք
և իշխանք երևելի Հայոց ,, :

Եւրոպացի ընծայատուութիւնք՝ ընդ որս և Վիրէյ, 'ի խօսելն 'ի
մարդակազմութեան Ճառին զգեղեցկութիւն կերպարանաց
մարդոյ՝ զմնակիլչս միայն առ կովկասային ընտրանք ածեն
'ի մէջ. անդամնօք է ասելով 'ի համօրէն աշխարհիս ընկել
սահման մարդկային գեղեցկութեան. այսինքն է՝ 'ի վրաս-
տան, 'ի Չէրքէս, 'ի Մինկրէլ, յԻմէրէթ, և այլն. և Ճըշ-
մարիտ է. զի և 'ի պէսս մեծամեծաց օսմանեան արքուն
'ի տղայոց առաւ գերի վաճառել տանին. Բայց 'ի պատ-
մելոյս մինչև ցայս վայր մարթ է իմաստասիրել, թէ զսահ-
ման գեղեցկութեան պարտ է ձգել տարածել մինչև 'ի շըր-
ջական սահմանս կովկասեան լերանց, զոր օրինակ է և
հայաստան. յորոյ հիւսիսային սահմանս ձգին և բազումք
ինչ կովկասեանք. մեր թողցուք, զի զոր անուն գերեալս 'ի
վրաստանէ, ըստ մասին են 'ի նոյն խոկ 'ի հիւսիսակող-
մանց հայաստանի, զոր Վիրս կոչեն սակս 'ի մէջ Վրաց
բնակելոյ. որպէս և աչօք խոկ անեսեալ է մեր 'ի Բիւզան-
դիա ոչ սակաւ գերեալս 'ի Ջաւախաց, որ է մեր գաւառ
'ի Գուգարք նահանգին: Որպէս և յԱղուանից բերեալ
առեն, զորս Լեզգիք երբեմն յափշտակեալ գերէին յոյլոց
նահանգաց մեծին Հայոց, որք են Ուտի, Արցախ և Սիւ-
նիք, որոց բնակչացն գեղեցկուն համբաւեալ է. տես 'ի
նոր Հայաստան 'ի թղթ. 273. գլխոյն Համհանգութեան:

Զայսչափ անդէկութիւն ընկալեալ 'ի հնոց և 'ի նորոց
վասն բնական կազմուածոյ բնակչաց մերոյ աշխարհին՝ այլ
ապա յայտ պարտ է իմանալ զբան Մորաքնի, քան զոր ի-
մանան արդիքս. որ գրէ ա. 41. « Սովորականէր է յաւէտ
փոփոխութիւն անուան, որ յաճախեալ է և սովորական առ
ամենայն ազգս. որ և թուի ոմանց ասնել զայն յանդուզն
փոփոխութիւնք տառից. յայր սակս 'ի դէպ խոկ քան զամե-
նեսին համարիմ յաղագս կանոնութէ և յնրամանութէ ազ-
գաց յառաջ ածելն Գասիրամնիտի փոխանակուէ անուանց:
Քանզի ազգ Հայոց, Ասորւոց և արաբացւոց բազում մեր-
ձաւորութիւն ունին 'ի խօսս, 'ի վարս և 'ի կերպարանս
մարմնոյ, մանաւանդ ուրանօր հուպ առ միմեանս բնա-

կէն ։ Զայս ցուցանէ և Միջագետաց յերից ժողովրդոց առտի խառնեալ. զի առաւել երևելի է յայսպիսիս նմանութիւն նոցա. իսկ թէ ուրեք գտցի ինչ տարբերութիւն քան զայլս 'ի սոյն կամ յայլ ինչ, մանաւանդ յորս բնակեալ են 'ի հիւսիսակողմն կամ 'ի հարաւակողմն և կամ 'ի միջնասահմանի, բայց համասեռ ունելին բերումն ։ Սոյնգունակ և ասորեստանեայք, Արիք և Հայք նման են իրերաց և սոցա. զոր և յախմանէ անկ է իմաստասիրել, ըստ որում անուանք սոյն ազգաց են մերձաւորք. զի որք 'ի մէնջ Ասորիք կոչին, նոքա 'ի նոյն իսկ Ասորւոց Արամեանք կոչին "[1] ։ Առ քաջ իմանալ զայս բան Ստրաբոնի՝ նախ պարտ է գիտել, զի ընթացք բանի նորա անդանօր է 'ի ջատագովել զՀոմերոս յանուանակոչութիս ինչ տեղեաց և ազգաց, յորմէ ըստ դիպաց իմն բերէ զայս բան. երկրորդ՝ զի 'ի Պոսիդոնիոսէ առեալ բերէ. և երրորդ՝ զի յայն տեղիս դնէ զայս նմանութիւն Հայոց ընդ Ասորեստանեայս և ընդ Ասորիս՝ յորս բնակեն մերձ առ միմեանս. որ է ասել 'ի հարաւակողմանս մեծին և փոքուն Հայոց. ուր աղագաւ յօրինակ բերէ և զՄիջագետս ։ Արդ նաև ըստ նորին իսկ Ստրաբոնի չէ մարթ իմանալ զամենայն Հայոց. զի վասն սահմանաց որ ակնեալ 'ի հիւսիսային կողմանց Տուրուբերանոյ և Վասպուրականի մինչև 'ի Կուր գետ՝ ոչինչ իւիք արդարանայ այս կարծիք. իսկ վասն հարաւային կողմանց Աղձնեաց որ և անկանի 'ի Միջագետս, և վասն բնակչաց 'ի Մոկս, 'ի Կորճէս և 'ի Պարսկահայս՝ չէ ինչ ընդդէմ ունելն նոցա նմանութիւն ինչ ընդ Ասորեստանեայս մերձակայ բնակիչս 'ի կերպարանագրութեան և 'ի բարս. որպէս և 'ի հարաւակողման բնակիչս փոքուն Հայոց՝ նմանութիւն ինչ ընդ Ասորիս ։ Այլ զայս չէ մարթ ասել վասն համօրէն ազգին Հայոց ։

1 Արամ որդի Սեմայ քանզի նախապետ էր Ասորւոց, վասն որոյ և Ասորիք զինքեանս, որպէս և Երբայեցիք զնոսա, Արամեանս կոչէին. այս է զոր յիշէ առս Ստրաբոն ։ Այլ չգիտէ թէ Հայք ոչ յանուն սորին Արամայ, այլ յանուն այլոյ ուրումն Արամայ որ 'ի Յաբեթայ՝ կոչին Արամեանք. վասն որոյ և այն մերձաւորութիւն անուան ըստ հնչման է միայն ։

Բ. Կորովութեան մարմնոյ և քաջութեան։

## ՅԱՒՈՒՐՍ ՀԱՅԿԱԶԱՆՑ

### ՀԱՅԿ

Զոր Մարիբաս առ Խորենացւոյն ա. 10. Հաստաբազուկ կոչէ. իսկ զճակատին նորա ընդդէմ Բելայ, և զըս-պանանելն՝ ընդ երկաթի զզրահս անցուցանելով զերեք-թևեան նետ իւր, կոչէ 'ի 11. ահագին գործ քաջութե. ապաքէն և էր իրօք։

### ԱՐԱՄ

Վասն "Արամայ բազում գործք քաջութե պատմին մարտիւք նահատակութեան", ասէ Խորենացին ա. 12։ Որոյ քաջութեն պատճառ եղև անուանն ազգաց յանուն նորին Արամայ կոչել զմեզ։

### ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆ

Խորենացին ա. 23. կոչէ զնա "Հուժկու, անուանի և յաղթող ընդ այլ աշխարհակալս"։ Եւ 'ի 29. ասէ. "Ուժով ոչ զոք իւր ունելով զոյգ"։ Որոյ ոյժ և քաջութե առաւել յայտնի եղև 'ի սպանանել նորա զԱժդահակ. զի հարմամբ նիզակի իւրոյ հերձեալ զերկաթի զգեստ Աժդահակայ՝ ընդ նիզակին միանգամայն զկէս թոքոց նորա արտաքս եհան. զոր այսպէս ստորագրէ Խորենացին ա. 29. "Մարտն էր ողջանչելի. զի քաջք դիպեալ քաջաց՝ ոչ վաղվաղակի թիկունս 'ի միմեանց դարձուցանէին. վասն որոյ յերկարեալ քարշէր գործ պատերազմին ժամս ձիգս. իսկ վախճան գործոյն առնէր մահն Աժդահակայ. և այսպիսի դիպուածս 'ի բարեբախտութե յաւելեալ՝ յաճախէր փառս Տիգրանայ"։ Իսկ 'ի 31. զերեսեանն միանգամայն գովելով ասէ. "Սիրեմ կոչել այսպէս ըստ քաջութե Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ իմ՝ քաջաց ազգք քաջքն"։

### ՎԱՀԱԳՆ

Որ էր որդի մեծին Տիգրանայ. զորմանէ ասէ Խորե-նացին ա. 31. կռուել ընդ վիշապաց և յաղթել. "Եւ

կարի իմն նմանագոյն զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին. այլ առէին զսա և աստուածացեալ. և անդ յաշխարհին Վրաց զորա չափ հասակի կանգնեալ պատուէին զոհիւք »: Քաջագործութիւք սորա այսչափ նման գոլով Հերակլեայ՝ պարտ իսկ է համարել զնա մի 'ի բազմաց Հերակլեայց զորս յիշեն մատենագիրք, մանաւանդ Կիկերոն, որ 'ի գիրսն Գ. 16. յաղագս բնութե աստուածոց, վեց Հերակլէս, կամ Հերքիւլէս յիշէ: Մինչե նախնի Թարգմանիչք մեր 'ի Ե. Մակաբայեցւոցն Դ. 19. փոխանակ անուանս Հերակլէս՝ եդին Վահագն:

## ՏՈՐՔ

Որ 'ի զաւակէ Պասքամայ, 'ի Հայկական թոռանէ. ունէր 'ի բնէ կորովութիւն իմն և ոյժ 'ի վեր քան զասովորականն. զոր հինք առասպելեօք խառնեալ յանհեթեթս ձգեցին. տես առ Խորենացւոյն զոր ինչ գրէ վասն սորա 'ի Բ. 8:

## ՅԱՒՈՒՐՍ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ

### ԱՐՇԱԿ Ա

Ի մանկութեան անդ ցուցանէր զոյժ մարմնոյն, որպէս գրէ Խորենացին Բ. 8. « Էր արդարև տղայն կայտառ և հզօր մարմնով, որպէս զի կարծիս հայեցողացն տալ, որ 'ի նմայն անձնլոց էին արութիւք »: Ապա 'ի գլուխ 9. թէպէտ մի միայն գործ քաջութեան զնմանէ պատմէ, այլ նովին ծանուցանէ զչափ կորովութեան և բնական ուժոյ նորա: Ի պատերազմին սորա առ ընդ պոնտացիս՝ « Նշանակ եթող յեզր ծովուն մեծի (Պոնտոսի) զնիզակն իւր զըսլորաձեգ, որ էր արեամբ զեռնոց մխեալ, ձգեալ 'ի հեռաակուց՝ խորագոյն նստոյց յերկանաքար արձանին՝ զոր կանգնեալ 'ի ծովեզերին. զայս արձան բազում ժամանակս պատուեցին պոնտացիք որպէս զառ 'ի յաստուածոյ գործ »: Զայս և Շնորհալին յիշելով 'ի վէպսն իւր գրէ.

« Այն որ զՊոնտոս գոլով գերեալ,
Եւ յաղթութեան նշան թողեալ.
Զի անարի արձան առեալ,
Ցեզըր ծովուն մեծի կանգնեալ,

Եւ զեռանդական արեամբ մրխեալ
Տիգաւն ըղթափ իմն անցուցեալ.
Զոր և Յունացին զայն տեսեալ,
Իբր աստուծոյ երկրպագեալ ”։

Այս արձան հաւանական երևի լինել նոյն՝ զոր յիշէ Ստրաբոն ժբ. 546. 'ի ստորագրելն անդ զՊոնտոս. կոչելով Աւտոլիկէ արձան. որում պաշտօն մատուցանէին ասէ Պոնտացիք. և էր նոցա պատգամատեղի. զորմէ տես անդ ։ Եւ քանզի Ղուկուղղոս հռոմայեցի եբարձ ասէ զայն, համաձայնի ընդ այսմ և բանից մերոյ Խորենացւոյն՝ որ ցուցանէ երբեմն պաշտեալ զայն պոնտացւոց, և ոչ յիւր ժամանակս. ընդ որում 'ի վաղուց անտի բարձեալ էր այն 'ի Ղուկուղղեայ ։

## ՄԵԾՆ ՏՐԴԱՏ

### ԴԱՐ Գ. Դ

Սորա բնական կարողութիւն մարմնոյ և յաղթողականութիւն 'ի վեր էր քան զայլս և հրաշալի [1]. զորոյ զքաջագործութիւնս և զնահատակութիւնս քանզի բազում մասամբք պատմէ Խորենացի, տես անդ Բ. 79. 82. 85. առ որ առաւել յարմարեալ ժողովրդեանն ասէ Ագաթանգեղոս իսկ. “Վասն այսորիկ պատրաստեցան բանքս այս 'ի բան կարգի առակաց, Թէ իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց. և ցամաքեցոյց 'ի սիգալ իւրում զյորձանս ծովուց ”։ Զորոյ և զտեսիլն ստորագրէ անդէն ։ Յաւուրս Տրդատայ էին և այն արք քաջազունք 'ի հայկազանց զորս ընտրեաց մեծն Կոստանդիանոս, որպէս գրի 'ի Թուղթն Դաշանց, ուր ասէ նա յինքն Կոստանդիանոս. “Խնդրեցի յարքայէն Տրդատայ արս երեք հարիւր հաստակաւ և արիութեամբ հոյակապ, զորս և Արմէնք անուանեցի. և կարգեցի 'ի սպասաւորութիւն արքունական գահոյից իմոց. հզօրիչ գլխոյ իմոյ և Թիկնապահք իմ 'ի տուէ և 'ի գիշե-

[1] Դիւրութեան լսելիք 'ի հաւատալ քաջութեանցն պատմելոյ 'ի Խորենացւոյն վասն Տրդատայ, 'ի լսելն և զհամանման քաջութիւնս զորս պատմեն ականատեսք վասն երից անուանի հայկազուն երիտասարդաց յաւուրս մեր երևելոց 'ի Բիւզանդիոն 'ի ժամանակս սուլթան Համիտի և սուլթան Մէհմէտի. զի զմիոյն 'ի նոցանէ պատմեն հաւաստեաւ վանեալ զորս քառասուն, յերկիր կործանեալ զերեսուն այր, և զուղտ կաղանդաւորս զգեստի հարկեալ գիզելով 'ի վերայ միմեանց և նստեալ 'ի վերայ նոցա. և նոցա չկարացեալ շարժել յանհնարին ուժոյ զօրութեան նորա ։

րի. և առապահք (անձնապահք) իմ 'ի տուէ և 'ի գիշերի. և առաջապահեսաք իմ 'ի պատերազմի „: Յորմէ յայտ է թէ քաջութե և կորովութե ուժոյ ազգիս հռչակեալ էր յայնժամ յոյժ առ հռոմայեցիս :

### ՎԱՀԱՆ ԱՄԱՏՈՒՆԻ

#### ԴԱՐ Դ

Յաւուրս փոքուն Խոսրովու որդւոյն Տրդատայ: Մեծ էր և սորայս քաջութե յայն դիպուած՝ ուստի կախեալ կայր յաղթութե կամ կորուստ համօրէն բազմութե բանակին. զի 'ի մէջ բանակի թշնամեաց որք էին հիւսիսականք ազգք սարմատացւոց՝ երևեցաւ սկայ մի, որոյ բոլորովին ծածկեալ անգծելի զգեստուք՝ ընդ ամենայն բանակն մերոց վազս առեալ շահատակէր. յորոյ վերայ որ 'ի քաջաց մերոց ոք յարձակէր ոչ ինչ սաստանէր նմա. իսկ ինքն նիզակ երկայնաձև 'ի ձեռին ունելով զամենեսին հարկանէր: Մի միայն Վահանս այս ամատունի ինքնակամ դիմագրաւ եղեալ, և զնիզակ իւր ճարտարութբ ուղղեալ եհար, ասէ Խորենացին Գ. Ց. "ընդ զաւակ ձիոյն յերկիր կործանեալ զահագին զվիշապն . . . Այսպիսի դիպուած 'ի փախուստ յորդորեաց զթշնամիսն, և 'ի յաղթութիւն զհայոց գունդն զօրացոյց „ : Վասն որոյ և Խոսրով արքայ նմա պարգևեաց զտեղի Ճակատուն, որ կոչէր Օշական .

#### ԲԱԲԻԿ

Որդի մեծին Անդոկայ Սիւնեաց իշխանի 'ի վախճան չորրորդ դարուն . որոյ եկեալ 'ի Բիւզանդիոյ 'ի դուռն Պարսից յանծանօթս մնաց անդէն. այլ "բազում արուեստ պէսպէս յողովիադմն Պարսից ցուցեալ, և ոչ ումեք զինքն յայտնեալ եթէ ով և կամ ուստի ոք իցէ „, որպէս գրէ Ստեփաննոս¹. մինչև ապա 'ի պատճառս քաջութե իւրոյ յայտնի եղև անձն նորա : Զի 'ի միում պատերազմի Հոնաց որ ընդդէմ Շապհոյ Պարսից արքայի՝ յարեաւ եկն եկաց մի ոմն 'ի նոցանէ հսկայազուր անուն, որ առաջի եդ Պարսից մենամարտութբ վճարել զայն պատերազմ: Այլս

¹ Զայս ամենայն պատմէ Ստեփան. Ներքոյնշեալն՝ զոր առաջ Պետրոս քեր-նոս օրպելեան 'ի գլուխ Ժ. առեալ 'ի Թող Սիւնեաց:

այս էր, ասէ, « վառեալ յիմաստութեամբ' զբարհիւն զան-հնարին զբարձր և զլայն հասակն, և երկաթագամ և բեւե-ռացելոց սաղաւարտաւն զահեղակերպն գլուխ, և զձա-կատն պղնձեաւն և սուսերակամած յօրինուածովն ամրա-ցուցանէր, և զանհեթեթ գեղարդեանն զրահն 'ի բարձ-րամայրոյ փայտից, և զառաւելոն բազմաձայն և զարիւնահեղ յօրինէր 'ի յինքեան, ահաբեկեալ զամենայն զզօրս Մա-րաց և Պարսից և Արեաց աշխարհին ,,: Ցանժամ ամե-նայն նախարարքն Հայոց առք արարին Շապհոյ զայս Բա-բիկ հանել ընդդէմ նորա. որոյ սպառազինեալ արքայա-կան զինուք յասպարէզ մինչև յինն ժամ կացուէր ընդ ահա-ւոր այն. բայց հուսկ ուրեմն, ասէ, «անոր զօրաւոր-եալ լինէր անհնարին հսկայն Հոմանդուր. յաղթողա-նայր քաջն Բաբիկ. ածապարէր 'ի սուրն միապայրի, որով անդէն սատակէր զմորդահոշոշ և զվիշապաղօր գազանն,,: Ի վարձ այսմ իւրոյ քաջութե' որում բազում ինչ խոստա-նայր Շապուհ[2], Բաբիկ խնդրեաց և եառ զիւր հայրենա-կան տէրութիւն Սիւնեաց. զոր Պարսիկք բռնութեամբ հա-նեալ էին վասն ապերելոյ հօր նորա Անդովկայ զՏիգրան:

## ՍՊԱՆԴԱՐԱՏ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ

Նման նախագրեալ Վահանայ եղև և սորա քաջագոր-ծութի յերկելի պատերազմին որ յաւուրս Պապայ ար-քայի 'ի Ձիրաւ դաշտի առ Նպատ լերամբ ընդդէմ զօ-րաց Շապհոյ Պարսից արքայի. ուր «'ի խառնակել մար-տին' պատահէ կամսարականն Սպանդարատ խմբի մեծի, յորում էր քաջն Ըերդիր Դեկաց արքայ, զգլուխ միջի դըն-դլին ախոյութե զանեղի ձակատուն կալեալ: Եւ յարձակեալ Սպանդարատ, և հերձեալ գլուխն, որպէս շանթահար յերկիր կործանէր զքաջն, և զգլուխն պատուեալ 'ի փա-խուստ դարձուցանէր ». Խորենացին Գ. 37:

1 Այսպէս է գրեալ յօրինակին. այլ մարթ էր լինել և հիւանդանդութենայ:

2 Զայս Շապուհ, զոր բազում ան-գամ զերծուցին մերքն 'ի մահուա-նէ, ապերախտացոյց միանգամ և Դրաստամա-մատն ներքինի Արշակայ Թագաւորին մերոյ 'ի մարտին յորում վասնթարե-ցին Քուշանք զՇապուհ. զի ասէ Բուզանդ Ե. 7. «Դրաստամատ գործեաց անհնարին քաջութի այնչափ կատարա-եալ 'ի վերայ Շապհոյ արքային, և առա-ջեցոյց զնա 'ի մահուանէ. և բազում 'ի Քուշանաց անտի կոտորեաց, և զբա-զում զախոյանից զգլուխս բերէր առա-ռաջնոր. և զՇապուհ . . . փրկէր 'ի նեղութենէն պատերազմին Թշնա-մեաց անտի, ուր արգելեալ զնա 'ի խուռն պատերազմին 'ի զօրաց անտի »:

## ՎԱՐԱԶԴԱՅ

Զորմէ Խորենացին գ. 40. գրէ. "Տիովք մանուկ, սըր-
տեայ, անձնեայ, ուժեղ, լի ամենայն գործովք արութե,
և յոյժ կորովի նետաձգութի": Ուր և պատմէ զնմանէ
զառիւծս կոտորեալ, և փառս յՈղոմպիայ խաղուն համ-
դիսի առացեալ, հինգ նահատակս 'ի վերայ իրերաց սպա-
նեալ, զեօթնևտասն այր միմեանց զկնի նետահարեալ
և 'ի վայր հօսեալ 'ի պատուարէն, ընդ քսան և երկու
կանգնաչափ լայնութի գետոյն Եփրատայ վազս առեալ
առաւել քան զՔիոն լակոնացին, և այնպէս անցեալ նման
Աքիլլեայ:

## ՄՈՒՇԵՂ

Սպարապետ Պապայ արքայի. զորմէ բազում գործք
քաջութե պատմին առ Բուզանդայ 'ի պատերազմունս,
յորոց զմին միայն յառաջ բերցուք: Մի անձ 'ի Հոնաց,
յազգէն Գուղիհոնի, անուն՝ որ մենամարտեալ կռուեցաւ
ընդ մեծին Տրդատայ, այր ամենեցուն զարհուրելի՝ բանա-
ցեալ կալեալ ունէր յայնժամ զՄիջագետս. և անտի աս-
պատակեալ յաշխարհս Հայոց՝ յաւարի առնոյր զՎասպու-
րական, զՏարօն, զխորձայն, և մինչև 'ի սահմանս Մելտե-
նոյ: Այն ինչ 'ի ճակատամարտին իբրև թռչուն ձիարշաւ
ոլանայր գեղարդեամբն 'ի վերայ Մուշեղայ, և սա 'նախ
ճարտարութբ իւրն վահանաւն իւրով 'ի դերև հանեալ
զբաղխումն ահագին գեղարդեանն, ապա ինքնին յարձա-
կեալ 'ի վերայ պողովատիկ սուսերաւն ճեղքեալ յերկիր
կործանէր զնա, որով զօրացաւ գունդն Հայոց: Այս
քաջագործութիւն Մուշեղայ այնչափ համբաւի հարաւ
յԱսորիս, մինչև անհնարին լինել նուաճել զայրն. և ըստ
գրելոյ Մեսրոպայ 'ի Թիւն Ե. "Ճարտարաց Ասորոց պո-
ղովատիկ գրչաւ նկարեալ զՄուշեղ ձերմակ երիվարաւն
յարձանի առ գետեզերաւն, և զՀոնն յոտս նորա. որ
բնակիչք գաւառին Հոնի դուռն ասեն զտեղին զայն մինչև
ցայսօր": Այլ զայսպիսի այր քաջ Վարազդատ Թագա-
ւոր յաջորդ Պապայ՝ եա յանկարծ սպանանել առ քսուե
Բատայ սահառունւոյ. և յայնմ ժամու եւս այնչափ ըըա-
նութի ուժոյ տեսին 'ի Մուշեղ՝ զի վեց այր զմիոյ բազկէ
նորա՝ և վեց այր զմիւս բազկէ կալեալ ունէին. իսկ Մու-
շեղ զապերախտութի Վարազդատայ յիշելով ասաց. "Ի

վերայ բազում իմոց վաստակոցն արեամբ և քրտամբ՝ և սլա-
քօքն զքիրոմն ընջելոյ՝ այս հատուցումն եղև ինձ „ ։ Եւ
յորժամ զմարմին նորա տարան 'ի տուն իւր, ասէ Բու-
զանդ, „ ոչ հաւատային ընտանիքն նորա մահուն նորա,
թէպէտ և տեսանէին զգլուխ նորա զատ 'ի մարմնոյն ան-
տի . զի ասէին . զորս յանթիւ ճակատ մտեալ էր, և վէր
երբէք չէր առեալ . ոչ նետ մի դիպեցաւ երբէք, և ոչ այ-
լոց զինու խոցեալ է զդա „ . Ե . 36 ։

## ԱՐՏԱՒԱԶԴ

Որդի Վաչէի զօրավարի՝ մանուկ տիօք, զոր ոչ կամեցան 'ի պատերազմ մուծանել ոչ Մանուէլ Մամիկոնեան, որ զօրավար և կառավար էր յայնժամ աշխարհին յետ մահուանն Պապայ, և ոչ այլ նախարարքն Հայոց սակս մանկական հասակին . այլ ընդ Թագուհւոյն և ընդ տիկնաց նախարարացն 'ի բերդն՝ ետուն յուղարկել . բայց քաջազին եռանդուն վառէր եռայր 'ի սրտին իբրև զմեծամեծ քաջութիւնս զոր գործելոցն էր՝ յուշ ածէր . զոր և բանիւ Բուզանդայ յառաջ բերցուք . „ Զմանուկն Արտաւազդ, ասէ, որդի Վաչէի ընդ կանանին տայր հրաման երթալ Մանուէլ . իսկ նա ոչ հաւանէր չառնոյր յանձն ։ Եւ էր նա 'ի տիոց տղայ . և ըստ մանկութեանն օրինի, ըստ կրօնից Հայոց՝ որպէս օրէն էր զգլուխ մանկտոյն՝ այնպէս 'ի ժամանակին գերծեալ էր զգլուխ մանկանն Արտաւազդայ, և ցցունս էր թողեալ և գէս արձակեալ [1] ։ Ապա իբրև ոչ հաւանեցաւ նա ընդ կանանին երթալ, մտրակ 'ի վեր առեալ Մանուէլի՝ տանջէր զմերկ գլուխ Արտաւազդայ . սաստէր նմա չերթալ 'ի պատերազմ վասն մանկուն ժամանակին տիոց . իսկ նա առ նորա ակամնէ գնաց ընդ նոսա . բայց ապա . . . 'ի Մանուէլէ զաղտ եկեալ էր 'ի ճակատն . սակայն վառեցաւ կազմեցաւ և եմուտ զանխուլ

1 Վասն սովորութեան գէսս արձակելոյ կամ գերծելոյ ոչ գտանեմք ինչ յիշատակութիւն այլուր առ մեզ . միայն հարեւանցի առ Լամբրոնեցւոյն յայն բանն՝ ուրանօր 'ի յիշելն զանուանս Գորդիոյ, աստուածաբանն՝ իբր գէս նորուն հարթին ։ իսկ առ օտարազգիս մատենագիրս յիշատակեն ինչ ինչ սովորութիւնք այլոց ազգաց . յորս Սենեկա 'ի Թուղթն իւր յիշէ և զՊարթեւացն մեղ մերձակայից՝ հերարձակելս զնելով սովորութեն նոցա ; իսկ զգերմանացւոցն 'ի հանգոյց կապելոյ, և զսկիւթացւոցն ցցել թողլոյ ։ Որ դը կամի զխունել և զայլ յիշատակութիւն նախնեաց վասն սովորութեան հերթելոյ զհերս՝ գտցէ 'ի գրուածս Մազմաւիշեան և Գրիստոնեանց՝ որ զսովորութիւնս Պարսից յաղագս հերաց 'ի Մարաց առեալ ասէ ։

'ի մանուելեան զնորէն առ ափն Եփրատ գետոյն. Եհար սատակեաց 'ի Մերուժանեան գնդէ անտի անթիւ բազում սպառազէնս կոտորեաց: Եւ նշանակիր մի 'ի Մերուժանայ իբրև ետես զԱրտաւազդն՝ յընչացք 'երաց, զի տեսանէր զնա պատանեակ մի կայտառ անմօրուս, երեսօք գեղեցիկ. այլա զնշանն զնիզակաւն պատեալ, յարձակեցաւ 'ի վերայ նորա. իսկ նա ընդ գիրկս մտեալ, հարկանէր զայրն նետիւ. և կարանէ 'ի կարան թափ հանեալ զնետն ցամաք ընկենոյր զնա: Եւ առեալ զնիզակն (նորա) զհետ մտեալ փախստէիցն, ընդ սուր հանեալ զզօրսն Մերուժանայ, աւելի քան զամենեսեան Արտաւազդ որդի Վաչէին Մամիկոնէին կոտորէր. և ինքն մեծաւ անուամբ և բազում աւարաւ,, դառնայր: Սուղ ինչ զկնի գրէ. "Եկին բերին զայրն նշանակիրն Մերուժանայ, զոր եհարն Արտաւազդ նետիւն. և ամենայն ոք զարմանայր ընդ այն, զի նետն թափ կարանէ 'ի կարան անցեալ էր,,. Ե. 43:

## ՎԱՐԴԱՆ

### ԴԱՐ Ե

Սորա քաջութիւնք այնչափ հռչակեալ են՝ մինչև 'ի լսել Յազկերտի Պարսից արքայի զմահ նորա, "յաւհաւոր սուգ ընկղմեալ խռովէր յիշելով զքաջութիւն առնն և զլաւութիւն զոր արարեալ էր ընդ Թշնամիս բազում անգամ 'ի վերայ աշխարհին Արեաց,,: Վասն որոյ և Յազկերտ յոյժ վշտագնեալ ընդ մահ նորա, այնուհետև "յանձն առնէր հրովարտակով զմարդիկն Հայոց չընդդատացանել,,. Ղազար 124:

## ՎԱՍԱԿ

Եղբայր Վահանայ Մամիկոնէի: Անուանի եղև և քաջագործութեամբ սորա յայնմ պատերազմի՝ զոր 'ի սկզբանն անդ՝ Մաղխազն Գարջոյլ առեալ բիւր հարիւր զօրսն 'ի Հայոց անցանէր 'ի կողմն Պարսից. որով վտանգեալք մնացին միայն 300 արամբք. բայց այնչափ նուազ Թուով զամենայն բազմութիւն գնդին Պարսից հանդերձ ուրացելովքն հարին վանեցին. "Եւ լինէր օրն այն՝ օր նշանաւոր ուրախութեան հաւատացելոցն 'ի Քրիստոս, և օր ամօթոյ և կորստեան ամենայն ուրացելոցն 'ի Քրիստոսէ,,. Ղազար 217:

## ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Ողջակէս բազում են և սորա քաջութիւնք, բայց զարմանալի եղև այն՝ ուր 30 արամբք միայն հերձեալ զգունդն Պարսից՝ զկատարեալն գործեաց յաղթութիւն. «Զօրավարն Հայոց Վահան մամիկոնեանն, ասէ Ղազար 265 . . . հզօրարար քաջ ուխտակցօքն նորին առաքեծոյ ընդ մէջ ամենեցուն յախնկոյս եղանէր. և սպանեալ խոր և արանցն որ ընդ նմա՝ բազում արս հզօրս պատերազմօղս 'ի զօրացն Պարսից, հարեալ խոցէին նիզակաւ ընդ անութ կարեվէրք և ընհզարս իշխանն Միհրանեայ զԳդիհոն (որ ուրացեալ գոլով 'ի կողմանէ Պարսից մարտնչէր), և զահաւորագոյն ամբոխն զինուն՝ յոր պանծացեալ յուսայր անօրէնն, ցելեալ վէր 'ի վայր թափ ընդ լերանն զնիզակատեղն հասուցանէին» ։ Այս յաղթութիւն նորա երկիւղ մեծ էարկ 'ի սիրտս թշնամեացն Պարսից. «Այնպէս արկեալ էր Աստուծոյ, ասէ 266, զահ և զերկիւղ զօրավարին Հայոց մամիկոնէի 'ի վերայ զօրացն Պարսից, զի կարծէին թէ 'ի հայեցուածէ լոկ առն մամիկոնենին՝ և յարանցն որ ընդ նմայն էին՝ չկերծանիցին առանց վտանգի» ։ Եւ այնչափ մեծ եղև յաղթութիւն այս՝ մինչև նոյն ինքն Շապուհ զօրավարն Պարսից, որ պարտեցաւ, այսպէս զարմանալով պատմէ զայն զեսպանին Պարսից. Վահանայ, ասէ, «իբր և արարածք չեն որպէս զայլոց ժամանակի մարդկանն, զոր մեր տեսեալ և գիտեմք, այլ իբրև զառաջինն քաջացն զոր 'ի վէպսն պատմեն և լսեմք. քանզի թէպ զայլ ժամանակաց մնորս և զարանցն որ ընդ նմա են՝ յիշել զգործս և զանձերկիւղութիւն, զոր իմ և կամ այլ աւագորերոյ որ տեսեալ է. այլ յառաջ քան զաւուրս սոսն, թուով երեսուն արամբ՝ ոչ միայն 'ի վերայ այսր բազմութեան որ այժմ աստ են և տեսանես՝ յարձակեալ կռուեցաւ, այլ աւելի ևս գնդաւ իշխանն Միհրանայ Գդիհոնին՝ իւր գաւառաւն այրուձիոյն ձիով առա էր ('ի Պարսից կողմն,) և Վահան դէմ յանդիմանս այն երեսուն արամբ յարձակեալ 'ի վերայ, և նմանն արծուոյ յարուս ժամու 'ի կաքաւուց երամ սլանայցէ . . . զայնչափ բազմութիւն զօրացն արկեալ վէր 'ի վայր ցրուեցին. սպանին և զկայանամեծն զայրն զԳդիհոնն» . նոյն 272 ։

Յաղթութիւն այս Վահանայ ոչ միայն զհամբաւուն հարաւ, այլ և յոյժ օգտակար գտաւ աշխարհիս մերում, և

ամեն պատմէ արարեալ և յայլում նուագի. "Բայց տունն Ջահապայ զօրացեալ 'ի Դուին, իբրև հինգ հազարաւ կամեցան դնել 'ի Տարօն՝ յիշխանութիւն Աշոտոյ որդւոյ Սմբատայ. իսկ ողջախոհն այն (Աշոտ) և քաջն հաւատացեալ երկու հարիւր հեծելով և երեք հարիւր հետևակով ել ընդդէմ նոցա չմնացեալ հաւաքմանն զօրացն. և կոտորեցին 'ի նոցանէ զերիս հազարսն. և հասեալ 'ի բանակ նոցա՝ էառ զամենայն մեծութիւն նոցա„:

## ՑԱՒՈՒՐՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

### ԱՇՈՏ

### ԴԱՐ Թ

Իշխան Վասպուրականի. մեծ եղև քաջութիւն սորա և ընկերաց նորա 'ի պատերազմին՝ որ 'ի ժամանակս Բագարատայ իշխանին Տարօնոյ ընդդէմ Մուսէի հագարացւոյ, զորմէ այսպէս գրէ Թովմա արծրունի. "Ջաշն 'ի վեր ամբարձեալ իշխանին Աշոտ՝ ետես զմի ոմն հարեալ 'ի զօրաց իւրոց. դաշեաց առիւծաբար, յարձակեցաւ 'ի վերայ ընտրոյ այրուձիոյն. և զաջ թևն բեկեալ՝ զձախոյ կողմամբքն արկանէր. և որոյ ճարակ զամենեսեան տայլն խիղախելով իբրև զքաջ նահատակս. իբրև զարծուիս կանչելով, իբրև զկորիւն առիւծոյ 'ի վերայ որսոյ հասեալ բեկանէին. և առ յոյժ յանդուգն յարձակմանն բազում այն լինէր զոր ձիովքն ընթադրեալ դիաթաւալ կացուցանէին՝ քան զոր սրով սատակէին: Եւ ոչ ոք դտանէր ամենևին 'ի կողմանէ թշնամեացն որ կարէր կալ ընդդէմ նոցա և ոչ մի ոք. այլ մնացեալքն 'ի սրոյն՝ փախստականս անկանէին յամուրս մայրեացն. և կէսքն հասանէին մինչ 'ի շահաստանն Բաղէշ, թողեալ անդէն զբուն բանակին„. Ճ. 6:

### ՍԱՀԼ

Պատանի քաջակորով, զորմէ պատմէ Վարդան, թէ Բաբան անուն բռնաւոր ոմն պարսիկ յարեաւ ընդդէմ ամիրապետին. ընդ որում բազում անգամ մարտուցեալ զօրք ամիրապետին՝ ոչ կարացին նուաճել. այլ Աֆշին զօրավար ամիրապետին կոտորեաց զզօրս նորա, այլ զԲաբան ոչ կարաց ունել. պատանին այս գտաւ միայն՝ որ հա-

յարձակեցաւ սփոխել զՏէրն և հաստատել 'ի վերայ նորա, կենդանութիւն ունել և ածել։ "Սահլ որդի Սմբատայ (բագրատունեաց ազգապետութեան, ասէ Վարդան,) ըմբռնէ զԲաբան. և առնու յԱփշինէն պարգևս հազարիցս հազար կշիռ արծաթոյ. և այլ ևս հարիւր հազար առնու 'ի նմանէ ։"

## ԲԱԲԳԷՆ ՍԻՒՆԻ

Եղև մի 'ի նոցանէ՝ որք սակաւ զօրօք յաղթեցին բազմութեան զօրաց. "Յաւուրսն յայնոսիկ, ասէ Վարդան, Աբլհերթ ոմն 'ի տանէն Ջահապայ եղ չորեքհազարօք յերկիրն Սիւնեաց. և եղ Բաբգէն ընդդէմ նորա երկու հարիւրովք. և ջնջեաց զնա իսպառ ։"

## ՎԱՍԱԿ

Զորմէ գրէ Յովհաննէս կաթողիկոս, թէ Բուղայ ոստիկանն "Հրաման ետ առաքել Վասակայ սիսական իշխանի.. իսկ իշխանն Վասակ հազիւ 'ի նոցանէ ճողոպրեալ փախստեայ գնայր չուէր ընդ կողմանս Կասպից դրանն. զայն զգուշացեալ վաղվաղակի Բուղայն՝ զօր զհետ առաքէ նորա ըմբռնել զնա. իսկ իբրև զհետ կրթեալ հասին հուպ իշխանին հինգ հրոսակին, այնպէս ընդ կրունկն դարձեալ նորա, առ 'ի գործ զկապակալութեան առեալ, առ հասարակ զնոսա թաւալգլոր խաղացուցանէր. և ինքն անցեալ գնայր յարևելս յաշխարհն Գարդմանայ ։"

## ԱԲԱՍ ՍՊԱՐԱՊԵՏ

Եղբայր Ա. Աշոտոյ. զորմէ գրէ Յովհաննէս կաթողիկոս. "Բայց զմեծ սպարապետութիւն Հայոց տայ Աշոտ (նախ քան զթագաւորելն) եղբօր իւրում Աբասայ, որ էր այր քաջ, անձնեայ և թիկնաւէտ, առողջամիտ և գեղեցիկ հասակաւ, կորովի և յաջողակ 'ի պատերազմունս. որ և աջակցեալ իսկ եղբօր իւրում Աշոտոյ՝ զամենայն հնազանդէր ընդ լծով ծառայութեան, 'ի բազում կողմանս բազում արութիւն ցուցեալ, և հռչակաւոր և հոյակապ 'ի մէջ բազմաց երևեալ"։ Յորմէ մարթ է իմաստասիրել, թէ ախոյեան սպարապետանն Ա. Աշոտոյ թագաւորի՝ ըստ մասին սորա արդիւնք են ։

## ԳՈՒՐԳԷՆ

Սա էր որդի Ապուսահլի վասպուրականի իշխանի, զոր յոյժ գովէ Թովմա արծրունի գ. 12. ասելով. "Ցերեկուց թագաւորազանց զաձմաննս սեաւ բերելով զգաղղաղջս, զան-նեքերիմայն ('ի հօրէ) և զմամգունեանց ձեռնասնւոյ ,, 'ի մօրէ: Սա յայնմ շփոթ ժամանակին Բուղայի զօրաց ի բռնիք այնպէս քաջութե վանեալ խորտակեաց զզօրս նորա, մինչև Տաճիկք, ըստ ասելոյ նորին պատմագրի, "ոչ կարէին հաճել զմիտս զօրավարին յայսմանէ, և յանդիմանն կացուցանել զթիւ սպանելոցն. ոչ առնուին յանձն թէ լինի հարիւր այր միայն (Գուրգենայ) հզօր ձեռամբ յաղթեցին հնգետասան հազարացն ,, Բուղայի. գ. 4: Այսէ զարձեալ զմանէ 'ի Սպեր գաւառի "բազում արութե ցուցեալ ընդդէմ յունականն զօրացն՝ ոչ միանգամ, այլ բազում անգամ. և քառասուն արամբք 'ի գլուխ հարեալ հազարի միոյ՝ սպան զբազումս 'ի նոցանէ զմնացեալսն Յունաց. և մերկ կապուտ կողոպուտ առնէր զնոսա. մինչև զարմանալ զօրավարին ընդ սորայս քաջութե՝ գրէ առ Միքայէլ թագաւորն Յունաց զեկուցանելով վասն նորա,, գ. 12: Անդանօր պատմէ և 'ի գլուխ ձորոյն Հայոց չորեքհարիւր արամբք մեծ քաջութե ցուցեալ սորա ընդդէմ երկուց հազարաց զօրացն Բուղայի՝ որք յանկարծ 'ի վերայ յարձակեցան. "Այս փոքր մի կազդուրեալ զնդին Տաճկաց՝ կռուէին յոյժ. յայնժամ անէր Գուրգէն առ չժուժալ սրտին՝ մտրակեալ զքաջ երիվարն յորում նստեալ էր, և եհար զգունդն զձախակողմն Տաճկաց, և պատառեաց զռազմն, և դարձոյց զերեսս նոցա. և փախեան այլազգիքն յերեսաց Գուրգենի 'ի մի կողմն. և երթայր զհետ և սատակէր զնոսա անչափ զօրութե. և բազում այն էին որ մեռանէին 'ի սրոյն Գուրգենի՝ քան որ մնացին ,,: Վերստին յարձակեալ ասէ զՏաճիկս, և անդրէն պարտեալ և ընկեալ 'ի սրոյն Գուրգենայ, մինչև անկաւ ահ սաստիկ 'ի վերայ նոցա: Այսու քաջութե իւրով խաղաղացոյց զաշխարհն Վասպուրականի 'ի խռովայոյզ ժամանակին յայնմիկ. զի լուեալ Բուղայի զայս ամենայն, խօսեցաւ ընդ նմա 'ի խաղաղութե. և ետուր և գօտի և երիվար պարգևեալ նմա՝ կացոյց զնա իշխան Վասպուրականի:

գնայր 'ի հայրենի ամրոցս աշխարհին իւրեանց ». Յոհան-նէս կաթողիկոս ։

## ԱՇՈՏ Բ. ՇԱՀՆՇԱՀ

Սա կորովի արիութեան Երկաթ կոչեցաւ. «Իսկ Աշոտ որդի Սմբատայ, ասէ Վարդան, որ և Երկաթն կոչեցաւ վասն արիական քաջութեան »։ Զսորա քաջութիւն գովա-նեալք ուրեք ուրեք պատմեալ առ Յոհաննու կաթողիկոսի որ գովելով ասէ. «Իսկ բազմահանդէսն այն և յաղթողականն 'ի հրահանգս կրթութեան վարժից մարտի Աշոտ որդի ար-քային Սմբատայ ... անցանէր զանցանէր զամենեքումբք ... գրեթէ իբրև զարծուի սուառնաթև սլացեալ ընդ օդս՝ այնպէս որսալարեալ խոյանայր »։ Եւ արդարև հրա-շալի իմն թուի շահատակել նորա երկերիւր արամբք 'ի վերայ չորից հազարաց զօրս ժողովեալ էին երկու եղբարք բերդապահք Շամշուլդէ բերդին. «Ասպազէն 'ի վերայ շահատակեալք (ասէ վասն զօրաց Աշոտոյ), առ 'ի քրթ-թել ական վազվազակի հերձեալ ընդ մէջ գնդելոյն ապա-րափակ առաջին բազմութեան ընդ կրունկն դարձուցանէին. և երկերիւրովք միայն արամբք զչորեքհազար սպառազէնս նոցա ջնջեալ ջարդեալ վանեալ վարատէին ... և գրեթէ ոչ ոք 'ի նոցանէ ճողոպրեալ դառնայր, բայց միայն Վա-սակն սակաւ արամբք ». որ էր մի 'ի բերդապահացն ։

Այլ մեծ ևս և կարի զարմանալոյ իրք պատմին զնմանէ յայլում պատերազմի ընդդէմ Սահակայ աներոյ իւրոյ, որ եկեալ էր 'ի վերայ նորին աւելի քան ութ հազար ա-րամբք. իսկ նա ել ընդդէմ նորա երկերիւր արամբք և-եթ. և «յառաջարկին շահատակեալ, և յական թօթա-փել իբրև հողմ ինչ փոշոտ փոթորկեալ, և ոչ. մի ոչ մնաց ոք 'ի տեղիս ճակատուն, և ոչ ընաւ իսկ երկուք 'ի միասին 'ի նոցանէն դառնէին. այլ ցան և ցիր սփռեալ ... ոչ թերևս առ 'ի նոցանէն վրիպեալ ոք 'ի փոքուէ մինչև ցմե-ծն. բայց միայն երկուք նոքա, իշխանն Սահակ և Գրի-գոր որդի նորին, զոր ձերբակալ արարեալ տանէին »։ Սաստկութիւն և սրավար խոյանալ նորա առաւել երևեցաւ 'ի պատերազմին՝ որ ընդդէմ Մովսէսի ապստամբին. ուր «ձի 'ի ներքոյ սպանեալ, ասէ, 'ի սաստիկ վառեալմն և 'ի կոպմեալմն Մովսէսի, և մօտ առ նա հասեալ, և զօդու-ցեալ գլխանոցն երկաթի վաղերբ դիպեցուցեալ, շեշտ ընդ մէջ ճեղքէր զամուր գլխանոցն. և յերկիր ընդ հա-

ըմբռնեալ, և ընդ կրունկն դարձեալ, առեալ ընդ իւր զՄովսէսն տանէր»:

## ԳԷՈՐԳ

Սա էր 'ի պատուաւորացն նախարարեալ Ն. Աշոտոյ, որոյ 'ի շրջելն զգաւառօքն Գեղամայ՝ խաղաց 'ի վերայ նորա Բշխն հագարացի իւրև հազար արամբք. Գէորգ չունէր յայնժամ առ իւր աւելի քան զքսան այր, «առկայծ քաջալերող քաջարչութեամբ սրտի ընդդէմ նոցա արիաբար շահատակեալ ձի 'ի ներքս տանէր, և զբազումս 'ի նոցանէ թաւալգլոր խաղացուցանէր ... ընդ կրունկն 'ի փախուստ զնոսա դարձուցանէր»: ասէ Յովհաննէս կաթողիկոս: Յետ սակաւուց դարձեալ եկն Բշխն բազմութեամբ մերձ 'ի դուռն ամրոցին Գեղամայ՝ ուր էր Գէորգ. որոյ սակաւ արամբք արտաքս ելեալ յամրոցէն՝ կարթակոտոր առնէր զերիվար նորա. և գլորեալ 'ի թշնամեացն տապաստ արկեալ 'ի փախուստ դարձուցանէր». մինչև, ասէ, «առ նմա յարատոցեալ լինէր զմնկատառութեն միայն առ բազումս, ասել թէ Դաւիթ արուօրագոյն քան զԳեթացին: Իսկ կարծեցան թշնամեացն այսանաւկ ձաղանօք գնացեալ միայն 'ի Դուին քաղաք»:

## ԴԱՒԻԹ ԿՈՒՐԱՊԱՂԱՏ

Մեծ եղև քաջութիւն զօրաց սորա 'ի պատերազմին ընդդէմ արաբացւոց, որպէս պատմէ Մատթէոս Ուռ̃. յորում էին նորա զօրք երեք հազար հետևակ աղեղնաւորք, իսկ հեծելազօրք՝ երկու հազար հինգ հարիւր. այլ զօրք Մամլան ամիրապետին արաբացւոց՝ էին երկու հարիւր հազար յԱպահունիս բանակեալ: Իբրև ընդ միմեանս բաղխեցան, Դաւիթ զամենեսին ցիր և ցան արարեալ կոտորեաց, և զկէսն Մամլանայ գերի առնու:

## ԱԳԼՂԱՐԻԳ

Էր սպարապետ Դերենիկ իշխանին Անձևացւոց. որոյ կորովութեն և քաջութեն երևի յայս դիպուած. «Ի զօրաց այլազգեաց ոմն խափշիկ այր հզօր և քաջ՝ ընթացեալ զհետ և հասանէր 'ի վերայ Ագլղարիգայ. և Ագլղարիգ գոչեաց որպէս զառիւծ, և հասեալ 'ի վերայ նորա և զաւզանաւար հարկանէր զնա, և յերկուս բաժանեաց և պա-

տառեաց զնա 'ի վերուստ մինչև ցներքս. և տեսեալ զայն այլազգեացն 'ի փախուստ դարձան,,. Մատթէոս խը ։

## ՎԱՍԱԿ

### ԴԱՐ Ժ. ԺԱ

Հայր Գրիգորի Մագիստրոսի, սպարապետ Յ. Սմբատայ արքայի Հայոց. որոյ 'ի ննջելն յամուրսն Բջնի լուեալ թէ այլազգիք ոմք եկին զօրք տաւղրիկեանց սկիւթացւոց՝ հարկին զՀամօրէն Նիգ գաւառ Հայոց, տակաւ զօրօք ելեալ 'ի Ճանապարհին հարկանէր զայլազգիսն. բայց այլազգիք բազմութբ բանակի եկին 'ի վերայ վասակեանց ։ Սոքա "իբրև անչափ անթիւ տեսանէին բազմութին զօրացն այլազգեաց, և յանկարծ միայն զմահ առաջի եդին, և սկսան առաքինանալ 'ի պատերազմին. և որպէս զգայլս 'ի մէջ այծեաց, և կամ որպէս զարծուիս 'ի յերամս ձագուց, այնպէս արիաբար ընթանային 'ի մէջ պատերազմին. զբազումս խոցեալ դիաթաւալ յերկիր ձգէին ։ Յայնժամ ախոյեան մի ելեալ 'ի զօրացն այլազգեաց սևախափշիկ և այր քաջ, որ և եօթն գայլ կոչէին զնա. վասն զի զինչ եօթն գայլ 'ի ջոկս ոչխարացն գործէր, նա ևս առաւել 'ի մէջ պատերազմին. և ահա գայր խափշիկն իբրև զսեւու ամպ որոտալով, որ բոց հատանէին 'ի զրահից նորա. և ձայն տուեալ և յանդուգնէ յուզէր զՎասակ ։ Հայեցաւ քաջն Եմրան, և ետես զնա զի գայր որպէս մրրկեալ, դարձաւ առ Վասակ և ասէ. ահա այր անպարտելի և քաջ, որ այլ ոչ էր ծնեալ 'ի վերայ երկրի ։ Եւ ասաց Վասակ. ով առիւծ և քաջ Եմրան, վասն էր զարհուրեցար ընդ տեսիլ նորա ... Յայնժամ հասանէր գազանաբար այրն այն ուսմբ եդեալ քաջին Վասակայ, որպէս զի առցէ զնա 'ի ծայր գեղարդեանն իւրոյ, և 'ի շառաչս լեալ Վասակ 'ի ներքս դիմեաց, և պողովատ թրովն 'ի վերայ սաղաւարտին գահեաց, և յերկուս հերձեաց զխափշիկն քաջ. որ և մասունք մարմնոյն յերկիր անկանէր,,. Մատթէոս լթ ։

## ԱՇՈՏ

### ԴԱՐ ԺԱ

Ի գալ սորա զօրօք յԱնի պատերազմել ընդ եղբօր իւրում Յովհաննու Թագաւորին՝ դղրդեալ խռովեցաւ Յովհաննէս և քաղաքն առհասարակ, զինեալ զքաջունս նորա զոր ածիւծու նմանեցուցանէին. յայնմ ժամու իշխանն ոմն յԱփխազաց գտանէր առ Յովհաննու, դեսպանութեան աղագաւ եկեալ առ նա յաշխարհէն Վրաց, զոր Մատթէոս լէ. կոչէ "Այր քաջ և անպարտելի 'ի պատերազմի"։ Որոյ տեսեալ զարհաւիրս քաղաքացւոց՝ ասաց առ Յովհաննէս. Ցուցէք "ինձ միայն զԱշոտ, և ես ձերբակալ արարից զնա, և կապանօք բերից զնա առաջի քո"։ Եւ 'ի սկսանել պատերազմին՝ այրս այս "որպէս զարծուի ընթացեալ 'ի ձայն բարձր յուզէր զԱշոտ և ասէր. ով Աշոտ յառաջ եկեսցես։ Եւ լուեալ զայս Աշոտ, և եղև զայրացեալ իբրև զինծ. և յուզել զմիմեանս ընթանային առ իրեարս.. և իշխանն Վրաց մնիզակն եղեալ Աշոտոյ. իսկ Աշոտ իբրև զկայծակն 'ի ներքս անցանէր, և հարկանէր զնա պողովատովն 'ի վերայ սաղաւարտին. և զերկաթապատ մարմինն պատառեաց մինչև ցստն, և հանդերձ միջօքն յերկիր ընկենոյր"։

## ՎԱՀՐԱՄ

Հօրեղբայր Գրիգորի Մագիստրոսի. զոր բազմօք ներբողելով, և ընդ վախճանելոյն իւր ընդ կենդանւոյ խօսելով 'ի Թղթին որ առ Յովհաննէս արքեպիսկոպոս Սիւնեաց՝ ասէ. "Ի վիրաւորացն հզօրաց և արիական զօրաց նոցին բազում անգամ մարտակցութե՛ք և արեամբ և վաճառամամբ ողողեացդ և քոյդ ազգի գնեալ զաշխարհդ, և երբեմն 'ի նոսա արի երևեալ, և հրաշից հիացման արժանի, և 'ի վեր քան զմտածութի։ Որ և նոցա իսկ զքոյդ հանդիսի մրցութի տայս և առինչս յօրինեալ, անպատկառաբար յաղատագունոյն պարէին. և 'ի հրապարակս գաւհից և քաղաքաց իբրու զդիւցազանցն երգէին. իսկ աննախանձոտք և առաքինասէրքն մինչ տակաւին էիր կենդանի՝ մատենագրել ոչ դանդաղէին"։

## ՇԱՊՈՒՀ

Սպարապետ ոմն Սենեքերիմեանց Արծրունեաց. որք յոր-ժամ էին 'ի Սեբաստիա, ցուցանել կամելով զզօրութիւն իւր առաջի արծրունի արքայորդւոց' 'ի մի կապեալ զերկաթի զրահս, հարեալ սրովն փշրեաց զամենայն։

## ԹՈՌՆԻԿ

Այն ինչ Դենար ամիրայն Պարսից այր զօրաւոր' ա-ռեալ զՄելտենի հարուստ քաղաքն, գերեալ զբազմութիւն քրիստոնէից և զանբաւ հարստութիւն նորա ընդ իւր ա-ռեալ տանէր յաշխարհն իւր, Թոռնիկ որդի Մուշեղայ տէր Սասնոյ. այնպէս քաջութեամբ յարձակեալ պատառեաց և եհար զբանակ այլազգեաց' մինչև տալ Մատթէոսի ՃԺԹ. "Եւ եղև օրն այն մեծ և ահաւոր"։ Իսկ մնացեալքն մազ-ապուր զերծեալ ամօթով գնացին յաշխարհն իւրեանց։ Իսկ Թոռնիկ յետքն դարձեալ դարձոյց զամենայն զա-ւառ եղբարութիւն "գոհանալով, ասէ, զԱստուծոյ' որ ազատեաց զանթիւ բազմութիւնս զՄելտենոյ քաղաքին, և 'ի ծառայութենէ անօրէն ազգին Պարսից։ Այս նշանակս վասն Հայոց աշխարհաց էր"։ Ապա 'ի թուին ՃԼԷ. պատմէ զահագին քաջութիւն սորա զոր արար ընդդէմ Փիլարտոսի. որոյ հայկազուն գոլով բայց յունացեալ, բազում բռնութիւն գործէր 'ի կողմանս Յունաց. կամէր և զԹոռնիկ ընդ իւրև նուաճել. իբրև ոչինչ կարաց առնել Փիլարտոս, գաղտ գրգռեաց զԱմրբափր ամիրայն, որ սուտ երդմամբ և առատ տուրօք ընծայից զոր ետ ծառայից Թոռնկայ' համանեցոյց, և սէր սերտ կապեալ եցոյց ընդ նմա, մինչև բոլորովին պատրեալ Թոռնկայ' արտաքս ելեալ 'ի բերդէն իւրմէ, որ էր Աշմուշատ, երեք արամբք միայն գնաց 'ի կոչ նորա։ Այլ մինչդեռ, ասէ նոյն վիպագիր ՃԼԵ. "կային 'ի գինարբուսն' վաղեաց ամիրայն գաղտնաբար 'ի վերայ Թոռնկայ, և կամէր սպանանել զնա. և ոչ ունելով Թոռ-նիկ առ իւր' բայց փոքրիկ դանակով հարեալ զամիրայն' 'ի վայր հեղոյր զփոր նորա. և զայլոց ամիրայիցն բռն-նեաց զգլուխսն, ընդ իրար ծեծեալ սատակեաց. և ինքն ելեալ անվնաս գնայր 'ի բերդն"։ Բայց ուր բազմութեան են նենգաւոր միաբանելոց' անհնարին է զերծանել և այս-պիսի քաջի առն. զի մի ոմն յայլազգեաց 'ի թագստեան դարանեալ մնա 'ի բերդն նորա, յաւուր միում յանկարծ

'ի վերայ եղեալ սպան զնա, տարեալ զգլուխ նորին առ Փիլարտոսն. "Եւ անօրէնն Փիլարտոսն, ասէ, հանեալ զսկաւառակ գլխոյն և արար գաւաթ, և նովաւ ըմպէր գինի. և զմնացեալսն 'ի գլխոյն առաքէր ամիրային Մա-ֆարղնոյ"։

## ԱԲԼԱՍԱԹ

### ԴԱՐ ԺԲ

Յորժամ կոմսն Ուռհայոյ և կոմսն Թլպաշարայ զօրա-ժողով եղեալ յամին 1109. Փրանկ զօրօք յարձակեցան 'ի վերայ քաղաքին Խառանայ, "էր ընդ նոսա, ասէ Մատ-թէոս մին. այլ ոմն հայեցի 'ի զօրաց Վասլին, որդին Տաճատայ իշխանին Տարօնոյ; որ անուանէր Աբլասաթ. և էր այր քաջ և ընտիր պատերազմող"։ 'Ի վերայ սորա յարձակեցան յանկարծակի 1500 հեծելազօրք Թուրքաց. և սպանին 'ի Փրանկաց առս 150. Մնացեալքն կամէին փախչել անդրէն յՈւռհա. "Յայնժամ Աբլասաթ, ասէ, որպէս զառիւծ գոչեաց, և ձայն տուեալ զօրաց իւրոց, և նոքօք ընկենէր զճակատս այլազգեաց զօրացն", որով կա-րացին Փրանկք անվնաս դառնալ մտանել յՈւռհա։

## ԼԵՒՈՆ

Որդի Կոստանդնի որդւոյ Ռուբինեայ, ասէ Մատթէոս մծղ. Եկն յօգնութիւն Ռոճերի կոմսին Փրանկաց առեալ Անտիոքայ, որ զօրաժողով լեալ յամին 1118 եկեալ էր առնուլ զԱզազ քաղաքն որ է մերձ 'ի Բերիա։ Ռոճեր զա-ւուրս երեսուն պատերազմ մղեալ և ոչինչ կարացեալ առ-նել, ապա կամեցեալ զգործ առնուլ և զզօրացն Հայոց, յանձ-նեաց առ Լեւոն զառաջիկայ աւուր պատերազմն։ Այն իսկ դէպ լինէր 'ի վաղիւն առաւօտս յարձակիլ զօրաց այլ-ազգեաց՝ Լեւոն զմի մի 'ի զօրաց Հայոց խրախուսեալ, "ուժ-գին գոչեաց որպէս զառիւծ, և հանդերձ զօրօքն բախե-ցաւ 'ի վերայ նոցա (այլազգեաց), և դարձոյց զնոսա 'ի փախուստ. և որով 'ի հետ մինչև 'ի դուռն քաղաքին կո-տորեաց զնոսա. և արար զնոսա արգելականս, որ այլ ոչ ելան ընդ դուռն քաղաքին 'ի պատերազմ։ Եւ էառ իշխանն Հայոց Լեւոն (անուն) քաջութեան յաւուրն յայն-միկ, և զովեցաւ 'ի մէջ զօրացն Փռանկաց. և յայնմ օրէ սիրեաց Ռոճերն զզօրսն Հայոց"։

## ԱՅԾԵԱՄՆ

Օկնեա զայս արխաւիրս յիշատակէ Սամուէլ 'ի ՇՀԳ. Թուին, 1124, 'ի պատերազմին յորում Փաւլոսն ամիրային պաշարեալ ունէր զԱնի քաղաքն. « Յայնմ պատերազմի, ասէ, առաքինացաւ կին մի 'ի վերայ պարսպացն, առնացի առացեալ սիրտ, հալածական առնէր քարամբք զմարտուցեալսն յելանելսն ընդ պատուարսն, առ ոչինչ համարեալ զխոցուածս նետիցն՝ զոր վիրաւորէին արտաքուստ. և էր անունն նորա ըստ արժանի արդարութեան իւրոյ Այծեամն կոչեցեալ »: Այլ հաւատալի երեք, թէ և զայլ բազումս յայսպիսի կանանց անյիշատակ թողեալ իցեն պատմագիրք մեր. զայս յայն սակս ասեմ, զի և առ մերօք լսեմք զբազմաց յայսպիսեաց մեծագործ քաջութիւն առաքինացեալ 'ի հայաստանս. մանաւանդ զի 'ի բազմաց լսեմք յարժանահաւատ ականատեսից՝ զօրավար կացեալ կանանց 'ի գիւղս առնացի, և գլուխ 'ի վերայ հաղթաւոր արանց կարգեալ 'ի պատերազմի նման նախնի Ամազոնեաց, յաւէտ վասն նոցա որք 'ի մէջ Քրդաց կան բնակեալ, և ընդ նոսա համապազ խառնեալ 'ի մրցմունս 'ի պատճառս հինահարութեանց:

Յաւարտ բանիցս զանց արարեալ յիշել զայլ ևս արիութիւն մերոց քաջազանց, յորոց բազում այն է որ անյիշատակ մնացին առ մատենագիրս մեր՝ քան որ գրեցանն, կնքեսցուք զբանս մեր վկայութեամբ Խորենացւոյն, որ ասէ յաղագս մերոյ ազգիս. « Զի թէպէտ փոքրութիւն ազգս, և ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբ, սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ և 'ի մերում աշխարհիս, և արժանի գրոց յիշատակի, զորոց և ոչ մի ոք 'ի նոցանէ պէտս յանձին կալաւ մատենագրել ». ա. 3:

Այլ զարմասցին թերևս ոմանք լսելեաց զայսոսիկ, եթէ զիա՞րդ հնար իցէ, որ զայսպիսի և զայսքան քաջազուն արս ունիցի՝ ազգ, ընդ այլովք նուաճիլ տէրութեանց, և գերի լինել նոցա: Յայտնի կան պատճառքն. զի պակասէին 'ի նմա հիմունք օրինաց քաղաքավարութեան, այն է՝ քաջութիւն միաբան և ազգասէր հոգւով, և իմաստութիւն. զոր Վաղարշակայ առաջնոյ ուսեալ յեղբօրէն իւրմէ Արշակայ՝ աւանդեալ էր իբրև նեցուկ ամրութեան պետութեան և օրէնք անժխտելի: Եթէ կացցեն անմեկնելի 'ի միմեանց

որպէս զՀռոմբաւիշտ, զի չէ սովորութիւն Հոռոմոց առատ լինել, և ոչ յիւրեանց լեզուն տալ տուր, այլ նա որդի Հայոյ էր, և առաւել քան զՀայս առատատուր,,: Եւ այսմ զըրէ և Վարդան յասելն վասն նորին կայսեր Լևոնի. "Այր առատ 'ի տուրս, և ոչ նման Հոռոմի. զի նա (Լևոն) որդի Հայի էր, և յոյժ սիրէր զՀայս,,: Զոմանս յայսպիսեաց աստի յիշատակեալ գտանեմք 'ի պատմութիւն ազգիս, յորս գլուխ ամենեցուն յայսմ առաքինութեան պարտ էր դնել զմեծն Ներսէս. այլ զի նորա ողորմածութիւն ոչ էր առանձնաւոր եւեթ որպէս զայլոցն, այլ յաւէտ 'ի գործս հասարակաց օգտի, վասն որոյ անդանօր ունիմք յիշել զնորայն. իսկ յայսմ վայրի յիշեսցուք զայլս՝ որք թուին լինել պտուղ և արդիւնք նորին մեծին Ներսէսի. զի յառաջ քան զնա անգթութիւն էր տիրեալ 'ի մէջ ազգիս, որպէս ասէ Խորենացին:

## ԽԱԴ

Մը 'ի գլխոյ առնուլ զսարս ողորմած բարուցն որ 'ի մէջին անդ չորրորդ դարուն, շատ է այն զոր վկայէ Խորենացի. "Այս Խադ յամենայնի նմանեալ մեծին Ներսէսի, և առաւել ևս 'ի անուշութի աղքատաց. որոյ շտեմարանքն աղքատացն սքանչելապէս իբր առ Եղիայիւ և Եղիսէիւ,,. Գ. 31:

## ՇՈՒՇԱՆ ՏԻԿԻՆ

### ԴԱՐ Է

Յիշատակաց արժանի կինն այս օրհնեալ և գաղափար եղև առն բարեպաշտի որ զսէր և զգթութի փոխանակ չարերացն հատուցանէ թշնամեացն: Զի յետ մեծի կոտորածին արաբացւոց 'ի զօրացն Հայոց 'ի Վարդանանկերտի, ասէ Ղևոնդ, "յորոց (յարաբացւոց) նուազունք 'ի փախուստ դարձեալ իբրև արք երեք հարիւրք, ապաւինեցին առ տիկինն Շուշան. զորոց զկնի հետամուտ եղեալ Սմբատ որդի Աշոտի զօրօք իւրովք՝ կամէր արկանել զփախստեայսն 'ի սուր սուսերի: Որում ընդ առաջ ելեալ տիկինն Շուշան բազում աղերսանօք և պաշտմամբ թափէր զնոսա մերկս և բոկս և հետևակս և վիրաւորս, զորոց առեալ պատէր զվէրս և ողջացուցանէր և զգեցուցանէր հան-

դերձիւք . տայր և զգլուխս յիւրոց երամակաց, և տուաքեր առ իշխանն Իսմայելի Ասպալմելիք . վասն որոյ և 'ի նմանէ բազում շնորհակալութիւն ընկալեալ, մեծամեծ պարգևս առաքէր նմա,, . գլ . Դ :

## ԱՇՈՏ

### ԴԱՐ Թ

Նշանաւորն Թագաւոր Բագրատունի . որոյ մի 'ի պատճառացն, որոց վասն կոչուցաւ Թագաւոր, համարի առատաձեռնութիւն իւր : Իսկ 'ի մերձենալ մահուն, " ոչ սակաւ ինչ ըստ մարմնոյ խնամոց անձեցուցանել ջանայր և զհոգւոյն ևս խնամատարութիւն, ասէ Յոհաննէս կաթողիկոս. վասն զի առ նոքօք զմեծ կաթողիկոսն Գէորգ կարգացեալ, և զփրկութենապարծ զմարմին և զարիւն տեառն Թոշակ յետոյն առ 'ի նմանէն իւր ընկալեալ, ոչ սակաւ ինչ քան զբազում բաշխէր գանձս ոսկւոյ և արծաթոյ 'ի տնանկս և յաղքատս. այլ և 'ի ձեռս հայրապետին հաւատայր զլիապատար գանձարանացն մթերս և զերամակս ձիոց և զգաստակս անդեոց և զհօտս ոչխարաց, ամենևին ընդունին բաշխել,, :

## ԳԱԳԻԿ ԱՐԾՐՈՒՆԻ

### ԴԱՐ Ժ

Թագաւոր Վասպուրականի . որ " ի վերայ ամենայն բարեխնամօղ գթութեանց որով զաղքատս դարմանէր, զգերեալս դարձուցանէր, զպարտաւորս փրկէր, դատ առնէր որբոց, և տայր իրաւունս այրեաց . և զայն ևս աւարտ և զլուխ դնէր ամենայն առաքինութեանց վարուց, ես և մեծի զօրութեանց արժանաւոր,, . Թովմա արծրունի Ե . 6 :

## ԱՇՈՏ Գ

Աշխարհ անուանի զսա յաղորմածութիւն մինչև Ողորմած յորջորջել զնա այլոց . " Իսկ 'ի Ն . Թուին, ասէ Վարդան, փոխի տէրն Թագաւորն Աշոտ, և առնու զԹագն Աշոտ որդի նորա Ողորմածն կոչեցեալ, որ բազում ուրկանոցս շինեաց, և տուեալ ռոճկօք դարմանէր զնոսա . յո-

կուռս, մնուցանել զորբս, օթևան լինել այլոց, զըմբռ-
նեալն 'ի ձեռաց հզօրաց կորզել, իւրովին ձեռօք իսկ կե-
րակրել զաղքատս և զհիւանդս, ամուսնացուցանել զորբս
ըստ միմեանս օրինաց և քրիստոնէական կրօնիւք: Ո՛վ որ
վախճանեցեր՝ և ոչ անդր ընթացեալք յուղարկաւորք լինէ-
ին զննացելոյն, և մխիթար մնացելոյն: Ո՛վ որ պարտապան
երթայր առ նոսա՝ և ոչ հատուցանէին. կամ տրտմեալ՝
և անմխիթար ելանէր յարկաց նոցա. կամ հիւանդ որք՝
զորս ոչ տեսանէին. կամ անանկ՝ զորս ոչ ժողովէին»:

## ՎԱՀՐԱՄ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

### ԴԱՐ ԺԱ.

Որդի նախագրեալ Գրիգորի և Շուշանայ, հօրեղբայր Գրիգորի Մագիստրոսի. յաղթամարտութե̃ և յամենայն ազգս բարերարութե̃ յոյժ երևելի. զորոյ զնահատակիլն լուեալ նոյն ինքն Գրիգոր Մագիստրոս՝ այսպէս ներբողէ 'ի պատասխանին որ առ Յոհաննէս արքեպիսկոպոս Սիւնեաց. «Մարդասէր և օտարասէր, անոխակալ և անյիշաչար... Այժմ... ո՛ զաւարութի մեր, ո՛ և զանժուժկալութիւն համբերութե̃ իւրով մխիթարէ, ո՛ զաղքատս կերակրէ առատատուր և զուարթ ըղձմտութե̃, և ո՛ արդար դատաւորութե̃ զորբս և զայրիս տածէ, կամ զգերեալսն գնէ, կամ զպանդխտեալսն արձակէ, կամ զցրուեալսն ժողովէ. առ ո՛վ որք այժմ անանկացեալքն յիւրմէ բնակութեանցն ընթացի իբր յիւր իսկ հայրենի սեփական: Քանզի արդարև յոգունց քոյդ (տուն) կարգեալ էր ամենեցուն ապաստան. որ և ոչ իսկ հարցեալք՝ որպէս ախորժէին այնպէս պատրաստ էր. և այս ոչ միայն մերոյին սերի և համազանց, այլ և իվերիացւոց և Պարսից»:

### ԳԱԳԻԿ

Որդի Աբասայ, թագաւոր Կարուց: Սա առատաձեռնութեամբ իւրով զերծոյց զինքն և զիւրսն 'ի մահաչունչ աւերմանէ սուլտանին Ալփասլանայ. զի կերակրելով զզօրս նորա՝ յինքն յանկոյց զսիրտ նորա. զի ասէ Մատթէոս. «Արար Գագիկ ճաշ սուլտանին. և զայս այսպէս լսեցաք եթէ մէկ գաւթին վերայ զոր խորովեաց՝ ծախք եհան հազար դահեկան. և հարիւր հազար դահեկան սե-

անժխտելի օրինաց, այլ քաջութեամբ եւեթ համարէին հաստատուն կալ թագաւորութեան, վասն որոյ և հեռացեալ ստորացեալ էին առ հասարակ յիմաստութենէ. որով և կորուսեալ զթագաւորութիւն, ընդ նմին և զամենայն բարեկարգութիւն. « Զի ոչ կարգք ինչ լեալ առ յայսմիկ (ասէ Վաղարշակ 'ի նմին թղթի)... և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն 'ի խուռն ամենայն և վայրենի »: Բարեկարգութիւնք զոր արար Վաղարշակ՝ համարին ութ. Նախ 'ի վերայ դպրութեան և ուսումնասիրութեան. երկրորդ՝ յուղղել զշինական ազգս. երրորդ՝ 'ի վերայ զինուորութեան. չորրորդ՝ 'ի վերայ արքունեաց իւրոց. հինգերորդ 'ի վերայ նախարարաց. վեցերորդ՝ 'ի վերայ օրինաց. եօթներորդ 'ի վերայ քաղաքական սկզբանց և կենցաղականութեան. ութերորդ 'ի վերայ շինութեանց: Ի սոցանէ զամենայն եւեթ յիշելոց եմք 'ի մասնաւորս ըստ պատշաճի գլխակարգութեանց համառօտիւ. զի մի առ մի գրեալ կան իւրաքանչիւր 'ի գիրսն Ազգաստեր յերես 170—211:

## ԱՐՇԱԿ Ա

Վասն սորա ասէ Խորենացին Բ. 9. « Նախանձաւոր և հետևող հայրենի առաքինութեանցն լեալ՝ բազում կարգս ուղղութեանց գործեաց »: Այլ ոչինչ յիշէ 'ի կարգացն և յուղղութեանց գործեցելոց, բայց միայն զքաջագործութիւն, որ ոչ է 'ի կարգի նշանագրելոցս:

## ԱՐՏԱՇԷՍ Բ

Ի մէջ ամենայն հայկազուն և արշակունի թագաւորաց սա համարի ընդհանուր աշխարհաշէն. առաւելեալ յիրս ինչ քան զՎաղարշակ. « Յետ ամենայն առաքինութեանց և գործոց ուղղութեանց Արտաշիսի՝ հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել », ասէ Խորենացի Բ. 56: Զամենայն գործս ուղղութեան ասելով յայտ առնէ յաջողեալ նորա յամենայն աշխարհաշէն բարեկարգութիւնս. որպէս և 'ի գլուխ 59. նշանագրէ ասելով. « Բազում ինչ գործք յաւուրս Արտաշիսի գործեցան »: Այլ ցուցէ մեզ այն՝ զի յոյժ համառօտիւ անցանէ 'ի պատմելն: Զսորա մեծագործութէ յուշ առնէ և Թովմա արծրունի Ա. 11. « Իբրև աջողեցաւ, ասէ, թագաւորութիւն Արտաշէսի ամենայնարդար պատրաստութիւն, և աշխարհաշէն հոգաբարձութիւն, որպէս բացայայտեն գիրք պատմագրաց... յիշէ զինժդեհանալն

և եկեալ 'ի Հայս, զամենայն կարգս ուղղութեանց հարցն իւրոց նորոգեաց. այլ և առաւել ևս. քանզի զբարեկարգութիւն զոր ետես 'ի Յունաց աշխարհին, մանաւանդ 'ի Թագաւորեալ քաղաքին, 'ի սմա նկարագրէ „. Գ. 20 : Եւ Բուզանդ ասէ վասն նորա. " Ի հովուութեան նորա բազում խաղաղութիւն լինէր աշխարհին. զի 'ի վարս կարգաց գնացից իւրոց՝ նմանեաց իւրոյ հօրն մեծին Գրիգորի ; արդարև հայրաբարոյ գտանէր ամենաբարի. զնոյն հարցն նորոգեաց զառաքելաշնորհս „. Դ. 4 : Տեսցուք արդ մի առ մի որ ինչ ուղղութիւք եղեն 'ի նմանէ 'ի պայծառութի ազգիս և հայաստան աշխարհիս. նախ զչափ ողորմածութե նորա, և ապա զանչափ բազմութիւն շինուածոցն հասարակաց 'ի պէտս, և 'ի փառս քրիստոնեական կրօնից :

Ողորմածութիւն. Առաջին և մեծն 'ի բարեկարգութիւնս նորա. "Կանոնական սահմանադրութբ հաստատեաց, ասէ Խորենացի, զողորմածութի. խլելով և զանգթութեն արմատ, որ բնաբար սովորութբ էր յերկրիս մերում „. Գ. 20 : Եւ Բուզանդ ասէ 'ի Դ. 4. "Նախ ինքն առնէր, և ամենեցուն զնոյն ուսուցանէր. առհասարակ զնոյն օրինակ առնել հրամայէր յամենայն աշխարհս և 'ի գաւառս և 'ի կողմանս կողմանս . . . շինել աղքատանոցս, և 'ի ժողովել զախտաժէտս և զօրկեալս և զմարմնավարս և զամենայն ցաւոտս. և նոցունց կարգեցին օրկանոցս և դարմանոց և ռոճիկս, և պատանս աղքատաց. զի այսպէս եա հրաման մեծ եպիսկոպոսապետն Ներսէս „: Բայց յաղորմածութե անդ սորոյ հայրապետիս մեծ է այն, զի ոչ շատացեալ, ասէ Բուզանդ, հասարակաց տեղիս սահմանելով վասն աղքատաց, հոգացեալ և զպարմանս նոցա, այլ և " տաճար իւր և սեղան զօրհանապազ աղքատաց և օտարաց էր և հիւրոց. և այսպէս առ յոյժ աղքատսիրութեանն, զի թէպէտ և շինեաց զամենայն աղքատանոցս ընդ ամենայն գաւառս, և կարգեաց նոցա անդէն դարմանս . . . սակայն և զիւր տաճարն առանց նոցա ոչ առնէր. այլ կաղք և կոյրք և մարմնահարք, խուլք և հաշմեալք և ցանկանեալք և կարօտեալք ընդ նմա և 'ի նորա սեղանի դարմանէին բազմեալք. և ինքն իւրովք ձեռօքն լուանայր զամենեսեան, օծանէր պատէր, և ինքնին իսկ ջամբէր նոցա զիւրաքանչիւր կերակուրս, և զամենայն ինչ 'ի պէտս նոցա ծախէր. և ամենայն օտարք ընդ նմա, հովանեաւ նորա հանգուցեալք, դադարէին. և ամենեցուն զոր ինքն առնէր՝ զայն ուսուցանէր „: Եւ այնպէս

ըստ գրելոյ նորին մատենագրի, “Աղքատք զօրհանապազ ընդ նմա ուրախ լինէին ,,։

Նա՛ և մեծ ևս այն է յողորմածութիւն իւրում, զի ժողովեալ եա բառնալ յաշխարհէս զմուրացութիւն. “Կամ եղև, ասէ Բուզանդ Դ. Վ. ամենայն ուրեք ժողովոյն, զի այնուհետև միայն նստել լիցին յիւրաքանչիւր կայեանս, և մի եղանել 'ի մուրոյն տառապանս, և մի ընաւ ելանել ըստ իւրաքանչիւր դրուրս. այլ զի ամենայն որ պատրաստական է նոցա . . . առ հասարակ ողորմածութիւ և երկիւղիւ տարեալ նոցա զդարմանսն, և զպիտոյս նոցա մատուցեն ,,։ Այս ազգ ողորմածութեան բաց յաղքատասիրութենէ ունէր ընդ իւր և զայլ բարեկարգութիւն քաղաքական հասարակաց կարեւոր. և զոր Թագաւորք եւրոպացւոց 'ի յետին ժամանակս սկըսան մուծանել 'ի սահմանս իւրեանց, զնոյն մեծն Ներսէս աշալուրջ կենցաղավարութեամբ 'ի հինգերորդ դարու ծանեաւ զօգուտ սորա, և եմոյծ 'ի հայաստան. մինչև ըստ ասելոյ նորին Բուզանդայ, “Ցամենայն Ներսէսի զաղքատս ընաւ ամենևին 'ի մոյր ոչ տեսանէր ընդ ամենայն սահմանսն Հայոց. այլ անդէն 'ի հանգստեան նոցին, այնինքն յօրկանոցսն, ամենայն մարդիկ տանէին զամենայն պիտոյս նոցա. անդէն իսկ անկարօտ յամենայն ումեքէ լցեալ էին ,,. Է. 31։ Այս է զոր համառօտիւ ծանուցանել կամի Խորենացին յասելն վասն աղքատանոցաց, թէ կարգեաց, զի յարդեանց երկրի “պաշտեսցեն զնոսա հարկաւ րացէ 'ի բաց. և նոքա մի ելցեն ըստ ընակութեան իւրեանց ,,. Գ. 20. այսինքն մի ելցեն աղքատք արտաքս քան զընակութիւն իւրեանց մուրանալոյ աղագաւ։ Այսմ զհետ զայր և այլ իմն բարեկարգութիւն գեղեցիկ, որ էր բարձումն յաշխարհէս արանց անուղղայից և տռահակաց. զոր և ծանուցանէ Մեսրոպ յասելն ժե. “Ոչ ոք տեսանէր յաշխարհիս Հայոց մուրացիկ երևիլ յաւուրս Ներսէսի, անուղղայս, անօրէնս և մոլահաճս (իմա դատարկաշրջիկ ըստ հաճոյս) յերկրիս Հայոց 'ի բաղում ժամանակաց, զոր եբարձ սուրբն Ներսէս ,,։

Նշխարանոյք. “Հրամայեաց, ասէ Խորենացի, ըստ գաւառաց գաւառաց շինել աղքատանոցս, 'ի խորշս և 'ի զերծ տեղիս. զի փոխանակ հիւանդանոցացն Յունաց լինիցին 'ի մխիթարութիւն մարմնոց վշտացելոց ,,. Գ. 20։ Կամի ասել, թէ 'ի տեղիսն յայնոսիկ, որ աղքատանոց անուանք շինեալ էին՝ անդ ժողովէին նաև զհիւանդս և զախտաժէտս. զնոյն ցուցանէ և բանն Բուզանդայ զոր բերաք 'ի

վեր անդր · Հրամայէր, ասէ, "շինել աղքատանոցս, և 'ի ժողովել զախտաժէտս և զօրկեալս և զմարմնավատս և զա- մենայն ցաւոտս,,: Բանք Բուզանդայ և Խորենացւոյն ցուցանեն թէ Հիւանդանոց անուամբ տեղիք յիշատա- կեալք այլուր 'ի Բուզանդայ Ե. 31. "Եւ յամենայն ա- ւանս էր շինեալ նորին Ներսիսի և Հիւանդանոցս,,, չզա- նազանելին յաղքատանոցաց:

Ուրկանոցք · Ուրոյն յիշէ զայս Բուզանդ ասելով կարգե- ցին Որկանոցս · վասն որոյ թուի ուրոյն բնակարանս շի- նեալ վասն նոցա · զի և վասն տարափոխիկ ախտից նոցա հարկ էր ոչ բնակեցուցանել զոսա 'ի միասին ընդ այլ ախ- տաժէտս, յորս սակս հալածէլին մերձն զոսա յանապատ տեղիս · մանաւանդ թէ զայլ հնարս դարմանելոյ զնոսա կարգեալ մեծին Ներսէսի ասէ Մեսրոպ · Նախ զբորոտս հալածեալս ժողովել յիւրաքանչիւր տեղիս · և ապա ա- տուածային ազդեցութ տանել 'ի գաւառն Անձևացեաց 'ի Հոգւոց վանս առ պատկեր Աստուածամօրն · ուր և զտանէլին բժշկութի յանուն որբոյ կուսին · ուրանօր տայր շինել և վկայարան: Վասն որոյ չէ պարտ շփոթ իմանալ զշփոթ բանս Բուզանդայ 'ի վերոյ յիշեալ. որպէս թէ զկիսոյս աղքատաց յորկանոցն տանէին · այլ զաղքա- տացն՝ յաղքատանոցս, և զուրկացն՝ յորկանոցս: Եւ թէ- պէտ շինուածք բնակարանացն այսպէս զատուցեալք էին ամենայնիւ, որպէս հարկն պահանջէր, այլ գուցէ զօլով նոցա շինեալ առընթեր միմեանց, Բուզանդ յայս բան միայն զուրկանոցն յիշեաց:

Պարբանոցք · Զայսոսիկ ուրոյն յիշէ և Բուզանդ 'ի նա- խադրեալ բանն՝ որ նոյն թուի լինել, զոր Խորենացին կո- չէ "Տեղի մնտղեան որբոց և ծերոց և անօթևորաց տա- ծուածն,,. Գ. 20: Զորս սեփական անուամբք կոչեմք Ան- կելանոց, Ծերանոց և Որբանոց · որպէս և Բուզանդ զվեր- ջինս զայս յանուանէ յիշէ · Ե · 31:

Այրենոցք · Որ էին տեղիք 'ի դարմանել զայրիս · զորս 'ի հարկէ 'ի սեփական տեղիս ուրոյն յայլոց բնակեցուցանէ- ին: Զհոգ և զխնամ մեծին Ներսէսի նաև 'ի վերայ այս- պիսեաց յիշէ Բուզանդ · "Այրեաց և որբոց և չքաւորաց հանգիստ և դարման առնէր,,. Գ. 4: Իսկ զսեփական բնակարանս վասն նոցա շինեալ՝ յիշէ այլուր, յասելն վասն Պապայ թագաւորին · "Սկսաւ . . . աւերել զայրենոցն և զորբանոցն՝ զոր շինեալ էր Ներսէս 'ի գաւառս գաւառս,,: Ե . 31:

Հիւրանոցք. Մեսրոպ 'ի Թիւն ժէ. զոսա շինեաց ասէ մեծն Ներսէս «'ի քաղաքս, և յագարակս, և 'ի վանորայս»: Նոյն է և զոր Բուզանդ կոչէ Օտարատունս. «Իսկ յաւուրս քահանայապետութեան Ներսիսի ամենայն գաւառք Հայոց յամենայն 'ի շէնս և 'ի գիւղս յամենայն կողմանս Հայոց առհասարակ 'ի հրամանէ քահանայապետին եղեն շինեալ Օտարադանք հիւանդանոցք օտարանոցք, և ամենայն մարդիկ երկրին Հայոց եղեն արդարեւք և ողորմածք առ 'ի յիշել զաղքատս և զնեղեալս, զաստառնեալս և զօտարս, զհարստահարս, զնշդեհս, զպանդխուտս, զհիւրս զանցաւորս. և էր նոցա կարգեալ վերակացու որդոյն Ներսիսի, և գարմանս 'ի տեղեաց տեղեաց»: Ե. 31: Ցայս հայի և բանն Խորենացւոյն. «Հրամայեաց և յամենայն գիւղս Վանս շինել, զի լինիցի օտարանոցք»: Վանս իմա աստէն զնակարանս վանս օտարականաց կարգեալ, որպէս մեկնէ հետևեալ բանն ասելով. զի լինիցի օտարանոցք: Թող զի որպէս յարեւմուտս՝ նոյնպէս և յարևելս շինեցան յոլով մանաւոր վանք կամ մենաստանք կրօնաւորաց, զի վանատու լիցին անցաւորաց 'ի կարեւոր ժամանակս:

Պանդոկք. Շինեալ վասն Ճանապարհորդաց, զորմէ գրէ Մեսրոպ 'ի Թիւն ժէ. «Եւ հրամայէր 'ի զերծ տեղիս, և յանցս Ճանապարհաց, և 'ի գլուխս լերանց պանդոկ շինել»: Այս շինուածք եղեն վասն անցաւորաց, զոր յանուանէ ոչ յիշեն այլք, բայց ընդ անուամբս Օտարատուն իմանամ և զայս, որպէս ցուցանէ նախայիշեալ բանն Բուզանդայ, ուր ընդ նշդեհս և ընդ հիւրս՝ յիշէ նաև զանցաւորս:

Ըէրէմք. Շինեալք «վասն Թագաւորաց, իշխանաց և զօրավարաց». զորս նոյնպէս Մեսրոպ միայն յիշէ անդէն:

Եպիսկոպոսանոցք. } Մեսրոպ միանգամայն յիշեալ զերկո-
Եղբայրանոցք. } սին զոսա Թուով 2040. շինեալ ասէ 'ի մեծէն Ներսիսէ. ուր եղբայրանոց անուամբ իմանայ զմենաստանս 'ի պէտս միայնակեցաց: Զորոց տեսցես 'ի գլուխն Կրօնի:

Աստուածատունք. Յիշատակեալ միայն 'ի Բուզանդայ. զորոց տես նոյնպէս 'ի գլուխն Կրօնի:

Դպրոցք. Յիշատակեալ 'ի Բուզանդայ. զորոց տես 'ի գլուխն Դպրութեան:

Բաց 'ի շինուածոց աստի կարգելոց առհասարակ առ գործս ողորմութեան և բարեկարգութեան՝ երկուս այլ մեծա-

մեծ բարեկարգութիւնս առաջ մեծն Ներսէս ժողովեալ սահմանեալ. մի երարձ զամուսնութիւն ընդ մերձաւորս որ յաճախեալն էր, պատուիրեալ չամուսնանալ մինչև ցեօթն ազգ. երկրորդ՝ երարձ զկոծ մեռելոց, զոր հեթանոսական օրինօք առնէին՝ անյուսաբար հեղեալ զարիւն երեսաց իւրեանց. և հրամայեաց "չափաւոր արտասուօք, գոհութ[եամբ] յուղարկել 'ի գերեզմանս":

Յետ յիշելոյ Մեսրոպայ զայս ամենայն, ասէ. "Եւ լինէր ամենայն Հայք իբրև զմի կատարեալ անձն, երթեալ զհետ երկինայինն Աստուծոյ յաւուրս մեծին Ներսէսի": Առաւել ևս յաւելու ասել Բուզանդ Դ. 4. Թէ նովին ժողովով այնպէս բարեկարգեցին զհայաստան աշխարհս, մինչև "առաջին զամենայն ժողովուրդս երկրին Հայոց իբրև կարգ միաբանութեան վանականաց համաշխարհի, բայց միայն յամուսնութեան օրինացն": Այսինքն միայն ամուսնական կարգօք զանազանէին աշխարհականք 'ի վանականաց: Այսպիսի բարեկարգութիւք երարձ հայրապետն մեծ յաշխարհէս Հայոց զայն ամենայն չարութիւս յաճախեալս յայնժամ, զորս թուէ Բուզանդ Դ. 4: "Եւ էր այնուհետև տեսանել, ասէ Խորենացին, զաշխարհս մեր ոչ որպէս բարբարոս այլանդակեալս, այլ որպէս զքաղաքացիս համբաւացեալս". Դ. 20: Զներբող սրբոյ հայրապետիս կարես տեսանել փոքր 'ի շատէ յԱղգաւէր գիրսն սկսեալ 'ի 212 թղթահամարոյ:

Բայց առ սրբոյ հայրապետիս մեծ և ցանկալի համարէր գործ ողորմածութեան քան զայլ բարեկարգութիւնս իբրև գործի պատշաճագոյն ուղղիչ և կարգադրիչ բնաւորութեան ազգիս: Մանաւանդ Մամիկոնեան որ յետ մահուան Պապայ արքայի զօրավար եկաց աշխարհիս մերում, 'ի մեռանելն խրատել սկսաւ զամենեսին՝ այսպէս 'ի մէջ բերելով զպատուէր և զվարս մեծին Ներսէսի. "Աւելի զարդարութեան փոյթ արասջիք, ևս առաւել զողորմութեան. զի մեզ մեծ հայրապետն Ներսէս զայս համակ պատուիրէր. և ինքն յամենայն ժամ 'ի կենդանութեանն զայն գործէր, և այլոց ուսուցանէր առնել. զի ողորմէր աղքատաց, տնանկաց, գերեաց, ամայեաց, օտարաց, պանդխտաց. զի այսպէս ասէր նա. քան զողորմութիւն առնել, կամ քան զտուրս տալ, այլ ինչ մեծ և պատուական առաջի Աստուծոյ չիք". Բուզանդ Ե. 44: Եւ արդարև ազգ մեր բնաւորեալ միշտ յանգթութեան՝ "Որ բնաբար ողորմութեամբ էր յերկրիս մերում", ասէ Խորենացին, 'ի խոստութեան

Որ այսոքիւք մեծ եւ զարմանալոյ իրք այն են, զի 'ի քանդիլ ձեռակերտաց իւրոց յոմանց յուրացողաց, ոչ վհատէր ընաւ. այլ դարձեալ ձեռն արկեալ նորոգէր: Զի ըստ պատմելոյ Բուզանդայ, երկու ուրացեալք Մերուժան արծրունի եւ Վահան մամիկոնեան զօրօք Շապհոյ Պարսից արքայի յարձակեալ 'ի Հայս՝ քանդեցին զեկեղեցիս եւ զնեղիս յաւուրս Արշակայ Հայոց արքայի. իսկ մեծն Ներսէս յետ թագաւորեցուցանելոյ 'ի Հայս զՊապ 'ի ձեռն կայսեր Յունաց, 'ի խաղաղանալ երկրին՝ վերստին նորոգէր զնոսա. "Շինէր, ասէ, զամենայն աւերեալսն երկրին Հայոց. յանձն առնէր եւ մխիթարէր, դարմանէր եւ տեսուչ լինէր ամենայն աղքատաց. եւ զօրկունս եւ զաղքատս հանգուցանէր ,,. Ե. 21: Զայս ամենայն իմա վասն երկրորդ անգամ շինութեն:

Իսկ առհասարակ եկեղեցական կարգացն պայծառութի եթէ որչափ եւ որպիսի օրինակաւ հանդիսացաւ յաւուրս մեծին Ներսէսի, ստորագրէ Բուզանդ ասելով. "Եւ եղե խաղաղութի եւ նորոգութի յաւուրս նորա ամենայն եկեղեցեաց. եւ յաճախէր շուք պատուոյ ամենայն եպիսկոպոսացն ընդ ամենայն տեղիս Հայոց մեծաց: Եւ լուսաւորութի կարգի եկեղեցւոյ ամենապայծառ ծաղկեաց ամենամեծ լիութբ. կարգեցան կարգք կաթողիկէ եկեղեցեաց ամենայն վայելչութբ, եւ բազմացան կարգք որբութե պաշտամանցն, եւ պաշտօնէիցն յաճախութի: Եւ բազմացոյց զկարգս եկեղեցեաց 'ի շէնս եւ յանաշէնս. ասյն օրինակ բազմութիք կրօնաւորաց ,,. Դ. 4: Եւ այլուր դարձեալ. "Յաւուրսն Ներսիսի ընդ ամենայն երկիրն Հայոց կարգք պաշտաման եկեղեցւոյն մեծապէս պայծառացեալ էր, եւ բազմութի որոց պաշտօնէիցն կանոնեղացն: Եւ յիշատակ որոց վկայից յաւուրս նորա յամենայն տեղիս Հայոց մեծախուռն ժողովովք հանապազ պայծառանայրն, եւ պատիւ հարցն եպիսկոպոսաց յամենայն գաւառս Հայոց յաճախէր ըստ արժանի իւրեանց. եւ կարգք վանականաց եւ 'ի շէնս եւ յանաշէնս առհասարակ ծաղկեալ ,,. Ե. 31:

Ահաւասիկ համառօտագիծ պատկեր աշխարհաշէն մեծագործութեանց առն մեծի՝ հայրապետի որոյ եւ աստուածարեալ. զորոյ զնմանն որպէս ասացի՝ եւ դարձեալ ասեմ, զի եւ ընաւ իսկ չկարեմ լսել, չետես աշխարհ մեր. որ նախ քան զնա անմասնացեալ յամենայն բարեզարդութէ կարգաց, կերպարանափոխ եղեւ յաւուրս նորա. խաղաղութի 'ի նմա եւ բարեկրօնութի թագաւո֊

## ՄԱՆՈՒԷԼ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Օրավար եւ առաջնորդ աշխարհին յետ մահուան Պապայ արքայի. զոր այսպէս գովէ Բուզանդ. «Զօրավարն Հայոց Մանուէլ նուաճեաց զաշխարհս, եւ զամենայն մեծամեծս եւ զնախարարսն Հայոց առ ինքն ժողովէր... եւ ունէր զաշխարհ 'ի շինութեան... Մեծաւ իմաստութեամբ եւ բազում յաջողութեամբ աշխարհին Հայոց մեծապէս առաջնորդէր, որչափ եկաց ժամանակս». Ե. 37: Ըստ օրինակին մեծին Ներսէսի զիշխանութիւն իւր եցոյց բարեբարելով այլոց գործովք ողորմութեան, լինելով խնամող ամենեցուն եւ աշխարհաշէն. զորոյ 'ի պատմելն զմահն յիշատակէ նոյն պատմիչն ասելով. «Բազում եւ անչափ գանձս աղքատաց եւ կարօտելոց բաշխէր, իւրովք ձեռօք մատակարարէր. եւ բազում մատուցանէր յինչից իւրոց տայր յեկեղեցիս եւ 'ի վկայարանս, եւ բազում գանձս տայր ցքահանայապետսն... ամենայն մարդ երկրին Հայոց կոծ եդեալ մեծաւ աշխարհախումբ լային զնա առհասարակ աղաղակ եւ շինականք. զի ամենայն մարդ իբրեւ զհօրն 'ի կարի առնէին զնմանէ վասն քաղցրութեան մարդասիրութեան հեզութեան հանդարտութեան խոնարհութեան բարերարութեան՝ բարեխնամ զաշխարհաշէն անձն Մանուէլի: Ամենեքեան բերանացս հառաչէին զկնի նորա, կղկղալ կաթողին լինէին զիւրեանց քաջ զօրավարէն, զփրկչէն իւրեանց, զյաղթական զանուանին զարգասուէն». Ե. 44:

## ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

### ԴԱՐ Ե

Օամանէ գրէ Ղազար 11. «Մատուոր եւ քաջ այրն Վահան՝ տէրն Մամիկոնէից, զօրավարն Հայոց եւ մարզպանն՝ որ բազում եւ անհամար ուղղութեամբ աշխարհիս Հայոց 'ի ժամանակս իշխանութեան իւրոյ եղեւ արարօղ անձամբ, եւ զայլս յորդորելով զբազումս»: Իսկ 'ի Թղթ. 193. յիշելով զձարտարութիւն մամիկոնեան տոհմին 'ի հոգեւորական կրթութիւնս մանկանց, ասէ վասն Վահանայ. «Իւ զայսպիսի ինչ բարւոյ մատուցանս առնել առատ եւ հոգալ՝ առաւել եւս կամաւոր յօժարութեամբ յորդորագոյն էր սուագ որդին որդւոյն Համայեկայ՝ որում անուն էր Վահան:

վկայէ Յոհաննէս կաթողիկոս. «Առաջնորդ գտեալ յոգնապատիւ կարգաց և ուղղութեանց, շինութեան և խաղաղութեան, 'ի յառաջադիմութեան և բոլոր բարեմասն լրութեանն»:

## ՅԱՒՈՒՐՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

### ԱՇՈՑ

### ԴԱՐ Թ

Առաջին թագաւոր, և առաջինն յաշխարհաշէնս 'ի ժամանակին յայնոսիկ, յորս 'ի բազմաց հետէ չէր երևեալ այսպիսի ոք: Նա մանաւանդ 'ի պատճառս խնամակալ բարուց իւրոց և վարուց բարեկարգութեանն ընտրեցաւ թագաւոր. «Զայսպիսիս ապա տեսեալ, ասէ Յոհաննէս կաթողիկոս, քաջատոհմիկ պերճուն իշխանաց և նախարարաց Հայոց՝ խորհուրդ միաբանական առեալ թագաւորեցուցանել զնա 'ի վերայ իւրեանց՝ զեկուցանեն ամիրապետին»: Ընդ թագաւորելն՝ իսկ և իսկ բուռն եհար զշինութեան աշխարհին. եցոյց թէ փառք և մեծութիւն առաջնորդաց այն է, զի փոյթ կալցին զաշխարհաշէն գործոց հասարակաց օգտակար, և ոչ յահարեկել զժողովուրդն, որպէս ոմանք ասենն. «Եւ այնուհետև, ասէ, բազում և երևելի կարգս յօրինէր յաշխարհի տէրութեան իւրոյ, յօրինուածս տանց ազգաց, քաղաքաց, շինից, դաստակերտաց. և հարթ հաւատար ըստ իւրաքանչիւրոցն կատարէր կարգս, լեռնականաց, և ջերմահովիտ բարեխառն դաշտականաց»: Մինչև ոմն 'ի դէպ ելանել զոր ինչ Խորենացին ասէ վասն մեծին Տիգրանայ. «Եւ զամենայն ինչ զոր ինչ օրէնն է թագաւորութեան, և որ ինչ 'ի թագաւորութեան, և որ շուրջ զթագաւորութեամբ՝ ոչինչ իւիք կասեցուցանէր. և գրեթէ հարստագոյն և խոհեմագոյն քան զամենայն թագաւորութիւնս գտանիւր. և այսպիսի նորոգատուր թագաւորութեամբն բարձրացուցանէր զազգս թորգոմեան»: Թագաւորս այս բազմերախտ վաստակեցաւ մինչև ցմահ իւր 'ի սոյնպիսի գործս օգտակարս հասարակաց. զի զմահ նորա պատմէ լեալ «յետ փայլեցուցանելոյ նորա զամենայն ուղղութիւնս և յաջողութիւնս կարգաց և գործոց և գնացից հայաստանեայցս»[1]:

[1] Աւաղ զի չիք 'ի միջի պատմագրութիւն Շապհոյ Բագրատունւոյ՝ լսել զամենայն աշխարհաշէն գործս սորա:

## ՎԱՍԱԿ ԻՇԽԱՆԻԿ

Մ՛եծ իշխանին Սիւնեաց. որ «յաւէտ իմն ընդարձակագոյն զտուն տէրութե իւրոյ յառաջադրէր 'ի բոլոր բարեմասն լրութիւն. և կայր բազում խաղաղութեամբ ըստ ամենայն հանդերձի բարեպաշտութե». Յովհաննէս կաթողիկոս։

## ԳՐԻԳՈՐ ՍԱՐԻՓԱՆ

«Առ իմաստութիւն և յաղթողաձեռնութիւն և շքնութիւն բազմաւ անդր էր քան զպայմանն ճոխ զչափ հարցն իւրոց. բայց առաւել յեկեղեցեաց Քրիստոսի 'ի շքնութի և 'ի նորոգութի զմեծն վերաբերէր». Յովհաննէս կաթողիկոս։

## ԱՂՈՑ

Տոհմայր նախարարութեան իշխանիկ Վասակայ. «Ամենայնիւ յամենայնի շքնութեամբ զմեծն պարապեցուցեալ հայրենի տէրութե իւրոյ». Յովհաննէս կաթողիկոս։
Յարծրունիս եւ եղին այսպիսիք, զորս յիշատակեսցուք։

## ԳՐԻԳՈՐ ԴԵՐԵՆԻԿ

Իշխան Արծրունի, փեսայ նախայիշեալ Աշոտայ Թագաւորի. զորմէ ասէ Յովհաննէս կաթողիկոս. «Էր նա այր սէգ և զգաստ, և սօս 'ի գնացս ոտից, և զօրաւոր որդեամբք և բանիւ. և անօրինէր միշտ յամենայն ձեռնիւ բերիլ»։ Զորմէ առաւել բացայայտ գրէ Թովմա Արծրունի. «Դերենիկն առաւելայր և առատանայր օր ըստ օրէ առ շքնութի և խաղաղութի աշխարհիս, շինել և տածել և խնամել զաշխարհս ... և քաջավայելչապէս բարեձեւեայր կարգք սրբոյ եկեղեցւոյ Քրիստոսի». Գ. 1։

## ԳԱԳԻԿ ԱՐԾՐՈՒՆԻ

### ԴԱՐ Ժ

Առաջին Թագաւոր Արծրունեաց. զորմէ ասէ Թովմա Արծրունի. «Քաջութի և աշխարհաշէն խաղաղասիրութի հոգաբարձէր իբրև զհայր խնամածու 'ի վերայ աշխար-

հէօ Հայոց ... Բայց մեծարծաթութեանցն գոլով թագաւորին՝ զուտ և մաքուր մնալով յայսպիսի մեծամեծս ախտէ , խնամ ածէ ոչ միայն անձին զբօսանաց , այլ և բնաւ աշխարհին Հայոց . տայ զմթերս գանձուց 'ի ձեռս գործավարաց և արուեստաւորաց , պարսպաւորեալ ամրութիւ զգլուխս գաւառաւորս , և զանառիկ ամրոցս բերդից 'ի գաւառս և 'ի միջոցս երկրի 'ի պէտս ապաստանի փախուցելոյ 'ի հինից և 'ի խռովութեանց օտար ազգաց „ . Է . 6 : Իսկ զխաղաղութէ խօսելով զոր արար նա ընդ բոլոր աշխարհս Հայաստանի , այսպէս գովէ զնա . “Իբրև ըծով բազմացուցանէ զխաղաղութի 'ի Հայաստան աշխարհի . զոր և մեք բան զարդարև ասել ոչ զանգիտեմ . յառաջ քան զնա այսպիսում հանգիստեալ բարութե երկրիս մերում ասել ոչ է 'ի դէպ . և զկնի սորա լինել հանդերձեալ՝ իմանալ ոչ է կարողութի „ . Է . 3 : Նոյն իսկ Յոհաննէս կաթողիկոս՝ որ պատմէ թէ ինքն Գագիկ էր և եղբայր իւր՝ որք զՅուսուփ մուծին 'ի Հայս , ուստի զհետ եկին այնչափ աւերմունք , գրէ ապա թէ նոյն ինքն Գագիկ ուսեալ 'ի փորձոյ՝ խորշէր 'ի պատերազմելոյ ասելով . “Պտուղ պատերազմաց մահ է . և մահու հրաւիրանք յառաջս դժոխոց հայի „ :

## ԴԱՒԻԹ ԿԻՒՐԱՊԱՂԱՏ

Ի կարգս սոցա պարտ է դնել և զայս իշխան երևելի , զորմէ գրէ Լաստիվերտցի Ժ . “Էր այր հզօր և աշխարհաշէն , մեծապարգև և աղքատասէր . որ էր արդարև սահման խաղաղութեան . քանզի յաւուրս նորա հանգչէր ամենայն մարդ ըստ մարգարէութեանն ընդ որթով իւրով և ընդ թզենեաւ „ : Եւ Ասողիկ ասէ զնմանէ . “Էր այրն հեզ և հանդարտ քան զամենայն թագաւորս որ 'ի ժամանակիս յայս . և եղև նա պատճառ խաղաղութե և շինութեան ամենայն արևելեայց , մանաւանդ Հայոց և Վրաց . զի զգուշ պատերազմաց յամենայն կողմանց դադարեցոյց նա , յաղթօղ եղեալ յամենայնի շուրջանակի ազգաց . և թագաւորք բազում կամաւ հնազանդեցան նմա „ . Գ . 43 :

## ԱԲԱՍ

Թագաւոր Կարուց կամ Վանանդայ . զոր 'ի կարգս սոցա դասել արժան ցուցանեն բանք Ասողկայ Գ . 17 . և Մագիստրոսի . որոյ մնացեալ առեն զճանապարհս յաւա-

բոլոր բարեաց պարտաւորութեն պատարուն „: Եւ եթէ չէր սուտ լեալ սա յուսուլս մեր, և այլք պատմէին մեզ զբոլ զառաքինութիւն սորա՝ անհաւատալի և առաւելեալ պատմութի համարէաք իբրև զՀոմերոսին գրուածս որ զդիւցազանց: Սոյնպէս գրէ և Լաստիվերտցի Ժ. «Վահրամ այր հզօր և անուանի, և բարեպաշտութե յոյժ մեծ, որպէս թէ ոչ ոք հաւասար նմա „: Նաև ըստ կենակցութեն և ընտանի և քաղցր բարուց մեծապէս գովէ զնա նոյն մատենագիր՝ կոչելով «Հեզ և հանդարտ, արդարադատ և անաչառ, առ ամենեսին զուարթ, անոխակալ և անյիշաչար ... Զի՞նչ արդեօք զգոյդ բարերարութե ասացից որ ըստ հոգւոյ և որ ըստ մարմնոյ. որ երկոքումբք գերապանծ և անհամեմատ եղեալ, պատկառելի և նախապատուելի յոգւոց գտեալ ազգաց, որ զրեթէ և ոչ թշնամի կամ հակառակող ոք երևեալ՝ բանս ինչ համարձակեալ կամ պարսաւանս մի և միոյն իւիք 'ի քեզ հնարեցան բարբառել ... և եթէ ոք նախանձով հրացեալ վառէր, ոչ համարձակիւր ընդ ընկերի իւրում շըրշնջել չարութեամբք անզգամ „:

## ՌՈՒՍԱԴԱՆ

### ԴԱՐ ԺԳ

Թագուհի Վրաց, այլ հայկազուն 'ի բագրատունի տոհմէ. եղև նորոգիչ եկեղեցեաց, որպէս գրեալ գտանի 'ի յիշատակարանի մատենագրութեանց սրբոյն Բարսղի երկաթագիր գրեալ. ուր ասի վասն Բարսղի կաթողիկոսի. «Յամենեցունց եղև պատուեալ ըստ արժանւոյ, ևս առաւել 'ի մեծ ամիր սպասալարէն յԻւանէէ, և 'ի զուգակցէ նորին 'ի բարերարէր Թագուհւոյն Ռուսադանայ, որ էր յազգէ բագրատունեաց մերոց կորուսեալ ազգիս Թագաւորաց. որ ցուցանէր զգութ հարց իւրոց, և նորոգէր զիւրոց նախնեացն սէր առ ամենեսին, առ հեռաւոր և մերձաւոր ուխտս սուրբս: Քանզի ամենայն տեղի որ 'ի նախնեաց սորա շինեալ էին և նուաղեալ յետոյ, 'ի սորա աւուրս պայծառանային և նորոգէին վերստին, եթէ 'ի մերում գաւառիս և եթէ 'ի գաւառին Անւոյ՝ սեփհական քաղաքին իւրեանց, և 'ի նոյն իսկ յԱնի, և եթէ 'ի գաւառին Դըւնայ „:

Պատմեն և այլ ինչ ինչ 'ի մնացորդութեան ազգիս ընդ հանուր գիտելիք բառ բարելաւութեան մասին, այլ ոչ յիշատակեալք որոշակի 'ի գիրս. վասն որոյ և արտաքոյ կարգի մատենիս: Օրինակ իմն. ոչ ուրեք ընթեռնումք զմերոցն թէ պատերազմականքն էին և խնդրէին երբեք պատերազմ յարուցեալ 'ի վերայ այլոց ազգաց ընդարձակելոյ ազատազաշխարհ և զանէութիւն իւրեանց, որպէս սովոր էին այլք յազգաց, այլ 'ի պաշտպանել միայն: Զի սկսեալ 'ի Նախահօրէն Հայկայ այսպէս գտանեմք գործեալ, թէ Հայկ պատերազմեցաւ 'ի վանել միայն զբռնութիւն Նեբրովթայ. Արամ պատերազմեցաւ 'ի վանել զբռնաւորս՝ որ յերից կողմանց եւս արշաւեալ գրաւեալ էին զհայրենին երկիրն. իսկ 'ի Հայկայ մինչև ցԱրամ ոչինչ պատերազմ յիշատակի. նոյնպէս և մեծն Տիգրան ել 'ի պատերազմ առ 'ի զերծանել 'ի ծառայութենէ Աժդահակայ, և առ 'ի աջակից լինել Կիւրոսի: Ըստ այսմ է տեսանել և յԱրշակունիս, յորս նոյն իսկ միջինն Տիգրան մարտեաւ յարձակեցաւ առ 'ի զերծանել 'ի տիրապետութենէ հռոմայեցւոց. մեծն Խոսրով յարձակեցաւ 'ի վերայ Պարսից առ 'ի վանել զբռնութիւն սասանեանց զոր գործեցին 'ի վերայ պահլաւեանց իւրոց ազգականաց. զԱրտաշէս Ա. միայն գտանեմք յԱրշակունիս ինքնաշարժ ըստ կամի յարձակեալ 'ի վերայ այլոց ազգաց, եւս և Յունաց, 'ի տիրապետել և յընդարձակել զաշխարհ տէրութեան իւրոյ: Իսկ յաւուրս Բագրատունեաց ամենայն պատերազմունք իւրեանց մղեցան առ 'ի վանել զարաբացիս, զհիւսիսականս, ապա զթուրքս սկիւթացիս տուղրիլեանս որ 'ի զարմէ սելճուգեանն, և ապա զմուղալ թաթարս:

Ընդ բարելաւութեանս այսոցիկ մարթ էր գտանել և զազգիս հեզահամբոյր բնաւորութեան. այլ քանզի չէ այդ հաստատուն և միշտ առաքինութիւն 'ի նմա, զանց առնեմք: Ճիշդ զի, թէ չթուիցի ինչ ծանր զոր ասեմս, հեզութեան նորա անցանէ ըստ չափ առ օտարազգիս, և բարեհամբաւեալ է յոյժ. այլ առ համազգիսն սրտմտութիւն և վրէժխնդրութիւն, և այլք 'ի դժնդակ ախտից, զորոց ժամ է խօսել:

## ՅՕԴՈՒԱԾ Դ

Բնական ծնունդներն և ախտք աշխին ։

Որ միանգամ խնդամուտ լինել կամիցի պատմութեան աշխին, և գլխաւոր պատճառացն աւերելոյ աշխարհիս մերում, զոյգ է յառաջիկայ ծաւալս զախտս և զմոլութիւն բնաւորեալ յազգի մերում առաւել քան զարտաքինս թըշնամիս. որպէս վկայէ և Յոհաննէս կաթողիկոս յասելն. «Ի տանէ առաւել, քան յօտարաց բռնաւ մարտ դաւաճանութե»։ Արդ քննողի պատմութիւնն աւերածոյ աշխարհիս կից է ընդ բարոյական կրից, հարկ է մեզ ըստ կարգի տալ տեղեկութիւն վասն այսր. նախ՝ զոր ինչ գրեն արտաքինն մատենագիրք զբարուց աշխին, ապա մեր մատենագիրք ։ Ստրաբոն ժա. 525. 'ի ստորագրելն զՄարս ասէ. «Բարք գրեթէ նոյն են Մարաց և Հայոց. զի և աշխարհն նման է»։ Զայս բան չէ պարտ ճշգիւ առնուլ վասն համօրէն աշխարհիս մերոյ. քանզի ընդ միջնաշխարհ մեր, ուր էր Արարատ նահանգ արքայանիստ, չէր այնչափ ինչ ծանօթ արտաքնոց. այլ պարտ է յաւէտ իմանալ վասն նահանգացն որք սահմանակից էին Մարաց. յորս գլխաւոր պարտ է համարել զՓայտակարան նահանգ, յետ նորա զԿորճէս և զՊարսկահայս, որք և կոչին Կորդուք և Հեր և Զարևանդ գաւառ. զորոց զբարս արդարև Մարաց նմանիլ ցուցանեն և բանք մերոց պատմագրաց ։ Յայնժամ մարթ է և 'ի վերայ հայկազունս բնակչաց սոցին ստուգել զմիւս բան նորին Ստրաբոնի, որ ժա. 524. ասէ վասն Մարաց պարապիլ յաւազակութիւն. զի արդարև վասն հայկազունս բնակչաց Փայտակարանի և Կորդուաց՝ որք խառն բնակէին ընդ Մարս՝ անկ է կարծել զնոսա 'ի գործ աւազակութեան պարապեալ ։

Այլ թողեալ զմանաւոր նահանգացն՝ նաև 'ի համօրէն ազգս մուծեալ երևի բարք Մարաց. զի բարք նոցա էին փափկասիրութիւն, ըստ հաճոյից անձին վարել, ոչ լինել ընդ խրատու այլոց, այլ 'ի մանկութէ ուսանել 'ի կատարել զկամս իւր, որպէս ցուցանեն զանազան բանք պատմագրաց. արդ այս ախտք են որք երևին նաև 'ի յետագայ արշակունի թագաւորս մեր ։ Եւ զի 'ի յաճախ կենակցութ

Տիգրանայ նախ ստորադասեալ երկու թագք Մարաց. ապա մուծաւ թագք և կրթուէ Պարթևաց 'ի ձեռն Վաղարշակայ. և ապա դարձեալ մուծաւ թագք Մարաց: ԶՊարթևացն ակնարկէ Տակիտոս[1]. «Հայք, ասէ, անհաւատարիմք գոլով զերկոսին ես զօրսն կոչէին՝ ըստ դիրից երկրին և ըստ նմանութեան բարուց ընդ Պարթևս մօտաւորեալք, ընդ որս և ամուսնութեամբ խառնեալք, անծանօթք ազատութեան, յաւէտ անդր առ ծառայութիւն յօժարամիտք»: Իսկ վասն միջնակի իւրոյ ժամանակին, այսինքն յորժամ էր. Արտաշէս թագաւորէր 'ի մէջ, պարտ է իմանալ զայն բանն նորա[2], ուր 'ի յիշելն զՀայաստան՝ ասէ. «Այս ազգ անծանօթ իմն էր 'ի նախնումն ըստ բնաւորութեան բնակչաց և ըստ դիրից երկրին, որ հարուստ տարածութեամբ յարակցեալ կայ մերոց գաւառաց (Հռոմայեցւոց), և համարէին առ Մարս թեակողմեալ, որոյ և անկեալ գոլով 'ի մէջ մեծազօր տէրութեանց՝ յոլովակի անմիաբանս գտանին. ընդդէմ Հռոմայեցւոց ատելութեամբ բերեալ, իսկ ընդդէմ Պարթևաց յաշտողմամբ»: Այլ զմիւս բանն նորին Տակիտոսի զոր ասէ զկնի, պարտ է իմանալ վասն Հայոց բնակելոց 'ի փոքր Հայս, մերձ 'ի Պոնտոս գաւառ. ուր ասէ վասն Զենոնի որդւոյ Պոլեմոնի արքային Պոնտոսի. «Սա անդստին յառաջին տիոց մանկութեան զբարուց և զսովորութեանց Հայկազանց նախանձ բերեալ, զորսորդութեանց և զշուայտութեանց, և զայլ որ ինչ սովորեալ ունին բարբարոսքն (Հայք, յայտնմանէ) յինքն յանկուցեալ ունէր զսիրտ նախարարաց (Հայոց) և զժողովրդեանն»: Բարբարոս կոչել զհամօրէն ազգն նաև 'ի նամակին Ատտիկոսի Յունաց պատրիարգին Բիւզանդիոյ գտանեմք առ Խորենացւոյն Գ. 57. զի գրէ առ մեծն Սահակ. «Բազում գոհութիւն մատուցանեմք յաղագս քո բարեհամբաւութեանդ 'ի մէջ այդպիսի բարբարոս ազգի»: Ի յետագայ ժամանակս նաև յայլոց սահմանակից ազգաց Վրաց և Աղուանից ինչ ինչ մուծեալ 'ի մերս կարծեմք 'ի կողմանէ բարուց, և առաւել յԱսորւոց 'ի հայկազունս բնակիչս Միջագետաց և հարաւակողման փոքուն Հայոց. ըստ որում յաւուրս քրիստոնէութեան կարի իմն ընտանութիւն գոյր ընդ նոսա, որպէս ցուցանեն պատմութիւնք:

Իսկ այսպէս զժամանակ եղծմանն և ապականութեան բա-

1 Տակիտոս, Տարեգրութիւն. գիրք ԺԳ. գլ. 34:
2 Տակիտոս, Տարեգրութիւն. գիրք Բ. գլ. 56:

բուց յաշխարհիս մերում՝ դատանեմք նախ 'ի ժամանակս կռապաշտութե յաւուրս Հայկազանց յետ մեծին Տիգրանայ, որպէս յիշեցաք 'ի վերոյ. երկրորդ 'ի ժամանակս քրիստոնէութե յաւուրս Արշակունեաց, յորժամ չորեքին վերջին թագաւորք իշխէին, որք են Է. Տիրան, Ը. Արշակ, Պապ և Արտաշիր: Զի ըստ դրելոյ Բուզանդայ. յորմէհետէ Հայք ծանեան զաւէր յետ դառնալոյ 'ի քրիստոնէութն յաւուրց սրբոյ Տրդատայ, "Արար (Աստուած) խաղաղութի, և լռեցոյց շուրջ զթշնամիս նոցա, զի ցածոյց ամէր զմարտ պատերազմացն 'ի սահմանաց նոցա, և մինչև յայն ժամանակ (մինչ 'ի Տիրան թագաւոր) ոչ ընդումեք ընդ զայնն ամբոխի կամ խռովութե, և 'ի մեծի խաղաղութե էին մնացեալք »: Գ. 17: Բայց խօսելով սոսա վասն ժամանակին Տիրանայ ասէ. "Այսպ 'ի ժամանակին յայնմիկ յորոյ զօրացոյց (Աստուած) զզօրութիւն սահմանակցացն շուրջ յամենայն կողմանս զթշնամիս նոցա. և ոչ մի ոք 'ի թագաւորացն Հայոց ոչ ոք դատանէր նոցա բարեկամ, այլ ամենեքեան թշնամիք »: Զնոյն երկրորդէ և Մեսրոպ Ե. "Աշխարհս Հայոց 'ի մահուանէ Յուսիկանն մինչև 'ի մեծն Ներսէս խառնակեալ էին 'ի Ճանապարհացն Աստուծոյ 'ի մեծամեծաց մինչև ցփոքրիկունս. և գործէին զմեղս համարձակ իբրև զՍոդոմ. վասն այսորիկ եթող Աստուած 'ի ձեռանէ իւրմէ, և մատնեաց զնոսա 'ի ձեռս թշնամեաց իւրոց. և նեղէին զնոսա յամենայն կողմանց »: Եւ արդարև նախ պատմութի վարուց մեծին Ներսէսի յայտ առնէ, թէ նախ քան զնա յոյժ աղաւաղեալ էր բարոյականութի յաշխարհի մերում, մանաւանդ 'ի մէջ մեծամեծաց. վասն որոյ նախարարք ըստ Բուզանդայ Գ. 3. ասացին առ Արշակ արքայ, թէ որպէս յարշականի գեղէն նորոգեաց Աստուած զթագաւորութի Հայոց նստուցանելով զձեզ, "այնպէս պարտ է 'ի յայնմ զաւակէ նորա գել զհոգևոր նահապետութիւն. զի ընդ նորոգել այնր աթոռոյ, առեն, նորոգեսցին պայծառ վարք աշխարհիս Հայոց »: Եւ թէ քանի վատթարեալ էին յայնժամ բարք՝ ցուցանէ ժողովն զոր արար նա ինքն մեծն Ներսէս 'ի յուղղել զմոլորութիւնս զորս թուէ Բուզանդ Դ. 4:

Յետ բառնալոյ թագաւորութե Արշակունեաց մինչև 'ի սկիզբն թագաւորութե Բագրատունեաց՝ երկու համ աշխարհական աւերմունք աշխարհիս՝ մի 'ի Պարսից յաւուրս Յազկերտի, և երկրորդ յարաբացւոց յաւուրս Բուղայի՝ յայտ առնեն զապականութի կրից մոլութեց աւերելոց

յայնմ ժամանակի. քանզի երկոցուն ևս աւերման պատճառք՝ եղեն երկպառակութիւնք, քսութիւնք և մատնութիւնք մերոց իշխանաւորաց, որպէս ունիս տեսանել ստորև։ Յայնմհետէ ոչ տեսանի փոփոխութիւն ինչ 'ի բարեն յընդհանուր աշխարհիս, այլ 'ի մասնաւորս ոմանս. որպիսի ոք եղեն ա. Աշոտ, և ա. Սմբատ Թագաւորք։ Արդ կամելով որոշ ինչ տեղեկութիւն առնուլ զբարուց իւրաքանչիւր ժամանակի Արշակունեաց և Բագրատունեաց, առաւել 'ի գործոց Թագաւորաց մերոց մարթ է գուշակել զբարս՝ որ յայնժամ տիրէր յարքունիս նոցա. զորոց կարես տեսանել 'ի գլուխն Կառավարութեան եղեալ ըստ կարգի ժամանակագրութե. զի առ պատմագիրս մեր չիք ինչ գտանել որոշ յիշատակութիւն յաղագս այսորիկ. այլ միայն վասն տեղեաց և գաւառաց ինչ դուզնաքեայ յիշատակութիւնք, որք են այսոքիկ.

Սիւնիք. Զբնակիչս կողմանց ինչ սորա Կորիւն կոչէ "Գազանամիտ, վայրենադոյն, Ճիւաղաբարոյ"։ Ի սոսա որպէս յարեան արք պատուականք ամենայն մասամբք կատարեալք, որպէս Ստեփաննոս սիւնեցի և Սահակադուխտ, եղեն նոյնպէս անօրէնք ծայրայեղ խստորեալք 'ի չարիս, որպէս Վարազվաղէն, Վասակ, Գդիհոն, և Փառանձեմ տիկին. զի յայդ իսկ բնաւորեալ են բնակիչք գաւառիդ՝ յամենայնի անցանել ըստ չափ և ըստ պայմանն, գոլով նոցա սերունդ բնիկ հայկազանց. զի և ազգս մեր նոյնպիսի է ըստ բարուցն յընդհանուր մտածեալ։

Մոկք. Զխստութի բարուց սոցա զանազան անուամբ բացատրէ Յովհաննէս կաթողիկոս յասելն. "Գնայ յՈւտի գաւառ առ 'ի հնազանդել զխրոխտ ապստամբութիւնն Մովսիսի, զոր իւր իսկ կացուցեալ էր զնա իշխան և հրամանատար Ճուաղաբարոյ ազգացն այնոցիկ Ուտի գաւառին... Մինչդեռ Թագաւորն առկայացեալ յՈւտի գաւառի համոզել նուաճել զխստապարանոց աւազակուտ մարդիկ աշխարհին"։ Եւ այլուր. "Հասանէ յՈւտի գաւառ. և առեալ անդ զնուաճեալսն առ ինքեամբ, զաղխատորայղն բանիւք համոզեալ... և որպէս սանձիւք ոմամբք բարեզգեաց բանիւք 'ի բաց ձնշեալ զխեցբեկագոյն բարս նոցա, ածէր ընդ ինքեամբ 'ի հաստատուն խորհուրդս"։ Իսկ ուրեք զԳուգարաց և զուտէացւոց միանգամայն աղխատորայղ բարուք լինել ասէ. Թէպէտ և զՈւտի գաւառն կոչէ՝ սիրեցեալ գաւառ Աշոտոյ Շահնշահի. Թերևս վասն դղեկցն, և ոչ վասն բնակչաց։

ակց 'ի ձեռն մերոց քաջազանց գործէր կատարեալ յաղթութիւն ընդդէմ թշնամեաց իւրոց. և 'ի ձեռն մերոց ահեղ և զօրաւոր հանդիսանայր, զոր և յայտ առնեն պատմութիւնք ժամանակին. զի յորժամ նախարարք մեր 'ի հալածանս գոլով ոչ գտանէին 'ի բանակին Պարսից, յանժամ տկարանայր պարսիկն և յաղթեալ լինէր 'ի Քուշանաց, 'ի Հեփթաղաց և յայլոց: Արդ եթէ և նովին հաւատարմութեամբ և միաբան հոգւով պատերազմեալ էին նախարարքն մեր վասն ազգին իւրեանց՝ որպէս պատերազմեցան վասն Պարսից, չէր էր ինչ աշխարհս մեր 'ի հալածանացն Յազկերտի: Այլ տես ինձ թէ 'ի նմին իսկ 'ի պատերազմին Վարդանանց քանի՜ քանի՜ երկպառակութիւնս յարուցին երևելի նախարարքն: Վասակ Սիւնեաց իշխան անօրէն փառասիրութեան անձին զհետ կրթեալ, խորհէր զամենայն հնարս հայթհայթել առ 'ի դերև հանել զխորհուրդ մեծին Վարդանայ և ամենայն նախարարաց նորա: Վահան ամատունի զնոյն ինքն զՎասակ խորհէր կործանել վասն հնացեալ ոխութեան ընդդէմ նորա: Վարազվաղէն փեսայ նորին Վասակայ խորհէր և գումն գործէր վրէժ առնուլ 'ի նմանէ: Անդաղան անուն ոմն ոստանիկ մատնէր Պարսից զխորհուրդ նախարարաց մերոց, զոր խորհեցան: Եւ այլ զի՞ գիտեմ քանի՜ քանի՜ առանձին հերձուածք 'ի վեր երևեալ յայնժամ տկարացուցին զանպարտելի զօրութիւն քաջացն Հայոց, զորոց խօսի Վահան մամիկոնեան սպարապետ առ Միհրան զօրապետ Պարսից. " Դուք ամենայն Արիք լուայք և տեսէք, և ոչ բազում այրուձիոյ, այլ հարիւր արամբ՝ և կամ եւս նուազիւ՝ զհազար և զերկուս հազարս այր փախուցեալ է (մեր) ողջք. և յայսմ կռուի մի զայս զմտաւ ածեալ պարծիք, թէ աւելի ինչ քաջութեամբ յաղթեցէք մեզ. այլ 'ի մեր երկպառակութենէ և 'ի նենգելոյ եղև մեզ վնաս,,. Ղազար 239:

Երկրորդ աւերումն եւս նոյնպէս եղև յերկպառակութէ մերոց իշխանաւորաց յաւուրս արքայացւոց 'ի ձեռն Բուղայի. մանաւանդ զի 'ի բանից Յովհաննու կաթողիկոսի երևի թէ նաև 'ի սկզբան անդ 'ի վեր երևելոյ արքայացւոց՝ յանմիաբանութէ նախարարաց մերոց իշխեցին նոքա արշաւել 'ի Հայս. քանզի յետ հալածեալ լինելոյ հրամանատարին Դաւթի սահառունւոյ, գրէ. "Եւ վասն զի նախարարք ազգիս մերոյ անմիաբանք լեալք, և ոչ որք էր որ սմա զօրավարիցէ, (կամի ասել թէ ոչ միաբանէին և ոչ իսկ 'ի կարգել զօրավար.) յայնժամ ապականեալ

զօրն Հայկազանց համարձակութեամբ առեալ յասսորեստան կողմանէ ապաստանակ 'ի Հայս սփռեցին. և ըստ օրինակի հրացայտ իմն հրդեհի ձայնակ ընդոյ նորա վաղվաղակի հասանէր յԱյրարատ գաւառ՝ հարեալ զդաշտավայրն ամենայն, և պաշարեալ պատերազմաւ զԴուին քաղաք ,,: Այս առաջին ապստամբութիւն էր արաբացւոց: Եւ ասէ թէ նաև յայլ նուագս յորժամ միաբան լինէին նախարարք մեր և կացուցանէին զոմն գլուխ, յայնժամ խաղաղէր աշխարհս հայաստան. որպէս եղև արդարև յորժամ Պ. Ներսէս կաթողիկոս եւ կացուցանել զՍմբատ զորդի Վարազտիրոցի 'ի կուրապաղատ, և զԹէոդորոս Ռշտունի 'ի զօրավար. զի յայնժամ, ասէ, "պայազատեալ ապահովանայր առ ժամանակ մի 'ի չար հինից Հագարու աշխարհս մեր ,,:

Իսկ յարձակումն Բուղայի զորմէ առաջիկայ բանս է, թէ որպէս յերկպառակութէ մերոց իշխանաց եղև, այսպէս որպէս առեալ ծանուցանէ Թովմա արծրունի. "Թէպէտ (մինչև ցայնժամ) նեղեալք և չարչարեալք լինէաք պէսպէս կոտորածոք... այլ սակաւագոյնք և առ փոքր ինչ ժամանակս... քանզի դեռ միաբանք և միախորհուրդք և հաւատարք առ միմեանս բնակէին իշխանք Հայոց ապատագունդ բազմութ, և զօրացին նոցա. Թէպէտ և 'ի ծածուկ ունէին զերկբայութիւն նենգութեան: Իսկ իբրև սկսաւ սպրդել մտանել 'ի ներքս երկպառակութիւն 'ի մէջ միաբանութեանն՝ հերձեցաւ մեկնեցաւ գնաց շնորհ աստուածատուր զօրութեանն, և խորհուրդք խորհրդականաց ոչինչ համարեալ լինէին 'ի գործս մարտից և յայլ կարգս հոգաբարձութեան աշխարհիս. և զոր օրինակ որք զգոլոր անգամն մարմնոյ յօշեցէ 'ի մասունս, և ոչ երբէք տեսակ կենդանի մարդոյն... այսպէս տակաւին 'ի բազումն քայքայեալ լինէր միաբանութիւն աշխարհիս. և իւրաքանչիւր որք այր զընկերէն և զերդօրէ իւրմէ 'ի չարիս խոկային. և թուղթս և դեսպանս առ Թագաւորն (առ ամիրապետն) յղէին ծածուկս 'ի միմեանց. այլ և ընդ միմեանս արկանէին բանս քսութէ: Եւ ոչ որք մնայր գէթ երկու 'ի միասին. և յայժ ուրախ առնէին զթշնամին 'ի քակել միաբանութե իւրեանց... և առ սոսա...'ի դէպ եկանէ և հին առասպելն Ողիմպիանոս փիլիսոփայի որ վասն առիւծուն և զուարակացն են բարեկամութիւնք. անդէակ են այսմ ուսումնասէր անձինք ,,. Պ. 1:

Իսկ արդարև յաւուրս Ա. Սմբատայ արքայի իբրև մեծ

էին համարեալ պատմէ Յովհաննէս կաթողիկոս զմիաբան լինելն նախարարաց առ ժամանակ մի, ասելով. «Յետ այսորիկ արքայ Սմբատ իբրեւ ետես զմիատարր խաղաղութիւն մշտնջենաւորեալ 'ի Հայս, և միաբան ընդ նմա լինել նախարարացն յուխտ սիրոյ, եդ 'ի մտի իւրում երթալ... նուաճել զաշխարհն Տարօնոյ»: Այլ յորժամ այսպէս օր ըստ օրէ զհետ էր յառաջանալոյ, փոխանակ զի ամենայն իշխանաց անկ էր յայնժամ միանալ ընդ Սմբատայ առ 'ի զօրացուցանել զթագաւորն իւրեանց, այսմ ընդդէմ տեսանեմք զամենեսին փետեկեալ յարքայէ և յիւրեանց. զի 'ի միոյ կողմանէ Մոկաց իշխանն Մուշեղ և Անձեւացեաց իշխանն Գուրգէն, երկոքեան եւս ալեւորեալ հերօք՝ ասէ նոյն ինքն պատմիչն, մտին հակառակութեան 'ի մէջ իւրեանց բորբոքեալ սաստիկ պատերազմէին ընդ իրեարս, մինչև Մուշեղ սպանաւ 'ի Գուրգենայ: Իսկ 'ի միւս կողմանէ Գագիկ իշխանն Վասպուրականի գաղտ միաբանութեամբ կալեալ ընդ Աշոտոյ բռնաւորին, զամենայն զօրս Սմբատայ ընդ դժուարակոխ Ճանապարհ տալով անցուցանել այնպէս լքուցանէր իբր գանեալս և յողալոյծս, մինչև, ասէ, «տեսեալ զայն արքայի, և իմացեալ թէ յայնմհետէ ոչ յաջողի նոցա գործ պատերազմին՝ յետկոյս զինքեանս մղեալ 'ի փախուստ դառնային»: Ահա այս ամենայն երկպառակութիւնք են զորս լուեալ և տեսեալ Աշոտին ոստիկան, համարձակեցաւ դիմել 'ի վերայ Սմբատայ. և իբրև եհառ զբերդն Կարուց, և գերեաց զոտիկինն և զայլս որ 'ի նմա, պատանդս խնդրէր 'ի Սմբատայ արքայէ առ 'ի արձակել զնոսա. «Իսկ արքայ, ասէ, ոչ տեսեալ զհարթայարմար միաբանութիւն նախարարացն ընդ ինքեան, և ոչ այլ ինչ իրին ելի աղագս դնեալ, այլ ակամայ կամօք 'ի կամս նորա դառնայր, տալով զԱշոտ որդի իւր և զՍմբատ եղբօրորդի 'ի պայման պատանդաց. այլ և զդուստր Շապհոյ կրսեր եղբօր իւրոյ 'ի կնութիւն նմա»:

Այս երկպառակութիւն և անմիաբանութիւն էին պատՃառք այն ամենայն հարուածոց որք եկին հասին 'ի ձեռաց Յուսփայ յաւուրս նորին ա. Սմբատայ և բ. Աշոտոյ. վասն որոյ և Նիկողայոս պատրիարք Յունաց յիշէ զայն 'ի թուղթն իւր որ առ Յովհաննէս կաթողիկոսի. Պարտ է ձեզ, ասէ, «դադարեցուցանել զոնէ 'ի հակառակութենէ չարութեանդ որ ընդ միմեանս... մտանել զընդ միմեանս հարուածս, և նայել 'ի սէր և 'ի միաբանութիւն և 'ի հաշտ խաղաղութիւն ընդ միմեանս և ընդ հասարակ իշխանս Հայոց

և Աղուանից, և միանալ միաբան... գուն գործել և 'ի բաց 'ի միջոյ բառնալ զչար հակառակութիւն դոցա... զի այդպէս միախոհք և միաբանք լինելով մի եւս կարաղասցի ինչ 'ի վերայ աշխարհիդ ձերոյ ապականիչ չարն »: Եւ արդարև քանի՜ անհեթեթ էր և վնասակար, յորժամ երկոքին Աշոտք՝ երկու հօրեղբօրորդիք գոլով զանուն թագաւորի առեալ մարտնչէին ընդ միմեանս, և զերկիրս միմեանց իբրև զօտարաց աւերէին. « Երկաքանչիւրքն նոքա իբրև զօտարածին թշնամիս ընդ միմեանս 'ի դըրդուութի մարտից մարտուցեալ, քաջահնար լինէին զմիմեանս ելանել 'ի հակառակութիւն և 'ի կռիւս »: Բայց ընդ հաշտիլն երկոցուն նոցա ընդ միմեանս՝ իսկ և իսկ յաջողեցան յայնժամ արդիւնք խաղաղութեան. զի որպէս գրէ անդէն, յետ հաշտութեան երկոքին նոքա միաբան եկին 'ի վերայ Դունայ, և ընդ գալն՝ նախժամայն յինքեանս գրաւեալ նուաճէին:

Այս ամենայն դիպուածք շատ իսկ յայտ առնեն զընդհանուր վնաս արմատացեալ ախտիս երկպառակութե. և յայտ յանդիման կացուցանեն թէ 'ի պատճառս ախտիս այսորիկ այնչափ և այնպիսի արիութի մերոց քաջազանց բոլորովին 'ի դերև ել [1]: Բայց և միւս մոլութիւք զոր սորա ունիմք յիշել, առաւել եւս յայտնի արասցեն:

### Բ. Նախանձ և Զրպարտութիւն:

Ընդ ամենայն պատմութի ազգիս եթէ յածեալ շրջեսցի մտօք կենցաղագէտ ոք իմաստուն, զախտ նախանձուն գտանէ արմատ երկպառակուե, զորմէ արդ իսկ խօսեցաք, և աղբիւր ամենայն չարեաց և հարուածոց աշխարհիս. որ և այնչափ տարածեալ է առհասարակ յազգս մեր, մինչև 'ի գտանելն զմի ոք աննախանձ զարմանալով իմն յիշէ Խորենացի, թէ Բագարատ յաւուրս փոքուն Խոսրո-

1 Յամենայն պատերազմունս, յորս լսեմք պարտեալ մերոց 'ի թշնամեաց՝ անդ գտանեմք երկպառակութի լեալ կամ 'ի նոյն իսկ 'ի զօրս պատերազմին, և կամ յիշխանս յառաջ քան զպատերազմն՝ յորս սակս ոչ գայցեն 'ի պատերազմ, մանաւանդ իշխանքն Վասպուրականի և Սիւնեաց. իսկ ուր միաբան հաւանէին զօրք իւրեանց. անդանօր լինէր յաղթութի: Յայս է այս 'ի պատերազմին որ ընդդէմ Աֆխազաց. ուր պատմէ Ասողիկ, թէ թագաւորն Հայոց Գ. Սմբատ, և թագաւորն Կարուց Աբաս եկին զօրօք, նաև « ամենայն զօրն Վասպուրականի, Սիւնեաց և Աղուանից իշխանքն միահաւանք լինէին ընդդէմ Աֆխազաց զօրուն. որոց երկուցեալ զխաղաղութի խնդրեն ». Գ. 28:

վու զիարդ պատմեաց արքայի ստուգութիւն առանց նա-
խանձու զմեծ քաջագործութիւնս Վահանայ զոր արար 'ի պատերազմի. ասէ. "Եւ սա դարձեալ յաշխարհն Ծոփաց Բագարատ, վկայ հաստատուն առանց նախանձու լինել առ արքայի վասն Վահանայ քաջութեանցն, և առաքինի դիպուածոցն". Փ. 9։ Վնասք այսր ախտի բազում են և համաշխարհական, յորմէ զերևելիսն եւեթ յիշեսցուք։

Ընդհանուր և մշտատև եղև վնաս նախանձուն զոր կրէր 'ի սրտի Վասակ Մամիկոնեան զօրավար Բ. Արշակայ արքայի ընդդէմ եղբօր իւրոյ Վարդանայ։ Զի Հապուհ արքայ Պարսից կոչեալ զբազմութիւն քահանայից յեկեղեցւոյն Տիզբոնայ, 'ի ձեռն նոցա երդումն ետ առնել Արշակայ թագաւորի 'ի վերայ աւետարանի՝ չյարել առ Յոյնս, այլ միշտ հաւատարիմ մնալ առ ինքն. այս երդումն և դաշնադրութիւն եղև 'ի ձեռն Վարդանայ. որով Վարդան ստացաւ փառս և պատիւ առաջի Շապհոյ, և սիրելի եղև նմա յոյժ։ Վասակ եղբայր իւր անհնարին հերձեալ 'ի նախանձուէ, որպէս զի խռովութիւն արկցէ 'ի մէջ երկուց թագաւորաց, և նովին առեալ արասցէ առաջի Շապհոյ զեղբայր իւր, յանկարծ փախեաւ առ Յոյնս։ Զայս արարեալ, այս հանդարտեցաւ սիրտ նորա, և յաջողեցաւ 'ի գլուխ ել որում ցանկայրն, և յաւելիս համարեցաւ եղբայր նորա յաչս Շապհոյ, սակայն անհնարին աղէտք զհետ եկին այնր. քանզի կատաղեալ Շապհոյ վասն այսր, զայն ամենայն քահանայս ոգիս առաւել քան զեօթանասուն առ հասարակ ետ կոտորել. և յետ այնորիկ ատելութիւն կալեալ և ընդդէմ քրիստոսական կրօնից՝ եհան հալածումն ընդհանուր 'ի վերայ ամենայն քրիստոնէից իւր [illegible] և խաբեբայ արանց. "Մի՛ գտցի յիշխանութեան իմում, ասելով, որ քրիստոնեայ անուն անուանեսցէ զանձն իւր". Բուզանդ. Դ. 17։

Այլ արդարև աւուրք Բ. Արշակայ թագաւորին՝ եղեն առհասարակ աւուրք սպանութեան և արեանհեղութեան իւրերաց 'ի պատճառս յաճախելոյ չարամտութեան և նախանձու 'ի վերայ միմեանց։ Միայն 'ի մախանաց եւեթ Տիրիթայ ընդդէմ Գնելայ քանի՛ քանի՛ խռովութիւնք յարեան և տարապարտուց սպանութիւնք. իսկ պատճառ և գլուխ նախանձուն զի՞նչ. քանզի պատիւ հիւպատոսութեան և գանձս ետ Գնելայ կայսրն Վաղենտիանոս վասն 'ի զուր սպանանելոյ իւրոյ զհայր Գնելայ զՏրդատ զեղբայր Արշակայ թագաւորի. յաւելան 'ի վերայ և այլ կալուածք և ինչք,

զի նաև ՚ի. Տիրան կուրացեալ Թագաւորին՝ հաւն Գնելայ՝ յուշ ածեալ Թէ Տրդատ ՚ի պատճառս իւր ՚ի պատանդի գոլով ՚ի Բիւզանդիոն՝ կրեաց զայն մահ տարապարտուց ՚ի կայսերէն, կարեկցեալ յոյժ ՚ի վերայ Գնելայ որդւոյն Տրդատայ, զիւր կալուածս և զինչս որք էին յԱյրարատ՝ եա նմին Գնելայ, հրամայեալ զի ՚ի նոյն կալուածս բնակեսցէ: Գնէլ առաւել ևս մեծացաւ յորժամ էառ ՚ի կին զՓառանձեմ յազգէն Սիւնեաց. զի ՚ի հարսանիսն անդ պարգևս առատս տուեալ ամենայն նախարարաց՝ սիրելի եղև յոյժ ամենեցուն, մինչև նոցա զորդիս իւրեանց տալ նմա ՚ի կրթութիւն: Ի բարեբաղդութեցս այսոցիկ և ոչ մի ինչ չիսաս հասանէր Տիրիթայ. այլ քանզի վառեալ մաշէր ՚ի նախանձուէ, զի մեծացաւ այրն, որպէս եթէ առ մեծութեան նորա նուաստ ոք և անպէտ համարեսցի ինքն, կամ լաւ ևս ասասցից, զմեծութիւն նորա զրկանս անձին իւրում համարեալ, որպէս սովորեցին ախտացեալքն ախտիւդ, սկսաւ թափել ՚ի դուրս զմաղձ դառնութեան սրտին: Գրգռեաց զԱրշակ արքայ թէ զի՞ կաս զի՞ յապաղես, ահա Գնէլ կամի սպանանել զքեզ, և ինքն փոխանակ քո թագաւորել. նշան այսմ՝ զի յԱյրարատ բնակէ, ուր միայն թագաւորաց է օրէն բնակել. և կայսրն սովին միօք արար զնա հիւպատոս, և եա գանձս, զի կարասցէ յինքն յանկուցանել զնախարարս: Ցայամ քսութեան եգիտ իւր ընկեր և զՎարդան մամիկոնեան զինակիր արքայի, որ երդմամբ վկայէր ականջալուր լեալ սպառնալեաց Գնելայ վասն սպանանելոյ զԱրշակ: Այս քսութիւն երկոցունց պատճառ եղև Արշակայ թագաւորի նախ հայրասպան լինելոյ: Զի հրամայեաց Գնելայ արտաքս ելանել յԱյրարատայ. Տիրան կուրացեալ թագաւորին բարկացեալ վասն այսր ՚ի վերայ Արշակայ, պատգամս խիստս առաքեաց առ նա. իսկ նա եա հեղձամահ առնել զհայր իւր զՏիրան յիւրոց ծննկապետաց. ապա սպան և զԳնէլ. զի տեսեալ առ Գնելայ այնպիսի պատրաստութիւն որոյ թագաւորական զոր չէր բնաւ տեսեալ, սակս նախանձու և սակս առաջինն կասկածանաց հրամայեաց Վարդանայ ՚ի յորսի անդ սպանանել: Մեծն Ներսէս անէծ զԱրշակ սակս սպանանելոյ զանմեղն Գնէլ. այլ նա փոխանակ ապաշխարելոյ՝ էառ և զգանձս Գնելայ և զՓառանձեմ զկին նորա: Անմեղութիւն պատանւոյն Գնելայ յայտնի է, զի Ճոխութիւնք ընչից իւրոց չէին տուցուածք զրկողութեան, չէր և չարամիտ ՚ի վերայ արքայի,

այլ հնազանդ յամենայնի. զի յորժամ հրամայեաց նմա արտաքս ելանել յԱյրարատայ՝ ել վաղվաղակի. և յորժամ հրամայեաց պատրաստել վասն որոյ՝ կատարեաց որպէս արժանն էր։ Այլ սակայն փոխանակ բարելաւութեցն ողջակէզ լինէր այրն արդար անօրէն նախանձուն Տիրիթայ և Վասակայ. որպէս և հայր նորա տարապարտ ցասման կայսեր։ Նոյն իսկ կին Գնելայ դուստր Անդովկայ Փառանձեմ բազում չարեաց և սպանութեց լինի պատճառ. զի տեսիլ գեղեցկութե նորա եղև պատճառ տարապարտ մահուան Գնելայ առաջնոյ առն իւրոյ. իսկ մահն Գնելայ եղև պատճառ մահուան Տիրիթայ. զի Փառանձեմ հռչակ եհան թէ Տիրիթ առ ցանկութե իւրոյ ետ սպանանել Արշակայ զԳնել զայր իւր. զայն լուեալ Արշակայ՝ ծանեաւ զստութի քսութե Տիրիթայ. զՏիրիթ սպան, և զՓառանձեմ ինքն էառ 'ի կնութի։ Ոխակալութի Փառանձեմայ եղև պատճառ կամ գործակից մահուանն Վարդանայ մամիկոնէի, թէ ընդէր սպան զԳնել զառաջին այր իւր, որպէս պատմէ Բուզանդ Դ. 18։ Նախանձ Փառանձեմայ 'ի վերայ Ոլոմպիադայ տիկնոջ՝ եղև պատճառ անլուր մահուանն սպանանելոյ զնա։ Իսկ չարամտութի հօր Փառանձեմայ որ կոչէր Անդովկ՝ համաշխարհական չարեաց և վնասուց եղև նիւթող՝ նոյնպէս 'ի պատճառս նորուն իսկ Փառանձեմայ։ Զի Շապուհ արքայ Պարսից արար ուխտ ուրոյ ընդ Արշակայ թագաւորի. և առ 'ի սիրով կապել՝ կամեցաւ զքոյր իւր տալ նմա 'ի կնութի. Անդովկ յայսմանէ կարծիս 'ի մտի եդեալ՝ թէ յառնուլն զնա Արշակայ 'ի կնութի՝ արհամարհեսցի դուստր իւր Փառանձեմ, միում 'ի նախարարաց Պարսից ետ ոսկի բազում, որպէս և այլոց նախարարաց, որք հաւանեցուցին Արշակայ՝ թէ այն ուէր Շապհոյ դաւաճանութի է, զի կամի սպանանել զքեզ. վասն որոյ առ 'ի գլուխ տանել զդաւաճանն, խորհեցաւ զայս ամուսնութի դստեր իւրոյ։ Արշակ այսմ եւս հաւատացեալ առանց քննելոյ, փախեաւ յանկարծ. և այս փախուստ նորա յանդէպս՝ անհնարին գրգռեաց զցասումն Շապհոյ. և եած ատելութի և թշնամութի չար և երկարատև 'ի մէջ Պարսից և Հայոց, որ տևեաց զամս երեսուն ըստ պատմելոյ Բուզանդայ Դ. 20. և 'ի հետևեալսն։

Որպէս յաւուրս Արշակայ՝ նոյնպէս և 'ի յաջորդ ժամանակս 'ի պատճառս նախանձու մերոց նախարարաց 'ի ներքս 'ի Հայս արշաւեցին ելուզակք արտաքացւոց. զի Վար-

դան գրէ վասն Հերակլեայ կայսեր, թէ “կարգէ զօրավար Հայոց զՄժէժ, զոր սպանեալ Դաւիթ սահառունի՝ և ինքն լինի իշխան հրամանաւ Հերակլի զամս երիս,,: Այլ ըստ պատմելոյ Յովհաննու կաթողիկոսի, “Յետ երկեամ մի անարգեալ զնա (զԴաւիթ սահառունի) նախարարացն և զօրաց իւրոց հալածեցան. և յայնմանէ ապա 'ի չար հակառակութէ նախարարացն և 'ի նանիր նախանձութէ դղրդեալ կործանեցին սպառ ոգուց զՀայաստանեայս. բայց միայն բարեպաշտ իշխանն Թէոդորոս ըստ սակաւաձեռն կարի զինակաց հինից թշնամեաց գտանէր,,:

Նա նախանձու դարձեալ կուրացուցին զանուանին Աշոտ վասակեան զառաջին նահապետ Թագաւորացն Բագրատունեաց. “Արձակէ հէշմ, ասէ Վարդան, զՄըրվան զորդի Մահմէտի 'ի Հայս. որ եկեալ կացոյց զԱշոտ բագրատունի կիւրապաղատ և կամ պատրիկ ածել. և մախային նմա Սմբատ և Դաւիթ և Գրիգոր մամիկոնեանք . . . ապստամբութ խորհեցան իշխանքն Հայոց, և ոչ կամեցաւ պատրիկն. և կալեալ կուրացուցին զնա մամիկոնեանքն Գրիգոր և Դաւիթ. սա է նախնի Թագաւորացն Հայոց և Վրաց,,: Տես զանհնարին չարիսն. զի զոր օտարազգի արաբացիք պատուէին, համազգիքն իւր կուրացուցանէին. որոյ չմիաբանելին ընդ նոսա յապստամբութի, յանմիաբանութէ համօրէն նախարարացն թուի լինել անշուշտ. իսկ քանի մի նախարարաց միաբանութի յայտնի տեսանէր թէ չէր բաւական յընդդիմադրութի այնչափ բազմութե արաբացւոց:

Միանգունակ և Յովհաննէս կաթողիկոս զայս մոլութի նախանձու ասէ լինել պատճառ նաև իսկ կռուոյ երկուց հոմանուն Աշոտոց, որք էին երկու հօրեղբօրորդիք հարազատք. “Եւ վասն զի, ասէ, 'ի վերայ երկոցունց նոցա թագաւորական անուանս կառուցեալ եղեալ էր, 'ի նախանձ չարակնութէ յաչաղմանն ընդ միմեանս բերեալ, վասն այսորիկ իսկ առաւել ընդվզեալ զչարեաւն իւրաքանչիւրք 'ի նոցանէ զիւրն խնդրելով կացուցանել,,: Նաև պատճառ ամենայն աւերմանց և արշաւանաց հինից 'ի հայաստան զնոյն զայս եդեալ պատճառ՝ այսպէս բողոք բառնայ զժողովրդենէ իւրումն ժամանակի. “Այլ և եղբայր ընդ եղբօր և ազգայինք ընդ ազգայինս ընդվզեալ՝ 'ի նախանձ և 'ի չարակնութի և 'ի գրգռութե և 'ի կատարեալ ատելութի ընդ միմեանս բերէին. և այսպէս համագունդ ընդ

միմեանս հարեալք՝ 'ի հակառակութիւն և 'ի կռիւ պայքարելին. և միշտ սուր յաղդեր ունելով բազում ևս քան զթշնամիսն հեղուին 'ի միմեանց զարեան ճապաղիս. և առ հասարակ զքաղաքս և զգեօղս և զաւանս և զագարակս, այլ և զտունս իւրեանց քանդէին ձեռօք իւրեանց։ Եւ գրեթէ այն իսկ ոճիրք հակառակութեան գտան պատճառք հինիցն եկելոց 'ի վերայ մեր,,։ Զի ինքեանք զբաղեալք առ 'ի զմիմեանս վատթարել՝ թշնամին համարձակ խաղայր ուր և կամէր յաւերել և 'ի յափշտակել։

Ո՛չ ապաքէն սոյն այս կիրք նախանձուն էր՝ որ եւս կործանել զԹագաւորութիւն Բագրատունեաց. զի Աշոտ կամելով ինքն թագաւորել որում ոչ անկանէր, յարեաւ ընդդէմ եղբօր իւրոյ Յովհաննու որ էր օրինաւոր թագաւոր. Յովհաննէս նեղեալ յեղբօրէն իւրմէ 'ի ներքին թշնամւոյ, նեղեալ և յարտաքին թշնամեաց, առ 'ի զերծանել միանգամայն յամենեցունց՝ եւ ձեռագիր յետկարաւ զԱնի 'ի ձեռս կայսեր Յունաց. ուստի ծագեցան ամենայն չարիք 'ի վերայ տանն Բագրատունեաց, մինչև վերջանալ թագաւորութեան նոցա։

Գ. Քսութիւն, Բանսարկութիւն։

Ախտս այս գործի է նախանձու. քանզի ամենայն մախացօղք սովաւ կորուսին զամենեսին զնոսա՝ զորոց ունէին ինչ նախանձ 'ի սրտի։ Արշամ թագաւոր կարի իմն զայրանայ 'ի վերայ Ենանոսի ասպետին բագրատունւոյ վասն արձակելոյ նորա զՀիւրկանոս քահանայապետ Հրէից զգերեալն 'ի մերոյն Բարզափրանայ. Ենանոս պատճառ էած վասն այսր զխոստումն նորին Հիւրկանու 'ի վճարել հարիւր քանքար 'ի գին փրկանաց իւրոց. վասն որոյ և ինքն յանձն էառ տալ նմա զայնչափ քանքար, ակնունելով առնուլ 'ի Հիւրկանեայ. բայց Հիւրկանոս սպանեալ գոլով 'ի Հերովդէէ, իբրև եհաս ժամանակ և ոչ կարաց վճարել Ենանոս, Արշամ ընկեցեալ զնա 'ի պատուոյ եդ 'ի բանտի։ Սովին և եթ պատուհասիւ թերևս զերծանէր տառապեալն. այլ փոխանակ օգնելոյ սմին, լո՛ւր զոր պատմէ Խորենացին. "Յայսմ ժամանակի քսու զնմանէ մատուցանէ արքայի Զօրայ նահապետ ազգին Գնթունեաց ասելով. գիտեա արքայ զի ապստամբել 'ի քէն կամեցաւ Ենանոս, խորհուրդ ընդ իս բերելով,,։ Ոչ շատացեալ ընդ այս սուտ զրպարտութիւն 'ի վերայ առնն, այլ և

յորդոր եւ մատուցանէր արքային սպանանել զնա առելով. «Ոչ մեկնի 'ի դրժողութենէ բարուցն՝ եթէ ոչ արքայդ աճապարեսցես նմա»: Եւ արքայ յանցեաւ մեծապէս, զի առանց իւիք քննութեան անսաց այսպիսի քսութեան, որպէս առնէ խորհրդակցին իւր դանդաղելով. «Այս քսուեցա հաւատայ Արշամ. հրամայեաց անմիջապէս 'ի վերայ Եմանաւորի կոչել. եւ վախճանն գործոյն՝ կամ թողուլ խաղաղ զօրէնս հրէութեան . . . կամ կախել զփայտէ եւ ընդ ջինջ լինել ազգի դորա». Է. 24:

Նենգաւորութիւն Փիսակայ սենեկապետի Է. Տիրանայ պատճառ եղեւ մատնելոյ զՏիրան 'ի ձեռս Պարսից ըստ Բուզանդայ Դ. 20: Փիսակ գոլով 'ի տոհմէ Սիւնեաց՝ յորժամ գնաց դեսպանութեամբ առ Վարազշապուհ որ սահմանապահ էր արքային Պարսից յԱտրպատական, նախ պատմեաց եւ մատնեաց նմա վասն ազնիւ ձիոյն զոր ունէր Տիրան այս. 'ի խնդրելն Վարազշապհոյ զձին, Տիրան ծածկ բացասութեամբ եղեալ ընդ այն՝ զայլ ձի նման նմին առաքեաց առ նա 'ի ձեռն նորին Փիսակայ, անդէն յայտնելով ամենեւին չարամտութեան բանսարկութիւն, եւ պատուիրեաց ասել առ Վարազ՝ թէ առ սէր քո ոչ խնայեաց Տիրան տալ զիւր ձին զոր խնդրէիր: Իսկ նենգաւորն Փիսակ պատմեաց եւ 'ի վեր եհան Վարազշապհոյ զխաբէութիւն Տիրանայ. եւ յաւել չարախօսել՝ թէ զիարդ Տիրան ատելութիւն մեծ կրէր 'ի սրտի ընդդէմ թագաւորին եւ համօրէն զօրացն Պարսից, մինչեւ խնայել 'ի մի միայն ձի զոր խնդրեցեր. եւ կամի ծածուր առնել զքեզ պատրելով յիւր ձեռն. յայս նորա է 'ի կայսրն. եւ խորհի հանապազ հանել զթագաւորութիւն Պարսից յազգէն սասանեանց, եւ դարձուցանել անդրէն 'ի տունն պահլաւեանց յազգականս իւր. զոր արասցէ անշուշտ եթէ ոչ բարձցիք զկենաց նորա: Ընդ լսելն զայս արքայն Պարսից՝ հրամայեաց Վարազայ ունել զՏիրան. իսկ Վարազ կամեցեալ դաւով իմն ըմբռնել՝ եկն առ նա բարեկամաբար իբր 'ի զբօսանս որսորդութեան աղագաւ, բայց բազմութեամբ զօրաց: Տիրան տակաւին անգէտ մնացեալ բանսարկութեան եւ դաւաճանութեան՝ խօսէր ընդ իւր ներքին սպասաւորսն 'ի սենեկի. 'ի ժամ զբօսանաց, ասէր, մի տանիք զՎարազշապուհ յորսորդութիւն ուր առաւելեն որսք, այլ ուր նուազունք են, զի մի չարակնութեամբ յաչաղեսցի 'ի վերայ մեր, որպէս սովոր է միշտ ազգդ Պարսից: Փիսակ զայս եւս պատմեաց յունկն Վարազշապհոյ. որով եւս քան զեւս բորբոքեալ նորա, յաւուր միում

յընթրիս կոչեալ զՏիրան՝ անդ. քանզի զօրք նորա չէին առ նմա, կալեալ կապեալ զնա՝ յաւարի առ զգանձս նորա և զկին և զորդիս. և տարեալ զնա 'ի գիւղն Դալարիս՝ անդ կուրացուցին զաչս նորա խարելով։

Խրատութեամբն Բատայ սահառունւոյ սպան Թագաւորն Վարազդատ զՄուշեղ քաջ զօրավար մամիկոնեան։ Զի այս Բատ կամելով յինքն կորզել զպատիւ զօրավարութեան, հնարս եգիտ բարուրանս արկանել ոչ միայն 'ի վերայ համօրէն տոհմին մամիկոնէից, այլ և զնոյն ինքն զՄուշեղ, որ ինչ անմեղութեան և զթութեան գործք առ 'ի նմանէ լեալ էին՝ զամենայն իբրև զաղտնի նենգ և դաւաճանականութիւն երևեցուցեալ առաջի Վարազդատայ, պարտաւոր մահու դատեցաւ. "Սկսաւ, ասէ Բուզանդ Ե. 35. քսու մատուցանել զնմանէն առ Թագաւորն Վարազդատայ առ իւրում սանուն, և ասել՝ Թէ 'ի սկզբանն 'ի նախնեացն հետէ զձեր արշակունեաց տոհմին մամիկոնէից է կորուսեալ, զի հակառակորդք ձեր դոքա լեալ են 'ի բնէ անտի. և համակ զերկիրս Հայոց դոցա է կերեալ, մանաւանդ Մուշեղի. մանաւանդ զի այր չար է և նենգաւոր։ Զի՛ սիրելի է թշնամեաց ձերոց, և ատելի սիրելեաց ձերոց. և համակ ընդ ձեզ նենգաւ է գնացեալ, երկմտութեամբ և դժխեմութեամբ։ Զի ո՞չ այն Մուշեղ է, որ 'ի թագաւորութեան ժամանակ Պապայ 'ի պատերազմունսն Պարսից քանիցս անգամ ձեռնահաս եղև սպանանել զՇապուհ արքայն Պարսից, և ոչ եսպան, այլ արձակեաց զթշնամին. և երբեմն զկանայս Շապհոյ թագաւորին 'ի բուռն էարկ, և խնամոտ գթով ժանուարօք արձակեաց զնոսա զհետ Շապհոյ։ Ո՞չ այդ այն Մուշեղն է, որ զՈւռնայր արքայ Աղուանից 'ի բուռն էարկ և սպանանել ոչ կամեցաւ, այլ արձակեաց զթշնամին"։ Տես զչարամտութիւն անզգամին, զի արդ 'ի փոքունց սկսեալ ապա յեւս մեծագոյնն ձեռն արկանէ. զի նախ զհաստատապարտ և անխրատ ցուցեալ զնա լոկ 'ի թշնամիսն Արշակունեաց, ապա և 'ի նոյն իսկ յԱրշակունիս, նա մանաւանդ դաւաճանակալ կենաց թագաւորին. քանզի ասէ. "Ո՞չ այդ այն Մուշեղն է, զի զարքայն Պապ հրամանաւ դորա և զօրէն խորհրդովդ զօրավարքն Յունաց սպանին. զի դա ոխացոյց և գրգռեաց զարքայն Յունաց 'ի վերայ թագաւորին Պապայ, մինչև եւ սպանանել"։ Զայսոսիկ չարախօսեալ առ Վարազդատայ, որպէս զի մի զթացեալ թագաւորն ներեսցէ նմա, և զի զչարախօսութիւնն իւր ամենևին աներկբայ ցուցանիցէ, և զայլն

անմեղ անարժան կենաց, նենգաւոր և դարանակալ նորին իսկ արքային Վարազդատայ ցուցանէ զնա. և ասէ ցարքայ. “Արժան է մեռանել 'ի ձեռաց քոց... այլ թէ ոչ աճապարեսցես արքայ, այժմ զհայ երկիրս խորհի ըմպել քաղաքօք, և զօրանիստ առնէ աստ բնակութե զօրացն Յունաց: Եւ այնուհետև կամ թագաւորն Յունաց հանէ 'ի քէն զթագաւորութիւս Հայոց, կամ այս Մուշեղ սպանանէ, և ինքն թագաւորէ»: Ունկնդիր եղև ամենայնի արքայ Վարազդատ, չյիշեալ ամենևին զառնն առաքինութեան որովք ցայն վայր ճգնեալ էր մեծաւ հաւատարմութբ 'ի վերայ տոհմին արշակունեաց. այլ յընթրիսն կոչելով նենգաւ ետ սպանանել զնա: Այն ինչ հարցանէր Մուշեղ զպատճառն այսպիսի անակնկալ մահուան, Վարազդատ լցեալ մտօք ցասմամբ պատասխանի առնէր. “Երթ առ Պապ արքայ (որ մեռեալն էր), հարց և տես թէ ընդէր է այդ»: Իսկ և ասէր քաջն Մուշեղ. “Ի վերայ բազում իմոց վաստակոցն արեան և քրտան, և սլաքօքն դքիրմն ընչելոյ, այս հատուցումն եղև ինձ», , անդէն Բաստ անապարուն զերանն զոր յիւրում աղջերն կրէր՝ ինքնին հանեալ մնացոյց ընդ փողս զօրավարին Մուշեղայ, և 'ի բաց եհան զգլուխ նորա:

Յաւուրս ՞զ. Արշակայ արքայի որդւոյ Պապայ զօրավար Հայոց էր Մանուէլ Մամիկոնեան, և նա էր գլխաւոր տեսուչ աշխարհին ոսկս մանկահասակ գոլոյ արքայի. և արար մեծարիմ սիրելութե յայժ ընդ արքային Պարսից, 'ի ձեռն նորա տալով զաշխարհս Հայոց, որով և սիրելի եղև յոյժ նմա՝ փառաւորեալ 'ի նմանէ իբրև զեղբայր իւր: Մերուժան արծրունի մախացեալ ընդ այս ազնիւ փառաւորութեն, հնարս խորհէր հանել զնա յաչաց թագաւորին, որպէս զի փոխանակ նորա ինքն լիցի սիրելի: Խորհել խորհեցաւ հնարս բազումս, այլ յայտ է թէ 'ի դերև ել ամենայնն. զի կարի սիրելի էր Մանուէլ արքային Պարսից, և չէր մարթ վայրապար հնարիւք զատել զնա 'ի նմանէ: Այպա եգիտ նա մի միայն հնարս՝ կեղծաւորութբ 'ի գլուխ տանել զոր խորհէրն: Այս այն անտ է յորմէ դժուարին է անճնապաս լինել արանց մեծամեծաց, զի մի 'ի չնթելոյ այլոցն պատրեցին. “Զի իբրև նա յեցաւ, ասէ Բուզանդ Ե. 38. 'ի միամտութն զօրավարին Մանուէլի, սկսաւ նախ հպատակութբ զմիտսն դողանալ. նախ մտերմութբ հաճել զմիտս նորա. ապա զանձն իւր հոգածու և խնամակալ երևեցու-

ցանէր նմա. ապա եկեալ գուշակութիւն առնէր նմա սուտ 'ի քմաց իւրոց, թէ գիտասջիր դու ո՛վ Մանուէլ, զի դեսպան լեալ է յարքայէն Պարսից, յաղագս քո բերեալ ունին հրաման առ Սուրէնն, զի զքեզ կալցին կապեսցեն. կամ աստէն սպանցեն, կամ ոտիւք և ձեռօք և պարանոցաւ կապելով մեծաւ զգուշութեա՟մբ տանել առ թագաւորն Պարսից»: Մանուէլ իբրև լուաւ զայս ամենայն զարմացաւ թէ չիք նմա յանցուցեալ առ Պարսիկս, ե՞ր աղագաւ այս ինչք անցանիցեն ընդ նա: Եւ զարմանալոյ պատճառք նորա այն էին. քանզի գիտէր թէ բարեկամութիւն նորա ընդ Պարսից ոչ կեղակարծ ինչ էր, և թէ Սուրէն իբրև պատգամաւոր խաղաղութե՟ գայր առ նա 'ի դրանէն Պարսից, բերեալ ընդ իւր և հանդերձս թագաւորականս Մանուէլի: Այսու ամենայնիւ հաւատացեալ կեղծաւորին բանից Մերուժանայ՝ զոր բազում առ ինքն կուտեաց, յարձակեցաւ 'ի վերայ Սուրենայ և կոտորեաց զզօրս նորա: Մերուժան չարեացապարտ իբրև այսպէս պատրէր զՄանուէլ, փութայր ապա ընթանալ առ արքայն Պարսից, անդ ամբաստան լինէր զՄանուէլէ, զայն ամենայն չարիս զոր ինքն եռ առնել՝ 'ի վերայ նորին արկանելով: Տես ինձ, քանի ճարտարք էին 'ի բանսարկութե՟ 'ի ժամանակին. քանզի Մերուժան էարկ զանհաշտ թշնամութի՟ ընդ Հայս և ընդ Պարսս՝ պատճառ եղեալ մեծի խռովութե՟ և անբաւ արեանհեղութեանց յերկոց կողմանց:

Յորժամ 'ի բաժնին Յունաց նստէր Գ. Արշակ թագաւոր, և 'ի բաժնին Պարսից Գ. Խոսրով, Սահակ ասպետ սպարապետ էր առ Արշակայ, և քաջութիւն նորա ծանուցեալ ամենեցուն. բայց ինքն Արշակ ոչ զգուշացաւ ունկնդիր լինել բանսարկութեանց, նախ կնոջ իւրոյ. «Ընդ-որումխեթի հայէր Արշակ, ասէ Խորենացին Գ. 43. հանապազ հրապուրեալ 'ի կնոջէն իւրմէ, որպէս թէ զարդ-արքունականն ունել նմա 'ի փեսայէն իւրմէ մնացեալ»: Եւ երկրորդ՝ ազգականացն. «Յայնժամ եղև, ասէ, քսութ՟ սուտ զնմանէ յազգականաց իւրոց 'ի Սպեր գաւառէ. վասն որոյ չարչարեաց զնա Արշակ արքայ»: Այսու օրինակաւ նեղեալ Սահակ յԱրշակայ՝ փախուցեալ անկաւ առ Խոսրով, և եղև նորա սպարապետ. ապա զօրօք Խոսրովայ եկն 'ի վերայ զօրացն Արշակայ, և առեալ 'ի ձեռաց նոցա զգանձ Արշակայ եած առ Խոսրով: Այս դիպուած 'ի քսութեց յառաջացեալ՝ եղև պատճառ սաստիկ պատե-

բազմի ընդ մէջ երկուց համազգի թագաւորացն Արշակայ և Խոսրովայ :

Ուէ քանի մեծամեծ խռովութիք և կատարածք եղեն յետ արշաւանացն Բուղայի 'ի բանտարկութէ ազատելոյն Վասակայ արծրունւոյ 'ի դուռն ամիրապետին զամենայն նախարարացն Հայոց, մանաւանդ զքաջազնոյն Աշոտոյ արծրունւոյ, Ճոխագոյն գրէ Թոմա արծրունին Գ. Ե:

Նաև այն մինչ հազիւ իշխանքն մեր դարձեալ 'ի գերութէ Բուղայի կային խաղաղացեալք, և ահա տխուր այս չարաչար վրդովեաց զիշխանս Վասպուրականի, զորմէ ասէ նոյն պատմիչն. "Մինչ կային իշխանքն 'ի մի միաբանութե առանց կարծեաց կասկածանաց 'ի հաստատութե եղեալ յարքունուստ հազարապետին որդւոյն Հալթի, և զմիաբանական սիրոյն շաղկապ 'ի միասին յօդեալ պնդեալ անքակ պահէին, բանսարկուք ոմանք հրապոյրս պղտորս քսութե ածէին տանէին 'ի միջէն առ միւսն. որպէս թէ զչարիս խորհրդոց առ հազարապետն խորհել նիւթել յայտ ածէին, և զպատճառան զմիմեամբք արկանէին 'ի գաղտնիս քրթմնջելով". Դ. 2:

Ի նմին ժամանակի և այլ բանսարկութիւն լինէր առ Դերանիկ իշխանն Արծրունեաց զԱշոտոյ կուրապաղատէն Տարօնոյ. յորմէ և հետևանք չարք ըստ այսմ օրինակի. "Զմտաւ ածեալ, ասէ, զքսութիւն զոր զեկուցին զԱշոտոյ կուրապաղատէ առ Դերանիկն, եթէ ստոյգ և եթէ Ճշմարտութի մեզ չէ յայտ. բայց հրաման ետ Դերանիկն Գրիգորի հազարապետի իւրոյ 'ի նոյն տանէ արծրունւոյ, և կալաւ զնա և ետ 'ի յամուրսն Սևանն, և հրամայեաց Հասանականն քեռորդւոյ իւրոյ պահել զնա յընդարձակի": Բազում եկին առ Դերանիկն՝ ընդ որս և Գէորգ կաթողիկոս՝ առ 'ի արձակել զԱշոտ, բայց չեղև մինչ օգուտ. զայն տեսեալ կուրապաղատն Աշոտ, և մինչ բակառ բանսարկու լինել 'ի մէջ Դերանիկին և Հասանայ քեռորդւոյ նորա, առ 'ի զերծանիլ յարգելանացն. "Այնուհետև սկսաւ, ասէ, կուրապաղատն արկանել բանս խարդախու 'ի մէջ Դերանիկին և Հասանայ, որ էր որդի քեռն Դերանիկին, որպէս թէ ոչ ուղիղ նայի ընդ նա Դերանիկն, այլ թէ և հանել 'ի նմանէ զամրոցն և զաշխարհն նկրտէ. բազում անգամ ասէ և իմ ստուգեալ է զայդ 'ի հաւատարմաց խորհրդականացն նորա": Որում ունկնդրեալ եղեալ Հասան, կեղծաւորեցաւ հիւանդութի մահաբեր 'ի նոյն իսկ յամրոցին Սևանայ. յոյր առաքս հարկ

եղև Դերենիկին գալ յայցելութիւն նախ քան զմեռանել նորա. իբրև եկն՝ կալաւ Հասան զԴերենիկն և եդ ՚ի բանտի. իսկ զԱշոտ արձակեաց: Յայնժամ աղերս մատուցեալ Աշոտ իշխանաց իշխանին և Գէորգ կաթողիկոս՝ հազիւ զերծուցին զԴերենիկն ՚ի ձեռաց Հասանայ: Իսկ յետ զերծանելոյ նորա, առ նա ինքն հասանէր այլ քսութիւն յումանց. յորմէ և նա սաստեալ երդմամբն՝ կալաւ զՀասան և եդ ՚ի բանտի ՚ի Նկան բերդի, հանեալ ՚ի նմանէ զատուն և զստացուածս: Յետ այսորիկ Դերենիկն խոստացաւ Հասանայ դարձուցանել ՚ի նա զամրոցն Սևան և զաշխարհ իւր, միայն թէ զԳագիկ Արծրունին առ նա ինքն ածցէ. գնաց Հասան առ Գագիկ. և զառաջին զիւր քրթմնջիւն զԴերենիկէն նմա հաւատարմացուցեալ, և ըստ օրինակի առաջնոյ և սուտ եւս կեղծաւորեալ զհիւանդութիւն, այն ինչ գիշերայն իբրև ՚ի քուն լինէր Գագիկ յանհոգս, ետ կապել երկաթի կապանօք և մատնել ՚ի ձեռս Դերենիկին: Ուր այսչափ քսութիւնք, բանսարկութիւնք և դաւաճանութիւնք յաճախեալ կան ՚ի մէջ համազգեաց և ազգականաց՝ զիա՞րդ մարթ է անդամնօր շինութիւն առնուլ աշխարհին:

Որչափ չար է բանսարկութիւն, նոյնչափ անմտութիւն մեծ է ունկնդիր լինել նմին առանց քննելոյ. որում և վկայէ Յովհաննէս կաթողիկոս ՚ի պատմելն, թէ “ Հոյակապ մեծ իշխանն Սահակ որ որդեգրացուցեալն էր իւր փեսայութիւն զԹագաւորն Աշոտ (երկրորդ), հրապուրեալ ՚ի բանս թուլեաց ոմանց չարախորհաց, ընկլոյզ զիմաստութիւնն իւր մեծ, և ապա սկսաւ չարիս իմն նիւթել իբր յօտար թշնամւոյ „: Այսու ախտացաւ և Վեստն Սարգիս, որ ՚ի միոյ կողմանէ գրգռէր զԳագիկ արքայ զվերջին թագաւոր Բագրատունեաց, և տայր հանել յաչաց նորա զԳրիգոր Մագիստրոս, զՊետրոս կաթողիկոս և զնախարարս. և ապա յայլմէ կողմանէ գրգռէր զկայսրն Մոնոմախոս, ծանուցանելով զերկպառակութիւն նախարարաց զոր ինքն էր արկեալ: Ի վեր անդր զբանսարկութիւն Բատայ Սահառունւոյ և զՄերուժանայ յառաջ բերաք և զայլոց ոմանց. սակայն ոչ եթէ թեթև ինչ յանցանք էին Վարազդատայ՝ Բատայ ասացելոյն իբրև անվրէպ ճշմարտութեան հաւատալ և զանմեղն զՄուշեղ մահու չարաւ կորուսանել. զի թէ թագաւոր էր Վարազդատ, ո՞ւր էին նորա ատեանն քննութեան և օրէնք դատաստանի. զի ոչ եթէ դուզնաքեայ ինչ է արեանն դատաստան՝ զի առանց քննելոյ դատիցի:

Զայսոսիկ լուեալ իմաստուն առաջնորդաց փոյթ կալցին մեծաւ արթնութեամբ ընտրել զլաւս յարանց 'ի չարախօսաց, մի վայրապար ումեք իցէ անսալ բանսարկուէ, այլ անձամբ լինել ականատես և ականջալուր իրաց ամենայնի. որպէս քաջ զօրավարն Մուշեղ խրատ տայր Պապայ արքայի, որ յետ մեծի յաղթութեանն 'ի Ձիրաւ դաշտի՝ կամէր սպանանել զնա հաւատալով քսու բանսարկուաց. այլ Մուշեղ զօրաւոր պատճառօք ցրեալ զբանսարկութիւն, և դիմուցեալ զարամտութիւն Պապայ, ասէ. « Ես յայսմհետէ եղից զարիւն իմ 'ի վերայ Հայոց անխնայ ընդդէմ թշնամեաց. բայց դու մի՛ թողուր աչօք քո տես, և ականջօք քո լուր զխնդութիւն մարդկան, և ընտրեա զլաւն 'ի վատթարէն և զվաստակաւորն 'ի վատ արանցն և զբարին 'ի չարէն, և մնասցէ յուղղութեան երկիրս Հայոց »: Եւ յիրաւի. զի ճանաչել և ընտրել զայր անկեղծ 'ի նենգաւորաց, զճշմարիտ բարեկամ յոխերիմ թշնամւոյ՝ անժխտելի պարտք են ամենայն իշխանաց, և պատճառք զարգանալոյ պետութեան:

### Դ. Մատնութիւն, Դաւաճանութիւն և Նենգութիւն:

Յորժամ չյաջողի նախանձուն քսութեամբ 'ի կամս չարութեան իւրոյ, ինքնին միջամտեալ լինի մատնել, նենգութիւնս և դաւաճանութիւնս հնարել: Ահա են պատմագիրք մեր այսպիսի դիպուածովք, յորոց զոմանս յիշատակեսցուք:

Մաժան որդի Բ. Արտաշիսի էր քրմապետ, իսկ Տիրան եղբայր նորա սպարապետ. սա խորհեցաւ 'ի մահ, ասէ Խորենացին Բ. 55. « զի ինքն լիցի քրմապետ՝ միանգամայն և սպարապետ », փոխանակ եղբօր իւրոյ: Ունէր և այլ իմն քէն 'ի սրտի 'ի վերայ նորին Տիրանայ և Արտաւազդայ եղբարց իւրոց. որովհետև պատճառք եղեն գժգմնելոյ և հեռանալոյ Սմբատայ սնուցչին իւրոյ. վասն այսորիկ ինքնին գնաց առ Տրայանոս կայսր՝ որ ընդ Ասորիս անցանէր յայնժամ, « մատնութեան զեղբարցն առնէր. գիտեա ասէ, արքայ, եթէ զԱրտաւազդ և զՏիրան վտարանդիս ոչ արասցես... հարկքն անաշխատ 'ի քեզ ոչ եկեսցեն »: Այս էր լոկ զրպարտութեան մատնողին. բայց իսկ և իսկ յայտնի եղև թէ զինչ խոտոր կայցէ ընդ հռոմայեցիս և ընդ մերսն 'ի խոհեմութէ. քանզի Տրայանոս ոչինչ ունկն մատուցեալ միում մատնչի, և ոչ 'ի հարկսն

ադահեալ, ձեռնունայն դարձուցանէ զՄամոն։ Իսկ ար-
դիւնք ամբաստանութեան նորա 'ի կորուստ իւր շրջեցաւ. քանզի Արտաւազդ և Տիրան իրազեկ լեալ այնմ, և 'ի դարանի սպասեալ, յանկարծ սպանին զՄամոն։

Ի գնալ մեծին Տրդատայ 'ի Հռոմ՝ չէ ինչ զարմանք եթէ օտար ազգ, զոր օրինակ էր Շապուհ Պարսից թագաւոր՝ գրգռեալ և զհիւսիսայինն ազգսն զամենայն՝ որք նոյնպէս էին ազգք օտարք և պատրաստք 'ի յափշտակութիւն՝ յարձակեսցին յաշխարհս Հայոց. բայց զարմանք այն է՝ եթէ լիցի այդ ամենայն 'ի նենգելոյ ուրումն 'ի մեծամեծաց Հայոց՝ որպիսի ոք Աղձնեաց բդեշխն էր, որում անկ էր յայնժամ պաշտպանել զերկիրն. բայց լուր Զենոբայ որ յետ աւարտելոյ զպատմութիւն այնր պատերազմին ասէ 'ի թղթ. 49. "Այս ամենայն գրգռեցաւ 'ի դալնոցա 'ի Հռոմայ. բայց եղև 'ի ձեռն նենգաւոր իշխանին Աղձնեաց.. Հրամայեաց նոցա (Տրդատ) ունել զիշխանն Աղձնեաց. և ածեալ առաջի, կամէր ծայրատել զոտս և զձեռս նորա, զոր արգել սուրբն Գրիգոր 'ի պատուհասիցն. բայց 'ի պատուոյն մերժել հրամայեաց, և վարել 'ի գաւառէն Հայոց"։ Լուր և Խորենացւոյն որ վասն այլոյ իշխանի գրէ Բ. 84. թէ յայնմ խռովութեան ժամանակին Տրդատայ փոխանակ օգնելոյ՝ "ի սորին (Շապհոյ) բանս հրապուրեալ Սլուկ նահապետ ազգին Սլկունեաց, զինքեանն սպանանէ զփեսայ զծերացեալն Օտայ... և ընդդիմացեալ թագաւորին (Տրդատայ) աղմկէր զերկիրն", մինչև սպանաւ ինքն և տոհմն իւր։

Նշանակեալ էր դաւաճանութիւն Դատաբենայ նահապետին Բզնունեաց, զոր փոքրն Խոսրով Բ. իբրև զիւր հաւատարիմ առաքեաց զօրօք ընդդէմ կալ Պարսից. այլ Դատաբեն փոխանակ զտէր իւր պաշտպանելոյ՝ եանց 'ի կողմն թշնամեաց. և 'ի դարանի եդեալ զզօրս նոցա՝ յանկարծ ետ յարձակիլ 'ի վերայ զօրացն Հայոց և կոտորել. և որպէս թէ չէր այս բաւական՝ ինքն ևս պարսկական զօրօք խաղայր 'ի վերայ թագաւորին իւրոյ Խոսրովու։ Ընդ լսելն զայս, ասէ Բուզանդ Գ. 8. Վաչէ և Վահան ամատունի զօրօք Հայոց 'ի վերայ հասեալ կալան զանօրէնն Դատաբեն, և իբրև մատնիչ և դաւաճան քարկոծեցին։ Սմին նման էր և մատնութիւն Փիսակայ՝ զորմէ պատմեցաք 'ի վերայ։

Նիրաւ էր և մատնութիւն Սամուէլի մամիկոնեայ զոր արար յաւուրս Գ. Խոսրովու արքայի. քանզի Յոյնք 'ի

մեռանել Գ. Արշակայ, ոչ եւս կացուցին Թագաւոր 'ի բաժնին իւրեանց. զայն տեսեալ Գազաւոն կամսարականն՝ որ գլուխ էր 'ի նախարարսն որ ընդ նմին կային՝ գրեաց թուղթ առ Խոսրով Գ. գալ 'ի բաժինն եւ յերկիր նորա. բայց խոստումն պահանջելով 'ի նմանէ երդմամբ վասն երից խնդրոց. յորոց մին էր՝ թափել զանձինս իւրեանց 'ի ձեռաց կայսեր Յունաց, թէ եւ պատերազմաւ 'ի վերայ յառնէր ։ Խոսրով պատասխանի գրեաց խոստանալով զամենայն. որով ամենայն նախարարքն եկեալ 'ի բաժնէն Յունաց եկին 'ի բաժինն Պարսից, ուր էր Խոսրով. բայց մին 'ի նախարարաց Սամուէլ Մամիկոնեան երկնչէր գալ 'ի բաժինն տէրութե Պարսից, զի սպանեալ էր զհայր իւր զՎարդան վասն ուրանալոյ նորա զքրիստոնէութի. նոյնպէս եւ զմայր իւր Տաճատուրհի. եւ վասն այնորիկ կասկածէր մի գուցէ եղբարք մօր իւրոյ որք էին 'ի տոհմէն Արծրունեաց՝ մատնեսցեն զինքն 'ի ձեռս Պարսից առ վրէժխնդրութե. զայս խորհելով ել եւ գնաց առ կայսրն Արկադ ։ Այս արարք սորա՝ քանզի զօգուտ անձին խորհեցաւ առանց միաբանու այլոց, անստգտանելի է. բայց յոր անարգութիւն եհաս յորժամ զօգուտ իւր խորհելով արար այնպիսի դաւաճանութի եւ մատնութի որ օտարախորթ թշնամւոյ էր գործ. զի առ 'ի հաճոյ լինել յաչս կայսեր, ասէ Խորենացի, « Յինքն ըմբռնեալ զթուղթն Խոսրովու, եւ զպատճէն թղթոց նախարարացն », այնպէս գնաց առ կայսրն, որով զհամօրէն զազգ Հայոց ատելի կացոյց առաջի կայսեր եւ ազգին նորա ։ Արկադէոս արդարեւ բարի արար վասն այսր իրաց՝ Սամուէլի. բայց հելլեն գրով թարգմանեալ զթուղթն եդ 'ի պահեստի 'ի դիւանի իւրում, «զի պահեսցին, ասէ, յիշատակք ազգաց ապստամբողաց. որ կայ մինչեւ ցայսօր ». Գ. 48 ։

Այլ զիարդ կարէ կալ յաթոռն թագաւորութե յորժամ մատնիչք 'ի տանէ եւ յընտանեաց յառնեն. զի 'ի միոյ կողմանէ Սամուէլս այս զԽոսրով արքայ մատնէր Արկադեայ կայսեր. յայլմէ կողմանէ նախարարքն միահամուռ հաւաքեալ մատնեին զնա ինքն զԽոսրով զթագաւորն իւրեանց Շապհոյ Պարսից արքայի ։ Զի այս Խոսրով խնդրեաց յԱրկադեայ կայսերէ յինքն հաւատալ զմասն Հայոց որ ընդ տէրութե էր Յունաց, խոստացեալ տալ նմա հարկս, որպէս եւ եղեւ իսկ. այլ Շապուհ ընդ ակամբ հայէր 'ի Խոսրով վասն այսպիսի բարեկամութե նորա ընդ կայսեր, մինչեւ ապառնալիս եւս յղել առ նա. իսկ Խոսրով ցասուցեալ ընդ

ամենայն գործք քաջութեանց մերոց հաւատարիմ իշխանաց։ Յորժամ Վահան Մամիկոնեան սերտ սիրով և երդմամբ միաբանութիւն առնէր ընդ նախարարսն քաջութ̃ ընդդէմ կալոյ Պարսից, “Մի ոմն, ասէ Ղազար 209. անդէն և անդ 'ի նախարարացն Հայոց՝ որում անուն էր Վարազ Շապուհ 'ի տոհմէն ամատունեաց՝ եղեալ 'ի խորհրդակից միաբանութեանն... գնաց 'ի նմին գիշերի և պատմեաց մարզպանին և այլոցն ամենեցուն զխորհուրդ միաբանութեանն„։ Թէ զինչ չարիք զհետ գային յայսպիսի մատնութենէ, յայտնի է ամենեցուն. յորմէ ոչինչ օգուտ կարէին յառաջ տանել։

Նշանաւոր է և նենգումն և զաւաճանութիւն երկուց իշխանաց Հայոց ընդդէմ նորին Վահանայ յայնմ պահու՝ յորում հազիւ էր կարացեալ քանի մի զօրս ժողովել առ 'ի ընդդէմ կալ Պարսից թշնամեաց։ Քանզի մինչդեռ Վահան մերձենայր իւրովք սակաւ զօրօք յԱկէստ քաղաք, նոքա երկոքեան իշխանքն 'ի համազգեաց գալով և ոչ 'ի թշնամեաց, “յանկարծակի, ասէ Ղազար 221. յանգգատից եկեալ հասանէին 'ի վերայ նոցա, իշխանն Անձևացեաց Սեւուկ անուն և իշխանն Մոկաց Յոհան անուն բազում այրուձիով ընդ առաւօտն ծագել. և նոցա (այսինքն է՝ որոց ընդ Վահանայ էին) զգացեալք, կէսքն զինեալք՝ և կէսքն թէպէտ անպատրաստք էին, այլ օգնութ̃ բարձրելոյն քաջալերեալք՝ հարկանէին 'ի դիմի աներկիւղապէս„։

Դառն է լսել և զմատնութիւն Աշոտոյ վասպուրականի, որ մի էր յերևելի քաջազանց Հայոց։ Սա 'ի Նկան բերդին ամրացեալ 'ի մտի եդեալ էր միշտ զդէմ ունել զօրաց Բուղայի՝ որք պաշարեալ մարտնչէին, այլ ոչինչ կարէին առնել վասն ամրութեան. իսկ նախարարքն իւր որ 'ի բերդին՝ զուրկ ամենևին յերկայնամտելոյ՝ 'ի նմին ժամանակի խորհուրդ առնեն գաղտնի և գիր առաքեն առ Բուղայ, կապել զԱշոտ և մատնել 'ի ձեռս նորա։ Այսմ իրազեկ լեալ Աշոտոյ, և տեսեալ թէ թշնամիք 'ի ներքուստ են, ինքնին գնաց առ Բուղայ, և 'ի նոյն գուբ կորստեան անկաւ, յորում և այլ նախարարքն. զորմէ ընդարձակ գրէ Թովմա արծրունի։

Յաւագին է յոյժ 'ի պատմագրութեան Թովմայի արծրունւոյ ընթեռնուլն և զտարապարտ մատնութիւն Դերանկին արծրունւոյ միայն 'ի պատճառս նախանձու. զոր կոչէ Դ. 12. “Բարձրանշան յաղթութիւնք հռչակաւոր և երևելի

'ի մէջ Հայաստանեայց այր „ . որ և փեսայացեալ էր Սափիայ երևելի տիկնոջ դստեր ա̃ . Աշոտոյ Թագաւորի ։ Բայց ոչ միայն այլազգիք, այլ նաև ոմանք 'ի հայկազնեայցս ոխս մախանաց կրէին 'ի սիրտս իւրեանց . և աղդ առնելով միմեանց խորհուրդս հնարէին դաղտնի դաւաճանուե̃ զնա կորուսանել . զի զանգիտեալ յոյժ յահաւոր զօրուէ̃ նորա յայտնի ինչ առնել ոչ կարէին ։ Իսկ Դերանիկին անգէտ լեալ ընաւ այսմ, և ոչ հետազօտեալ զինութ̃ի և ըղբարս իւրոց ընթերակայից, զոմն 'ի նոցունց Գագիկ անուն ազգական իւր 'ի պատիւ ամբարձեալ զօրագլուխ կացուցանէր 'ի կողմն Պարսից . " Այլ . . . դաւօղք ոմանք Ատրպատականու, ասէ, նմանապէս և որք 'ի Հայաստանն էին տանէ, որոց մասնակից էր և Գագիկս այս ապստամբ „, գտանեն զոմն այլազգի յոյժ սիրելի Դերանիկին՝ զորդի Ապուսմսարայ . զսա գրգռեցին դաւով սպանանել զԴերանիկն . որում " և այլք ոմանք Հայաստանեայք ինչս և պատիւս խոստանային „ ։ Եւ այնպէս սորա՝ խաբէութ̃ յինքն կոչեալ զԴերանիկն, գիրկս զպարանոցաւն արկեալ, սպան 'ի ձեռն բազմութ̃ ուժեղ արանց զոր 'ի ծածուկ ունէր ։

Իսկ յընթեռնուլն զպատմութ̃ի ժամանակի բ̃ . Աշոտոյ Թագաւորի՝ յամենայն կողմանց լսեմք դաւաճանութ̃ի և նենգութ̃ի կուտեալ 'ի գլուխ նորա առ 'ի կորուսանել զնա . որում գլխաւոր թշնամի եկաց հօրեղբօրորդի իւր Աշոտ, և հարազատ եղբայր իւր Աբաս, որպէս պատմէ Յովհաննէս կաթողիկոս՝ թէ Թագաւորն 'ի գալն իւր 'ի Շիրակ, " առ ինքն կոչէ զեղբայր իւր Աբաս՝ զոր իշխան իշխանաց էր կացուցեալ, և զիշխանն Վրաց Գուրգէն զնորուն անէր, չև ևս գիտելով առ 'ի նոցանէն էր նմա նիւթեալ դաւաճանութ̃ի չարակնութ̃ նախանձու . . . Իսկ նոցա 'ի ձեռն պատրուակի սիրոյ զզաւեն Թագաւորին խորհեալ և հնարս որոգայթից նիւթեալ, յանկարծակի 'ի վերայ յարձակէին բաղխել զնա անյայտաբար . . . և հազիւ 'ի խարդաւանական որոգայթիցն ձողոպրեալ (Աշոտ), չուէ զնայ յՈւտի գաւառ „ ։ Յայնմհետէ անկաւ 'ի մէջ նոցա թշնամութ̃ի անհնարին, յորժամ արաբացին շրջէր հնարէր սպանանել զմեծամեծս աշխարհիս մերոյ, և յինքն գրաւել զաշխարհն ։ Այլ իմն դաւաճանութիւն 'ի վեր ել 'ի կողմանց Գուգարաց . " Մտուզեալ մերկացեալ երևէր, ասէ, ապստամբութիւն Քանանիտ գնթունւոյն Վասակայ, որում հաւատացեալ էր պահպանութ̃ի

ամրոցին Շամշուլտէի (որ 'ի Գուգարս), և 'ի դերև եղանէր նորայն խախացեալ դաւաճանութիւն „¹: Եւ այլ դաւաճանութի և մատնութիւն 'ի Բիւրական ամրոցին. որոյ բնակիչք մինչդեռ քաջութ. և միաբանութ. մարտնչէին ընդդէմ թշնամեաց արաբացւոց, մի ոմն 'ի նոցանէ իսկ բնակչաց մատնէր զբերդն 'ի ձեռս նոցա: Այս ամենայն մատնութիւնք և դաւաճանութիւնք պատճառք եղեն 'ի դերև հանելոյ զայն ամենայն քաջութիւն զոր գործեացն Աշոտ. որ զի հազիւ կարաց սանձահարել զներքին թշնամիս իւր զմերձաւորս, և զիարդ կարէր ժամանել 'ի վանել զարտաքին թշնամին զարաբացիս:

Ոտար և անագորուն սրտի գործ էր և մատնութիւնն այն, զորմէ պատմէ Լաստիվերտցի Ժ. թէ 'ի մերձենալ մահուն Կոստանդին Մոնոմախ կայսեր՝ կոչեաց զԿիրակոս զոմն երէց դրան կաթողիկոսին. եւ փոխանակն Յովհաննու թագաւորին յորում խոստանայր տալ զԱնի 'ի ձեռս կայսեր: Զայս թուղթ առեալ 'ի ձեռս Կիրակոսի, պատուիրեաց անդրէն դարձուցանել առ թագաւորն Հայոց ասելով. "Առ զգիր քո, և տուր զթագաւորութիւնդ որդւոյ քո, և որդի քո որդւոց իւրեանց մինչև յաւիտեան. և ինքն (կայսրն) առեալ զոտս իւր 'ի մահիճս վախճանեցաւ: Իսկ նորա (Կիրակոսի) առեալ փոխանակն պահեաց առ իւր մինչև 'ի ժամանակս Միխայէլի թագաւորութեան, և վաճառեալ նմա՝ առ գանձ բազում„: Ընդ որ առ չժուժել սրտին աղաղակէ պատմագիրն. "Ո՛վ դառն վաճառումն այնորիկ. քանզի արեանց զանձն պատրաստական կացոյց„:

Այլ գժնդակագոյն ևս էր քան զայդ՝ դաւաճանութի և մատնութի Վեստն Սարգսի, զորմէ ասէ նոյն ինքն Լաստիվերտցի 'ի Ժ. "Իսկ մի ոմն 'ի գլխաւոր ազատացն Հայոց Սարգիս անուն՝ եդ շուք անձին թագաւորել 'ի վերայ տանն Շիրակայ, և որ շուրջ զնովաւ գաւառք. զի զամենայն գանձս գտեալ 'ի տան թագաւորին Յովհաննիսի յինքն ժողովեաց. վասն զի 'ի մահուան նորա նա էր հազարապետ նմա ... իսկ Սարգիս իբրև ետես զեղեալսն, զգանձս թագաւորութեան առեալ 'ի ներքին ամուրն մտանէ յանառն Անի ... դարձեալ խորհի զխորհուրդ նանրութեան,

1 Զայլ և այլ ապստամբութիւնս և զթշնամութիւնս զորս ցուցին հայկազունք մեր ընդդէմ այսմ Ա. Աշոտոյ, յիշատակեալ է մեր 'ի դրուագին Կառավարութե. տես անդ:

տալ զոր ունէր ընդ ձեռամբ Հոռոմոց, և ելանել առ նո-
սա ,,: Իսկ յորժամ նախարարքն թագաւորեցուցին զԳա-
գիկ, յայնժամ Սարգիս այս դաւաճան թելադիր լինէր
Մոնոմախ կայսեր կոչել զԳագիկ 'ի Բիւզանդիա, ծա-
նուցանելով նմա՝ թէ յայնժամ դիւրանայ յոյժ մատնել
զԱնի 'ի ձեռս քո: Գագիկ ոչ կամէր բնաւ անսալ հրաւի-
րանաց կայսեր և գնալ անդ, երկուցեալ 'ի դաւաճանու-
թէ նախարարաց. այլ Սարգիս առ վստահ կացուցանելոյ
զնա, աւէ Մատթէոս գրէ. յարիւն կենարարին թացեալ
զգրիչն՝ այնպէս զերդումն գրէր, ոչինչ վնաս լինել 'ի գնալոյ
նորա 'ի Բիւզանդիա 'ի կոչումն կայսեր: Իսկ յետ գնալոյ
Գագկայ՝ ինքն դաւաճանն իւրովք համախոհիւք առա-
քէր առ կայսրն զքառասուն բանալիս Անւոյ, գրելով առ
նա, թէ Անի և ամենայն արևելք քեզ տուեալ է:

Ի վերայ այս արանց անպիտանեաց ոչ երբէք պակասեաց
յազգի մերում. քանզի և 'ի յետին ժամանակս 'ի մետա-
սաներորդ դարուն տեսանեմք դիպուածս աղետալիս. զի
յայնմ ժամանակի 'ի չորրորդ Հայս գտանէին հայկազուն
իշխանք, յորս երևելի էին որդիքն Հաբելի ուրումն՝ կոչեցեալ
Հարպելիկ, որ ըստ Մատթէոսի ձչ̃. էր այր քաջ և հզօր.
և միւս որդիքն Դաւիթ և Լևոն և Կոստանդին: Զսո-
ցունց, ասէ, և զայլոց "փառաւոր իշխանացն Հայոց որք 'ի
գաւառն Պաղնոյ բնակեալ կային,,, չարախօս եղեն առ
Մոնոմախ կայսր՝ թէ կամին ապստամբել 'ի քէն. կայսրն
առաքեաց զզօրապետ ոմն Պետրոս անուն՝ որ առանց քըն-
նելոյ սկսաւ հարկանել զերկիրն և ապականել: Իշխանք
Հայոց 'ի մի ժողովեալ խորհուրդ արարին զանխուլ 'ի
նմանէ՝ մի ինչ կռուել ընդ նմա, այլ իւրաքանչիւրոց
յիւրեանց բերդին նստել ամրանալ մինչև ծանուցեն
կայսեր զստութիւն ամբաստանութեան, երդուեալ վասն այսր
ամենեցուն միաբան. բայց մի ոմն 'ի միաբանելոցն Թո-
րոսակ անուն տէրն Թլպաղտայ առ ոտն հարեալ զերդումն
իւր՝ ծանոյց մատնելով զամենայն Պետրոսի: Որդիքն Հա-
բելի անդէտ բնաւին մատնութեան, առին զմեծ ամրոցն
Արկնի, և 'ի նմա ամրացան. Պետրոս եկն 'ի վերայ սոցա
բազմութեամբ զօրաց. բայց տեսեալ զամրութիւն բերդին հի-
անայր յոյժ, զի գոլով բարձրապարիսպ և անառիկ՝ ոչինչ
իւիք կարաց մերձենալ 'ի նա. այլ տեղի տուեալ անտի՝
գանձ բազում խոստանայր տալ՝ որ ոք զգլուխ Հարպ-
կանն բերցէ առ ինքն: Զայն լուեալ մտերմականքն և նա-
խանձանօթք Հարպկանն՝ յորդորէին զնա 'ի քուն լինել.

զի էր նորա արտաքս ելեալ 'ի բերդէն իւրովք արամբք 'ի տեղի ինչ մօտ 'ի բերդն, ուր նստեալ պահէր զտեղին զա-ւուրս երիս ամենեւին անքուն կալով. և խոստանային նմա թէ ինքեանք պահ կալեալ տեղւոյն մինչև ցմահ մարտի-ցեն վասն նորա։ Իսկ և նա այսպէս աներկեւան լեալ 'ի քուն լինէր, "ազգականն իւր, ասէ, հատանէր զգլուխ Հարպկանն զառն հզօրի և քաջի" և տանէր առ Պետրոս. Իսկ նորա 'ի ձող ինչ բարձր ցցեալ' յանդիման բերդին ածեալ ցուցանէր. զոր ընդ տեսանելն ամբոխականացն' լա-լով ետուն զբերդն 'ի ձեռս նորա։

Ընդ այլ և այլ թերութիւնս իշխանաց մերոց և թա-գաւորաց' և այս գտանեցի, միամտութիւն ծայրայեղ, ան-ճանաչող լինել ընտրելոյ զլաւս յարանց 'ի վատթարաց. նա մանաւանդ նոքա զորոց արդ իսկ պատմեցաք, ոչ եթէ անգէտ ինչ էին այլ և այլ դիպաց առաջնոց յորս անտ միամտութեան համազգեաց դժնդակ աղէտից աշխարհիս մերոյ եղև պատճառ. այլ նոքա տակաւին յօտար թշնա-մեաց եւեթ կարի զանգիտեալ' և ոչ ընաւ խէթ կասկա-ծանաց դաւաճանութեան ընդ միտ ածէին զհամազգեաց իւրեանց։

Ե. Դաւաճանութիւնք և մատնութիւնք ուրացելոց։

Տեսաք արդարեւ 'ի վերոյ զամենայն հարուածս աշխար-հիս մերոյ թէպէտ մեծաւ մասամբ 'ի մերոց անտի գոր-ծեալ, կամ անձամբ կամ զառ 'ի թշնամեացն օգնեալս' նոցա 'ի գլուխ տարեալ, սակայն զդժնդակագոյնսն յաղէ-տից յուրացելոց առաւելապէս տեսանեմք գործեալ. որք յուսով փառաւորութեան որ առ 'ի թշնամեաց, ճանապարհ հորդէին նոցա. վասն որոյ և ուրոյն յիշել զնոսա առ-տանօր անկ համարեցաք։

Օրինակ ինչ մնաց 'ի չարեաց զոր ոչ արար Մերու-ժան արծրունի և աներ նորա Վահան մամիկոնեան յա-ւուրս Շապհոյ Պարսից արքայի, երկոքին ևս ուրացեալք 'ի հաւատոց. զի Մերուժանս այս նախ 'ի կողմանէ Պար-սից 'ի Հայս արշաւեալ յաւեր դարձուցանէր զաշխարհս, զեկեղեցականս կապեալ յերկիրն Պարսից տայր տա-նել, զգրեանս այրէր, զթարգմանութիւնս խափանէր, զորս ոչ ոք յօտարազգի թշնամեաց արար երբէք։ Իսկ արդ իբրև հնարիւք մեծին Ներսէսի բերին զՊապ զօրօք Յու-նաց 'ի թագաւորել, Մերուժան որ պետացեալ կալեալ

ունէր զաշխարհս Հայոց, ասէ Խորենացի Գ. 36. «Հրամայէ պայականն՝ զերրորդ պարապայն կախել զկանայս նախարարացն մինչև մեռցին. և թողուլ նոյնպէս 'ի կախաղաննին զդիակունսն, զի լուծեալ անկցին գետ՝ կերակուր լինել թռչնոց»:

Իսկ յաւուրս Բ. Յազկերտի, թող զուրացեալսն զՎարազվաղեն և զՎահան, մի միայն Վասակ սիւնի ոչ շատացեալ իւրով ուրացութեամբ, և զայլս 'ի նախարարաց 'ի նոյն գուբ արկանէր. «Այլ ինքն Վասակ, ասէ Ղազար 101. զխաբէութեան ձեռնապարհն կազմեալ նիւթէր 'ի սրտի իւրում, ունելով կամակիցս և այլ աստուածանենգ արս խորհրդոցն իւրոց յազատացն Հայոց»: Եւ ոչ միայն 'ի նախարարաց Հայոց յիւր կողմն ձգեաց և զատոյց 'ի միաբանութէ ուխտապահ իշխանաց, այլ նաև «քակեաց, ասէ Եղիշէ 162. և զմիաբանութի աշխարհին Վրաց 'ի Հայոց. և Աղուանիցն ոչ ետ յառաջ խաղալ. և զաշխարհն Աղձնեաց ըստ նմին իսկ օրինակի յետս կալաւ». և զաշխարհն եւս Ցուանաց որոշեաց 'ի Հայոց: Ցետ այսպէս խափանելոյ զարտաքին օգնութիւն՝ թէ զինչ ինչ չարիս արար ապա 'ի ներքուստ, տեսցես 'ի գլուխն Կրօնի [1]:

Յաւուրս Ջափր ամիրապետին արաբացւոց՝ որ զԲուղայն 'ի Հայս առաքեաց, Վասակ արծրունի ուրացեալ 'ի հաւատոց՝ կայր միշտ առ ամիրապետին գրգռել զնա. զորոյ և զպատճառն եւս յիշէ Թովմա արծրունի. «Գրգռեցաւ, ասէ, պատերազմ սաստիկ 'ի ձեռն Վասակայ արծրունւոյ, զի էր նորա զանձ բազում 'ի կարաս թաղուցեալ 'ի գետնափոր տան 'ի ներքոյ դրաց ապարանից տան իւրոյ. և յերկիւղ կասկածանաց եղեալ, թէ իցէ ընդելուզեալ Տաճկաց, գտեալ զպահեստ գանձին՝ ծախիցեն զզօրութի նորա». Բ. 6: Արդ Վասակս այս զհաւատոն այսու պատճառաւ ուրացեալ՝ զահագին չարիս եւ ածել 'ի վերայ աշխարհին. իսկ միւս առաջինքն սակս անմիտ փառասիրութեան, տեսեալ թէ Պարսիկք զուրացեալսն 'ի մեծութիւն հասուցանեն, թէպէտ և էին «արք անմիտք և չնաշակարք, անպիտանք և ոչ պիտանիք, վատք և ոչ քաջք». որպէս ասէ Ղազար 192. որք միայն վասն

1 Յայսմիկնեաց առաւել էր և ուրացեալն Գադիշոյ մաղխազ. որոյ սեռեալ թէ Գիւտ կաթողիկոսս առ վասն թարս ունի զնա և արհամարհեալ, բիւր բանս թշնամութեան յօդեալ 'ի վերայ նորա՝ ամբաստան լինէր Պերոզի արքայի Պարսից առ 'ի մեռանել զնա և կորուսանել. զորմէ պատմէ Ղազար 195. 196:

ուրացուն զտանուտիրութիւն հայկական գնելին 'ի Պար-
սից անարժանութիւ. իսկ արժանաւորքն սակս Ճշմարիտ
աստուածպաշտուն անտիրացեալք մնային. վասն այսորիկ
հեռացեալ լինէր յաշխարհէս Հայոց քաջութիւն, իմաստու-
թիւն և ամենայն լաւութիւն. զի այն ուրացեալքն էին, ասէ,
"անմարդիք 'ի ստոյգ մարդկանէ, և անարժանք և անծա-
նօթք յազգէ տոհմկաց": Առաւել յայսմանէ լինէր, զի "որ
երբեմն քաջանուն զօրքն Հայոց 'ի մէջ այլ զօրացն ամե-
նայնի երևէին, և զօրագլուխք անուանիք և յաղթօղք,
այպս ծաղր էին ամենեցուն և կատականք. մինչև լինէր
իսկ Թագաւորն Պերոզ յայտնապէս նախատելով երբեմն
առաջի ամենայն ատենին ասէր, Թէ այր անպիտան և
գունդ յետին՝ որ գամ մի յիմ իշխանութիւն է՝ Ասորոց
է, բայց քան զասորի՝ հային է՝ այր յետին և անպիտան.
և էր լուրն այն արժանի լալոյ և ողբալոյ": Այն այս բան
է՝ զոր և Վահան Մամիկոնեան կրկնէ առ Միհրան զօրա-
պետ Պարսից առ Ղազարայ 238. "Լուեալ է քո որ Միհ-
րանդ ես՝ և ամենայն Պարսից զբանս զայս յԱրեաց
տեառնէն 'ի Պերոզէ առաջի ամենեցունց յատենի, Թէ
այր վատ և գունդ անպիտան ասորի է, բայց քան զասորի
այր՝ հայ մարդ շատ վատթար է և անպիտան. և ոչ որ-
դւոց լաւ էր մահ քան զայն լուր յայնպիսի Թագաւորէ":
Պատճառ այսմ ընդէ այս զանընդունակութիւն Պարսից, որք
զամենայն այր Թեպէտ և վատ յառաջադէմ առնէին 'ի զի-
նուորական պատիւս, բաւական համարելով զուրացութիւն
նոցա: Տես 'ի Ղազար և 292. 293:

Նոյնպէս սոքա ամենեքեան ուխտանենգք, որք դաւա-
ճանք և մատնիչք, առ 'ի շահ անձանց և առ փառաւորու-
թիւն անկղերացեալք 'ի նոյնպիսի չարիս՝ և 'ի փառաց ևս վրիպե-
լին. անգիտացեալ՝ Թէ որ քրիստոսական կրօնիցն անհա-
ւատարիմ գտանիցի, նա և հեթանոսացն ծաղր և ծանակ
կայցէ: Զի անմոռուն պատրեալ 'ի սնոտի խոստմանցն Պար-
սից, ուրացեալ զհաւատս մատնիչ լինէին մեծի և փոքու,
իշխանի և ազգականի, այպս իբրև տեսանէին զանձինս
յամենայն յուսոյ 'ի դերև ելեալ, յայնժամ իմանային
զանմտութիւն իւրեանց, այլ վայրապար. որպէս 'ի մեծա-
րելն Նիխորայ պարսկին զՎահան ամենայն գնդաւն իւ-
րով, "զուխտանենգսն 'ի Հայոց և զուրացօղսն հանին
արտաքոյ ընթրեացն ամօթալից": որպէս ասէ Ղազար
294: Ոչ կարացին 'ի սկզբան անդ խելամուտ լինել Թէ
Պարսիկք ոչ այլ ինչ խորհէին՝ բայց զկորուստ համօրէն

ազգին՝ յորում էին և ինքեանք ուրացեալքն. որպէս զի զամենայն մեծամեծս Հայոց ընաջինջ արարեալ՝ ինքեանք ժառանգեսցեն զաշխարհ նոցա:

## ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԹԵՐՈՒԹԻՒՆՔ՝ ՊԱՏՃԱՌՔ ԱԽՏԻՑՆ ԱՌԱՋՆՈՑ

Տպագրեալքս յառաջ՝ էին ախտք և մոլութիւնք ընդհանուր արմատացեալք յազգի մերում, յորոց դժնեայ եկին ամենայն աղէտք աշխարհիս. բայց են 'ի մերում և ինչ ինչ թերութիւնք իբրև արմատք և պատճառք ախտիցն այնոցիկ. զի պակասէր 'ի նոսա սկզբունք կամ օրէնք կարևորք 'ի քաղաքաժողով ընկերութեան մարդկան և 'ի անուշութեան աշխարհին: Յորոց 'ի պակասութենէ 'ի ներքս մտանեն ախտք համաշխարհական աղէտից աշխարհիս մերոյ ծնունդք: Արդ մի առ մի յառաջ բերեալ զպակասութիւնս, կարգեսցուք զառ 'ի պատմագրաց մերոց յիշատակեալ դէպսն 'ի պատճառս նոցին:

Ա. Թերութիւն հպատակութեան, որ է ըմբոստութիւն:

Թողեալ զեղեալսն յաւուրս Խորենացւոյն զորոց ողբայ, զՅոհաննու կաթողիկոսի յառաջ բերցուք զողբս 'ի վերայ այսորիկ, որ այսպէս բողոք բառնայ. "Իսկ իբրև այսպէս կրեցաք տագնապս տարակուսից 'ի հինից օտարաց, 'ի մերս առաւ·լինէաք 'ի թագաւորս և յիշխանս անհնազանդոյց, այլ և 'ի պետս և 'ի նախարարս երկրի մերոյ. և յուսացեալ ապաստէաք ոչ եւս ընդ փորձութեան խառն վերապիլ ոգոյ և անկանիլ, այլ ջան առաջի դնել և ելս նեղութեան հնարել. և վայելչաբար 'ի միասին կապակցել հասարակ եղբայրութիւն, և իբրև զմի այր միանալ... բայց ոչ զայս եղև տեսանել մեզ, այլ փոխարէն հակառակն կրեցաք: Վասն զի նուաղունքն քան զմեծամեծսն ձեռներէց լինել ջանային. և ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին՝ զի զանարգն արհամարհեալ 'ի գետնի գնացուսցեն և ինքեանք ելցեն յերիվարս ահապարանօքս և տաւաթուր հարօղս, խրոխտացեալք.. մեծաւ ապստամբութ̃ե: Իսկ թագաւորք մեր և պետք և իշխանք՝ զորս 'ի բնէ նախարարութիւնս էին՝ ջանային վարատել... այլ և եղբայր ընդ եղբօր և ազգայինք ընդ ազգայինս ընդվզեալ 'ի նախանձ

և 'ի չարախօսութիւն և զրպարտութիւն և 'ի կատարեալ ատելութիւն ընդ միմեանս բերէին։ Եւ այսպէս համագունդ ընդ միմեանս հարեալք՝ 'ի հակառակութիւն և 'ի կռիւ պայքարէին. և միշտ սուր յազգեր ունելով՝ բազում եւս քան զԹշնամիս հեղուին 'ի միմեանց զարեան ճապաղիս. և առհասարակ զքաղաքս և զգեօղս և զաւանս և զագարակս, այլ և զտունս իւրեանց քանդէին ձեռօք իւրեանց. զրեթէ այն իսկ ոճիրք հակառակութեան զատան պատճառք հինիցն եկելոց 'ի վերայ մեր»։

Որչափ նուազէր իշխանութիւն մեր՝ նոյնչափ առաւելոյր և ըմբոստութիւն. որ է չճանաչել զոք մեծ քան զինքն, ընդվզել, չհպատակիլ ումեք. սոսկ առհա բազմացան Թագաւորութիւնք 'ի հայաստան աշխարհին յայնմ ժամանակի՝ յորում նոյն իսկ բնիկ Թագաւորութիւն յերերի կայր. 'ի չորս տեղիս չորք Թագաւորք նստան, յԱնի, 'ի Վասպուրական, 'ի Կարս և 'ի Բաղաց. նոյնպէս և 'ի չորս տեղիս չորք կաթողիկոսունք բազմացան։ Եւ եթէ տակաւին տեսէր իշխանուն մերոց՝ յաշխարհիկս անդ կարծեմ ամենայն իշխանք մի մի Թագաւոր լինելոց էին. իսկ եպիսկոպոսունքն ամենայն մի մի կաթողիկոս. քանզի անցնիւր երևելի իշխանք ակնառ մի առ մի կաթողիկոս հաստատել՝ յորժամ առ նոսա ապաւինէին եպիսկոպոսունքն այնոքիկ։ Այլ քանի՛ լաւ էր՝ փոխանակ զԹագաւորս բազմացուցանելոյ որով իւրաքանչիւրքն տկարացան, չորեքին ևս 'ի մի միայն Թագաւորութիւն միացեալ էին. յայնժամ ինքեանք զօրանային և Թշնամիքն տկարանային. բայց զերկպառակութիւնն որում ցանկայր Թշնամին արկանել 'ի մերոն՝ զնոյն ինքնակամ արարին մերքն, և ճանապարհ հորդեցին նմա համարձակ մուտ առնել 'ի ներքս 'ի հայաստան։

Բ. Թեքրոպեան կենցաղավարութեան.[1]

Օրէնք կենցաղավարութեան հոգի է ամենայն պետութեանց. որ և զրեթէ միշտ պակասէր 'ի մերս. նմին իրի և տեսչուհի աշխարհին անզօր երևէր. զի ոչ եթէ 'ի բազմութեն իշխանացն կայ և 'ի քաջութեն զօրաց մեծութիւն պետութեն, այլ 'ի քաջ կենցաղավարութեն։

Առաջին օրէնք կենցաղավարութեն է սպառազայից լինել

1 Յունարէն Բոլիտիքէ. որ առ նախնիս մեր Թարգմանի քաղաքականութիւն, քաղաքավարութիւն։

նախատես․ պարտ էր մերոցն յանցելոց անցելոց գուշակել զազգազգ չարիս և զխեղդութիւնս օտար Թշնամեաց, և այնպէս զգոյշ կալ անձանց․ այլ այս չտեսանի ընաւ 'ի գործս նոցա ։ Քանզի զի՞նչ այլ կառավարութիւն անմտագոյն քան զայն՝ ստէպ ստէպ փոփոխել զտէրութիւն որում ծառայէին, մերթ Յունաց և մերթ Պարսից հպատակելով․ ոչ զազգազգ չարիս զմտաւ ածեալ, այլ միայն զառաժամեայ նեղութիւն զոր կրէին 'ի Յունաց կամ 'ի Պարսից․ և ստէպ փոփոխելովն միշտ Թշնամի առնէին խնքեանց երկոքեան զմին և երկոքեան զմիւսն ։ Եթէ գտանէր 'ի նախարարսն մեր գոյգն ինչ նշոյլ նախատեսութեան 'ի դէպ էր նոցա տեսանել յառաջինմէ զզօրութիւն և զհալածանս, որ ունէր ծագել յայլեայլութենէ կրօնի որ ընդ մէջ մեր և Պարսից․ և վասն այնր հարկ էր խորշել 'ի նոցանէ, և ջանալ առ 'ի կալ մնալ միշտ ընդ տէրութեամբ կայսերաց, ընդ որս արդէն իսկ և նախնիքն մեր մեծն Տրդատ նահապետ քրիստոնէութեան՝ սիրով և դաշնադրութեամբ կապեալ էր զինքն և զազգն համօրէն միաբանեալ դաշամբ․ և պարտ էր գոնէ գործել զնոյն սէր պահել և չզայրացուցանել զնոսա, որոց պաշտպանութեամբ կարէր ազգն զերծանել 'ի դժնդակ հալածանաց զոր կրեաց 'ի Պարսից [1] ։

Երկրորդ օրէնք կենցաղագիտութեան է ճանաչել զարս ընտիրս, և նոցին խորհրդոց միշտ ունկն դնել, և նոքիմբք կառավարել զտէրութիւնն․ արդ 'ի հայաստան Թէպէտ անպակաս երբեն արք այսպիսիք, բայց ոչ ծանեան կառավարօղք ։ Մուշեղ սպարապետ ըստ քաջութեան նոյնչափ և կենցաղագէտ լինել ցուցանէ զինքն՝ յորժամ խորհուրդ տայր արքային միաբանել ընդ տէրութեամբ կայսեր․ և զի զօրք կայսեր 'ի սահմանին իւրեանց կալով հեռի մնային, և ոչ

1 Նախատեսութիւն, որպէս և առաջու, բարձեալ էր 'ի նախարարաց․ զի պարտ էր նոցա փոքր համարել զառ 'ի Յունաց եկեալ նեղութիւնն քան զայլոցն, և լինել ընդ իշխանութեամբ քրիստոնեայ կայսերաց ։ Զայս և [illegible] [illegible] [illegible] ծանեան 'ի [illegible] զօրու, բայց [illegible] հանդերձ․ քանզի չկարացեալ նոցա տանել զառանձնութիւն ժամանակին 'ի խուռն յարձակմանց անհաւատիցն, զհալածանս երկրին զոր ունէին՝ մի առ մի [illegible] 'ի ձեռս կայսեր, և փախչել [illegible] այնր նոր երկիր առնել 'ի Յունաց՝ անցեալ ընդ տէրութեամբ նոցա․ զոր [illegible] առ 'ի զլուխն Պատմութեան, յոգ․ Է․ 'ի նուաճման աշխարհիս 'ի զօրն ԺԱ ։ Եթէ յառաջն միահամուռ միաբանէին ընդ տէրութեամբ կայսեր որպէս Մուշեղ սպարապետ խորհուրդ տայր, ոչ 'ի [illegible] երկիր իւրեանց [illegible] լինէին, ոչ զկայսերս ցասուցանէին և ոչ զհալածանս այնքան արժանէին կրել 'ի Պարսից և յարարացւոց կրէին ։ Ա․Ժ․ յայնժամ ապաստանեցան 'ի Յոյնս, յորժամ անկեալ էր հակառակութիւն 'ի մէջ նոցա և Հայոց ։

կարէլին յարշաւելն թշնամեաց Պարսից և այլոց՝ նոյնհե-
տայն հասանել և պաշտպանել զՀայս՝ խորհեցաւ 'ի նոյն
իսկ 'ի մեծ Հայս քաղաքս շինել զօրանիստս յիւրաքան-
չիւր գաւառս, և 'ի նոսին բնակեցուցանել զզօրս կայսեր,
որպէս պատմեալ է մեր 'ի գլուխն Զինուորութէ։ Արդարև
քաջ էր խորհուրդն այնն իմաստնոյ, որով միօրինակ
մնայր աշխարհ մեր 'ի խաղաղութե. այլ խորհրդակորոյս
արքայն Վարազդատ մոռացեալ քսութեամբ այլոց՝ զայս
խորհուրդ 'ի յանցանս համարի Մուշեղայ և սպաննանէ զնա.
Յեկեղեցականս առաւել հանդիսացան արք իմաստունք
և կենցաղավարք, յորս գլուխ ամենեցուն ճանաչի մեծն
Ներսէս. որ եցոյց զիմաստութի իւր յօրէնս կենցաղավա-
րութե յորժամ միաբան նախարարք ծանրացաւութե լեալ
ընդ ի. Արշակ թագաւոր իւրեանց՝ դիմեցին առ նա
ինքն ասելով. «Լաւ է մեզ թէ ծառայեսցուք թագաւորին
Պարսից որպէս ընկերքն մեր արարին՝ զի թողին զնա և գնա-
ցին առ թագաւորն Պարսից, և մեք սոյնպէս առնելոց եմք»։
Յայնժամ սուրբն Ներսէս, որպէս ասէ Բուզանդ Դ. 51. բաց
'ի յուշ առնելոյ նոցա զաստուածային պատուիրանս, խրատ
ետ իբրև քաջ կենցաղավէտ մի յառաջիկայ չարիսն ևեթ
հայել, յուշ արարեալ նոցա և զերախտիս արշակունեաց
տոհմին զոր արարեալ էր առ մէն մի 'ի նոցանէ. զի թէ-
պէտ յանցաւոր է, ասէ, առ Աստուած ազգն արշակու-
նեաց, «սակայն զձեզ կեցուցեալ զամենեսեան և յաղքոյ
թօթափեալ է, զոմն գործով, զոմն պատուով, զոմն իշխա-
նութե, զոմն գործակալութե . . . և դուք աւաղիկ կամիք
անկանել հեթանոսաց 'ի ծառայութի . . . և մերժել զբնակ
տեարսն ձեր.. Բայց լաւ լիցի ձեզ զնոյն (զպարտիկն) սի-
րել և յանձն առնուլ և նմին հաւանել, և մերժել յան-
ձանց ձերոց զարարչապաշտ թագաւորն։ Զի թէ բուք
չար իցէ Արշակ, սակայն աստուածապաշտ է. և եթէ
մեղաւոր ևս իցէ, սակայն թագաւոր ձեր է»։ Եւ այս
ազդ առնէ նախատես լինել ապագայ չարեացն սպառ-
նացեալ առ 'ի յԱստուծոյ. «Գուցէ, ասէ, բարկացեալ
տէր Աստուած ձեր, և խլիցէ զձեզ արմատաքի, և մատ-
նեսցէ զձեզ հեթանոսացն 'ի չար ծառայութի տարկաւէն
մինչև յաւիտեան, և ոչ երբէք բարձցի լուծն ծառայութե
'ի ձէնջ։ Եւ բողոքէք դուք առ տէր, և նա ոչ լուիցէ ձեզ.
վասն զի անձամբ անկանիք դուք 'ի ծառայութի հեթանոս
տերանց, և անաստուած անգէտ մարդկան 'ի ձեռս հեթա-
նոս արանց տերանց խստասրտաց. և բազում չարի դիպեալ

ելանիցէ առաջի ձեր, և ոչ կարիցէք ճողոպրել յախտմանէ »: Այլ ռամկայն նախարարքն, որք զանձինս իւրեանց առ իմաստունս ունէին, փոխանակ լսելոյ բանից նորա իբրև ձայնի մարգարէի և քաջ խորհրդատուի, լուր զինչ ասէ պատմագիրն. « Իսկ նոքա, որք միանգամ էին 'ի մի վայր ժողովեալ, զաղաղակ հարկանէին. քարոզ կարդացեալ միմեանց ձայն տանէին, շփոթէին ամբոխէին ». մինչև ապա բանադատել զԱրշակ թագաւոր ինքեանց գնալ 'ի կոչումն Պարսից արքայի. որոյ ընդ երթալն կալաւ և առաքեաց զնա յԱնյուշ բերդն. և զաշխարհ մեր ապականեալ յաւեր դարձոյց:

Ոչ դուզնաքեայ ոք իմաստուն կենցաղավարէր երևեցաւ և մեծն Սահակ պարթև, որդի մեծին Ներսէսի, զնոյն անցս անմտութեան նախարարացն կրելով և ինքն, որպէս և հայրն իւր. առ նովաւ նախարարքն յԱրշակայ ձանձրացեալ և յանդադար մարտից. առ սովաւ յԱրտաշրէ արքայէն. ընդէ՞ր. զի անառակ կեանս վարէ ասեն: Բռնադատեն զերանելին զի միաբանեսցի ընդ նոսա տանել մատնել զԱրտաշիր արքային Պարսից: Հնարս խորհել ասաց հայրապետն ուղղելոյ զԹագաւորն. այլ բանք նորա չազդեցին յունկն նոցա. խրատս և յորդոր մատուցանէր, յուշ առնէր նոցա զանսուտ պատգամն սպառնալեաց տիրանենգ արանց. առանձնանայր 'ի սենեկի աւուրս բազումս՝ մաշեալ զանձն իւր յողբ և յարտասուս, այլ նոցա սիրտք չամոքեցան: Սակայն լուր ասացելոյն առ 'ի նմանէ թէ զիարդ զազդոյ զհոգևորական վարդապետութիւն խառն ընդ կենցաղավարէտ իմաստութեան իւրոյ բարբառէր առ նոսա. « Ինձ քաւ լիցի, ասէր, մատնիչ լինել ճշմարիտ հաւատոյն մերոյ, և անհաւատից զիմ հօտի զմոլորեալ ոչխարն մատնել յայպանութիւն. զի թէպէտ և մեղաւոր է, այլ դրոշմեալ է սուրբ աւազանին ծննդեամբ... Արդ եթէ էր տանել առ բժիշկ առողջ զվիրաւոր եկեղեցւոյս իմոյ ոչխար, փութայի և ոչ յապաղէի. այլ յամենախստալից ատեան մատուցանել զիմ հիւանդացեալ հոգւոյ որդի, և ոչ երբէք յանձն առնում. զի եթէ էր հաւատացեալ թագաւորի առաջի տանել զայսպիսի յանդիմանութիւն, թերևս համարձակէի գիւտիւ կորուսելոյն. այլ կշտամբել զհաւատացեալս յաղագս մեղաց առաջի անհաւատիցն՝ ոչ հաւանիմ... Ինձ լաւ լիցի մեռանել, քան եթէ զոք 'ի հաւատացելոց վասն անարժան գործոյ մատնել անօրինաց... քաւ ձեզ որդիք, մի խորհիք զխոր-

հուրդդ զայդ, և զենիկ զանարգոդ՝ որպէս և ոմանք զձեր նախնեացն՝ կարուանել մի ջանայք „ · Ղազար 39 ։ Այլ նախարարքն վատախորհուրդք և խռովարարանողք առ ոմն հարեալ զգանս խորախորհուրդ առն մեծի և սրբոյ հայրապետի՝ ընկեցին զնա յաթոռոյ, որ եթէ յեւրոպիա գտանէր, թագաւորաց խորհրդական զնա առնէին, նա և փոխարքայ իսկ [1] ։ Իսկ թէ ընդէր անարգեցին զգանս սորբոյն՝ յայտ է, զի յառաջիկայ չարեացն խորշեցին, այսինքն է յանարժան գնացից թագաւորին իւրեանց Արտաշրի · և ոչ գիտէին նախատես լինել ապագայ չարեացն որ գալոցն էր 'ի մատնութէ իւրեանց · որպէս և եղև իսկ ։ Զի միայն տեսանելն Պարսից զամենայն նախարարացն բազմութիւն եկեալ խոնարհեալ առաջի իւրեանց՝ ոչ զի հաստատեսցէ, այլ զի բարձցէ զթագաւորն զառաջնորդ ազգին, և ինքն տիրեսցէ 'ի վերայ Հայոց, այս միայն բաւական էր անկել 'ի սիրտս Պարսից ոգի բռնաւորութե 'ի վերայ մեր ։ Իսկ ո՞ւր թողցուք, զի ինքեանք նախարարք Հայոց են՝ որք զհամօրէն զաշխարհս Հայոց ինքնակամ ընդ լծով Պարսից արկեալ, ասեն առ թագաւորն նոցա թէ յայսմհետէ չէ մեզ պիտոյ թագաւոր · այլ դու իշխեա 'ի վերայ մեր, մարզպան պարսիկ առաքելով առ մեզ [2] ։ Իսկ թէ զինչ հետևանք և արդիւնք զհետ եկին յայսպիսի անարգութե նուաստացուցանելոյ նախարարաց զպատիւ և զշուք տէրութե Հայոց 'ի միում աւուր, յայտնի կան ահա՝ որ ինչ յայսմհետէ բռնակալութի ծանր տիրեաց 'ի վերայ ազգիս առ 'ի Պարսից · մանաւանդ որք յաւուրս Յազկերտի գործեցան աղէտք և դառն հալածանք ։ Զի նախարարքն մեր կուրացեալ 'ի սաստիկ կրից անմիտ վրէժխնդրութե 'ի վերայ Արտաշրի թագաւորին իւրեանց՝ չեղեն նախատես՝ թէ սովին գործով 'ի ձեռս Պարսից տային իշխողութի և բռնաւորութի ոչ միայն 'ի վերայ իւրեանց՝ այլ նաև 'ի վերայ հաւատոյ իւրեանց · յայսմանէ էր զի Յազկերտ այնպէս մեծամեծս խորոխտայր ընդդէմ

1 Որպէս գաղղիացիքն ասորին զկարդինալ Մազարին, զՌիշըլիէն, զՖլըրիւրին ։

2 “ Մանաւանդ զի, ասէ Ղազար 44 · լուաւ և թագաւորն Արեաց ամենայն աղաղակօք զդանն 'ի դատաստանաց Արտաշրի, (որք էին նախարարք Հայոց) թէ բնաւ զի՞ իսկ պիտոյ է մեզ թագաւոր · այլ իշխան պարսիկ ընդ ժամանակս եկեալ վերակացու լիցի մեր · որ և զիւրաքանչիւր ուրուք 'ի մէնջ ծանուցեալ զհաստատութի և զանհաստատութի ցուցցէ ձեզ „ ։

Վարդանանց յառաջնոյ անդ որպէս առ. ազգ. ինչ ստրուկ և պարտաւոր. իբր թէ սրով խրով գրաւեալ էր զաշխարհս մեր, և ոչ մատնութեամբ նախարարացն մերոց։

Ըստ այսմ օրինակի և զայլ գործս նախարարաց մերոց քննեալ զոր գործեցին զկնի այնորիկ, մեծ թերութիւն կենցաղագիտութեան տեսանի 'ի նոսա յորժամ միահամուռ ելեալ գնացին 'ի կոչումն Յազկերտի, զոր յայտնի գիտէին լինել ոչ պատերազմի աղագաւ՝ այլ հաւատոյ. « Անդրէն և անդ գիտացին, ասէ Ղազար, զպատճառս իրացն՝ թէ չէ խաղաղութիւն, այլ կորստեան ոգւոց է ստիպումն կոչմանս այսորիկ ». 79։ Որպէս և Եղիշէ. « Բայց վասն դիւրութեան որ դու հրամայեցեր առնել մեզ, էր մեր իշխանութիւն անդրէն յաշխարհին մերում չանկանել մեզ 'ի ձեռս թագաւորիդ որպէս և այլքն զի ապրեցան յայսպիսի փորձանաց. այլ որպէս կամօք և յօժարութեամբ եկաք, իբրև թէ գիտէաք զվիշտ վտանգիս՝ ոչինչ զանգիտեցաք յայսպիսի ճգանց, նոյնպէս և կամիմք զի այլ ևս ծանրացուցես 'ի վերայ մեր, մինչև քո չարութիւն կամացդ յագեսցի 'ի մեզ ». 260։ Գիտէին զայս, այլ ոչ կասեցան 'ի գնալոյ. միայն նախ քան զերթալն՝ յերդումն հրաւիրեցին զամենեսին զի միաբան կացցեն. բայց 'ի զուր, զի գիտէին զթուլութիւն բազմաց։ Եթէ յառաջ քան զերթալն իւրեանց քաջ խորհեալ էին վասն յուրացութեան հրաւիրելոյ զնոսա Յազկերտի, զի գիտէին զմիտս նորա, ոչ գթէին 'ի հաւատս։ Եւ զմիաբանութիւն զայն առ 'ի յայտնի պատերազմ մղել ընդդէմ Պարսից՝ զոր յետ ուրանալոյն արարին առաջնորդութեամբ Վարդանայ կամ մեռանել և կամ ոչ տալ մուտ Պարսից, ընդէ՞ր չարարին 'ի սկզբան, յայտնի ծանուցանելով 'ի դուռն Պարսից զպատճառն. զի յայնժամ ոչ զհետ գայր այնչափ աւերումն աշխարհի, և ոչ այնչափ կորուստ հոգւոց։ Ոչ փոքր ինչ թերութիւն էր և այն՝ յետ զբռամբ ածելոյ զիշխանն Սիւնեաց զուրացեալն Վասակ, ապա թողուլ արձակել հաւատալով խոստմանն նորա, յետ յայտնի գիտելոյ զստութիւն ամենայն բանից նորա. « Իսկ նոքա թէպէտ և հաստատեալ գիտէին, ասէ Եղիշէ, զնենգաւոր կեղծաւորութիւն նորա, և թէ խաբէութեամբ դառնայ անդրէն 'ի հին մոլորութիւն, ոչինչ փոյթ առնէին ձեռն արկանել 'ի նա վասն առաջին յանցանացն ». 113։ Ի վրիպակաց տատի այնչափ համաշխարհական չարիք զհետ եկին, և համօրէն աշխարհիս կործանումն։ Այլ որ անմտագոյն ևս է՝ յետ արձակելոյ զՎասակ յազատութիւն, զոր կարէին

գէթ 'ի գիպահոջ պահել, 'ի կարգմունս ապա բանակ ընդդէմ Պարսից, զերրորդ գունդն յանձնեն 'ի ձեռս նորին Վասակայ, որպէս թէ ոչինչ գիտէին զնմանէ. զորմէ առս յեղիշէ 127:

Այսպիսի թերութիւն 'ի կենցաղավարութեան ոչ սակաւ է 'ի պատմութիւնս յետագայ ժամանակաց գտանեմք յաւուրս Բագարատայ իշխանին, որպէս պատմեալ է մեր 'ի գլուխն Պատմութեան յառաջատանս արարացուց: Զի վրէժխնդրութիւն ընկալեալ Սիմ լեռինն, և քաջութիւն կարծեցեալն յաչս իւրեանց՝ զԱպուսէթ միայն սպանանելով, ոչ օգտեր՝ այլ չարաչար հարուածոց եղև պատճառ, որք գհեռս եկին 'ի ձեռն Բուղայի յաւուրս Ջափրայ ամիրապետին: Բայց զարմանք են, զի 'ի նոյն իսկ 'ի տաճիկ իշխանաց անուն գտանի յայնժամ ամենք մտերիմք մերոց, որք այդ. արարեալ առ Աշոտ իշխան Վասպուրականի՝ ծանուցին զխորհուրդ ամիրապետին, որ կամէր բառնալ ջնջել զամենայն իշխանս Հայոց. և 'ի ձեռն իւրոց ամիրայից կառավարել զաշխարհս մեր: Իբրև լուաւ զայս Աշոտ այրն զօրեղ և քաջ կենցաղավարէտ, ոչ կամեցաւ գնալ առ Բուղայ, որ առաքեալ էր յամիրապետէն 'ի գործ դնել զխորհուրդ չարութեան իւրոյ, ոչ հաւատալով երդմանցն Բուղայի՝ որ կեղծաւորեալ սիրով և երդմամբ կոչէր զնա. այլ եդ 'ի մտի արեամբ չափ պատերազմել ընդդէմ նմա 'ի նկան բերդի անդ՝ ուր կայր ամրացեալ: Բայց զի՞նչ պարտ է ասել վասն ընթերակայ իւրոց նախարարաց, որոց ոչինչ նախատանս լինելով ապագայ չարեացն՝ զուրկ 'ի խորագիտութենէ, այնչափ բանսարկութեցին զնա, մինչև ակամայ կամօք ել և գնաց առ Բուղայ. որ և կալեալ զնա անդէն՝ ընդ այլ կապեալ նախարարս առաքեաց առ ամիրապետն 'ի Սամառա: Գուրգէն եղբայր Աշոտոյ՝ քաջութեամբ նման նմա, բայց անմիտ և օտար յիմաստութենէ եղբօրն, թէպէտ և 'ի վերայ հասեալ էր չար խորհրդոյ արարացուց, և աչօք իսկ տեսեալ զանցս եղբօր իւրոյ, այլ պատրեալ յանմիտ փառասիրութենէ, յուսացեալ փոխանակ եղբօր իւրոյ ինքն տիրել 'ի վերայ համօրէն Վասպուրականի, ոչինչ ունկնդիր եղեալ աղդարարութեան ընթերակայ նախարարաց իւրոց, ինքնակամ ընթանայր առ Բուղայ. որոյ նախ պատիր սիրով ընկալեալ զնա, ապա նամակ մատուցանէ նմա որպէս թէ յամիրապետէն գրեալ, որ կոչէր զնա առ ինքն. և այսպէս զնա ևս առաքեաց Բուղայ առ ամիրապետն: Այսպէս յանմտութենէ նախարարաց

քուրոց մնացելոցն Աշոտ. իսկ Գուրգէն յանմտութենէ իւրմէ :

Թովմաս արծրունի, որ ճոխագոյն պատմէ զայս ամենայն, յաւելու բերէ և զայլ դիպուածս՝ որք յայտ առնեն զմիամտութիւն մեծամեծաց այնր ժամանակի՝ զուրկ ՚ի խորագիտութենէ. պատմէ թէ յորժամ զօրք Բուղայի պաշարեալ էին զՏփխիս, քաղաքապետն Սահակ անուանեալ՝ հնարիւք իմն ել արտաքս ընդ մի կողմն քաղաքին. այլ փոխանակ փախչելոյ և զերծանելոյ, եդ ՚ի միտ անձնատուր լինել, կարծելով այնպէս ՚ի խաղաղութեան վայելել զօր ընդ առաւօտն, առէ, Բուղայի՝ և նմին զարմացաւ. զորմէ տես յԱրշակունիս արաքացւոց ՚ի գլուխն Թ: Տխմարագոյն քան զայս պատմէ վասն Ապումուսէի իշխանին Աղուանից, որք յայնժամ ընակէին յՈւտի, և ըստ մեծի մասին էին յազգէս Հայոց. սա յետ բազում անգամ շարաչար խորտակելոյ զքաջմութիւն զօրացն Բուղայի, պատգամ առաքէ առ նա, որպէս թէ մի կարծել առ ապստամբութեան ընդդէմ ելեալ նմա: վասն որոյ թէ կամք իցեն ամիրապետին՝ նմին իջանէ և գնայ առ նա ցուցանել զիւր հնազանդութիւն: Եւ այնպէս սա ևս այսպիսի քաջ այր՝ արամբք ընտրելովք անկաւ ՚ի յետին միամտութիւն, և գնաց առ Բուղայ. որ և առժամայն կալաւ զնա. Գ. 10:

Ի յիշելն զամենայն անցս որ անցին յաւուրս Բուղայի՝ առաւել քան փախուցելոց միամտագոյն այն իմն երևի, զի յետ անսանելոյ զայնչափ չարիս և զպատուհաս Բուղայի, յորժամ և զմնացեալ զիշխանսն մեր առ նմին կոչէր տաղապատիր բանիւք խոստանալով նոցա բարիս առնել, նոքա տակաւին ոչ զգաստացան, այլ միամտութեամբ հաւատացեալ կեղծաւորական խոստմանցն նորա՝ միահամուռ գնացին առ նա. և զի՞նչ արդիւնք միամտութեան նոցա. բայց կապիլ ամենեցուն, և ՚ի վերայ ուղտուց բարձեալ տարաշխարհիկ լինել ՚ի Սամառա :

Արդ եթէ մերքն փոքր մի միտս ունէին և աչալուրջք էին ՚ի խորագիտութիւն, նախ պարտ էր նոցա ՚ի դըրան ամիրապետին ունել միշտ զոմն գործակալ յիւրեանց կողմանէ զայր կենցաղագէտ, որ կարող լինէր բազում ինչ մեղմել, և բազում ինչ ՚ի հրամանաց նորա փոխել ընծայիւք և աղերսիւք. և զի ՚ի բարեբարոյ և ՚ի մարդասէր արանց տայր առաքել ոստիկանս ՚ի Հայս. բայց չէր տեսանել ՚ի նոսա խորհուրդ այսպիսի. այլ փոխանակ այնր, որոք ցասուցեալ ինչ էր ընդ առաջնութիւն իշխանաց աշխար-

հիս մերոյ, նա երթեալ առ ամպրապետն և 'ի հաւատոցն ուրացեալ՝ յանձանձեր պէսպէս չարախօսութիւս զիշխանաց ազգիս, որով առաւել ևս 'ի սրտմտութիւն գրգռեր զամպրապետն, որ և զօրու ծանու առաքէր 'ի Հայս աւերկանս անագորոյնս: Իսկ իշխանք մեր նախարարք ոչ այլ ինչ գիտէին հնարել, բայց եթէ 'ի քաջութիւն իւրեանց ապաւինել. և քանզի ուրոյն ուրոյն և ոչ միահամուռ զդէմ ունէին, իւրաքանչիւրքն տկարացեալ 'ի ձեռս թշնամեաց անկանէին: Եւ որպէս թուի՝ 'ի վերջին ժամանակս արշակունի թագաւորաց և ոչ իսկ խորհրդականս ունէին առընթեր: Եւ ոչ դարձեալ դեսպանս 'ի դրանն կայսեր, ոչ յառաջ և ոչ յետոյ: Պարտ էր նոցա դարձեալ յարքունիս շրջակայ տէրութեանց ունել հաւատարիմ լրտեսս, առ 'ի կանխել ծանուցանել մերոց գներքին խորհուրդս՝ զոր խորհէին վասն աշխարհիս Հայոց 'ի դաւել և 'ի հարստահարել. այլ չընթեռնումք զայսպիսի խորագիտութիւն արարեալ մերոցն: Գագիկ վերջին թագաւոր Բագրատունեաց թէպէտ այր ուսումնասէր, բայց տես զիարդ վրիպեցաւ յարձակելն զՎեստն Սարգիս յետ 'ի ձեռս բերելոյ զնա, և չեղև հետամուտ խոստովանեցուցանել, որով խելամուտ լինէր առաջին խորամանկութեանց նորա, և նախատեսս լինել ապագայ մատնութեանց նորին՝ որովք 'ի հիմանց կործանեաց զթագաւորութիւն նորին Գագկայ և Բագրատունեաց. այլ թո՛ղ զայս, յետ արձակելոյն զնա արար զնա նաև իւր ներքին խորհրդակից:

Մի 'ի պակասութեանց թագաւորաց մերոց կամ առաջնորդաց էր՝ չվարժարեալ զվաստակաւորս 'ի քաջագործութիւս ծանր պատերազմաց, առ 'ի կապել զնոսա սիրով և քաջալերս տալ. զի ոչ գտանեմք ինչ ուրեք յիշատակութիւն վասն այսր, բայց եթէ 'ի քանի մի դիպուածըս. գուցէ աստի պատճառս առեալ անցանէին յայլ թագաւորս: Թագաւորի պարտք են այնպէս կառավարել զտէրութիւն իւր, որպէս գրէ Թոմա արծրունի Գ. 11. վասն Գագկայ արծրունւոյ. “Եւ այնպէս անկարօտս առպիտանացուս հոգ տարեալ, զկարաւորեաց որ ինչ չինուէ և խաղաղութեան աշխարհիս նպաստաւոր առ օգտակարագոյնսն պահանջէր գործառնութեան եղանակք, որպէս օրէն է թագաւորաց և թագաւորազանց աշխարհին խնամողաց յանձանձել ըստ վերակացութեան յԱստուծոյ նոցա հաւատացելոց”: Որ և բազմօք դրուատեալ զնա թէ 'ի քաջութեան մասին, և թէ յիմաստութեան և 'ի կառավա-

րութեն, ասէ՝ թէ յորժամ ինքն Գագիկ պաշարեալ կայր 'ի շինութեն Աղթամարայ՝ այնպէս իմն յարդարէր զգործն, զի թշնամիք իւր բազմապատիկ առաւելեալք ոչ յարեան 'ի վերայ նորա, որով և շինուածն աւարտեցաւ. «Կա-պեաց, ասէ, զձեռանէ իւրմէ հաստատահիմն խորհրդովք, և պատերազմական ուժեղակութիւք իւր դանդաղանաւանդա-իւիք զկցակս նոցա ձմլեալ թօշնացուցանէր, սկսեալ 'ի Մարաց և Պարսից զօրոր Ատրպատական մինչև ցխուժա-տան. որում կամէր՝ աւանդէր. և յորոց ոչն կամէր՝ 'ի բաց կորզէր, զայլս 'ի վերայ այլոց յարուցանէր, և զհա-զարս և զբիւրս 'ի նոցանէն իմաստութեան որպէս սատա-կէր». Ե. 8։

### Գ. Թերութիւն խորագիտութեան։

Յաւալի է արդարև տեսանելն զառաջնորդս ազգիս զթագաւորս և զիշխանս վերջացեալ 'ի բարեմանութեանց որք պահանջին 'ի տէրութեն աշխարհի. բայց առաւել ցաւալին է տեսանել 'ի գործս նոցա փոխանակ նոցին ստէպ յաճախեալ զայնպիսի թերութիս որք եղծիչք են կառավարութեն։ Քանզի սկսեալ 'ի ժամանակաց վերջին արշակունի թագաւորաց և նախարարաց՝ սակաւ գտանեմք խորագիտութեն և իմաստուն կառավարութեն, այլ փոխանակ այնր անմտութեն և ծանծաղամտութեն, որ է չունել միտս ընտրողութեն որոշելոյ զլաւն 'ի վատթարէն. այլ ընդ հակառակն՝ զանմտութեն գործս իմաստութեն համարել, և զիմաստութեն անմտութեն. և 'ի վերայ այսորիկ՝ պնդել և կամակորել ևս 'ի խորհուրդս իւրեանց, յորժամ խորհրդատուք յորդորէին 'ի բաց կալ։

Ո՞րքան անզգոյշ միամտութեն էր Տիրանայ երկրորդի նախ չճանաչել ամենևին զդաւն Փիսակայ՝ զոր իւր սենեկապետ էր կարգեալ, և իբրև ներքին մտերմի բանայր նմա զամենայն խորհուրդս իւր. երկրորդ՝ և ոչ իսկ կասկածել բնաւ զդաւոյն՝ յորժամ Վարազշապուհ առ ինքն կամէր գալ զանձուկ սիրոյն պատճառելով. երրորդ՝ անփոյթ լինել ամենևին գէթ զցրուեալ զօրս իւր փութանակի ժողովել, յորժամ ետես զՎարազշապուհ երեք հազար զօրօք առ ինքն եկեալ, զորմէ պատմէ Բուզանդ Գ. 20։ Եւ ահա 'ի պատճառս անզգոյշ անմտութեն իւրոյ ըմբռնեալ զրկեցաւ 'ի տէրութէ աչաց։

Նմանացաւ և որդի նորա Արշակ Բ. զի անփոյթ եղև

մին, որով յաղթանակէր Պապ 'ի վերայ Թշնամեաց մեծա-յաղթութեան, որ մի է յերեւելեաց յաղթից մերում: Իսկ զօրավարութիւն Մուշեղայ, որ մի միայն խնդրելին էր յաւէտ պատերազմի, անհնարին փառաւորեցաւ 'ի ժողովըր-դեանն, մինչեւ զայն ժամ յաղթութեան կոչել ժամ Մու-շեղայ:

Սարագդատայ ծանծաղամտութիւն հակառակ է առ Բուզանդայ եւ առ Խորենացւոյն, որ Գ. 40. հեգնելով իմն զդէ զերթալոյ նորա 'ի կոչ Թէոդոսի կայսեր. 'ի մէջ եդեալ առնէ 'ի սուտ հանել առաջի նորա զայն ինչ՝ որ ա-մենեցուն յայտնի էր: Տես զոր ինչ գրեալ է մեր վասն սորա 'ի գլուխն Կառավարութեան եւ զբանս Բուզանդայ: Զթե-րութիւն Գ. Արշակայ եւ Գ. Խոսրովու 'ի խորագիտութեան առս նոյնպէս 'ի գլուխն Կառավարութեան:

Բայց որպէս զԹագաւորաց՝ նոյնպէս եւ զնախարարաց այնր ժամանակի բազում բաժանեալ պատմագիրք. յորս Ղա-զար զբանսարկութիւն նոցա յիշատակէ ասելով. "Խնդրե-ցին իւրեանց Հայք Թագաւոր զնոյն միաբանութեամբ զխոսրով զեղբայր Վռամշապհոյ, զոր յառաջնումն բանսարկութեն ետուն մերժել զնա Հայք Շապհոյ արքային Պարսից 'ի Թագաւորութէ Հայոց,,. 33: Առաւել արժանի բազում բանադրելոյ զանմտութէ նախարարաց՝ է միաբանութիւն այն որով մատնեցին զԱրտաշիր Թագաւոր Հայոց 'ի ձեռս Պարսից. զոր յիշատակեցաք 'ի վերոյ, եւ 'ի գլուխն Կառա-վարութեան: Այլ թէ քանի անմտութեան գործ էր, չմար-թի ասել. եւ զոր արարին նոյն նախարարքն մերժելով յաթոռոյ նաեւ զմեծն Սահակ զայնպիսի այր զիւրեանց համազգի, որպէս զի մի խառնեսցի ամենեւին յիւր աւե-լութեան աշխարհի 'ի դառն ժամանակին յայնմիկ յորում պէտս ունէին այնպիսի իմաստուն առաջնորդի. եւ փոխա-նակ նորա նստուցանելով զօտս ասորի: Համարէին ի-մաստուն կարծեցեալքն թէ օտարն լաւագոյն լինէր քան զհամազգին իւրեանց. այլ անդադար ուրեմն ծանեան զվնա-սակն մեծ զոր արարին յետ երկիցս եւ երիցս փոխելոյ զհայ-րապետս. քանզի պակասէր 'ի նոսա բնաւին օրէնք կենցա-ղավարութեան, նախանձ կոյր եւ բարձեալ էր ամենեւին 'ի նոցա-նէ նախատեսութիւն, զի ոչ կարացին յառաջնմէ տեսա-նել իմանալ թէ օտար ոք ոչ կարէ յարմարել բարուց հայկազանց: Եւ յետ ձանձրացելոյ զվրիպել իւրեանց՝ զնոսա խոնարհին յոտս սրբոյն Սահակայ, աղաչելով զնա դարձեալ հովիւ լինել նոցա. այլ սուրբն համարձակ ասաց առ նո-

ռու. «Քահանայանալ 'ի վերայ տերանենից և տիրասպան և մահանիշ ժողովրդաց ոչ կարեմ»։ Ղազար 49։ Իսկ յորժամ ստիպէին՝ ասէ դարձեալ. «Երթայք յինէն 'ի բաց, և թոյլ տուք ինձ ողբալ զընդհանուր կորուստ աշխարհիս Հայոց, զոր տեսանեմ աչօք մտացս 'ի զօրութէ վերին ցուցակու-թեն»։ Այնպիսի անձին կատարելութե 'ի հարկէ և նոյնպիսի կորուստ զհետ գայր։

Այն ինչ ինչ յայտնիսի դիպուց և առ ժամանակօք Բագ-րատունեաց. որպէս Աշոտոյ արարք անմտութեն. քանզի այն ինչ գալով վախճանեալ հօր նորա ա̄. Աշոտոյ Թագա-ւորի եկին առ նա իշխանն Վրաց Ատրներսեհ կարեկից լի-նել նմա որպէս արժանն էր. և ապա եւ դնաց առ Սմբատ եղբայրն նորա վասն պարտու պատշաճից հատուցանել և նմա. և անտի եկին դարձեալ առ Աշոտ. այլ հրապուրեալ Աշո-տոյ 'ի քսութենէ ումանց, թէ Ատրներսեհ երթեալ միա-բանեալ է ընդ Սմբատայ վասն կացուցանել յաթոռ թա-գաւորութե Հայոց. կալեալ կապէ զԱտրներսեհ երկա-թի շղթայիւք, և դնէ 'ի բանտի 'ի բերդին Կարուց։ Զայս իբրև լուաւ Սմբատ, յարձակեցաւ 'ի վերայ եղբօր իւրոյ Աշոտոյ. և «յերկաքանչիւրոց անտի, ասէ Յովհան-նէս կաթողիկոս, աղմուկ շփոթի սաստկացեալ... ոչ սակաւ խուժանս աւերանաց զաշխարհաւն զեղոյր»։

Յետ իննսերորդ դարուն Բագրատն որ կրտսեր եղբայր էր Սմբատայ սիրական իշխանին, դնաց առ Նսր ոստիկանն որ Սբուքն կոչէր, որպէս զի բարեկամութի կալեալ ընդ նմա՝ յինքն գրաւեսցէ 'ի ձեռաց եղբօր իւրոյ Սահակայ զհայ-րենի ժառանգութիւն զոր միապետեալ էր, զբկանս համա-րելով անձին։ Իսկ Նսր 'ի վերին երեսս սիրով ընկալեալ զնա՝ խոստացաւ տալ զվիճակ ժառանգութե նորա. այլ միտք նորա էր սպանել նաև գալստեան եղբօր նորա Սա-հակայ, որպէս զի զերկոսին միանգամայն խարդաւանել կորուսցէ. վասն որոյ կոչեաց և զնա։ Ընդ կոչելն Սահա-կայ՝ ոչինչ հետազօտեալ զվախճան գնացելոյ եղբօր իւրոյ, և ոչ զպատճառն կոչելոյ իւրոյ, վաղվաղակի յօժարութե ել և գնաց իբրև 'ի կոչումն ինչ արքունական. «Եւ իբրև թմբրութե իմն անզգայացեալ, ասէ Յովհաննէս կաթողի-կոս, դնէ դաշինս ընդ դժոխոց. ոչ սկսեալ 'ի սրտի իւրում զիմաստութի և ոչ 'ի մտի եդեալ զկատարեալ գիտուն̄ և ոչ նայեցեալ 'ի վախճան խորհրդոյն»։ Կատարեալ գի-տութի յայս գործ՝ էր կենցաղագիտութի և խորագիտու-թի, որ որպէս յայտնի տեսաւ 'ի գործս նախարարաց մե-

րոց՝ բոլորովին ապականէր ։ Նոր հրաւիրեաց զերկոսին եւս գնալ ՚ի Դրուին. յոր ՚ի մերձենալն՝ զերկոսին եւս կապեալ և բարձեալ յուղտս և ՚ի ջորիս՝ այնպէս եմուտ ՚ի քաղաքն. և անդ ՚ի տուռուծս և ՚ի շղթայս երկաթի կապանաց վարեալ՝ « զանձինս նոցա մատնէր ՚ի բանտ և ՚ի կապանս և ՚ի պատիժս մահու » ։ Յերկոսին եւս փոխանակ խորագիտութե որպէս վայել է իշխանի՝ տեսանի կատարեալ տղայամտութի. ՚ի միումն ՚ի Բագրատ տղայամիտ խորհուրդ. զի առ՝ ՚ի ձեռս բերելոյ զհայրենի ժառանգութի գնայ առ այնպիսի այր՝ որ միշտ զկորուստ իշխանաց խորհէր, որպէս սուղ ինչ յառաջ փորձիւ տեսեալ էր նորա զայս ՚ի գործս Յուսփայ ոստիկանին. իսկ ՚ի միւսումն տղայամիտ փառասիրութի. զի ընդ կոչումն եւեթ Նսրայ ոստիկանին ուրախացեալ, մանաւանդ եթէ կոչումն արքունական կարծեալ զնոյն, առանց ինչ քննելոյ զգուշութե՜ զպատճառ կոչմանն, պատրեալ յօժարութե՜ գնայ առ նա. նա մանաւանդ « բազում օժտութե՜ ընծայիւք ». որպէս ասէ պատմագիրն ։

Դ. Թերութիւն երկայնմտութեան, որ է կարճմտութիւն ։

Երկայնմտութիւս այս, որ ամենեւին կարեւորն է ՚ի կենցաղագիտութե, և որով յաջողեցան հռոմայեցիք ՚ի պետութե իւրեանց, բոլորովին պակասէր ՚ի մերումս. զի յետ սուղ ինչ հաստատուն կալոյ յիւր կարեւորս մանաւանդ ՚ի պատերազմականս, անդէն փոխէին ՚ի խորհրդոց իւրեանց վայրապար ։ Ի կարճմտութէ աստի ՚ի հարկէ և ընդ առաջ ելանէին նոցա անյաջող ելք և թշուառութիք զորոց ողբան պատմագիրք մեր ։ Զի թէպէտ եղեն ՚ի նոսա հրաշալի քաջագործութիք զորս հազիւ երբէք է տեսանել յայլ ազինս, բայց անօգուտ էր աշխարհին այն ամենայն, զի ոչ տեւէր անփոփոխ մինչեւ ցվախճան գործոյն յոր ձեռն արկանէին ։ Բազում ուրեք ընթեռնումք առ պատմագիրս մեր՝ զի քաջ զօրավարք և քաջ զինուորք յամուր բերդորայս պատսպարեալք, որպիսիք բազումք գտանէին յաշխարհի մերում ՚ի զանազան տեղիս, յորոց և բազումք էին անմատոյցք և անառիկք, յետ քանի մի անգամ ընդդէմ կալոյ թշնամեաց, ոչ առ տկարութե ինչ՝ այլ առ պակասութե կենցաղագիտութե կամ առ մնոտի ինչ երկիւղի լքեալ և կարճամտեալ մեծապէս՝ լաւ համարէին զերթալն առ թշնամին՝ քան զտոկալն և զմնալն

պատահալերգք․ զի ամենայն անկարգութիւնք նոցա՝ թէպէտ և մանկականք, անմեղ և հեշտական համարին առ ծնողս նոցա և ընտանիս առ բնական գթոյն․ վասն որոյ և չհամարին ինչ կարևոր զկրթութիւն նոցին, մինչև մեծաւ նոցա ցոլս անձնութեանն անզուսպ, անկիրթ և ինքնագլուխ․ որով և 'ի բնութիւն նոցա դառնայ կամապաշտութիւն և ըմբոստութիւն, զորս համարիմ կրկին հիմունս ամենայն բարոյական անկարգութեանց 'ի տան և 'ի համօրէն ազգին․ որպէս յայտնի լինի յընթեռնուլն մտադիր զպատմագիրս մեր։ Այսպէս ահա ծնեալ և աճեցեալ ցուցանէ պատմութիւն ազգիս զվերջին թագաւորս Արշակունեաց, զՏիրան, զԱրշակ և զՊապ։

Այսմ ամենայնի պատճառք՝ զի միշտ պակասեաց յաշխարհի մերում դպրոց կրթութեան մանկանց, ուրանօր մանուկն ամս քանի մի հեռացեալ յիւրոցն, ընդ ձեռամբ օտար անձանց՝ այլ քաջ դաստիարակաց, կարէր 'ի բաց թողուլ կամ գէթ մեղմել զընդդարոյս ախտս իւր։ Իսկ թէ ընդէր մերքն անփոյթք եղեն զսմանէ, յայտնի է, զի չէին 'ի վերայ հասեալ, թէ դպրոցք ոչ միայն են տեղիք դպրութութիւն ուսուցանելոյ, այլ մանաւանդ և զբարս մանկանց կրթելոյ [1]։ Այս կանգնեցան դպրոցք յազգի մերում, այլ միայն 'ի վարժութիւն գրելոյ կամ ընթեռնլոյ և կամ գիտութիւն ինչ ուսանելոյ․ այլ ոչ բնաւ առ 'ի կրթութիւն մանկանց 'ի բարոյականս․ նմին իրի և եկեղեցականք միայն անդր յաճախէին, և ոչ աշխարհականք․ իբր թէ միայն վասն եկեղեցականաց էր պահեալ այս, և այն ուսանելոյ ողջագաւ և ոչ կրթելոյ։ Իշխանք մեր և թագաւորք իբրև կամէին առ 'ի շահ հոգւոյ յիշատակ ինչ բարի թողուլ

1 Այսպիսի դպրոցք առ Եւրոպացիս կոչին Քօլլէճիօ․ ուր մանկունք զատ և զգիշեր միշտ մնան անդ. 'ի ձեռս ճարտար դաստիարակաց 'ի բարոյական մասին, և ճարտար ուսուցչաց 'ի դպրոցն մասին․ նա մանաւանդ որպէս զի մանկունք բոլորովին հեռացցին 'ի ծնողաց և յազգականաց՝ որոց գութ և գգուանք միշտ վնասակարք են կրթութեան նոցա, 'ի դպրոցս հեռաւոր քաղաքաց առաքեն զորդիս իւրեանց։ Փորձ և օգուտ այսպիսի դպրոցաց յայտնի առաւ յԵւրոպիա․ զի յորժամ յարեաւ կրօնն Յիսուսեան, և ընդ ամենայն տեղիս Եւրոպիոյ դպրոցս հիմնեալ՝ սկսան կրթել զմանկունս, առհասարակ կերպարանափոխ եղև Եւրոպիա թէ յուսումն՝ և թէ 'ի բարոյական կրթութիւն։ Զի այսպիսի հրահանգ 'ի մանկական հասակի՝ կրթէ յաւէտ յերկուս յայտնիկ, նախ՝ սանձել զկիրս, և ոչ երթալ զհետ հաճոյից կամաց իւրոց․ և երկրորդ՝ ոչ ամօթ համարել զանսալն խրատու այլոց՝ այլ մանաւանդ փառք․ իսկ երկոքին այսոքիկ են հիմունք ամենայն բարեաց՝ որով կարէ մանուկն անձնապահ լինել յախտիցն այնոցիկ զորս յիշեցաք 'ի վերայ։

յաշխարհի մեծամեծ ծախիւք եկեղեցիս շինէին, որպէս ունիս տեսանել յընթեռնուլն զմեծ Հայս, մանաւանդ յաշխարհին Սիւնեաց՝ որ լցեալ էր եկեղեցեօք. ոչ զոք գտանես ծախեալ ինչ 'ի շինութիւն այսպիսի դպրոցաց 'ի մանկակրթութիւն 'ի բարոյական մասին, ոչ 'ի չորրորդ դարուն 'ի ծաղկիլ դպրութեան յաշխարհի մերում 'ի ձեռն սրբոյն Մեսրոպայ, և ոչ 'ի տասներորդ դարուն յաւուրս Աբասայ Թագաւորի, որ կոչի դար և ժամանակ ծաղկելոյ և բազմանալոյ վանօրէից: Ապա յայտնի է զոր ասացաքն, թէ ամենևին անծանօթ էր նոցա օգուտ այսպիսի դպրոցաց:

Արդ 'ի սատարագրութեան ախտիցն այնոցիկ և թերութեանց, զորոց ցայս վայր խօսեցաք, յայտնի կան հետևանքն զոր ասելոց եմ, թէ մինչև է մուծեալ 'ի մեզ փոյթ և եռանդն սոյնօրինակ մանկակրթութեան 'ի համօրէն ազգիս, չիք յոյս տեսանելոյ յազգի մերում. անհետանալ ախտիցն զորոց խօսեցաք, որք եղծիչք են հասարակաց խաղաղութեան, պատճառք աղքատութեան և ամենայն աղէտից:

ՎԱԽՃԱՆ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՅ



# ՑՈՒՆԿ

## ԳԼԽՈՑ ՄԱՏԵՆԻՍ

---

## ԳԼՈՒԽ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

## ԳԼՈՒԽ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԴՐՕՇՔ ՆՇԱՆՔ ԵՒ ՎԵՐՏԱՌՈՒԹԻՒՆՔ



## ԳԼՈՒԽ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԶԻՆՈՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ

## ԳԼՈՒԽ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

## ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

## ԳԼՈՒԽ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ՕՐԷՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ



## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՒՏԱՄՆԵՐՈՐԴ

### ԲԱՐՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

